ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

## ՍՈՒՐԲ ԵՓՐԵՄ

# The Writings of Ephraim, Khoren, Syro, Saint.

## Volume III

Interpretations of the fourteen Letters of St. Paul.

Venice

The Monastery of St. Lazarus

1836

# ՍՐԲՈՅՆ

# Ե Փ Ր Ե Մ Ի

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ



### ՀԱՏՈՐ ԵՐՐՈՐԴ.

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՉՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ



ՑԱՄԻ 1836 ՌՄՁԵ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԱՌԱՔԵԼՈՑՆ

ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է

## ՏԵԱՌՆ ԵՓՐԵՄԻ

ԵՒ

ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ

ԱՍՈՐԻՈՑ ՃՐԱԳԻ

Գ԰ԻՏԵՄՔ, զի նոր կտակարանք՝ կամ պարգեւք կամ 'ի ձեռն կարգին տուելոյ՝ Յունաց է տուեալ։ Եւ քանզի բազմապատում բանիւք խօսեցան զԱռաքեալ, որք խօսեցանն ըստ առատ ըստ իմաստուն մեծատուն գիտութե՟ն լեզուին իւրեանց, կամ եղեւ եւ ինձ առնել կարճառօտս համառօտս Ասորւոց աղքատաց լեզուով գիտութ՟ն։ Թէպէտ մի մի 'ի բանից անտի Առաքելոյ բազմադուռն է, սակայն ոչ եթէ հարկ ինչ վտանգի է 'ի մեզ ելանել ընդ ամենայն դրունս նոցա. զի ոչ եթէ ժողովրդեանն թարգմանեմք զնոսա, այլ իմաստուն գիտնոց երկրորդեմք զնոսա։ Եւ վասն այսորիկ զզօրութիւն նոցա առեմք մեք, եւ ոչ զբազմադէմ երեսս նոցա. եւ զճշմարտութիւն նոցա գրեմք մեք, եւ յերկայնութենէ պատմութեանն նոցա հրաժարեմք մեք։ Մի այսուհետեւ տրտմիցին Յոյնք վասն Ասորւոց, զի համարձակեցան մեկնել զնոր կտակարանս. զոր օրինակ եւ ոչ Ասորիք ինչ տրտմեցան վասն Յունաց անտի, որ թարգմանեցին զհին կտակարանս։

ԱՌ

# ՀՌՈՄԱՅԵՑԻՍ

ՊԱՏՄԵԱՑ Պաւղոս վասն առաջին գալստեանն տեառն մերոյ. և երկրորդ՝ թէ վասն էր եղև ինքն գալուստն: Զի ամենայն մեղք դառնունէ զոր համարեցաւ, որ էին յառաջ քան զգալուստն առաջին, զի ցուցցէ և յայտ արասցէ եթէ վասն նոցա եղև գալուստն: Ած արգել և փակեաց զհեթանոսս 'ի ներքոյ մեղաց բնութե. յայնմիկ, ասէ, որով խիւք դատիմն դու զընկերն քո, ցուցեր և յայտ արարեր՝ եթէ գիտես դու զայն՝ որ ինչ քեզ չար թուի, ընկերին մի արասցես: Արգել և փակեաց զժողովուրդն 'ի ներքոյ մեղաց օրինացն. "Դու, ասէ, որ ասես՝ եթէ մի շնասցեն, շնաս դու", եցոյց թէ գիտեն զնոսա հեբրայեցիքն, և ոչ առնեն:

Այլ 'ի ձեռն այսորիկ զի ասաց, արդարացոյց զըստուգութիւն, և պարտաւորեաց զազատութիւն. և եղև այնուհետև կարօտութի կողմանցն երկոցունց, այս ինքն ժողովրդեանն և հեթանոսաց, ձրի բժըշկաւն: Քանզի սոյն իսկ այս շնորհք մկրտութեանն զամենայն մարդ կեցուցին: Այսուհետև պարծանք կողմանցն երկոցունց ոչ եթէ 'ի գործոց ինչ է, զի 'ի նոցանէ կողմանէ նոքա մահապարտք էին, այլ 'ի ձեռն հաւատոցն այնորիկ՝ որ մահուամբն իւրով հաստոյց զպարտիսն նոցա:

Ասաց յետ այսորիկ և վասն հաւատոց՝ որ արդարացուցին զԱբրահամ յառաջ քան զթլփատութիւն: Եւ յետ այսորիկ ասաց նա վասն օրինացն Ադամայ, զի 'ի նմանէ թագաւորեաց մահ: Եւ յետ այսորիկ ասաց նա վասն մեղացն՝ որ զօրանային 'ի սրտի, և տախտակին օրէնքն ապրեցուցանել զմեզ 'ի նոցանէ

ոչ կարացին ։ Ցետ այսորիկ ասաց Նա վասն ելանելոյ ժողովրդեանն և վասն մտանելոյ հեթանոսաց ։ Արդ վն այսոցիկ և վն այլոց՝ որ իցեն ՚ի Թղթի աստ, Առաքեալ գրէ առ Հռովմայեցիս յասել իւրում այսպէս ։

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ, ասէ, կոչեցեալ ։ Այս ինքն, զի կոչեցաւ Նա ՚ի ձեռն յայտնութեանն, որ եղև ՚ի վերայ նորա ՚ի ճանապարհի անդ Դամասկեայ ․ և առաքեցաւ Նա Յիսուսէ Քրիստոսէ քարոզել զաւետարանն ։ Եւ ոչ եթէ յորժամ՝ կոչեցայն ես՝ յայնժամ ընտրեցայ ․ այլ ընտրեալ իսկ էի ես, որպէս և ընկերք իմ, յաւետարանն Այ յառաջ քան զլինելն աշխարհի ։

Այն իսկ և այս աւետարան մի աւետարանիչ երևեսցի ձեզ, ով Հռովմայեցիք ․ զի յառաջագոյն հաստատեալ էր սա գրովք սրբովք մարգարէից, և ակնարկեալ էր ՚ի Նոսա վասն Որդւոյ Նորա, այն՝ որ այժմ իսկ երևեցաւ մարմնով ՚ի զաւակէ տանն Դաւթի, սոյն իսկ այս յայտնեցաւ եթէ Որդի է Նա Այ ։ Ի՞ւ յայտնեցաւ ․ այլ զօրութք և հոգւով սրբութք ․ այս ինքն ՚ի ձեռն զօրուեց իւրոց, և ՚ի ձեռն պարգևացն՝ որ սփռեալ լինէին ՚ի վերայ աշակերտացն իւրոց Հոգւովն սրբով ։

Որ յարեաւն, ասէ, ՚ի մեռելոց ։ Եւ ոչ եթէ այլ ոք յարոյց զնա ։ Մեռեալ էր Նա և կենդանի ։ Զի համարեցաւ Նա մեռեալ, վասն մարմնոյն իւրոյ ․ և կենարար, վասն ածութեն իւրոյ ։ Քանզի ասաց, բայց յայտնեցաւ՝ եթէ Որդի է Նա Այ ․ ոչ ասաց եթէ յարոյց զնա, զի մի լիցի Նա ընդդէմ դարձեալ բանին իւրոյ ․ այլ ասաց՝ եթէ յարեաւ Նա ՚ի մեռելոց, զի եղիցի Նա կատարիչ և կնքիչ պատգամին իւրոյ ։ Զի Նովաւ ընկալաք մեք շնորհս ․ այս ինքն ՚ի ձեռն աւազանին մկրտութեան ․ և առաքելութիւն՝ ՚ի ձեռն պարգևաց Հոգւոյն ։ Զի քարոզեսցէ՝ ոչ եթէ վասն գարշ և պիղծ և աղտեղի գնացիցն մերոց զորս համարեցաքն մեք, այլ վասն անուանն իւրոյ ։ Նա և դուք, ով Հռովմայեցիք, յանցանէ էիք՝ որ կոչեցեալ

են . մի՛ զրկեալ գտանիցիք 'ի շնորհաց անտի՝ որ առաքեցին զիս առ ձեզ ։

Որ միանգամ իցէք 'ի Հռոմէ՝ կոչեցելոց սրբոց . այս ինքն երախտայից և կնքաւորաց ։ Սուրբք էիք կնքաւորքն վասն քաւութեան զոր առին մկրտութեամբ . լուացարուք, առէ, և սրբեցարուք ։ Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱստուծոյ 'ի Հօրէ մերմէ . այն որ կոչեացն զմեզ, և մերձեցոյցն յիւր որդէգրութիւն ։ Եւ 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ . և ոչ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Գոհանամ զԱյ իմոյ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ։ Քանզի ասաց նա վերագոյն՝ բայ 'ի տեառնէ, զի ցուցցէ վասն ա̃ծուե̃ նորա . ասաց աստ՝ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, զի յայտ արասցէ և վասն մարդկութե̃ նորա ։ Մեծ հաւատքդ ձեր ըստ մեծ քաղաքիդ ձերոյ, պատմեալ են ընդ ամենայն աշխարհս ։

Վկայ է ինձ ա̃ծ զոր պաշտեմն զնա 'ի հոգիս . այս ինքն հոգևոր գնացիւք, և ոչ պատարագաւորհ արինօքն . և աւետարանաւն Որդւոյ նորա, և ոչ Մովսիսեան գրովքն ։ Զի անպակաս յիշատակ մատուցանեմ վասն ձեր յաղօթս իմ . և աղաչեմ զի ոչ եթէ յետ երկայն ժամանակաց, այլ զի արդէն իսկ բացցին ինձ դուռն ճանապարհի տեսանել զձեզ ։ Եւ տաց ես ձեզ շնորհս ինչ հոգևորս, որպէս և ընկերաց ձերոց գաղատացւոցն և կորնթացւոց վասն հաստատութե̃ ձերոյ . զի նոքօք հաստատեալ կայցէք դուք 'ի ժամանակս հալածանաց՝ մխիթարակից լինել մեզ ընդ ձեզ, և աղաչել 'ի միասին 'ի ձեռն հասարակաց հաւատոց ։

Ոչ կամիմ եթէ տգէտք եղիցիք, եղբարք . զի բազում անգամ յօժարեցի ես գալ առ ձեզ . զի և 'ի ձեզ գտաւ ինձ պտուղ՝ որ մատչի առաջի մեծուե̃ցն, այս ինքն առաջի աշակերտութե̃՝ յորում հանգչի 'ի նմա ա̃ծութիւն, որպէս գտաւ ինձ և յայլ հեթանոսմն յիմաստունս և յանմիտս . այս ինքն որ խոնարհինն հնազանդել մեզ, և որ ոչ . և նոցա իսկ եթէ հնազանդին և եթէ ոչ հնազանդին, սակայն ես պարտապան եմ քարոզել ։ Եւ յօժար եմ, զի և 'ի հեզ հռովմայեցիս աւետարանել ։ Կամ վասն զի

հեռի էին ասաց՝ բայց յօժարեալ եմ. կամ վասն զի քաղաք կռապաշտութե՛ էր, և ոչ ոք համարձակէր մտանել անդր ։

Ոչ եթէ ամաչեմ ինչ վասն աւետարանիս. վասն խաչին՝ ինչ որ քարոզի 'ի սմա ։ Զօրութի՛ է նա այ, որ բաւական լինի հնազանդել զապստամբութի հեթանոսաց. և փրկութի, որ ոչ անցանէ, այլ հրէից և հեթանոսաց՝ որք հաւատանն 'ի նա ։ Արդարութիւնն այ. այս ինքն գնացք առաջնոցն, յայտնին 'ի նա 'ի հաւատոց 'ի հաւատս. 'ի հաւատոց անտի Աբրահամու, 'ի հաւատս որդւոցն Աբրահամու ։ Եւ զի այսպէս հանդերձեալ էր լինել, գիրք իսկ վըկայեն յասելն իւրեանց՝ եթէ "Որ արդարն է, 'ի հաւատոց կեցցէ" ։

Յայտնելոց է բարկութիւն այ յերկնից՝ խնդրել զվրէժ իւրև յօրինաց 'ի բնութենէ, յայնցանէ՝ որ զճշմարտութի անիրաւութեան ընդունին. զի գիտեն զճշմարտութի, և պաշտեն զանիրաւութի ։ Գիտութիւն այ յայտնի է 'ի նոսա. զի այ 'ի ձեռն արարածոց իւրոց զանձն իւր յայտնեաց նոցա ։ Որ աներևոյթն է 'ի սկզբանէ աշխարհի. կամ բնութիք են արարածոց, զոր գրեացն Մովսէս. կամ վասն Որդւոյ ասաց, զի ծածկեալ էր և յայտնեցաւ այսօր. և երևեցաւ դարձեալ զօրութի նորա 'ի ձեռն նշանաց իւրոց, որպէս 'ի սկզբանէն 'ի ձեռն արարածոց իւրոց ։ Զի եղիցին նոքա առանց պատասխանի տալոյ, այնոքիկ՝ որ միանգամ մոլորինն 'ի նմանէ յետ այսր ամենայնի ։

Զի ծանեան նոքա զայ 'ի ձեռն արարածոցն նորա, այլ ոչ եթէ զայ կամ զարարիչ այսր բնութենց փառաւորեցին կամ գոհացան զնմանէն. այլ նանրացան նոքա 'ի խորհուրդս իւրեանց 'ի ճշմարտութենէ անտի փառաց նորա ։ Զի ոչ վասն ամենայն սքանչելեացն փառաւոր առնէին նոքա, այնոքիկ՝ որ և վասն միոյ միայ 'ի սքանչելեաց անտի նորա փառաւորել պարտ էին. և խաւարեցան անմտութի սիրտք նոցա 'ի լուսոյ անտի գիտութեն նորա ։ Եւ իբրև ինքեանք իմաստք էին յայսմիկ, յայսմիկ զանձինս առ իմաստունս առնէին. յիմարեցան և խոտորեցան յայ՝

տալ փառս նմանութեան պատկերի մարդոյ և թռչնոց, սողնոց և չորքոտանեաց :

Այս քանզի նոցա հաճոյ եղև խոտորել յայս, այն որ սիրէին զսրբութիւն և զպարկեշտութիւն, և սիրեցին նոքա զպատկերս որ համարձակէին նոցա գործել՝ ինչ որ հակառակ է այսմ ամենայնի, մատնեաց զնոսա Ած. ոչ 'ի ձեռն այնր ընչի զոր առէին նոքա, այլ մատնեցան նոքա 'ի ձեռն պիղծ ցանկութեան զոր ցանկայր սիրտ նոցա. և անարգեցին զմարմինս իւրեանց յանձինս իւրեանց, որպէս և սիրեցինն ինքեանք: Եւ կուռք իւրեանց՝ որոց երկիրպագանէին նոքա, նա և արժան իսկ էր խնդրել զվրէժ յանձանց իւրեանց, և անարգել զմարմինս իւրեանց յանձինս իւրեանց. այնպիսիք՝ որք փոխանակեցին զճշմարտութիւն Այ 'ի ստութեան իւրեանց, և հնազանդեցան և պաշտեցին զարարածս, և ոչ զարարիչ երկրպագել:

Կանայք նոցա դարձեալ փոխեցին զօրէնս բնութեան իւրեանց, և հնազանդեցան և պաշտեցին: Լաւ դու, զի և կանայք նոցա ինքեանք փոխեցին զօրէնս իւրեանց յօրէնս անօրէնս. և ոչ եթէ 'ի բռնութեան ուրուք վարեալ էին նոքա: Եւ արք նոցա թողին զօրէնս զօրինի կանանց. նոքին իսկ դարձեալ թողին, և ոչ եթէ յումեքէ բռնադատեալ լինէին: Ոչ եթէ ցանկութիւն նոցա միայն ած զնոսա յայս իրս, այլ և ագահութիւն նոցա: Զի զդարձ փոխարինին մոլորութեան իւրեանց զոր տային կանանց, անդրէն յանձինս իւրեանց ընկալան: Եւ ոչ ընտրեցին նոքա յանձինս իւրեանց ճանաչել զԱծ, իբրու կարող էին, մատնեաց զնոսա Ած. այս ինքն լքք թող զնոսա ոչ 'ի բռնութիւն կամ 'ի մեղս, այլ 'ի միտս անձանց իւրեանց, այն որ ազատութեամբն իւրով տարացաւ յօգտակար հաւանութենէ անտի: Արդ մատնեաց զնոսա 'ի միտս անարգութեան գործել նոցա զանարժանս, զոր և գործէինն իսկ:

Լի են նոքա 'ի կամաց իւրեանց ամենայն անօրէնութիւնք հանդերձ ամենայն չարութիւնք զոր համարեցաւ: Նոքին իսկ՝ որ գիտեն զարդարութիւն Այ և զայն գործեն, մատնեալ լինին նոքա 'ի ձեռս մահուն երկրորդի. և ոչ եթէ որ առնեն զայն, նոքա միայն ար-

ժանի են մահու, այլ և որ հաղորդին և յանձն առնուն զգործս նոցա։ Նոյն իսկ է այն՝ զոր երկրորդեացն 'ի վերայ նոցա ինքն Առաքեալ. հպարտք, ամբարտաւանք, և գտակք չարեաց, որ ինչ կրէր յընկերս նոցա։ Թերևս վասն դատաւորաց նոցա ասաց, այնոքիկ՝ որ զկաշառն առնոյին. ոչ եթէ միայն զի՛ զչարեացն հակառակ ոչ լինէին, այլ և թիկունք և գումէնչք ևս լինէին գործելեաց չարեաց։

## ԳԼՈՒԽ Բ

ՈՐՈՅ պատասխանի տալոյ ես դու, ով մարդ, թէ ասիցես թէ չգիտեմ. զի որով իւիք դատիս դու և պարտաւորես զընկեր քո, զանձն քո դատապարտես. նոյնին իսկ ընկերաւն դատապարտիս դու։ Վասն զի իբրև զնորա գործս գործես դու, զի՞նչ ևս՝ արդեւք համարեսցիս դու՝ յորժամ դատիս զայնոսիկ՝ որ զայնպիսիսն գործեն, քանզի և դու ինքն զնոյն գործ գործես, եթէ դու ապրելոց ինչ իցես։ Գիտացեալդ պարծիս. օգնէ, եթէ զամենայն որ միանգամ գրեալ է յօրէնսն՝ առնես և կատարես. ապա եթէ յանցաւոր օրինացն գտանիցիս, համարեալ լինի թլփատութիւն քո յանթլփատութիւն։ Զի ոչ եթէ որ յայտնի է՝ հրեայ է, և ոչ եթէ որ յայտնի է մարմնով՝ այն թլփատութիւն ճշմարիտ, այլ այն թլփատութիւն որ սրտին է, հոգւով և ոչ գրով. այս ինքն գնացիւք օրինացն բնութեան և ոչ թլփատութեանն գրոյն Մովսէսի։ Այլ զի գովութիւն նորա ոչ առ յայտնի ականէ մարդկութենէ, այլ առ 'ի ծածուկ ականէ Աստուածութենէ։ Զի՞նչ օգուտ իցէ քեզ զի թլփատեալ իցէ մարմինդ քո այդ նշանաւն, և հաւասարեալ են խորհուրդք քո ընդ այնոսիկ՝ որ ոչ են դրոշմեալ հոգիք նոցա 'ի դրոշմն հաւատոց։ Արդ պարծանք թլփատութեանն արգելան, և պարծանք հաւատոց ահա առաքինեան։

ԳԼՈՒԽ Գ

ԻՍԿ արդ զի՞նչ աւելի է հրէին, և զի՞նչ օգուտ է 'ի թլփատութենէ անտի: Եթէ զթլփատութիւն սրտի խնդրէ ա̃ծ, բազում ամենայն իրօք հաստատեցաւ. այս ինքն հաւատարիմ եղև բանն ա̃յ, և օգտակար 'ի ձեռն թլփատութե̃ն: Քանզի ասաց, բայց այսպէս եղիջիք՝ թլփատեալ. և ցայն վայր Աբրահամ և Սառռա ամուլք էին: Կանխեաց թլփատութիւն, քարոզեաց զհաւատոյն Աբրահամու 'ի մէջ հեթանոսաց անհաւատից: զի իբրև հարցին զնա, ասեն. զի՞նչ է այդ զոր գործեսդ, ասաց նոցա. ասէ. Նշան է այս՝ որով դրոշմեմն սովաւ հաւատք ծնընդեան իմոյ. զի որդիք որ ծնանելոց են յինէն առյապա, իբրև զաստեղս երկնից, իբրև զաւազ առ ափն ծովու, նոքա թլփատին սովաւ: Եւ եթէ նոցուն իսկ 'ի հեթանոսաց՝ որք լուանն և ոչ հաւատացին, են բազումք զի հաւատացին, որք և թլփատեցանն իսկ: Դարձեալ ցոյց նա զօգուտ թլփատութե̃ն, թէ յիշեցուցիչ է նա անմեղութե̃, որպէս նշան ոք զի կապէ վասն մոռանալոյ:

Եղիցի, ասէ, ա̃ծ ճշմարիտ արդարութեամբ. այս ինքն զի արդար է նա 'ի ստուգութե̃ն. և առանց օրինաց ոչ թողոյր նոցուն հեթանոսաց: Այն զի ասէ՝ ամենայն մարդ սուտ, ըստ Մովսէսի օրինացն. զի ոչ ոք երբէք կարէր կատարել զնոսա: Զի եթէ ոչ տուան օրէնքն, զիա՞րդ հաստատի այն՝ զի ասէ. “Արդար եղիցես 'ի բանս քո, և յաղթես յորժամ դատին ընդ քեզ„. այս ինքն յորժամ տրտնջեն զքէն: Զկնի օրինացն անցանելոյ դատապարտեցաւ Ադամ. զի ծանիցեն ծնունդք նորա՝ թէ առանց անցանելոյ զօրինօքն ոչ դատապարտին: Որպէս դատեցաւ նա ընդ Դաւթայ 'ի ձեռն Նաթանու և յաղթեաց. քանզի գրեաց, ասէ “Մի՛ շնար և մի՛ սպանաներ„:

Որպէս ամպարտ է նա 'ի դատաստանի իւրում պատժովքն պատուհասից, զոր ածէ հասուցանէ վրէժխնդրութե̃ն նորա վասն օրինաց սրտին զոր եա

արդարութեան նորա։ Քանզի խուէին ժպիրհք և յամառք, և ասէին՝ եթէ ապիրատութիւն մեր զիրաւունս նոյ կացուցանէ, և ստութիւն մեր զճշմարտութիւն նորա. և այսու խմօվս կաց նորայն, զի՞ և ես իբրև զմեղաւոր պարտաւորիմ՝ ընդդէմ այսոցիկ ասաց. զի թէպէտ գրեաց՝ բայ "Յաղթեսցես 'ի դատել քում", ոչ եթէ 'ի դատապարտութեան մեր, և վասն յաղթութեան արդարութեան նորա գրեաց զօրէնս 'ի վերայ սրտից մերոց. զի եթէ այս այսպէս է, արդարեւ ապիրատութիւն մեր կացուցանէր զարդարութիւն նորա։

Այլ իբրև զմարդիկ եկայք քննեսցուք. զի եթէ ոչ այսպէս, զիա՞րդ դատի ա̃ծ զաշխարհ։ Հարկ է, ասէ, զի տացեն օրէնքն, թէպէտ և 'ի դատապարտութեան ընդունելեաց նորա տուեալ լինէին։ Այլ նա ոչ եթէ այսպէս ետ զնոսա. և վկայեն տուեալն Մովսէսեան և այլք, որք արդարացանն նոքօք։ Այլ այս իբրև զայն է, զի ասէ. "Որ հայհոյեմն զմեզ, և ասեն զմեզ՝ եթէ արասցուք զչար, զի եկեսցէ բարի"։ Քանզի ասվար էր յասել, եթէ "Ուր յաճախեսցեն մեղքն, անդէն առաւելան և շնորհքն", սկսան նաքա երկրորդել զնա յետս ընդդէմ. ասեն. յաճախեսցուք 'ի մեղանչել, զի բազմասցի առ մեզ գթութիւն նորա։ Եւ պատիժք պատուհասից այնպիսեացն յիրաւի են. վասն զի այսպն արարին նոքա զշնորհսն։

Իսկ արդ զի՞նչ և օգուտ եմք մեք, զի յառաջանամք։ Այս իսկ զի՞նչ, ասէ, օգուտ է մեզ թէ ձեզ թուի՝ եթէ մեք ինչ դատապարտեմք զհրեայս և զհեթանոսս. զի ինչ որ գրեալ է, զնոյն երկրորդեմք մեք. զի չիք արդար, և ոչ այն՝ որ խնդրէ զա̃ծ, և ոչ մի։ Բայց խառնեաց նա և ետ զհեթանոսս ընդ հրեայս. որպէս զի արդելեալ փակեսցէ զերկոսին կողմանսն ընդ մեղօք։ Ի համարել իւրում ասէ. "Իբրև զգերեզման բաց են կոկորդք նոցա. լեզուաւ իւրեանց նենգաւորք եղեն", այլովքն համանդերձ։ Առանել պատասխանի վասն օրինացն, որ և վասն նոցին իսկ էր ամենայն պատերազմն, զայս գիտեմք, ասէ, զի որ ինչ միանգամ օրէնքն ասեն, որդւոցն օրինաց ասեն։ Այնոցիկ՝ որ պարծէին նոքօք, նոցա ասաց՝ բայ ամենայն բերան խցցի։ Եւ որո՞վ խցցի.

այլ յայտնի, զի ասէ. «Չիք արդար, և ոչ այն՝ որ առնէ զողորմութիւն»։ Հանդերձ այլովք զոր պատմեցին մարգարէքն, զոր միանգամ գործէին նոքա։ Արդ ո՞ւ նա զօրութիւն նոցա՝ որ երկրորդեաց միով բանիւ և ասաց՝ բայ ամենայն բերան խցցի. քանզի 'ի գործոց անտի օրինաց չիք բանալ բերանոյ որդւոց օրինաց։ Արդ պարծանք կողմանց երկոցունց ոչ յօրէնս կշտամբիչս են, այլ 'ի գթութիւն քաւիչ. զի յօրինաց անտի եղև գիտութիւն մեղաց. այս ինքն զի արդարութիւն, որ 'ի նոսա յանդիմանիչ էր ամենայն չարեացն՝ որ գործեալն լինէին 'ի մեզ։

Իսկ արդ առանց օրինաց արդարութիւն այ յայտնեալ է. այն զի կարէն կեալ երկայնմտութեամբ նորա ամենայն ապաշխարողք՝ կարօտք երկայնմտութեամբ. զի անդ ուր սրբեալ գնայր զկնի յանցանաց։ Առանց օրինաց, ասէ, արդարութիւնն այ յայտնեալ է. վասն զի ոչ 'ի նոցանէն ուսանիմք մեք ըզհաւատս և զհեզութիւն, այլ յաւետարանէ։ Նա և ինքն իսկ օրէնքն վկայեն վասն արդարութեանս մերոյ. կամ այն է զի դրոշմեալ էին նոր կտակարանքս 'ի հնումն անդ, կամ զի վկայեցին օրէնքն վասն Քրիստոսի թէ գալոց է, կամ զի ինքեանք օրէնքն ուսուցանէին զհեզութիւն և զհաւատս. ըստ այնմ զի ասէ. «Որ քեզ չար թուի, ընկերին մի առներ»։

Արդ յայտնի ոչ եթէ որոշումն ինչ էր՝ եթէ սա մեղաւ, և սա ոչ մեղաւ. քանզի ամենեքին մեղան, և նուաղեալ են 'ի փառաց անտի զոր կամէր այ տալ նոցա 'ի ձեռն արդարութեան. և արդարանան ձրի 'ի շնորհս նորա և 'ի փրկութիւն նորա 'ի ձեռն հաւատոցն։ Այն զի 'ի սկզբանէ իսկ եա զնա այ դարուցն առաջնոց, որ մեղանն։ Մինչ չև եկեալ էր այս տուչութիւն շնորհաց, սփռեցին զճառագայթս իւրեանց 'ի դարս դարս. յամենայն դարս ապրեցուցին զմեղաւորս 'ի ձեռաց արդարութեանն։ Ի ժամանակի իբրև արարին նոքա զորթն ո՞վ ապրեցոյց զնոսա. զի ահա աւասիկ օրէնքն 'ի մահ մատնէին զառնելիս կռոցն։ Արդ եթէ օրէնքն նզովեն և սպանանեն զչարագործս, և դուք զայս ամենայն չարիս գործէիք հանապազօր, զի՞արդ կամ ո՞րպէս ապրեցայք դուք։ Արդ զի յայտ

եղև՝ թէ և յայնժամ շնորհօք կեցիք դուք և հաւատովք, ընդէ՞ր այլանման լինիք յաչս ձեր իբրև օտարք, այն որ առանց սոցա առաջի կալ օրինացն և ոչ մի վայր ոչ կարէիք ։ Վասն մեղացն, ասէ, անցելոց 'ի ներելն ա̃յ վասն հանդիսի այսր արդարութե̃ն, որ արդարացուցանէ այսօր մկրտութեա̃ք զայն՝ որ 'ի հաւատոց անտի է տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Արդ ո՞ւր են պարծանքն. արգելան ։ Այս ինքն առ ո՞ւմ մնացին պարծանքն. մի եթէ առ այնոսիկ՝ որ գործեն զգործս օրինացն ։ Ոչ այդպէս. այլ առ այնմ՝ որ գտանէին այլ օրէնս հաւատոցն ։ Համարիմք մեք. այս ինքն գիտացաք մեք՝ եթէ հաւատովք արդարանայ մարդ, և ոչ 'ի գործոց ։ Մի՞ եթէ Հրէից միայն իցէ ա̃ծ, զի կէս մարդկան սիրելիք են նմա, և կէսք ատելիք ։ Քաւ, մի՛ եղիցի. զի 'ի մի հաւասար գթութե̃ն անդ՝ բաժինք սիրելեաց և ատելեաց չէ արժան լինել ։ Եթէ թլփատութիւն, ասէ, ինքն անձին իւրում ոչ օգնեաց, և ձրի շնորհօք եկեաց, սոյնպէս և անթլփատութի̃ն կեայ ։ Քանզի եթէ ա̃ծ եթէ յօրէնսն 'ի խիստս և 'ի սաստիկս գթութե̃ն քաւիչ գնայր, ոչ հաճոյ թուեցաւ նմա՝ իբրու ինքն խոնարհէր առ նոսա շնորհօք՝ թէ զրկեսցի և անուանեսցի խիստ ըստ օրինաց ։ Զխստութի̃ ա̃յ քարոզեն օրէնքն, իբրու նա ընդ ամենեսին շնորհօք կրի ։ Արդ մերժեաց նա և 'ի բաց արար զխոլթոտեալ օրինացն, զի ամենայն մարդոյ ճաշակեսցի ճշգրտութի̃ քաղցրութեան նորա ։ Արդ զօրէնս ինչ խափանեմք մեք. քաւ եղիցի ։ Ոչ ասեմք մեք՝ եթէ առանց զօրութե̃ն են. և վասն զի յոյժ բազում և սաստիկ է զօրութի̃ն նոցա, ոչ կարաց լուծութի̃ս մեր կալ առաջի նոցա ։

## ԳԼՈՒԽ Դ

ԻՍԿ արդ զի՞նչ[1] ասեմք զԱբրահամէ, որ նահապետն էր հարցն մարմնով ։ Այս ինքն զի 'ի զաւակէ նորա որպիսի՞ որդիք յամառք ծնան ։ Զի եթէ

1 Յօրինակին պակասէր զի՞նչ ։

Աբրահամ գործովք արդարացաւ, էին էին պարծանք գործոցն՝ որ արդարացուցանէին զնա, այլ ոչ առ Ած՝ որ ողորմեցաւ նմա։ Եւ վասն այսորիկ ասէն գիրք. ոչ զի գործեաց Աբրահամ և համարեցաւ նմա յարդարութիւն, այլ զի հաւատաց նա յայն՝ որ արդարացուցանէ զամպարիշտս, և համարեցաւ նմա յարդարութիւն։

Արդ եթէ արդարանալ կամիս դու, զի՞նչ ևս կարօտ իցես դու թլփատութեան. զի ահա աւանիկ յառաջ քան զթլփատութիւն հաւատքն արդարացուցին զԱբրահամ. քանզի այն՝ որ գործքն են, ոչ ըստ շնորհաց համարեալ լինին նմա վարձքն, այլ ըստ պարտեաց. իսկ Աբրահամու համարելով համարեցան նմա վարձքն իւր յարդարութիւն, այս ինքն 'ի շնորհս։ Ապա եթէ դուք, ասէ, գործովք ձերովք կամիք պարծել, մեք առ Աբրահամ տկար իբրև զմեզ՝ զոր հաւատքն արդարացուցին՝ ընթանամք։ Զի եթէ պահեցին ժողովուրդն և հեթանոսք զօրէնս իւրեանց, ըստ պարտեաց համարի նոցա զվարձս իւրեանց։ Ապա եթէ ամենեքին մեղան և նուաղեալ նոքա լինել վրէժխնդիրք, այսուհետև շնորհօք արդարանան. այս ինքն յորժամ հաւատան նոքա իբրև զԱբրահամն յարդարացուցիչն մեղաւորաց։ Զի ցուցցէ եթէ և նոքին իսկ որ զօրէնսն պահեն, կարօտեալ փափագէին թողութեան շնորհացն։

Դաւիթ ասէ, ասաց, եթէ «Երանի է առն՝ որում Ած համարեցաւ նմա զարդարութիւնս նորա». այս ինքն զի արդարացուցանէ զնա Ած առանց գործոց։ «Երանի, ասէ, այնոցիկ՝ որոց թողութիւն եղև մեղանաց նոցա»։ Եկ, ասէ, տեսցուք յո՞ր կողմն շրջի այս երանութիւն. յանթլփատութիւ՞ն՝ այն որ հաւատայն և ծածկեցան մեղք նորա 'ի թողութիւն մկրտութեան, թէ 'ի թլփատութիւն որ հանապազօր մերկանան և խայտառակին զնա օրէնքն զոհից պատարագօքն. այս ինքն յայտնելովն մեղաց նոցա, որ լինէր 'ի ժամ պատարագաց նոցա։

Ընթացաւ դարձեալ կապել զճառս իւր յանթլփատութիւնն Աբրահամու։ Արդ զի՞նչ, ասէ, համարեցան հաւատքն Աբրահամու յարդարութիւն. մինչ

գեւ 'ի թլփատութն էր, եթէ յանթլփատութեան։ Տես, ասէ, որչափ զօրագոյն են հաւատք։ Իբրեւ թըլ-փատեցաւ Աբրահամ, ոչ գրեալ է՝ եթէ արդարա-ցաւ նա. այլ իբրեւ հաւատացն։ Այլ զի մի եպերեա-ցէ նա զթլփատութի, և լինիցի նա այնուհետեւ իբրեւ այն՝ թէ ընդ վայր ինչ տուեալ է, արար զնա իբրեւ զպսակ՝ որ կնքէ զյաղթութիւն. ոչ եթէ նա ինքն է պսակ յաղթութեն, այլ կնքիչ։ Իբրեւ նշանակ մի, ա-սէ, արար զթլփատութեն 'ի դատակնիք արդարութն, այն՝ որ յանթլփատութն անդ. այս ինքն արդարու-թին զոր ստացաւ 'ի ձեռն անթլփատութեն՝ լինել նմա հայր ամենայն հաւատացելոցն յանթլփատու-թեանէ, զի համարեսցին նոցա՝ որպէս և նմայն՝ հա-ւատք իւրեանց յարդարութի. զի կոչեսցի նա հայր թլփատութն այնոցիկ՝ որք հաստատեալ են 'ի շա-ւեղս հաւատոց անթլփատութեն Աբրահամու։

Զի ոչ թէ յօրէնսն որ տուան յետ չորեքարիւր ամի՝ տուան աւետիքն Աբրահամու՝ լինել նմա ժա-ռանգ աշխարհի, այլ վասն արդարութն հաւատոց նորա. զի եթէ յօրինաց անտի էր ժառանգութիւն, հաւատքն ընդունայն լինէին, և աւետիքն դատար-կացեալ, յայնմիկ՝ զի ոչ կատարեալ լինէին պահպա-նութիքն օրինաց։ Եւ զի կանխեաց և ետ բարեկա-մին իւրոյ զաւետիսն արտաքոյ օրինացն, վասն մեղացն՝ որ էին արտաքոյ քան զարդարութի, ածին արգե-լին և փակեցին աւետիքն զամենայն 'ի ներքոյ օրհ-նութն վասն օրինացն՝ որ պատրաստեալ էին արգե-լուլ զամենայն ընդ անիծիւք։

Զի օրէնք զբարկութիւն գործեն։ Վասն այսո-րիկ այն՝ որ հաւատայրն, և որ ոչ հաւատայր, հարկ էր նմա թլփատել, զի մի մեռցի։ Զի հաւատալ մարդոյ կամք են, և ոչ բռնութի. վասն այսորիկ ա-մենայն գործք բռնութն կոչեցան յանուն օրինաց, և գործք ազատութն անուանեցան յանուն հաւատոց։ Քանզի գայթագղեցաւ աշխարհ 'ի հաւատոց անտի Աբրահամու, զի այն կամացն եղև ազատ, և օրէնք բռնութի են զարհուրեցուցիչք, առակեաց նա զժա-մանակ օրինացն 'ի տղայութի, և զսա յերիտասար-դութի. ոչ զի նաքին իսկ ժամանակքն առաջնորդեն

մեղ, այլ քանզի նոքեանք ժամանակքն 'ի գործոց սատի մերոց ընդունելին զանուանս. զոր օրինակ և մարդիկ 'ի պտղոյ գործոց իւրեանց:

Որպէս օգնականս եղեն օրէնք 'ի ժամանակի անդ ապստամբութեան, նոյնպէս և վնասակար են այժմ. զի եկին հաւատք, այնք՝ որ արդարացուցին զԱբրահամ յառաջ քան զօրէնսս: Վասն այսորիկ ոչ, ասէ, 'ի գործոց, այլ 'ի հաւատոց. զի ըստ շնորհաց եղիցին աւետիքն հաստատուն ամենայն զաւակին. ոչ թէ այնոցիկ միայն՝ որ յօրինաց անտի են, այս ինքն ոչ Հրէից միայն, այլ և հեթանոսաց՝ որ 'ի հաւատոց անտի են Աբրահամու հօր մերոյ: Որպէս և գրեալ է, եթէ հայր ազգաց բազմաց. ամենեցուն որ հաւատան իբրև զքեզ յանդ՝ որ կենդանի առնէ զմեռեալս, և կոչէ զչգոյսն իբրև 'ի գոյս: Զոր օրինակ կոչեաց նա զՍահակ 'ի չգոյէ, նոյնպէս ապրեցուցանէր զնա 'ի սեղանոյ անտի: Ասել՝ թէ թլփատեցարուք, դիւրին է լսողացն առնել զայն. բայց ասել վասն ամուլութեանն և անզաւակութեան՝ եթէ ածէ և բազմանայ իբրև աւազ և աստեղք, դուք խորհեցարուք, որ սքանչելի. յայտնի չարչարանք միում ժամանակի, թէ համբերութի վասն որոյ առ յապայն էր:

Հաւատաց, ասէ, յանդ՝ որ կենդանի առնէ զմեռեալս, և կոչէ զչգոյսն իբրև զգոյսն: Այս ինքն զի 'ի մեռեալ մարմնոյ անտի Աբրահամու և 'ի մեռեալ արգանդէ անտի Սառայի կենդանացոյց և հան ած զայնոսիկ՝ որ ոչն գոյին 'ի նմին ժամանակի անդ: Զի շնորհեցան, 'ի տեղի աւետեաց նոցա գովեաց ած ըզհաւատս հարցն նոցա. զի հաւատաց 'ի ծնունդս նոցա, որպէս զի եղցէ ծնունդն 'ի նմանէ նմանող լինել հաւատոց ծնողին իւրոյ. և զի ստացի նա զհաւատսն զայնս զոր ստացան զնա մինչ չև ծնեալ էր նա: Սոքա զօրութի են այնորիկ՝ զի ասէ. "Որ անյոյսն յուսով հաւատաց". և այն՝ զի ասէ. "Ոչ ինչ հայեցաւ նա 'ի մարմինն իւր մեռեալ, և 'ի մեռելութի արգանդին Սառայի", համդերձ այլովք ընկերովք իւրեանց: Եւ ոչ, ասէ, վասն նորա միայն գրեցաւ՝ եթէ համարեցաւ հաւատքն նորա յարդարութի, այլ

և վասն ձեր․ զի և ձեզ որպէս և նմայն համարեսցի յարդարութիւն։ Այն զի հաւատացէք դուք յայն՝ որ յարոյցն զտէր մեր Յիսուս Քրիստոս, որ մատնեցաւ վասն անօրէնութեանց մերոց, և յարեաւ վասն զմեզ արդարացուցանել։

## ԳԼՈՒԽ Ե

Արդ արդարացեալք մեք հաւատովք մկրտութեան, և եղև մեզ խաղաղութիւն առ ա̅ծ, և հաշտեցաւ ընդ մեզ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․ զի նովաւ ընծայեցաք մեք 'ի շնորհս աւետարանիս այսորիկ, յորում կամք և պարծիմք յուսովն փառաց նորա․ այս ինքն առաքինութեամբն՝ նշանաց նորա։ Բայց և 'ի նեղութիւնս մեր որ վասն նորա է՝ պարծիմք մեք․ գիտեմք մեք՝ թէ նեղութիւն՝ այս ինքն զի նեղութիւն համբերութիւն կատարէ 'ի մեզ․ և փորձիմք մեք, զի եմք մեք սպասիչք յուսոյն՝ որ ոչ ամաչեցուցանէ։ Քանզի սէրն ա̅յ սփռեալ է 'ի սիրտս մեր 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ․ այս ինքն 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ զոր ընդունիմք մեք։

Զի եթէ Քրիստոս վասն տկարութեան մերոյ 'ի ժամանակիս յայսմիկ յետնում 'ի վերայ ամպարշտաց՝ որ ոչ եղև բաւական կատարեալ զօրէնսն՝ մեռաւ, վասն բարոյ ոք հազիւ թէ մեռանիցի, զի՞նչ հատուցի նմա, կամ առ յումմէ՞ հատուսցի՝ այն որ վասն բարոյն մեռանի։ Վասն արդարոց և վասն մարտիրոսաց թերևս և համարձակեսցի ոք և մեռանել վասն յուսոյն զոր ընդունին 'ի Քրիստոսէ անտի իւրեանց հատուցմանն 'ի կատարածի։ Յայսմիկ առաւել քան յամենայնի ցոյց նա զսէրն իւր՝ որ առ մեզ էր՝ մահուամբն իւրով զոր մեռաւ վասն անօրէնութեանց մերոց։ Զի եթէ վասն ամբարշտութեան մերոյ մեռաւ, ո՞րչափ ևս առաւել արդարացուսցէ նա զմեզ արեամբն իւրով, և ապրեցուսցէ զմեզ 'ի բարկութենէ անտի՝ որ գալոցն է 'ի վախճան կատարածի։ Զի եթէ մինչ թշնամիքն էաք գործովք մերովք՝ հաշտեցաւ ընդ մեզ ա̅ծ 'ի ձեռն մահու Որդւոյ իւրոյ, ո՞րչափ

եւս 'ի հաշտել անդ՝ ապրեցուսցէ զմեզ կենօք նորա ։

Այլ եղիցին և պարծանքն մեր յա̃ծ վասն տեառն մերոյ Յիսուսի, որ եղաւ նա վասն մեր, և հաշտեցոյց զմեզ ընդ առաքչին իւրում ։ Եւ արար նա դարձեալ զամենայն մարդիկ մի մարմին, և խօսեցաւ նա ընդ մի երեսս Ադամայ մեղաւորի, և սկսաւ ցուցանել Ադամ առ Ադամ ։ Զոր օրինակ սերմանեաց նա մեղս պղծութե̃ 'ի մարմինս սուրբս, և թաղեցաւ խմոր չար յամենայն զանգուած մեր, նոյնպէս սերմանեաց տէր մեր զարդարութի̃ 'ի մարմին մեղաւոր, և փոխեաց խմոր նորա զզանգուածն մեր ։ Որպէս վասն Ադամայն մտին մեղք, և 'ի մեղաց անտի մահ, այսպէս և 'ի վերայ ամենեցուն տարածեցաւ սոյն իսկ այս մահ ։ Քանզի ամենեքին՝ թէ մեծաւ և եթէ փոքու՝ յանցանելով յանցեան ։ Զի մինչև յօրէնսն Մովսէսի, որ բազմացան պատուիրանք, մեղք իբրև այն թէ չէին համարեալ ։ Թէրևս վասն ադամեան օրինացն ասաց. քանզի գրէ զկնի նորա՝ թէ յառաջ չէին օրէնք ։

Այլ թագաւորեաց մահ յԱդամայ մինչև 'ի Մովսէս, և այլն ։ Ոչ է այս յայտ՝ եթէ մինչ յոր վայր. ոչ եթէ մինչ իջոյց զօրէնսն, և ոչ եթէ մինչ ընկալաւ նա զփառսն յերեսս իւր, և ոչ եթէ մինչև զի ասացաւ նմա՝ եթէ ես եմ ա̃ծ Աբրահամու, Սահակայ և Յակովբու, և ոչ եթէ մինչ զի կոչեցաւն Ովսէէ՝ Յիսու. և ոչ եթէ մինչ 'ի վերջին մարգարէիցն՝ որ նա ինքն է Յովհաննէսն ։ Թագաւորեաց, ասէ, մահ և 'ի վերայ այնոցիկ՝ որ ոչն յանցեան ըստ նմանութե̃ յանցուածոցն Ադամայ ։ Այս ինքն և 'ի վերայ այնոցիկ՝ որ ոչն յանցեան և կերան 'ի ծառոյ անտի գիտութե̃. զի նա ինքն է օրինակ լինելոց ժամանակացն. զի ուսուսցէ թէ զոր օրինակ թագաւորեաց մահ զանցանելով զպատուիրանաւն Ադամայ 'ի վերայ ամենայնի, թագաւորեսցէ, ասէ, կենդանութի̃ յարութե̃ 'ի ձեռն տեառն մերոյ 'ի վերայ ամենայնի ։

Այլ ոչ եթէ որպէս յանցանքն եղեն, սոյնպէս և պարգևք շնորհաց ։ Այս՝ զի ոչ եթէ ըստ նմանու պակասութեն Ադամայ, այնպէս և օգուտն՝ որ եղև 'ի ձեռն տեառն մերոյ ։ Զի եթէ վասն յանցանաց

միոյն մարդոյ ստեղծելոյ եղև տեղի մահու թագաւորել, իսկ այնոքիկ՝ յորս առաւելան շնորհքն մկրտութ՟ե, և արդարութիւն որ յօրինացն առաւել է, ո՞րչափ ևս առաւել առցեն նոքա զկեանսն պատրաստեալ փոխանակ անցաւոր կենացն, և թագաւորեսցեն դարձեալ վասն միոյն, զի նա ինքն է ոչ Ադամ, այլ տէր մեր Յիսուս, որ է ինքն արարիչ Ադամայ: Զի դատաստանքն որ եղեն վասն միոյն, այս ինքն դատապարտութիւն՝ որ եղև մեզ 'ի ձեռն միոյն 'ի դատապարտութ՟ի, այլ շնորհքն և պարգևքն մկրտութ՟են՝ որ սփռեցան վասն բազում մեղաց, յարդարութ՟ի ածեն զմեզ և արդարացուցանելով արդարացուցանեն զմեզ 'ի ձեռն քաւութ՟են՝ որ ձրի տան մեզ:

Ու՟ի որպէս յանհնազանդութենէն միոյն մարդոյ և 'ի պատճառս նորա մեղաւորք բազումք հաստատեցան, սոյնպէս և 'ի հնազանդութենէ անտի միոյն, որ եղև նոցա օրինակ բարեաց, արդարք բազումք հաստատեսցին: Այլ օրէնքն 'ի ներքս անկան. զի ցուցցէ եթէ կրճիմն 'ի միջի են նոքա, զի 'ի մէջ երկուց ընչից մոլին և կացին, զի մեղք բազմասցին. որ ասաց վասն բազում օրինաց զոր յաւելլին: Զի ուր առաւե՛լ եղեն մեղք, անդէն առաւելան և շնորհք. այս զի 'ի հեթանոսան, ուր յաճախեցին մեղքն, 'ի նոսին առաւելան շնորհքն արարչին: Զի որպէս թագաւորեցին մեղք 'ի մահու անդ, այս ինքն զի յանցուցին և սպանին, սոյնպէս և շնորհքն թագաւորեսցեն յարդարութենէ անտի. այն զի կենդանացուցանէ և արդարացուցանէ զմեզ.

## ԳԼՈՒԽ Զ

Իսկ արդ զի՞նչ ասեմք, յաճախեսցո՞ւք 'ի նոյն մեղս, որպէս այպն առնեն զմեզ թշնամիքն, զի շնորհք առաւելեսցին: Քաւ լիցի. որք միանգամ մեռաք 'ի մեղաց անտի 'ի ձեռն քաւութ՟ե մկրտութ՟են, զիա՞րդ մարթասցուք նմին 'ի նովին կեալ: Թէ ո՞չ գիտէք դուք, զի որ միանգամ մկրտեցաք 'ի Քրիստոս Յիսուս, 'ի մահ անդր նորա մկրտեցաք. և մեռաք մեք

'ի կենաց մերոց աշխարհի իբրև զայն՝ որ մեռաւ 'ի մերկանալ մարմնոյն իւրոյ կենաց ժամանակեանս ։ Եւ արդ զի չարչարեցաք մեք ընդ նմա մկրտութեամբն, որպէս յարեաւ նա 'ի մեռելոց փառօք Հօր իւրոյ, այնպէս և մեք 'ի նորոգումն կենաց շրջեսցուք յետ կենդանութեան՝ որ 'ի մկրտութենէ անտի է ։

Զի եթէ տնկակից եղեաք նորա, ոչ յայտնի մահուամբ՝ այլ մկրտութեամբն, զի նա ինքն է նմանութիւն մահու նորա, այնպէս և յարութեան նորա կեցցուք՝ յարժամ ծաղկեսցուք իբրև ուռք 'ի վերայ ջուրցն գընացեալ 'ի ներքուստ 'ի մկրտութենէ անտի ․ զի նովաւ եղեաք մեք տնկակից նորա ։ Զայս գիտասջիք՝ եթէ հին մարդ խաչակից եղև նմա, զի դարձեալ միւսանգամ ըստ առաջին գնացիցն մի գնասցուք ։ Զի որպէս և մեռանելն՝ արդարացաւ նա 'ի մեղաց, այնպէս և մեք՝ որ մեռաք ընդ Քրիստոսի մկրտութեամբն՝ հաւատամք թէ և կեցցուք ես ընդ Քրիստոսի աստ և անդ ․ աստ գնասցուք մերովք, և անդ 'ի ձեռն բարուք հաստուցման գնացիցն մերոց ։

Զի զոր օրինակ Քրիստոսն յարեաւ 'ի մեռելոց և այլ ոչ մեռանի, զի մահն՝ որ պիտոյ էր 'ի հատուցումն ամպարշտութեան մերոյ՝ մեռաւ նա, և որ եկեացն կենդանի է յաւիտեանս, այնպէս և դուք՝ որ մեռաւ րուքդ 'ի մեղաց անտի, մի ևս թագաւորեսցեն մեղքն 'ի մահկանացու մարմինս ձեր ․ այլ պատրաստեցէք զանձինս ձեր Աստուծոյ, որպէս 'ի մեռելոց 'ի կենդանիս ։ Զի եթէ անդամք ձեր լինիցին զէն արդարութեանն Աստուծոյ, յայտ է եթէ մեղք այնուհետև 'ի վերայ ձեր ոչ տիրեսցեն ։ Զի ոչ էք դուք ընդ օրինօք ․ այս ինքն 'ի ներքոյ պատժոց օրինացն ։

Ոչ այսուհետև արժան է մեզ, որովհետև բարձաւ 'ի միջոյ երկիւղն օրինաց, և եղեաք մեք ընդ շնորհօք, դարձեալ միւսանգամ մեղանչել և յանցանել ։ Զոր օրինակ զայն հնարք արդարանալ, այնպէս դիւրին է մեզ մեղանչել ․ զի որում պատրաստեցէք զանձինս ձեր 'ի ծառայութիւն հնազանդութեան, ծառայ էք այնմիկ՝ որում հնազանդիքդ ․ եթէ մեղաց, և եթէ 'ի հնազանդութիւն արդարութեան ։ Թէպէտ և ծառայք էիք մեղաց, այժմիկ հնազանդեցարուք պաշտել զոր-

ծովք ձերովք․ զի առակ վարդապետութեանն՝ որ տուաւ ձեզ։ Եւ արդ զի ազատեցարուք դուք ՚ի մեղաց անտի, և մտիք դուք ընդ արդարութեան ծառայութիւն, ասեմ՝ թէ զգոյշ կացէք վասն տկարութեան մարմնոյ ձերոյ, եթէ դուցէ յարիցեն ՚ի վերայ ձեր, և յաղթահարեսցեն զձեզ։ Արդ որպէս պատրաստեցէք զմարմինս ձեր զէն ՚ի ծառայութիւն պղծութեան, այս ինքն պաճուճանաց, կերեցութեան և գիջութեան, սոյնպէս արդ պատրաստեցէք զմարմինս ձեր պահոց, աղօթից և գձձութեան․ զի եղիջիք դուք ծառայք արդարութեան և սրբութեան։ Մինչ դեռ ծառայքն էիք մեղաց, դատարկացեալք էիք ՚ի գործոցն արդարութեան․ զի ոչ անսացէք դուք հնազանդել երկոցունց, զի մեղացն միայն առանձինն հնազանդեցարուք։ Իսկ արդ զի՞նչ պտուղ գործոց էր ձեր յայնժամ․ այլ այս, վասն որոյ արդ այսօր դուք զամօթի հարեալ էք։ Զի աստ վարձեցան ձեզ զամօթ, և փոխանակ նոցա դարձեալ ժողովի մահն երկրորդ։ Այլ արդ զի ազատեալ էք դուք ՚ի մեղաց անտի, և եղէք դուք ՚ի ձեռն շնորհաց ծառայք արդարութեան, պտղաբերք եղիջիք դուք այն որ կատարած նորա կեանք են յաւիտենից։ Զի զոր օրինակ թոշակն մեղաց մահ է, սոյնպէս և պարգևքն՝ որ ՚ի ձեռն տեառն մերոյ տուան մեզ՝՝ ՚ի կեանսն յաւիտենից լինելոց են։

ԳԼՈՒԽ Է

Զի զոր օրինակ կին առնակին կապեալ է նա յօրէնս առն իւրոյ, ցորչափ ժամանակս կենդանի է այրն․ ապա եթէ մեռանի այրն, արձակեալ է նա յօրինաց անտի առնն՝ լինել նմա ուր կամիցի։ Նա և մեռայք դուք ընդ օրինօքն մարմնովն տեառն մերոյ զոր առէք, և պարտ է պատշաճ է լինել ձեզ նմա, այնմ՝ որ էջն ՚ի մեռեալս վասն ձեր, և ել մատուցանել ձեզ ՚ի ժամ գալստեանն պտուղ սուրբ այ։ Մինչ էաքն մեք մարմնով․ այս ինքն մինչ դեռ օրինօքն էաք, ցաւք ցանկութեան որ յօրէնսն, այս ինքն են նոքա՝ մի շնար, մի գողանար, և այլ ևս, զօրա-

ցեալ էին առնել զմեզ պտուղ մահու։ Եւ զի արդելոյր Առաքեալ զանձն իւր 'ի ներքոյ այսոցիկ, զի մի լինիցի նա իբրև աւելորդ այսր Թողուն՝ որ 'ի ձեռն տեառն մերոյ, և զի մի տացէ նա տեղի պարծանաց այլ ումեք։

Նոյն այժմիկ զի դատարկացաք մեք յօրինաց անտի, այս ինքն զի եղեն մեզ աւելորդ օրէնքն, և մեռաք մեք այնմիկ՝ որում պատրաստեալ էաք 'ի ծառայութի, այս ինքն զի հնազանդեալ էաք 'ի ներքոյ տէրութեն նորա, 'ի նորոգումն հոգւոյն գնասցուք, և ոչ 'ի հնութի գրոյն. այս ինքն հոգևոր գընասցիւք, և ոչ հին պահպանութբ գրոց։ Զնոր կտակարանս, որ լին է հոգևոր և երկնաւոր գործովքն, կոչէ կենարար. զի քարոզէ նա կեանս մահապարտաց, այնոքիկ՝ որ ըստ հին կտակարանացն 'ի մահ մատնեալ լինէին։

Իսկ արդ, ասէ, զի՞նչ ասեմք. օրէնքն մե՞ղք իցեն. քաւ լիցի. նա և ճանաչէի իսկ ոչ զմեղսն, եթէ ոչ նորա էր ասացեալ. և ոչ զցանկութի գիտէի ես 'ի դրախտի անդ, եթէ ոչ նորա ասացեալ էր՝ եթէ մի ցանկայցես։ Ի ձեռն այսր պատուիրանի կենարարի գտին պատճառս մեղքն, և գործեցին յիս զամենայն ցանկութի իւրեանց. զի առանց օրինացն Ադամայ մեղքն մեռեալ էին առ 'ի նմանէն. բայց նա կենդանի էր, և զփառս զգեցեալ էր յառաջ քան զօրէնսն։ Այլ իբրև եկն եհաս պատուիրանն, մեղքն որ մեռեալ էին՝ կենդանացան, և Ադամ մեռաւ 'ի կենաց փառացն. և պատուիրանն որ 'ի կեանս եդեալ էր, գտաւ նա նմա 'ի մահ։ Արդ այժմիկ այն իսկ օրէնք Ադամայ սուրբ են և բարերար։ Իսկ արդ ինձ բարին մա՞հ ինչ եղև. այս ինքն զի մեռցի՞ նոքօք Ադամ՝ եղան նմա. ոչ։ Այլ մեղքն զի երևեսցին չարութքն իւրեանց՝ բարեաւն ածեալ 'ի վերայ իմ զմահ. այս ինքն զի կենարար պատուիրանաւն սպանին, զի եղիցին յայտնապէս մեղքն մեղաւոր 'ի ձեռն պատուիրանին. այս ինքն զի յաւիտենից եղիցին դատապարտեալ մեղքն, յորմէ հետէ զանցուցին զԱդամ զպատուիրանաւն։

Վասն զի խօսեցաւ Առաքեալ վասն մեղաց՝ որ մը-

տին յաշխարհ, և ոչ եղեն կարող օրէնքն ընդդէմ կալ զօրութեան նոցա, իբրև եւեթ եթէ թարթափին լօղքն 'ի բազմապատիկ յօդապատ բանիցն նորա՝ ած ժողովեաց նա զպատմութիւն իւր 'ի բազում թարթափմանաց անտի, և ած յայտնեաց զնա համառօտ բանիւք: Ի ձեռն ժողովեալ մարմնոյն՝ որ ժողովին 'ի նա ցանկութիւնք, ժողովեաց նա զպատմութիւնս իւր՝ որ վասն ամ̃ չարեացն էր պատմեալ 'ի Մովսէսէ՝ վասն մարմնոյ իմոյ: Քննեսցէ իւրաքանչիւր մարդ 'ի ձէնջ՝ թէ որպիսի չարիք բնակեալ են 'ի մարմնի իւրում:

Արդ եթող նա զաշխարհ, և մատեաւ առ մի մարմին նմանութի աշխարհի. զի առ մի ինչ դիւրին է ամենայն մարդոյ ընթանալ: Զի այն՝ որ յամենայն կողմանս երևի, ընդ ամենայն կողմանս ցրուեսցէ զտեսիլս տեսողաց իւրոց: Եթէ, ասէ, չարիքն 'ի ներքոյ քան զմեզ են, զի՞նչ օգուտ է ինձ՝ զի թլփատիմ և պահեմ զշաբաթ. զի ահա այս արտաքինքս որ գործին 'ի մարմնի, արգելուլ և անխայել զսիրտ 'ի ցանկութենէ անտի՝ որ 'ի ներքուստ որ խռովէ և պղտորէ՝ ոչ կարեն:

Արդ ետես Առաքեալ եթէ բնութի յանցուցանէ և օրէնք անիծանեն, բնութի այրէ 'ի ներքուստ և օրէնք սուր մերկացեալ ունին արտաքուստ, և դիզան մեղք 'ի մեղաց վերայ, և ափշեցան և կացին յիմարեալ մեղաւորք, և հատին զյոյս իւրեանց, և մատնեցին զանձինս իւրեանց ամենայն չարեաց: Քանզի տեսին եթէ յօրինաց անտի հատեալ է յոյս իւրեանց, զի ամենայն ուր և որսացեալ լինէին՝ 'ի զենումն լինէին մատնեալ, 'ի մէջ բնութե և օրինաց ափշեցան նոքա, և թագաւորեցին 'ի վերայ նոցա մեղք: Որպէս ոյք ընկղմին յարբեցութե, զոր ինչ խնդրէ արբեցութի զայն առնեն. և որպէս մարդ ոք դարձեալ՝ որ թաղեալ կայցէ մարմին նորա 'ի տղմի, և ցանկայ զելանել, և որպէս զի մարդ շրջեսցի նա յայնմ տղմի ըստ կամաց իւրոց, և ոչ ըստ կամաց իւրոց շրջշրջի. ըստ կամաց իւրոց՝ զոր ոչ այլ ոք շրջշրջէ զնա, և ոչ ըստ կամս իւր շրջշրջի, վասն զի ոչ 'ի ներքուստ անտի ցանկայ նա՝ թէ այսպէս շրջշրջեսցի:

Նու հայեաց դու ընդ կինն մեղաւոր, և ընդ Զա-

քէ մնացաւոր. զի ոչ այլ ինչ յաւել 'ի վերայ ազատութեան նոցա, այլ 'ի ձեռն ներելոյն՝ որ եթող նոցա զպարտիս նոցա, բարձրացաւ գլուխ նոցա, և զօրացան. իբր այն թէ զօրութիւն ինչ կամ բանութիւն ետ նոցա. վասն զի այն պարտիքն զոր ունէին նոքա յօրէնս անդ, ոչ պարտաւորեցին զնոսա: Իսկ այն զոր երկրորդեաց Առաքեալ, բայ չէք արդար բայց 'ի միոյ՝ ըստ երկրորդելոյ սաղմոսին, այսպէս եկն եգիտ տէր մեր զիսրայէլ. և կնոջն մեղաւորի նմանէր նա. զի կամէր կինն ապաշխարել, և ոչ կարէր: Արտասուք կնոջն՝ որ 'ի վերայ ոտիցն տեառն մերոյ ցանեցան, յաղթահարեցաւ Իսրայէլ թողութեամբն տն մերոյ, այն ինչ՝ որ 'ի նմանէն յաղթահարեալ լինէր կինն: Քանզի 'ի ձեռն մկրտութեան թող նա ամենայն մարդկան, որպէս և կնոջն մեղաւորի՝ բանիւ: Սիրեցին զՈրդի վասն թողութեան նորա. և զարթեաւ ազատութիւն յընկղմելոյ անտի իւրմէ, և յաղթահարեցաւ ցանկութիւն 'ի վերոյ անտի նորա, և լքումն քաջալերութեամբն նորա, և յաղթահարեցաւ յուսահատութիւն յուսովն նորա: Եւ զի ոչ իշխէին օրէնքն թողուլ ումեք զմեղս, զայն և օրէնսգէտքն իսկ վկայեն: Ո՞վ, ասեն, կարէ թողուլ զմեղս, բայց միայն ած: Զի եթէ որք յակամայ կամս իւրեանց սպանանէին 'ի քաղաքն ապաստանի փախչէին, և անդ ապրէին. իսկ որք կամաւ իւրեանց սպանանէին, ո՞րչափ եւս լինէին սպանեալք:

Օ ապաշխարութիւն զոր ետ ած, ամենայն ժողովրդեանն ետ. զի մի, ասէ, անարգեցից ես զզաւակն Աբրահամու: Իւրաքանչիւր 'ի չարագործաց անտի զկնի յանցանաց իւրոց հատուցումն գործոց իւրոց գնայր: Զի եթէ շանց և գողոց և յանցաւորաց օրինացն հրամայեալ էր՝ թէ մի պահանջեսցին, եթէ այս այսպէս էր, ապա լուծեալ էին օրէնքն: Արդ ապաշխարութիւն որ տուաւ նոցա, ոչ եթէ 'ի մէջ տան ընկերի, այլ 'ի մէջ ազգի և ազգի, և 'ի մէջ գերութեան և գերութեան: Աղէ խորհեցարուք, ասէ, 'ի միտս ձեր, և ընտրեցէք. ո՞ թագաւորեսցէ 'ի վերայ ձեր. օրէնքն՝ որ սուր ունէին 'ի ձեռին, եթէ աւետարանն՝ որ լի է ողորմութեամբ և գթութեամբ: Զա

րութեան արդարութեանն նոցա դիմակալ ոչ կարէք լինել, և զշնորհացն Որդւոյ դուք ոչ գոհանայք։ Ո՞ նախանձեցաւ ընդ ձեզ՝ թէ յետս կացէք յերկոցունց։

Արդ ընդ այս ամենայն հայեցաւ Առաքեալ, և սկսաւ ասել. օրէնքն, ասէ, հոգևոր են։ Հպարտացոյց զնոսա յայսմիկ, զի շրջեցին և նկուն արասցէ զնոսա, յայսմիկ զի ասէ՝ որ տկարն է օրինաց։ Հոգևոր են օրէնք առ մարմնովս մերով՝ որ լի է մեղօք. բայց առ աւետարանն՝ օրէնք լի երկրաւոր աւետեօք և սաստիկ պատժովք՝ մարմնաւոր են։ Արդ թէպէտ և օրէնքն հոգևոր են, սակայն ընդ հոգևորութեան նոցա մարմնաւորութիւն գրգանաց և փափկութիւն հաղորդեալ էր. զոր օրինակ ընդ մարմնաւորութիւնն տեառն մերոյ խաչելութիւն գործոց յարեալ էր։ Վասն այսորիկ զգեցաւ տէրն մեր զմարմին և ներբեաց մեզ, զի տացէ ստանալ մեզ վարս առողջս ընդդէմ տկար գրգանաց և փափկութեան։

Վասնզի հարկ էր հնազանդել ժողովրդեանն 'ի ներքոյ օրինաց, յաճախեաց խոստացաւ նմա զերկրաւորս. զի 'ի պատճառս բարեաց զոր սիրիցէ, հնազանդեսցէ զանձն իւր օրինաց զոր ոչ սիրէ։ Աւետիս ետ նմա, զի 'ի պատճառս նոցա սիրեսցէ նա զօրէնսն զայնոսիկ՝ որ 'ի ձեռն գրգանաց փափկութեան իւրեանց յապաղեցուցանէին զնա 'ի պահելոյ զօրէնսն։ Զի եթէ երկրաւորքս արգելեալ և կարճեալ էին 'ի նմանէ, ահա խաչելութեան մարմնոյ նորա անխայեալ լինէր նա 'ի մեղաց անտի՝ որ 'ի ձեռն աւետեացն օրինացն զօրանայ 'ի նա։ Այն զի ասէ. վաճառեալ եմ ընդ մեղօք. այս ինքն կշտամբեալ եմ ես 'ի սովորութեան մեղաց։

Զի զոր գործեմն, զայն ոչ գիտեմ. զի ոչ ոք գիտէ՝ երբ կեայ, յորժամ բղխեն 'ի նմա ողջա։ Եւ զի, ոչ եթէ զոր կամիմն զայն առնեմ՝ այն է, զի ասէ. մարմին ցանկայ՝ որ ոչ կամք են հոգւոյ, այս ինքն խորհուրդք։ Արդ ոչ զոր կամիմն զայն առնեմ, իբրև ծառայ մեղաց. և ոչ զոր գործեմն զայն գիտեմ, որպէս և ոչ ծառայ. այլ որպէս ցանկան միտք ծառայի ազատանալ, սոյնպէս ցանկայ ներքին մարդն մեր ազատութեան։ Եւ քանզի յետ միանգամ ազատութեան

ծառայի կարող է վաճառել զազատութիւն իւր դարձեալ միւսանգամ 'ի ծառայութիւն, վասն այսորիկ ասէ . ազատեաց զքեզ, մի՛ մնասջիք ընդ լծով ծառայութեան . ազատեաց զքեզ 'ի ձեռն մկրտութեանն 'ի մեղաց անտի զոր գործեցեր դու յօրէնսն, մի՛ դառնար 'ի մեղսն, և մի՛ մնասցես ընդ լծով մեղացն՝ յորմէ ազատեցարն դու 'ի ձեռն քաւութեան մկրտութեանն ։

Զոր ատեմն՝ ասէ . այս ինքն զոր ատէն միտք իմ, նոյն ինքն զօրանան 'ի մարմինս իմ ։ Ապա թէ զոր ոչն կամիմ և ատեմ՝ զայն գործեմ, ասեմ վասն օրինացն՝ որ արգելուն զիս 'ի նոցանէն՝ թէ բարւոք են ։ Արդ ոչ եթէ ես գործեմ զայս, այլ մեղքն որ հին բազմօրեայ ժամանակաց հնազանդեն զիս ։ Գիտեմ, զի ոչ բնակեալ է 'ի մարմնի իմում ինչ բարի ։ Վասն մարմնոյն իւրոյ զի ասաց . մի՝ զի ցուցցէ թէ շնորհք ոգւոյ են չար կնճռանս մերոյ, և ոչ արդարութիւն ստուգութեան . և զի արգելեալ փակեսցէ զանձն իւր ընդ ամենեսին, որ զմարմինս զգեցեալ են 'ի ներքոյ թողութեան մկրտութեան ։

Իսկ եթէ զոր ոչ կամիմ զայն առնեմ, ոչ եթէ ես գործեմ զայն . զի ոչ եթէ խորհուրդք իմ ներքինք գործեն զնոսա, այլ մեղքն զոր բնակեցուցի ես 'ի մարմինս իմ ։ Արդ տեսանեմ ես օրէնս մի, որ կամի կատարել յիս բարի ինչ, այն որ դժուարին է կամաց իմոց . վասն զի 'ի պատրաստի է նա գործել զչարիս ։ Հաճեալ եմ ընդ օրէնսն ա̄յ . այս ինքն մարդ մեր ներքին ։ Բայց դարձեալ տեսանեմ ես միւս ևս այլ օրէնս 'ի մարմինս իմ, զի նա ինքն է չար սովորութիւն՝ որ հնացաւ 'ի մարմինս իմ հակառակեալ և ընդդէմ դարձեալ օրինացն, ընդ որում ցնծան միտք իմ . և գերէ զիս յօրէնս մեղացն՝ զոր բնակեցուցի ես 'ի սուրբ մարմինս իմ ։

Եղկ մի տառապեալ եմ ես . իսկ արդ ո՞վ ապրեցուցանէ զիս 'ի մարմնոյ աստի, այս ինքն 'ի մարմնաւոր գործոց անտի մարմնոյ . այլ շնորհքն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, այն որ եղեն առ կնոջն մեղաւորի, առ ամենեսին՝ որ եկին և որ գալոց իցեն 'ի մկրտութիւն անդր ։ Արդ եթէ ոչ մեկնի և կարճի մարմնոյ յամենայն երկրաւոր իրաց, որ նոքա են արմատք

նորա, ըստ նոցուն իսկ երկրաւոր իրաց տայ նոա և զպտուղ իւր ։ Արդ պարտ է և պատշաճ է մարդոյ հրաժարել 'ի կարթէ անտի և 'ի մեղուէ յօրինացն . զի նոքօք գիրանայ մարդ և անկուշէ՝ ապաստան լինել նմա 'ի շնորհսն, այն որ 'ի ձեռն հոգևոր գնացիցն կեցուցանեն զմեզ ։ Արդ եթէ եւ ինքն մտաց իմոց ծառայեմ օրինացն այ, և մարմնովս իմով՝ այս ինքն ըստ առաջին գնացիցն՝ օրինացն մեղաց ։

## ԳԼՈՒԽ Ը

Արդ որովհետև եկն թողիչս և քաւիչ, ոչ ինչ դատապարտութին է 'ի մեզ, այն որ յօրինաց անտի է ։ Որո՞ւմ չէ . այլ այնոցիկ՝ որ 'ի Քրիստոսն, դարձեալ միւսանգամ մարմնով ոչ շրջիցին¹ . այս ինքն զի ապաշխարեցին և քաւեցան, և այլ ոչ ևս մեղանչեն, չիք նոցա խեղճ կամ խէթ յետ մկրտութեն յօրինաց անտի, այնոքիկ՝ զի եթէ որսացեալ էր զնոսա, թէպէտ և խոնարհեին և աղաչեին զնոսա, սակայն 'ի մահ մատնեին զնոսա ։ Զի վրէժխնդիրքն օրինաց տեղի ապաշխարութե ոչ տային նոցա, զոր ինչ քարոզք աւետարանի այնպէս ոչ գործեն ։ Նա և 'ի նոր կտակարանս գոյ արդարութի, որպէս և 'ի հնում անդ էին շնորհք . զի Ճաշակք յերկոցունց յերկոսին կտակարանսն էին ։ Բայց թէպէտ և սաստկութի արդարութեանն այնոցիկ արգելին և փակեցին զամենայն մարդ ընդ պարտեօք, սակայն առատութի շնորհացս այսոցիկ պատառեցին և 'ի բաց ընկեցին զամենեցուն մուրհակս պարտեաց ։

Օրէնք հոգւոյ ։ Այս ինքն հաւատքն 'ի ձեռն մկրտութեն ազատեցին զքեզ թողութբ նորա յօրինաց անտի մեղացն և մահու ։ Այն որ տկարն էր յօրինաց ։ Կամ զՄովսէս կոչէր տկար, զի կարօտ էր քաւութեն վասն թերութեն որ եղև 'ի վերայ վիմին, կամ զքահանայսն և զզոհսն պատարագացն՝ զի ոչ կարացին քաւել, մինչև եկն եհաս մի պատարագն,

¹ Յօրինակին [illegible] ։

և սպան զմեղս մարմնովն իւրով. կամ ինքեանք օրէնքն էին հիւանդ, զի ոչ կարէին ումեք թողուլ զմեղսն։ Արդ հիւանդ էին օրէնքն, զի ոչ կարէին ողորմել և գթալ յանցաւորացն. որպէս հիւանդ զի ոչ կարէ գործել ինչ որ զօրագոյն է քան զինքն։ Ծառայ էին, զի 'ի ձեռն ծառայի տուեալ էին. և ծառայ զծառայ ազատել ոչ կարէ, զի երկոքին ճշմարիտ ազատութեան Որդւոյն կարօտ էին։ Մարմնով, ասէ, առաքեաց ա̃ծ զՈրդի իւր 'ի նմանութ̃ի մարմնոյ մեղաց։ Զմարմինս մեղաւորաց մեղս կոչէ. զի զգեցաւ նա մարմին ըստ մարմնոյ նոցա. և ժողովեցան մեղք՝ որ պարտ էին օրինաց, և ած արգել զնոսա 'ի մարմնի անդ իւրում, և մեռաւ և մեռոյց զնոսա։ Եւ վասն այնորիկ ասաց՝ թէ դատապարտեաց զմեղս 'ի մարմնի անդ իւրում։

Զի արդարութիւն օրինացն կատարեսցի առ մեզ, զի ոչ նովին յուսահատութեամբ զոր ունէաք մեք յօրէնսն՝ գնասցուք մեք։ Ահա, ասէ, փոխանակ օրինացն եղև այս զոր կարծէք դուք՝ եթէ ընդդէմ նոցա է այս։ Զի ոչ եթէ մարմնով գնասցուք մեք, որպէս և յայնժամն. այլ հոգւով, որպէս և օրէնքն իսկ խնդրէին։ Արդարութիւնս մեր այսր աւուրս հաւասար է նոցա, և ոչ եթէ մեղքն մեր առաւելին։ Զի որ մարմնովն, ասէ, գնան, զմարմնոյ խորհուրդս խորհին։ Վասն զի այնոքիկ որ ընդ մեղօն շաղեալ են, նոցունց գործոց նմանն են և խորհուրդք նոցա. սոյնպէս և կողմն՝ որ զբարիս գործեն. մին վարձ 'ի մահ, և միւսն 'ի կեանս։ Զի խորհուրդք մարմնոյ թշնամի են յա̃ծ, այլ օրէնքն՝ ա̃ծեղէն և սիրուն են առ ա̃ծ. և մարմնաւորն թշնամի է երկոցունց. ոչ ա̃յ սիրուն է նա, և ոչ օրինացն հնազանդի։

Այլ դուք որ յայնժամ հակառակ օրինացն էիք, այսօր հոգևորք եղերուք, և հնազանդեցարուք օրինացն. թէպէտ և կարծեն թլփատեալք և պարհողք շաբաթուն՝ թէ հակառակ եմք մեք օրինացն, զի այն աւելորդքն օրինացն լուծեալ են 'ի վերուստ։ Զի եթէ նոքա սպանանէին և կեցուցանէին, պարտ էր զնոսա յառաջագոյն 'ի վերայ սրտից գրել։ Արդ տես դու, զի ոչ եթէ արդարութիւն լի են նոքա, և չէք 'ի

նոսա այն արդարութիւն՝ որ ասէ . որ քեզ չար թուի , ընկերին մի՛ առներ ։ Այլ դուք ոչ էք մարմնով , այլ հոգւով . այս ինքն ոչ էք դուք ըստ հին օրինօքն , այլ ըստ գործովք նորոյն ։ Ապա եթէ գործք նորոյն չիք 'ի ձեզ , այնպիսին չէ Քրիստոսի ։ Ապա եթէ Քրիստոս բնակեալ է 'ի ձեզ վասն գնացից գործոց ձերոց , մարմին մեռեալ է վասն մեղաց . ապա եթէ զՀոգի նորա որ առէք 'ի ձեզ մկրտութեամբն՝ 'ի ձեռն պարգեւացն բնակեալ է 'ի ձեզ , և զմարմինս ձեր մահկանացուս կենդանացուսցէ վասն Հոգւոյն իւրոյ՝ որ բնակեալ է 'ի ձեզ ։

Այսուհետև մի՛ հնազանդիք մարմնոյ . այս ինքն մի՛ հնազանդիք դուք առաջին յուսահատութեան ։ Զնոսա կոչէ մարմին , քանզի զգործս մարմնաւորս ծնանելին նորա ։ Զի եթէ մարմնով կեցէք , այս ինքն եթէ առաջին գնացիւքն գնայցէք դուք , դարձեալ միւսանգամ մեռանիք դուք յետ կելոյ ձերոյ ։ Եթէ հոգւով . այս ինքն եթէ հոգևոր գնացիւք զգործս մարմնոյ մեռուցանիցէք , այսու կենօք զոր ունիք դուք՝ կայք և մնայք դուք ։ Զի որ միանգամն Հոգւովն այ վարին , այս ինքն զի որ հոգևոր իրօք շրջին , որդիք են նորա այ ։ Զի ոչ առէք դուք զհոգին ծառայութեան . այս ինքն որ հնազանդէ զձեզ 'ի ծառայութիւն օրինաց . այլ[1] առէք զՀոգին՝ որ 'ի կատարումն ածէ զձեզ , զի յորդեգրութիւն կոչէ զձեզ ։ Եւ նովաւ կարդամք աբբայ , հայր մեր ։ Այն իսկ է զոր հանապազն ասէր , յայ Հօրէ մերմէ . որպէս և ժառանգակից Քրիստոսի ։

Նոյն ինքն Հոգին սուրբ վկայէ հոգւոյս մերում . այս ինքն խորհրդոց մերոց , եթէ եմք[2] գործովք մերովք որդիք և ծառայք ընդ Քրիստոսի ։ Զի եթէ չարչարիցիմք ընդ նմա խաչելութեամբ մարմնոց մերոց , ընդ նմին և փառաւորիցիմք 'ի ժամ յայտնութեան նորա . զի չեն ինչ համեմատ չարչարանք ժամանակացս այսոցիկ փառացն այնոցիկ , որ ամենայն արարածք փափագեն և կարօտին նոցա ։ Զի ամենայն արարածք սպասէին և ակն ունէին որդւոցն՝ որ ծնանելոցն էին 'ի կենդանութիւն յարութեան , զի 'ի պատճառս նոցա

1 Յօր . պակասէր այլ առէք զՀոգին՝ որ ։ 2 Յօր . եք ։

կենդանասցին և նոքա ։ Ընդունայնութե̄ արարածք հնազանդեցան . այս ինքն մարդիկ՝ որ երկիր պագին արարածոց, կոչեցան արարածք . որպէս հաւասարեաց նա անասնոց և նմանեաց նոցա ։ Ոչ իւրեանց կամօք հնազանդեցան . զի եղև պատճառք, և հնազանդեցոյց զնոսա վասն յուսոյն ։ Կամ տունն ադամեան են՝ որ հնազանդեցան վասն յուսոյ, թէ ա̄ծ լինիմք . կամ մարդիկ են՝ որ հնազանդեցան երկիր պագանել արարածոց վասն յուսոյն՝ թէ ա̄ծք իցեն նք̄ ։

Նաև նոքին իսկ արարածքն յուսով ազատին 'ի ծառայութենէ անտի ապականութե̄ ազատութե̄ն՝ որ լինելոցն է որդւոցն յաւուրն փառացն ա̄յ ։ Այսինքն . ազատելով ազատին արարածք, որպէս զի մեծացին նոքա ընդ մեզ յաւուրն փառաց մերոց . փոխանակ զի խոնարհեցան նոքա ընդ մեզ յաւուրն խոնարհութե̄ և տառապանաց մերոց ։ Գիտեմք մեք, ասէ, եթէ ամենայն արարածք հեծեն և երկնեն ։ Այս զի այսպէս խնդրէ խոնարհութի̄ նոցա . զի ամենայն արարածք յորմէ հետէ հնազանդեցոյց զնոսա մարդն վասն յուսոյ՝ թէ ա̄ծ է արեգակն և լուսին համդերձ ամենայնիւ, յայնմ ժամանակէ հետէ հեծէին և հեծեն, և սպասեալ ակն ունին որդւոցն որք 'ի յարութե̄ կենդանութե̄ ծնանելոց են, այն որ գիտեն ճանաչել զարարածս իբրև զարարածս, և զարարիչն իբրև զարարիչ ։

Նա և մեք իսկ՝ որ զխառնումն հոգւոյն ունիմք . զի 'ի վախճան կատարածի ոչ եթէ 'ի խառնումն ինչ լինի մեզ, այլ ամենայնիւ կատարէ զմեզ ա̄ծութի̄ն ։ Եւ մեք, ասէ, որ զհոգին ունիմք, նովին հոգւով սպասեալ ակն ունիմք փրկութե̄ մարմնոց մերոց ։ Քանզի այսուիկ յուսովս ննջեմք մեք . այլ յոյս՝ որ տեսանելոյն է, այն չէ յոյս ։ Այն զի ոչ տեսաք մեք զնա, որպէս և Ադամ զծառն իւր . ապա եթէ ոչ՝ զի՞նչ սպասէաք և ակն ունէաք ։ Եւ եթէ աներևոյթ փառացն ակն ունիմք, համբերութե̄ ակն ունիմք մինչև 'ի ժամանակին՝ յորում զգենումք մեք զնոսա ։

Նաև զի ասէ . "Ինքն Հոգին 'ի թիկունս հասանէ տըկարուե̄ս մերում",, այս ինքն 'ի ժամ փորձանաց մերոց ։ Զի զայն ինչ զոր կամք յաղօթս, որպէս զիարդ

արժան իցէ կալ, զայն ոչ գիտեմք. այս զի ոչ գի-
տեմք զի՞նչ օգուտ իցէ մեզ: Այլ նոյն ինքն Հոգին
բարեխօս լինի վասն մեր 'ի հեծութիւս անմռունչս,
զի յայտ արասցէ զհոգաբարձութիւն իւր՝ որ վասն մեր
է: Եւ որ քննէ զսիրտս, գիտէ զինչ խորհուրդք են
Հոգւոյն. զի ըստ կամաց ա͞ծուե͞ն բարեխօսէ 'ի վե-
րայ սրբոց: Այնուքիկ, ասէ, որ խօսէին լեզուօք, հա-
գուով[1] յաղօթս կային. և նոյն ինքն Հոգի գիտէր զոր
ինչ 'ի լեզուսն ոք գիտէին, և խօսէր նա: Եթէ որ
սիրէին զա͞ծ, ամենայն ինչ յաջողի նոցա 'ի բարու-
թի. այս ինքն 'ի փորձութե͞ն, և առանց փորձութե͞ն.
որոց խոստացաւն 'ի ձեռն Աբրահամու 'ի կոչումն
այսր աւուր:

Նաև զորս յառաջագոյն ծանեաւ: Այս՝ զի յորմէ
հետէ խոստացաւն նոցա, և հրաւիրեաց զնոսա կեր-
պարանակից լինել Որդւոյն նորա. զի նա Որդի, և
մեք որդիք: Զի եղիցի նա, ասէ, անդրանիկ 'ի մէջ
եղբարց բազմաց: Արդ զորս յառաջագոյն հրաւի-
րեաց, այս ինքն է զհեթանոսս՝ զորս հրաւիրեացն
'ի ձեռն աւետեացն, զնոսին և արդարացոյց հաւա-
տովքն և մկրտութե͞ն. և զորս արդարացոյցն, զնոսին
և փառաւորս արար 'ի ձեռն պարգևաց Հոգւոյն:
Արդ եթէ ա͞ծ 'ի հեթանոսաց կողմ է, ո՞վ է որ ընդ-
մէնջ չարախօսէ. և թէ յՈրդի իւր ոչ խնայեաց վասն
մեր, զիա՞րդ ոչ զամենայն ինչ զոր խոստացեալ է մեզ՝
նովաւ հանդերձ տացէ մեզ: Ո՞վ է որ բամբասի վասն
հեթանոսաց՝ թէ ընդէր եղեն ընտրեալք ա͞յ: Զորս
ա͞ծ արդարացուցանէ 'ի ձեռն քաւութե͞ն, ո՞վ է որ
դատապարտ առնէ զնոսա ըստ օրինաց:

Իսկ արդ ո՞վ է որ մեկնեսցէ զմեզ 'ի Քրիստոսէ.
նեղութի՞, թէ սով. այլովք հանդերձ: Բայց այսմ
ամենայնի մեք յաղթեմք, զի կրեցաք մեք վասն այ-
նորիկ՝ որ սիրեաց զմեզ: Զի հաւանեալ եմ ես և գի-
տեմ, թէ ոչ մահ և ոչ կեանք և ոչ այլ ինչ արա-
րածք, կամ չարչարանացն կամ Նեռինն, կարեն մեկ-
նել զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի:

1 Յօրինակին հոգւոյ:

## ԳԼՈՒԽ Թ

Ուր իբրև ասաց նա վն մտին հեթանոսաց, դառ-
ձաւ նա և սկսաւ տրտմել վասն ելի ժողովրդեանն։
«Տրտմութիւն է, ասէ, ինձ յոյժ. ուխտիւք խնդրէի
նզով լինել ես ինքնին 'ի Քրիստոսէ վասն եղբարց ի-
մոց»․ զի նոքա ինքն են որդիքն Իսրայէլի։ Եւ այն որ
յառաջն ասէ՝ և ոչ չարչարանք Նեռինն որ գալոց է՝
մեկնեն զիս 'ի Քրիստոսէ, այժմիկ ինքն կամօք իւրովք
ասաց, բայ ուխտիւք խնդրէի ես մեռանել 'ի Քրիս-
տոսէ, զի եղբարքն իմ կեցցեն 'ի Քրիստոս։ Եւ զի
ցուցցէ եթէ առաջի այ ոչ են խոտեալք և անար-
գեալք, ասաց՝ բայ նոքա կոչեցան յորդեգրութի,
որպէս և հեթանոսք. իբրու հաղորդեալ են նոքա և
յաւետիսն հարցն. այնոքիկ՝ ուստի Քրիստոսն կար-
գեցաւ և ծագեաց 'ի նոցանէն. զի նա ինքն է ած 'ի
վերայ ամենեցուն, և ոչ զի եղև նա ած 'ի վերայ ա-
մենեցուն։

Այլ ոչ եթէ անկած ինչ եղև բանն այ։ Այս զի
թէպէտ և յամենեսին ոչ գործեցաւ, սակայն 'ի նո-
ցունց գործեցաւ։ Նա և Իսրայէլ՝ ոչ ամենեքին իս-
րայէլեանք իցեն։ Եւ ոչ եթէ որովհետև զաւակ
են Աբրահամու, ամենեքին որդիք իցեն. և վկայ-
են որդիքն Կենտուրայ և Իսմայէլ. այլ «Ի Սահա-
կայ, ասէ, կոչեսցի քեզ զաւակ»։ Զի ցուցցէ և յայտ
արասցէ՝ թէ ոչ՝ որ որդիք մարմնոյ են, այն որդիք այ
են. այլ որդիք աւետեաց՝ որ ոչ յորովայնէ նորա
են, համարեալ են 'ի զաւակ։ Այլ թէպէտ Սա-
հակ աւետեօք եղև, և Ռափկայի աւետեօք շնորհե-
ցան որդիք, այլ մինչ չև ինչ մի բարի կամ չար գոր-
ծեալ էր, յառաջագոյն կանխեաց երևեցաւ յօժա-
րութի ընտրութեն այ, յայնժմիկ՝ զի ասացաւ նմա.
ասէ. «Երէցն կրտսերոյն ծառայեսցէ»։ Այլ այս ըն-
տրութիւն ոչ եթէ 'ի գործոց է, այլ յայնմանէ՝ որ
կոչեացն. այս ինքն յայն օրհնչէ անտի։

Իսկ իշխեմք ասել, թէ անիրաւութի գոյ յած.
քաւ լիցի. զի Մովսէսի այսպէս ասաց. «Ողորմեցայց՝

որում ողորմեցայց „։ Այլ թէպէտ և առ ձեզ յա-ռաջագոյն եղև այս, զի ընտրեաց և անարգեաց ա-ռանց գործոց, և սիրեաց դարձեալ զձեզ և ատեաց զհեթանոսս. իբրու դուք 'ի հեթանոսաց գործովք ձերովք չարեօք ոչ էիք որոշեալ։ Արդ ոչ եթէ նոր ինչ է այս՝ որ եղև հեթանոսաց, և մինչ չև դրոշ-մեալ և նկարեալ էր 'ի գիրս ձեր մուտն հեթանո-սաց, յայսմիկ զի ընտրեաց և անարգեաց յարգան-դէ առանց մեղաց, և սիրեաց և ատեաց 'ի ձեռն Մովսէսի 'ի կամաց, խոստումն ձեր՝ որ վասն գործոց ձերոց չարեացն էր՝ դրոշմեալ լինէր խոստելով այն Իսաւայն և հեթանոսաց, այն որ առանց յանցա-նացն լինէր։

Արդ յայսմ հետէ ըստ վկայութեանցն այնոցիկ՝ որ 'ի վերագոյն են, արդ ոչ այն բանք ինչ եմն՝ որ կա-մին, ոչ այն բանք ինչ են՝ որ ընթանային, այլ բանք առ ողորմել ա՟յ։ Զի ահա աւասիկ մինչ չև յայտ-նեալ էին կամք և մեկնեալ էին ընթացք, յառաջա-գոյն յայտնեցաւ ընտրութիւն յօժարութ՟ե ա՟յ։ Ա-պա թէ բամբասիք դուք թէ ընդէր լինի այս այս-պէս, բամբասեցարուք թէ ընդէր ընտրեցաւ Սա-հակ, և ելին եղբարք նորա, և սիրեցաւ Յակովբ, և ատեցաւ Յիսաւ. և ընդէր ասաց Փարաւոնի՝ եթէ “Ես գրգռեցից զքեզ, զի 'ի քեզ ցուցից զզօրութ՟ի իմ և զփառս իմ, և պատմեցից զանուն իմ ընդ ա-մենայն երկիր „։ Արդ ահա աւասիկ երևեցաւ և յայտ եղև ըստ օրինակացս ըստ այսոցիկ՝ եթէ իշխա-նութ՟ք զնայ նա. ում կամի ողորմի, և ում կամի խըս-տանայ։ Այլ մինչ չև ասացեալ էր նոցա զնա՝ թէ ա՟յ մեղ զնես դու յայսմիկ, փութացաւ նա և ա-սաց նոցա. “Իսկ արդ դու, ասէ, թերևս այսպէս ա-սիցես, թէ մեղ ևս զի՞ դնէ, զի ահա աւասիկ կամք նորա կատարին „. դարձաւ նա ընդդէմ նոցա ոչ 'ի հաճել զնոսա, յայնմիկ զի ասէ. “Ո՞վ կարէ կալ նմա հակառակ „։

Իսկ արդ դու ո՞վ ես մարդ, որ պատասխանի վասն այսորիկ կարող ես տալ ա՟յ. զոր օրինակ ոչ ունի իշ-խանութիւն զանգուածն բամբասել զբրուտն, և ոչ դուք իշխէք եպերել զիշխանութ՟ի տէրութ՟ե արար-

չին ։ Զի եթէ բրուտն ունի իշխանութիւն 'ի վերայ կաւոյն իւրոյ՝ առնել իւր անօթս զոմն յանարգանս, և զոմն 'ի պատիւ, և սոյնպէս ա͞ծ ած հաստոյց երկայնամտութ͞բ զբարկութ͞ի, ոչ 'ի վերայ բարւոք և գեղեցիկ անօթոյ՝ իբրու իշխան էր նա առնել զայս, այլ ոչ ել նա արտաքս քան զարդարութ͞ի. թէպէտ և երկայնամտութ͞բ մեծաւ ած նա զբարկութ͞ի 'ի վերայ անօթոցն բարկութ͞ն՝ որ պատրաստեալ էին 'ի կորուստ ։

Ած նա զբարկութիւն իւր, սոյնպէս և սփռեաց նա զմեծութիւն փառաց իւրոց 'ի վերայ անօթոցն պատրաստելոցն յողորմութիւն, զորս յառաջագոյն պատրաստեաց զնոսա 'ի փառս իւր. այս ինքն է յաւուրց անտի Աբրահամու ։ Եւ սոքին իսկ այս ոչ եթէ 'ի Հրէից միայն են, այլ և 'ի հեթանոսաց. զոր օրինակ և Ովսէէ[1] ասաց. "Կոչեցից զոր ոչ ժողովուրդ իմ՝ ժողովուրդ ինձ„ ։ Եւ միւս ևս մարգարէ ասէ. "Ի տեղւոջ յայնմիկ յորում ասիցեն զնոսա՝ թէ ոչ ժողովուրդ իմ դուք, անդ կոչեսցին նոքա որդիք ա͞յ կենդանւոյ„ ։

Առ նա դարձեալ ածել վկայութ͞ի յԻսայեայ, զի ցուցցէ և յայտ արասցէ՝ թէ յաւուրց անտի մարգարէից դրոշմեալ էր խոստումն անարգութ͞ն նոցա ։ Ասաց՝ բայ "Եթէ իցէ թիւ որդւոցն Իսրայէլի իբրև աւազ առ ափն ծովու, սակաւ ինչ 'ի նոցանէ ապրեսցին„ ։ Եւ դարձեալ ասէ. "Եթէ ոչ տէրն կամարարի թողեալ էր մեզ զաւակ, Սոդոմայ և Գոմորայ նմանեալ էաք„ ։ Արդ զի՞նչ ևս ասեմք. եթէ հեթանոսք որ ոչ զհետ արդարութ͞ն օրինացն Մովսէսի երթային, հասին արդարութ͞են հաւատոցն Աբրահամու. և որդիքն Իսրայէլի՝ որ երթային զհետ օրինացն, յայնմիկ զի ոչ ստացան զհաւատս, ոչ կարացին ստանալ զնոսա 'ի գործոց անտի յօրինաց. այլ գթեցին նոքա առ վիմին գայթագղութ͞ն. որպէս և ասաց զնոցանէ Իսայի՝ որ 'ի նոցունցն էր ։

1 Յօրինակին Մովսէս ։

## ԳԼՈՒԽ Ժ

ԵՒՍ աղօթք իմ առ ած վասն նոցա, զի ապրեսցին և փրկեսցին. քանզի զնախանձ այ կրեն յանձինս իւրեանց հաստատել զօրէնս նորա։ Այլ ոչ ծանեան զնա, զի տգէտ են նոքա յարդարութենէ անտի այ, այն՝ որ 'ի ձեռն հաւատոցն կատարին, և զիւրեանց արդարութիւն՝ որ յօրինաց անտի է՝ խնդրեն կացուցանել. զի կատարած օրինացն զոր ունին՝ Քրիստոս է։ Այս ինքն ասաց, բայ գայ. և ահա եկն, և հաստատեցաւ. այլ ոչ այնոցիկ՝ որ երթան զհետ արդարութե, այլ այնոցիկ՝ որ հաւատան յարդարութիւն։ Զի Մովսէս այսպէս գրէ, եթէ "Որ արասցէ զարդարութի որ յօրինացն է՝ կեցցէ նովաւ աստէն"։ Իսկ որ 'ի հաւատոց անտի արդարութիւն՝ այսպէս ուսուցանէ և ասէ. մի ասեր 'ի սրտի քում, ո՞վ ել յերկինս և իջոյց զՔրիստոս. և ո՞վ էջ յանդունդս դժոխոց և յարոյց զՔրիստոս 'ի մեռելոց։ Բայց զայս երկուս որով գայթագղէին նոքա, հաւատոց եա վնասա։ Զի եթէ, ասէ, խոստովան լիցիս դու սոքօք 'ի սրտի քում. այս է սիրտ՝ որ հաւատայ յարդարութի, և բերան՝ որ խոստովան լինի 'ի կեանս և 'ի փրկութի։

ԱՅԼ զի մի ասասցեն՝ եթէ հաւատս նորս եկեալ քարոզէ 'ի մտաց իւրոց, ած նա վկայութի 'ի գրոց և ասէ՝ թէ "Ամենայն որ հաւատասցէ 'ի նա, մի ամաչեսցէ"։ Եւ յայսմիկ ոչ ինչ խտրեաց նա, և ոչ ըդ Հրեայս և ոչ զհեթանոսս. զի մի է տր ամենեցունց, և մի է դուռն կենաց՝ որ 'ի ձեռն հաւատոց բացաւ ամենեցունց. և պատրաստեալ է նա լսել ամենայն մարդոյ՝ որ կարդայ առ նա։ Գրեալ այսպէս է. ասէ. "Ամենայն որ կարդասցէ զանուն տեառն՝ կեցցէ"։ Իսկ զիա՞րդ կարդասցեն՝ որք 'ի նմայն են. յայսմիկ՝ զի եթէ հաւատովք կեան նոքա, ոչ հաւատացին. կամ զիա՞րդ հաւատասցեն՝ որում լսել ոչ կամին. կամ զիա՞րդ լուիցեն առանց քարոզչի, այս ինքն առանց մեկնչի, որպէս և Փիլիպոս [1] ներքինւոյն. և զիա՞րդ

[1] Յօրինակին ղիպոս։

քարոզեսցեն նոցա առաքեալքն՝ թէ ոչ առաքեսցին առ նոսա. կամ յամելով ո՞չ յամեսցին առաքեալքն առ նա, զի ձեռպեցան ելին նոքա շրջել 'ի մէջ հեթանոսաց: Կամ զի այս, ասէն, որ պարտ էր լինել նոցա՝ եղև, և նոքա ոչ կամեցան ունկնդիր լինել քարոզչին, այն որ գրեալն էր վասն նոցա. "Իբրև՛ զի գեղեցիկ են ոտք՝ որ աւետարանեն զողջոյն և զխաղաղութի՛ն": Այլ զոր օրինակ 'ի ժամանակի անդ քարոզութեան մարգարէիցն ոչ ամենեքին լուան, սոյնպէս և այսօր: Սոյն իսկ այս՝ որ ոչ լսեն այժմիկ, ոչ մոռացաւ զմարգարէութի՛ն. զի Եսայի այսպէս ասաց. "Տէր, ո՞ հաւատաց 'ի լուր մեր":

Բայց տեսէք՝ զի հաւատք 'ի լսելոյ են, որպէս այսօր, զի լուր 'ի պատգամէ է: Այլ ասեմ. մի՞ եթէ չէ՞ր լուեալ հեբրայեցւոց. այս քանզի ընդ ամենայն երկիր ել բարբառ առաքելոցն: Այլ թերևս թէ և աշխարհ լուաւ, Իսրայէլ ոչ լուաւ: Այլ ոչ եթէ այժմիկ միայն լուան. քանզի յառաջագոյն ասացեալ էր Մովսէսի. "Նախանձեցուցից զձեզ յոր ոչ ժողովուրդ իմ, և 'ի հեթանոսս անմիտս զկծեցուցից զձեզ": Եւ Եսայի համարձակեցաւ՝ զմա՜հ առ յանձն, և 'ի դէմս Որդւոյ համարձակեցաւ և ասաց. "Յայտնի եղէ ես՝ որ զիս ոչ խնդրէին": Այլ առ Իսրայէլ այսպէս ասէ. "Զօր ցերեկ զօրհանապազ ձգեցի զձեռս իմ առ ժողովուրդ խիստ և հակառակող":

## ԳԼՈՒԽ ԺԱ

Յետ այսորիկ զի ցոյց և պատմեաց 'ի գրոց վասն ունկնդիրն ոչ լինելոյ և մերժելոյ նոցա, դարձաւ նա 'ի զգուշացուցանել զհեթանոսս, զի մի՛ մեղիցեն և մի՛ հպարտասցին. իբրու պատրէ նա և զհեբրայեցիսն, և ցուցանէ թէ չէ փակեալ դուռն ընդդէմ նոցա՝ թէ կամին դառնալ և ապաշխարել: Մի՞ թէ, ասէ, բնաւ ամենեքին մերժեա՞ց Ած զժողովուրդ իւր. ոչ. իսկ ես ուստի՞ եմ որ ընտրեցայս. ո՛չ ահա յԻսրայելէ եմ 'ի կրտսեր ազգէ Բենիամենի. արդ իսկ ցոյց Ած՝ թէ ոչ մերժեաց զժողովուրդ իւր. այս իմքն զայն՝

զոր յառաջագոյն ծանեաւ։ Զայնս զսակաւսն որ հաւատացեալն էին՝ կոչեաց ժողովուրդ, և ած վկայութի̃ւն բանի իւրոյ զեւթն հազար՝ որ մնացեալն էին յաւուրս Եղիայի։ Սոյնպէս, ասէ, յարդ ժամանակս սակաւք մնացին 'ի ժողովուրդ անդ, զի ընտրեացին 'ի շնորհսն։ Եւ եթէ շնորհօք են, ոչ են 'ի գործոց օրինաց։

Իսկ արդ զի՞ այսուհետև. այն ինչ զոր խնդրէրն Իսրայէլ, այնմ ոչ կարաց հասանել։ Բայց սակայն թէպէտ և ոչ հաս ընտրութիւն ամենեցուն, և ոչ զըրկեցան ոչ ամենեքին 'ի նմանէ. զի ընտրելոց որ էին 'ի նոսա՝ հաս, և այլոց 'ի նոցանէ ոչ հասանելով ոչ հաս; կուրանալով կուրացան առ ժամանակ մի. որպէս յառաջագոյն կանխեաց խօսեցաւ մարգարէն վասն նոցա. ասէ. “Ետ նոցա ա̃ծ աչս՝ զի մի տեսցեն, և ականջս՝ զի մի լուիցեն մինչև յայսօր ժամանակի,,։ Եւ Դաւիթ այսպէս ասէ. “Խաւարեսցին աչք նոցա, զի մի տեսցեն,,։ Այլ ոչ եթէ զի գայթագղեսցին նոքա, որպէս զի կործանեսցին. այլ այս՝ զի 'ի մեղս նոցա եղև, եղեն կեանք հեթանոսաց առ նոցա նախանձու. որպէս և ասաց. “Նախանձեցուցից զձեզ յոր ոչ ժողովուրդ,,։

Եթէ խրատուն որ եկն 'ի վերայ նոցա 'ի մեղս նոցա, և եղև մեծութի̃ հեթանոսաց, զի մտին 'ի ձեռն ելի նոցա, արդ ո՞րչափ ևս առաւել եթէ դարձցին նոքա և եղիցին քարոզք փոխանակ խաչահանուացն, և աւետարանիչք փոխանակ յապաղեցուցչաց։ Ձեզ ասեմ՝ որ կոչեցեալդ էք 'ի հեթանոսաց՝ ես Առաքեալ. այս ինքն զպաշտօն իմ, այս ինքն զինչ որ եղև 'ի ժողովուրդն և 'ի հեթանոսս, փառաւոր առնեմ. զի վասն այսորիկ կամէի ես՝ թէ նախանձեցուցից 'ի նոսա զմարմինս իմ, և ապրեցուցից զոմանս 'ի նոցանէ, որք քարոզութե̃ բանից մերոց և նշանաց մերոց ոչ անսացին։

Քանզի տէր մեր փոխանակ ամենայնի մեռաւ, երկեաւ[1] ասել՝ թէ նախանձիմ ընդ Քրիստոս՝ եթէ մեռայց իբրև զնա, և ապրեցուցից ըստ նմանութե̃

1 Յօրինակին Երևեաւ։

նորա ։ Զի մի զաւակ է՝ որ զենաւ փոխանակ ամենեցուն, և փոխանակ նորուն իսկ Առաքելոյ ։ Այլ զայս զոր երկեւանենա ասել յայտնապէս, ասաց զնա իմաստութք ։ Այլ քանզի Քրիստոս 'ի մարմինս նորա բնակեալ էր, ասաց՝ բայ նախանձեցուցից 'ի մարմինս իմ . այս ինքն 'ի տեղ իմ՝ որ բնակեալ է 'ի մարմինս իմ ։ Զոր օրինակ սպանաւ և ապրեցոյց զհեթանոսս, սպանայց և ես, և ապրեցուցից մահուամբ իմով զազգատոհմ իմ ։

Այլ զի մի՛ կարծեսցեն հեթանոսք, եթէ ժողովրդեանն մաւտ լինի, ինքեանք խոտին և անարգին . զի եթէ կործանումն նոցա հաշտութի հեթանոսաց եղև, և հաշտութթի նոցա կեանք խոստացեալք՝ որ լինին յետ յարութե ։ Զի յորժամ սկիզբն սուրբ է, և զանգուածն . և յորժամ արմատքն սուրբ են, և ոստքն . ապա թէ ոստքն արմատոյն փշրեցան և կոճապեցան, և դու զի ձիթենի էիր վայրենի, այս ինքն զի տարագիրք էիք հեթանոսք, պատուաստեցարուք և եղէք 'ի տեղ ժողովրդեան, մի՛ պարծիք . զի յեղանել նոցա եղև մաւտ ձեր ։ Զի ոչ եթէ դուք բարձեալ ունիք 'ի վերայ զարմատն . զի նոքա են առաքեալքն, որ 'ի ժողովրդենէ անտի, որ իբրև զարմատս աւանիկ բարձեալ ունին զձեզ ։

Ոչ երբեք ասիցես, եթէ ոստքն առաջինք փշրեցան, զի ես 'ի նոցա տեղի անդր պատուաստեցայց ։ Բարւոք է . 'ի թերահաւատութե իւրեանց փշրեցան, և դուք հաւատովք հաստատեցարուք . և մի՛ հպարտանայք, զի ոչ եթէ 'ի գործս ձեր եղև այս, այլ շնորհօք ։ Այն զի և ոչ 'ի ժողովրդենէ անտի արգելեալ էին ։ Արդ երկիր դու 'ի մեղանչելոյ . զի եթէ 'ի բուն ոստ անդր, այս ինքն եթէ յորդիս անդ Աբրահամու ոչ խնայեաց ած՝ զի մեղան, զիա՞րդ 'ի ձեզ խնայէ՝ թէ մեղանչէք ։ Զի ահա պատուաստելով պատուաստեալ էք դուք . այս ինքն անուանելով անուանեալ էք դուք որդիք Աբրահամու ։ Արդ որպէս ճաշակեցաւ քեզ 'ի կողման անդ քում քաղցրութին այ, ճաշակեսցի քեզ և ելանելով ժողովրդեանն սաստկութին այ, զի եթէ կայցես մնայցես դու յայս հաւատս . ապա եթէ ոչ՝ և դուք կոճապեսջիք . և նոքա եթէ ոչ 'ի

սմին թերահաւատութեան կացցեն, և նոքա պատուաստեսցին [1]:

Արդ այսու երկու բանիւք զոր ասաց՝ լցեալ նա զընտրութիւն զոր եմոյծ: Զի թէպէտ ընտրեաց, և անարգեաց. ցոյց զի ոչ որ ընտրեալն են՝ ընտիրք են. քանզի եթէ մեղանչեն՝ խոտին և անարգին նոքա: Եւ ոչ որ խոտեալն են՝ խոտանեն. զի եթէ ապաշխարհեն, զողորմութի գտանեն նոքա: Եւ նոքա, ասէ, թէ ոչ 'ի նմին թերահաւատութեան կայցեն, պատուաստեսցին. զի կարող է Աստուած 'ի ձեռն քաւութե մկրտութեան դարձեալ միւսանգամ պատուաստել զնոսա: Զի եթէ դու որ 'ի վայրենի ձիթենոյ անտի էիր, այս ինքն զի եթէ դուք որ անօրէնք էիք, և 'ի կուռս փակեալ կայիք՝ փշրեցայք 'ի չար սովորութենց անտի ձերոց և 'ի դառն ծնչաց անտի ձերոց, և անուանեցայք դուք որդիք Աբրահամու, որչափ ևս առաւել նոցա դիւրին իցէ. զի ոչ եթէ յօտար հարս պատուաստին նոքա, այլ յԱբրահամ յաղբեւրն իւրեանց և յարմատ՝ ուստի եղեն՝ պատուաստին:

Կամիմ ես, եղբարք, եթէ գիտակ լինիջիք դուք սակաւիկ մի խորհրդոցս այսոցիկ: Այս ինքն զի ազդաջիք դուք սակաւիկ մի խորհրդեանս այսմիկ, զի մի ևեթ իցէք իբրև զայնոսիկ՝ որ յանձինս իւրեանց ևեթ են իմաստունք: Զի կուրութի փոքր 'ի շատէ մտաւ 'ի նոսա: Թերևս այն իցէ, զի ասէ. "Մի ասեր 'ի սրտի քում՝ թէ ո՞վ ելել յերկինս և իջոյց զՔրիստոս": Յայտնիկ իսկ կուրացան նոքա՝ թէ զիարդ ծնանէր Աստուած. այն զի և 'ի հեթանոսաց անտի ոմանք կուրացան նովաւ, և խոտեցան և ելին յեկեղեցւոյ. որպէս և ժողովուրդն: Փոխանակ զի ոչ ընբերանեցան և կարկեցան նոքա ելլիւք ժողովրդեանն, կարող էր Աստուած հաճել և հաւանեցուցանել զնոսա. այլ ոչ հաճեաց և հաւանեցոյց, քանզի եկեալ հասեալ էր ժամանակ մտին հեթանոսաց: Եւ իբրև մտին հեթանոսք, հաւանեցոյց զնոսա 'ի ձեռն Պաւղոսի, այն որ յափշտակեցաւն և լուաւ բանս անճառս, և բաց նոցա դուռն 'ի կեանս, այն որ յառաջագոյն ասացեալն էր վասն

1 Յօրինակին պարունակութեան:

նորա՝ եթէ “Եկեսցէ 'ի Սիովնէ փրկիչ, և դարձուսցէ զամբարշտութիւս Յակովբայ. և այս նոցա որ յինէն ուխտ պատուիրանի, 'ի ժամանակի իբրև քաւիցեմ ես զմեղս նոցա մկրտութ̃„:

Թէպէտ ըստ աւետարանին թշնամի են, վասն զի 'ի խաչն հանին. սակայն ըստ ընտրութե̃ սիրելիք են վասն հարցն: Անզեղջ են շնորհքն և կոչումն ա̃յ, այն որ եղեն առ հարս նոցա, եթէ դարձցին և ապաշխարեսցեն որդիք նոցա: Զի ահա աւասիկ և դուք երբեմն ապստամբք էիք յա̃յ, բայց արդ ողորմութի̃ գտիք ձրի վասն թերահաւատութե̃ նոցա: Զի ոչ կամեցան հաւանել, ա̃ծ արգել և փակեաց զնոսա: Եւ վկայէ այն՝ որ 'ի վերոյն է, յայնմիկ՝ զի ոչ հաւանեցան, զի ձեզ ողորմեսցի: Զօրութի̃ բանի նորա այս. զի արգել և փակեաց զնոսա 'ի ներքոյ դատակնքի վճարանաց. զի դարձեալ միաւանգամ ժողովուրդ յայտնի նշանաւոր ա̃յ պատարագօք և տասանորդօք, մարգարէիւք և թագաւորօք, որպէս զիարդ էին յառաջ, այլ մի ևս եղիցին: Մեղան նոքա որթուն, և այս ամենայն կայր ևս առ նոսա: Այլ ոչ ողորմեցաւ նոցա այժմ, որպէս սովորն էր, զի ամենեցուն ողորմեսցի. և նոցա ողորմեսցի՝ եթէ կամիցին դառնալ և ապաշաւել:

Ո՜ խորք մեծութե̃, իմաստութե̃ և գիտութե̃ն ա̃յ վասն այսց՝ զոր արար նա 'ի մէջ ժողովրդեանն և հեթանոսաց, զի իբրև առանց քննելոյ են դատաստանք նորա՝ որ 'ի մէջ ժողովրդեանն եղև. և ճանապարհք նորա՝ որ 'ի մէջ հեթանոսաց՝ առանց քննելոյ են: Զի ո՞ երբէք գիտաց զմիտսն ա̃յ յառաջագոյն, թէ զայս առնելոց էր նա. կամ ո՞ երբէք եղև խորհրդակից նորա 'ի ժամանակի իբրև կամեցաւ նա առնել զայս. կամ զի՞նչ փոխ ետ նմա ժողովուրդն թէ տրտնջեսցէ՝ թէ ոչ հատոյց անդրէն զփոխարէնն: Զի ամենայն 'ի նմանէ լինի տուեալ, և ամենայն վասն նորա եղև. զի վասն երկոցունց նմա փառք և օրհնութի̃ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԳԼՈՒԽ ԺԲ

Յետ այսորիկ զի ասաց նա վասն ելին ժողովրդեանն և վասն մտին հեթանոսաց, դարձաւ նա յանդիմանել և կշտամբել զհռովմայեցիսն՝ վարել զանձինս իւրեանց հեզութբ և հանդարտութբ և զգուշութբ. և զի նորոգեսցին նոքա 'ի միտս իւրեանց, և ընտրեսցեն զբարիս, և հեռասցեն 'ի չարեաց։ Աղաչեմ, ասէ, զձեզ՝ պատրաստեցէք զմարմինս ձեր պատարագ. ոչ իբրև զանասունսն որ սպանեալն լինէին, և եդեալ լինէին 'ի վերայ սեղանոյն՝ որ խափանեցաւ, այլ եղիջիք դուք պատարագ կենդանի, սուրբ, և հաճոյ այ 'ի ձեռն այսր կենդանի պաշտաման. այս ինքն որ քարոզիդ 'ի մէնջ այսօր. և քննել մարթասջիք՝ թէ ո՛ր իցեն կամք այ՝ բարին, հաճոյն և կատարեալն։

Դարձեալ միւսանգամ սկսաւ խրատել և յանդիմանել զնոսա, զի մի՛ անգոսնեսցեն զմիմեանս վասն առաւելութե պարգևացն Հոգւոյն զոր ունէին նոքա։ Զայս, ասէ, ասեմք վասն շնորհացն այ որ տուան ինձ ամի՝ որ են 'ի ձեզ. այս ինքն է ընդ ամենեսին ընդ ձեզ։ Մի՛ ինչ առաւել խորհեսջիք քան զոր արժան է. այս՝ զի մի՛ խնդրեսցեն իւրեանց պարգևս մեծամեծս աւելի քան զկարն իւրեանց, և ոչ իցէ արժան թէ տացի նոցա, զի մի՛ փնասիցեն նոքօք։ Այլ խորհելն 'ի հնազանդութի սրբութե, այս ինքն պահել զհեզութի սգաստութե. զի իւրաքանչիւր որպէս ած բաժանեաց ըստ չափոյն հաւատոց։

Ահա է որպէս բաժանեալ են պաշտամունք անդամոց մարմնոյ, նոյնպէս որոշեալ և բաժանեալ են շնորհք Հոգւոյն. զի ամենեքին մեք մի մարմին եմք 'ի Քրիստոս, որպէս և անդամք եմք միմեանց։ Արդ եթէ ունիմք մեք շնորհս պարգևաց՝ որ միմեանց չեն նման, սակայն եկեղեցւոյ ամենեքին 'ի պէտս գործոյ են։ Զի է՝ որում մարգարէութի տուեալ է նմա ըստ չափոյ հաւատոց իւրոց։ Եւ այսպէս շնորհք տուեալ են 'ի մի միոջէ անտի իւրաքանչիւր ըստ օգտութե

իւրում։ Արդ ՚ի պատիւ զմիմեամբք եղիջիք ելանել, հանդերձ այլովք բազմօք պատուիրանօք՝ որ մերձ են առ այս պատուիրան։

## ԳԼՈՒԽ ԺԳ

ՊԱՐԶԵԱԼ գրէ առ նոսա ՚ի խոնարհութե̃ ունել զանձինս իւրեանց. ոչ առ վարդապետս իւրեանց միայն, այլ և առ իշխանս աշխարհի։ Ամենայն անձն, ասէ, որ ընդ իշխանութ̃բք իցեն, ՚ի հնազանդութե̃ կացցեն. քանզի չեն ուստեք իշխանութ̃ք, եթէ ոչ յա̃յ։ Եթէ անօրէն և խիստ իցէ, ՚ի խրատ անօրինաց և ՚ի քննութիւն արդարոց տուեալ լինի նա. և եթէ քաղցր և ստոյգ իցէ, ողորմութ̃բք տուեալ է նա։ Եւ որպէս զիարդ իցեն նոքա, յոր իրս և իցեն, սակայն ա̃յ հրամանաւ են։ Եւ արդ այսուհետև որ հակառակ կայ իշխանին՝ որ կարիչ է չարաց, կամայն ա̃յ հակառակ կայ. և որ հակառակին կան, յետ այսորիկ անձանց իւրեանց դատաստանս ընդունին։

Կամիս եթէ ոչ երկիցես դու յիշխանաց անտի. բարիս գործեսջիր, և փոխանակ երկիւղին քո ՚ի նոցանէն՝ գովեստն քո բազմասցի ՚ի նոցանէն։ Զի ա̃յ պաշտօնեայ է նա, զի ՚ի նմա կատարին կամք ա̃յ առ կողմն արդարոց և անօրինաց։ Ապա եթէ չար գործես, երկիր և մի առներ. զի ոչ եթէ ընդունայն ինչ սուսեր ածեալ է նորա ընդ մէջ։ Արդ հարկ է հնազանդ լինել, ոչ վասն զի վրէժխնդիր է նա բարկութե̃, այլ և վասն խղճի մտացն մերոց. այս ինքն վասն մտացն մերոց, զի մի դսրովեսցեն զմեզ. զի լցաք բարկութ̃ք, և կացաք հակառակ ընդդէմ նոցա յետ պատուիրանին որ պատուիրեցաւ մեզ՝ թէ մի կայցէք հակառակ ընդդէմ նոցա։ Զի վասն այսորիկ և հարկս հարկանէք դուք, զի պաշտօնեայք էք դուք ա̃յ, այն որ վասն խոնարհութե̃ իւրոյ հարկս ետ վասն ձեր, զի ձեզ օրինակ լիցի։ Այսուհետև հատուցէք իւրաքանչիւր զպարտիս, և մի ումեք մի ինչ պարտապան գտանիցիք. բայց միայն զմիմեանս սիրելոյ։ Զի որ սիրէ զընկեր իւր, զամենայն օրէնսն կատարէ։ Վասն

այնր զի ասէ. մի՛ շնար, մի՛ գողանար, այլ ովք հանդերձ, յայս բան կատարին՝ զի ասէ. սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո։ Այն իսկ է զի ասէ. սէր եղբարց չար ինչ ոչ գործէ։

## ԳԼՈՒԽ ԺԴ

ԶԱՅՑ որ տկարն է 'ի հաւատոց՝ թէ զայս կերայց, եւ զայս ոչ կերայց, զնա ընկալարուք։ Ոմն հաւատայ ուտել զամենայն. եւ այնպիսին թէպէտ եւ անձին իւրում ինչ վնաս ոչ լինի, սակայն ընկերին վնաս լինի. զի որ հիւանդն է մտօքն իւրովք, նա թանջար ուտէ։ Զի այն որ ուտէն, զպահողն որ ոչն ուտէ՝ մի՛ խափանեսցէ. եւ պահողն որ ոչն ուտէ, զայն որ ուտէ՝ մի՛ դատեսցի. զի ա̃ծ զնա ընկալաւ վասն հաւատոց իւրոց։ Արդ դու ո՞վ ես՝ որ դատիս զայլոյ ծառայ. եթէ չկայ, այս ինքն եթէ հիւանդանայ, կարող է ա̃ծ հաստատել զնա։ Ոմն պահէ օր ըստ օրէ, ոմն պահէ զօրհանապազ. զի են որ զնշանաւոր աւուրս պահեն, եւ են. որ զամենայն աւուրս կենաց իւրեանց։ Իւրաքանչիւր յիւրում չափու եւ կայցէ. թէ մեծ իցէ, եւ եթէ փոքր իցէ, հաստատելով հաստատիցի 'ի նմա։ Եւ արասցէ զայն վասն յուսոյ, եւ մի՛ վասն ընդունայն պարծանաց։

Ամենայն ոք որ խորհի զօրն, տեառն խորհեսցի. եւ որ ուտէն, տերամբ կերիցէ, եւ զա̃ծ օրհնեսցէ։ Եթէ կենդանի եմք, եւ եթէ մեռեալ եմք, տեառն եմք. զի վասն այսորիկ իսկ եւ Քրիստոս մեռաւ եւ յարեաւ եկեաց, զի մեռելոց եւ կենդանեաց սա հասարակ տիրեսցէ։ Դու զի՞ դատիս զեղբայր քո՝ որ ուտէ. կամ դու զի՞ անգոսնես զեղբայր քո՝ որ պահէ. քանզի իւրաքանչիւր մարդ 'ի մէնջ պատասխանի տալոց է ա̃յ փոխանակ գործոց իւրոց։ Մի՛ այսուհետեւ զմիմեանս դատապարտէք. այլ զայս դիք 'ի մտի ձերում, զի ոչ [1] ոք երբէք գայթագղութի̃ դիցէ եղբօր իւրում։ Զայս գիտեմ եւ հաստատեալ եմ, եւ ոչ 'ի

1 Յօրինակին ոչ ։

մտաց իմոց՝ այլ տերամբ իմով որ յիս է, զի ոչ ինչ է պիղծ նովաւ ։ Որ հիւանդն է մտովք իւրովք, այս ինքն խորհրդովք իւրօք, ամենայն ինչ պիղծ է նմա ։

Բայց զայս զոր գրեաց առ Հռովմայեցիսն, այն են զոր գրեաց առ Կորնթացիսն. զի և 'ի Հռովմէ ուտէին հաւատացեալք ընդ անհաւատս 'ի տան կռոցն. այլ ոչ եթէ զմիս զոհեալ և զգինի նուիրեալ, այլ միս սուրբ և գինի պարզ 'ի խորհրդոց կռապաշտութէ ։ Եւ քանզի ետես Առաքեալ՝ եթէ գայթագղին 'ի նոսա տկարքն, արար զայնոսիկ որ ուտէինն՝[1] հաւատացեալս, զի մի յամօթ արասցէ զնոսա ։ Եւ կոչեաց զտեառն հիւանդս, և ասաց. "Մի, ասէ, կերակրովդ քով որ քեզ ոչ վնասէ՝ զնա կորուսաներ, վասն որոյ Քրիստոս մեռաւ „ ։ Մի, ասէ, հայհոյեսցէ զքեզ նոյն իսկ բարին զոր գործես դու. զի արքայութիւն այն որում կարօտեալ փափագեալ ակն ունիմք նմա, ոչ եթէ այնու կերակրոմն ստանամք զնա, այլ արդարութ̃բ և խաղաղութ̃բ, զոր առնիցես դու 'ի մէջ քո և եղբօրն քում ։ Զի որ յայսմիկ՝ զոր համարեցայ ես՝ ծառայէ Քրիստոսի, հաճոյ է նմա այ̃, և ընտիր է նա մարդկան. այս ինքն զի գայթագղութիւն եղբօր իւրում նա ոչ լինի ։ Զի թէպէտ և ամենայն ինչ սուրբ է, որպէս և ասացի, այլ չար այնմ մարդոյ է՝ որ խղճիւ և գայթագղութ̃բ այլոց ուտէ ։

Լաւ է բնաւ ոչ ուտել միս, և ոչ որով եղբայրն քո գայթագղի ։ Ապա եթէ ասիցես՝ եթէ հաւատովք ուտեմ, եթէ հաւատս ունիս դու, յանձն քո պարծեսջիր նովօք առ ա̃ծ, և ոչ առաջի այնոցիկ՝ որ գայթագղին 'ի քեզ ։ Երանի է այնմիկ՝ որ ոչ դատեսցէ զանձն իւր յայնմիկ՝ զոր խրատեացն. կամ զի բարւոք խրատեաց, և ոչ դատին զնա խորհուրդք իւր՝ թէ չարաչար խրատեաց. կամ զի ոչ դատեցաւ, և դատապարտեաց զանձն իւր վասն գործոց բարեաց զոր գործեցին ընկերք իւր, և ինքն ոչ գործեաց ։ Եւ զի արգելցէ նա զհիւանդս, զի բնաւ ամենեւին անդր մի երթիցեն՝ ասաց. "Իսկ որ խտրողն է, եթէ ուտէ՝ դատապարտի, զի ոչ հաւատովք սրբէ և ուտէ „ ։

1 Ցորենակերն տփէքինն ։

## ԳԼՈՒԽ ԺԵ

Եւ զի արգելցէ և զհաւատացեալսն, ասաց. պարտ է, ասէ, մեզ որ կարողքս եմք՝ զտկարութիւն տըկարաց բառնալ. և ոչ եթէ հիւանդութեան 'ի վերայ տանջանաց զոր ունին նոքա՝ յաւելուլ նոցա. և մի անձանց ևեթ հաճոյ լինել իւրաքանչիւր 'ի մէնջ, այլ և ընկերաց իւրոց հաճոյ լիցի 'ի բարիս, և նմանեացէ նա այսուհետև Քրիստոսի՝ որ ոչն անձին իւրում միայն եղև հաճոյ. որպէս և գրեալ է, եթէ "Նախատինք նախատչաց քոց անկան 'ի վերայ իմ,,: Ասեմ, եթէ Քրիստոս Յիսուս թէպէտ յանձն առ զթլփատութիւն, այլ ճշմարտութեան ա՟յ նա ինքն եղև թլփատութիւն. այս ինքն նա լից զօրէնս թլփատութեան, զի հաստատուն լիցին աւետիք հարցն. զգեցաւ տէր մեր մարմին թլփատեալ 'ի թլփատեալ հարց անտի:

Եւ զի ասաց, թէ "Հաստատուն լիցին աւետիք հարցըն,,, այն է՝ զի ասէ. "Եւ ես անարգեցից զզաւակ որդւոցն Խորայելի,,. այս ինքն ոչ անարգեցից: Սոյն իսկ այս լցեալ կատարեցաւ միով, որպէս զի լցեալ կատարեցաւ դարուն չորրորդի 'ի ձեռն Քաղաքու և Յիսուսի: Եւ վասն զի այս անուն հարցն պարծանք էր թլփատելոցն, իսկ հեթանոսք անթլփատք՝ զի չիք նոցա հարք թլփատեալք՝ փառաւոր արարոցեն զ՟ւծ վասն ողորմութեան. այս ինքն ինքեանք իսկ հեթանոսք եղիցին 'ի տեղ հարցն թլփատելոց: Նա և վասն այսորիկ իսկ զգեցաւ տէր մեր մարմին թլփատեալ, զի օրհնեսցէ նովաւ զհեթանոսս անթլփատս՝ հաւատալորդ հաւատոցն Աբրահամու, այն որ յանթլփատութեանն անտի էին:

Ած նա վկայութիւն այնմիկ, եթէ հեթանոսք վասն ողորմութեան փառաւոր արարոցեն. և ասաց, թայ գրեալ է՝ եթէ "Խոստովան եղէց քեզ 'ի հեթանոսս,,. և դարձեալ ասէ. "Ուրախ լերուք հեթանոսք հանդերձ ժողովրդեամբ ա՟յ,,. դարձեալ ասէ. "Օրհնեցէք ամենայն հեթանոսք զտէր,,: Եւ զայս զի երկրորդեաց, զի ցուցցէ և յայտ արասցէ՝ եթէ յաւուրց անտի մար-

գարեւից նոցա դրօշմեալ էր մտաւն հեթանոսաց, որ լինելոցն էր 'ի ձեռն առմատոյն Յեսեայ՝ որ յայտնելոցն էր, 'ի նա հեթանոսք յուսասցին ։

Արդ ունիմ ես պարծանս ոչ արտաքոյ քան զՔրիստոս, այլ 'ի Քրիստոս Յիսուս առ ա̃ծ. քանզի ոչ եթէ իշխեմ խօսել ինչ քան զոր գործեաց Քրիստոս 'ի ձեռն իմ. զի գործքն որ գործին ինեւ՝ նոքա վկայեն բանից իմոց ։ Սոքին իսկ այս որ եղեն յիս 'ի մէջ հեթանոսաց՝ ոչ եթէ լոկ բանիւք եղեն, այլ արդեամբք եւ զօրու̃թբք եւ նշանօք եւ արուեստիւք եւ զօրութ̃բ Հոգւոյն ա̃յ ։ Այն զի նովաւ հաս ինձ շրջեալ յԵրուսաղէմէ մինչեւ 'ի կողմանս Իւրիկացւոց՝ լի առնել զամենայն աշխարհս զաւետարանն Քրիստոսի ։ Զի ոչ կամիմ ես քարոզել զաւետարանն, ուր միանգամ անուանեալ իցէ անունն Քրիստոսի. այլ այնմ որ գրեալն է. ասէ. “Որոց ոչ ասացաւ վ̃ն նորա՝ տեսցեն զնա,,։ Նեւ կամիմ ես կատարել զայս. զի աւետարանեցից ես զնա, ուր ոչ իցէ լուեալ զլուր նորա ։ Զի մի երբէք 'ի վերայ այլոյ հիման շինիցեմ. այս ինքն, մտից քարոզեցից 'ի տեղի՝ ուր կանխեցին մրտին ընկերք իմ ։ Արդ քան զի չիք տեղի դատարկ յայս գաւառս, քանզի լցի ես զսոսա աւետարանաւն Ք̃սի ։

Այլ քանզի անձուկ յոյժ ունէի ես տեսանել զձեզ, յորժամ անցանիցեմ ես 'ի կողմանս Սպանիացւոց, տեսից ես զձեզ, եւ լցայց ես ձեօք. այս ինքն շահեցայց ։ Բայց այժմիկ երթամ ես յԵրուսաղէմ վասն պաշտամանն սրբոցն՝ որ են յԵրուսաղէմ. զի հաճոյ թուեցաւ Մակեդոնացւոցն եւ Աքայեցւոցն հաւասարութի ինչ[1] առնել պաշտամանն որոց. այս ինքն զի հաւասարեսցին ընդ աղքատսն ընդ սուրբս՝ որ են յԵրուսաղէմ ։ Զի զպարտիս ուրեանց հատուցանեն նոցա, այսուիկ զոր տանս տանել նոցա ։ Զի հոգեւոր իրացն նոցա կցորդ են, այս ինքն յաւետարանի անդր. պարտին եւ մարմնաւորացն 'ի ձեռն տրոցն հարկատու լինել նոցա ։ Զայս յորժամ կատարեցից՝ եկից առ ձեզ, եւ 'ի ձէնջ յուղարկեցայց 'ի Սպանիա ։ Գիտեմ զ'ի գալ անդ առ ձեզ՝ հրամանաւ տեառն աւետարանի

1 Ցօրինակին ի̃ն ։

3 4

եկից ։ Աղաչեմ զձեզ, եղբարք, օգնական լինել ձեզ ինձ յաղօթս առ Ած, զի ապրեցայց ես յապստամբաց՝ որ են 'ի Հրէաստանի. զի պատարագքն պաշտաման մերոյ զոր տանիմք մեք յԵրուսաղէմ, ընդունելի լիցին առաջի տեառն, և խնդութբ եկից ես առ ձեզ 'ի կամս Այ ։

## ԳԼՈՒԽ ԺԶ

ՅԱՆՁՆԵՄ զձեզ, եղբարք, դէտ ակն կալջիք 'ի վր այնոցիկ՝ որ առնեն զհերձուածս, և դնեն զգայթագղուխս. զի այնպիսիքն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ոչ ծառայեն, այլ որովայն իւրեանց. և քաղցր բանիւք և օրհնելովք իւրեանց խաբեն և պատրեն, և գերեն զմիտս անմեղաց ։ Զի ձեր հնազանդութի յամենայն կողմանս հասցէ. կամ գնացքն ձեր բարիք առ ամենայն մարդ հասցեն, կամ աւետարան զոր առէք ընկալայք՝ առաջի ամենայն մարդոյ քարոզեսցի ։ Եւ Ած խաղաղութե խորտակեսցէ զսատանայ՝ որ աշխատն առնէ զձեզ այսու ամենայնիւ. և դիցէ զնա 'ի ներքոյ ոտից ձերոց. փոխանակ զի կամեցաւ նա յողդողդել զքարոզութի բերանոյ ձերոյ ։

ԱՌ

# ԿՈՐԸՆԹԱՑԻՍ ԹՈՒՂԹԻՆ

Առ կորընթացիսն, իբրև եկն եհաս առ նոսա աւետարանն 'ի ձեռն Պաւղոսի, և ընկալան զՀոգին, տիրեաց 'ի նոսա հպարտութի՞ ամպարտաւանութե՞ 'ի ձեռն շնորհացն պարգևաց Հոգւոյն։ Եւ սկսաւ մի մի 'ի նոցանէն յաճախել մերձեցուցանել առ ինքն զմերձաւոր իւր։ Եւ զառաջին զօր աշակերտէր՝ փութայր վաղվաղակի վարդապետն իւր և մկրտէր զնա. զի թէ գուցէ այլ ոք յառաջեսցէ՛, տացէ նմա կնիք, և կոչեսցէ զնա յանուն իւր։ Զի թէպէտ և զնոր քարոզութիւն քարոզէին նոքա, սակայն զՀին սովորութի՞ սգեցեալ էին։ Թէպէտ և աղանդք ուխտից որոշեալք, որպէս տանն Պղատոնեայ և Արիստատողեայ չէին նոցա, սակայն սովորութիւն հերձուածոց՝ որպէս նոցայն, նոյնպէս և նոցա 'ի նոսին։ Իսկ յառաջնորդս նոցա և 'ի վարդապետս ոմն հեբրայեցի էր, և այսուիկ 'ի վերայ ընկերաց իւրոց հպարտացեալ ամպարտաւանէր. և ոմն իմաստուն էր, և ոմն մեծատուն էր և տուրս բաշխէր, և ոմն մարգարէութի՞ ունէր, և ոմն ազգս լեզուաց, և ոմն թարգմանութի՞ լեզուաց, և ոմն հալածանօք հալածեցաւ և չարչարեցաւ վասն աւետարանին։ Այլ իբրև իւրաքանչիւր 'ի սոցանէն յայն ինչ զոր ունէր առ ինքն՝ նովին և ձեռն յանձին հարեալ հպարտացեալ և պարծէր, սակայն աշակերտքն նոցա աւելի քան զնոսա նոքիմբք պարծանօք վարդապետացն պարծէին նոքա։ Առաքեալ գրել նոցա խոնարհութք՝ յաւել իւրում այսպէս։

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ առաքեալ Յիսուսի Քրիստոսի 'ի կամս այ, որ եղև վասն դարձին ձերոյ. և Սոսթենէս եղբայր։ Կցորդ արար իւր եղբայր 'ի Թղթի. զի ուսուսցէ նոցա, զի եթէ եղբայր վասն խոնարհութե Պաւղոսի վերացաւ, մինչև զի անուն իւր ընդ Առաքելոյ 'ի Թղթի գրեսցի, ո՞րչափ ևս առաւել նոքա հաւասարեսցեն և միաբանեսցին ընդ միմեանս. զի գրէ եթէ միազոյգ են նոքա։ Եկեղեցւոյդ կորընթացւոց՝ որ հիւանդացաւդ, և ամենեցուն որ կարդան յամենայն տեղիս զանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ցարդ ևս չև է հիւանդացեալ նոցա։ Գոհանամ զայ յամենայն ժամ, զի ոչ նուազեալք եղերուք դուք, և ոչ 'ի մի շնորհս որ տուեալ են այլոց եկեղեցեաց։ Եւ այս միայն պակաս է ձեզ, ակն ունել յայտնութեն տեառն մերոյ, զի անբիծք և անարատք գտանիջիք՝ դուք յայնմ աւուր։

Աղաչեմ զձեզ, եղբարք, զի զմի բան կալջիք դուք ամենեքեան, և մի լիցին 'ի ձեզ հերձուածք. այլ եղերուք դուք ամենեքին 'ի մի բան և 'ի մի խորհուրդ. փոխանակ զի էք դուք այժմիկ 'ի միտս բաժանեալս։ Ազդ եղև ինձ վասն ձեր, եղբարք, 'ի քղուայացւոց անտի. ոչ իբրև չարախօս էին զձէնջ, այլ իբրև տրտմեալ էին վասն ձեր։ Արդ ազդ եղև ինձ՝ եթէ հակառակութիք իմն պաշտին 'ի ձեզ։ Այս զոր ասեմ, ոմանք 'ի ձէնջ ասեն՝ մեք պաւղոսեան եմք. ոմանք ասեն՝ ապողոսեան եմք։ Խոնարհեցոյց և յայսմ վայրի զանձն իւր քան զԱպաւղոս, զի յամօթ արասցէ զայնոսիկ՝ որ 'ի վերայ միմեանց բարձրացեալ հպարտանային։ Զի ոչ եթէ յանուն Պաւղոսի և Ապողոսի, և ոչ յանուն Պետրոսի և Քի անուանեալ լինէին. յանուն վարդապետաց իւրեանց կոչեալ լինէին։ Եւ զի մի յամօթ արասցէ զնս, և յայտնեսցէ 'ի մէջ աշխարհի զանուանս նոցա, թաքուցանէ զանուանս

1 Յօրինակին գնաւջէիք։

նոցա՝ զի մի խայտառակեսցին. գրեաց զիւր անուն և զընկերաց և զտեառնն ամենեցուն, զի բայ թերևս յանդիմանեսցին և կշտամբեսցին, և եկեսցեն 'ի խոնարհութիւն հեզութեան։

Մի՞թէ, ասէ, Պաւղոս 'ի խաչ ելեա՞լ է վասն ձեր, և կամ յանուն Պաւղոսի՞ մկրտեցարուք դուք, զի յանուն Պաւղոսի աւադիկ հպարտացեալ պարծիք դուք։ Գոհանամ զա̃յ, զի զոք 'ի ձէնջ ես ոչ մկրտեցի։ Բայց դարձեալ գոհանամ, զի զերկուս 'ի ձէնջ մկրտեցի. զի գիտասջիք եթէ յանուն Քրիստոսի մկրտեցի։ Զի ոչ առաքեաց զիս Քրիստոս մկրտել փութապէս վաղվաղակի, որպէս դուքդ ասնէք, այլ աւետարանել. ոչ եթէ Ճարտարութ̃բ բանից, որպէս և ոմանք 'ի ձէնջ ձեռն յանձին հարեալ պարծին նովաւ։ Զի եթէ մրտանէ իմաստութ̃ի, ընդունայն լինի զօրութ̃ի խաչին՝ այն [1] որ առաքինեցաւն 'ի մէջ ամենայն հեթանոսաց առանց իմաստութ̃ե։ Զի թէպէտ և Յունաց մոլորելոց զկնի իմաստութեան՝ յիմարութ̃ի է բան խաչին, սակայն մեզ փրկելոցս՝ որ կենդանացաքս նովաւ՝ զօրութիւն է ա̃յ։

Եւ զի մի կարծիցէք եթէ ես անարգեցի զիմաստութ̃ի, յայնմիկ՝ զի հասու ոչ եղէ նմա, լուարուք դուք իբր 'ի գրոց. զի որպէս յառաջագոյն անարգեալ էր, խոտեալ էր ըստ մարգարէութ̃ե հոգւոյ. զի գրեալ է այսպէս. ասէ. "Կորուսից զՃարտարութ̃ի Ճարտարաց, և զիմաստութ̃ի գիտնոց անարգեցից"։ Արդ ո՞ւր է իմաստութ̃ի որ հպարտանայ, կամ դպիրն որ պարծի, կամ քննիչն որ քննէ Ճարտարութ̃բ և խորագիտութ̃բ զքննիս աշխարհիս այսորիկ։ Զի ահա յիմարեցոյց ա̃ծ. այս ինքն զի անարգեաց և խոտեաց ա̃ծ զիմաստութ̃ի աշխարհիս այսորիկ։ Քանզի իմաստութ̃բն ա̃յ ոչ ծանեաւ աշխարհ զիմաստութ̃ին ա̃յ, արդ այսօր հաճեցաւ ա̃ծ փոխանակ իմաստութ̃բն՝ յիմարութ̃բ, այս ինքն միամտութ̃բ քարոզութ̃ս այսորիկ, ապրեցուցանել զհաւատացեալս։ Եւ քանզի Հրեայք զնշանս խնդրեն և ոչ զիմաստութ̃ի տանն Պղատոնեայ, և հեթանոսք զիմաստութ̃ի խնդրեն առաւել՝ քան

1 Յօրինակին այլ։

զնշանս, այլ մեք քարոզեմք զխաչելեալն Քրիստոս. գայթագղութիւն է և չարչարանք նորա և Հրէիցն նշանախնդրաց, և յիմարութիւն է նա և հեթանոսացն իմաստութիւնախնդրաց: Այնոցիկ՝ որ կոչեալ են 'ի Հրէից կամ 'ի հեթանոսաց՝ Քրիստոս զօրութիւն Աստուծոյ և իմաստութիւն նորա: Զօրութիւն է նա Աստուծոյ, զի խափանեաց զամենայն կուռս. և իմաստութիւն է դարձեալ նորա, զի հաձեաց և հաւանեցոյց խաղաղութեամբ զվայրենութիւնն հեթանոսաց:

Մարդ առէք դուք ձեզ առակ օրինակի 'ի կոչմանէ անտի ձերմէ. զի ոչ բազում իմաստունք են 'ի ձեզ մարմնով: Զի եթէ իմաստութիւն ինչ պիտոյ էր, զսոփեստոսս ընտրէր, և ոչ զորսորդս: Նա և ոչ հզօրք և ազնուականք բազում ինչ են 'ի ձեզ: Այլ ընտրեաց նա զանիմաստս, զի յամօթ արասցէ նոքօք զիմաստունսն մոլորեալս. և զտկարս ընտրեաց, զի յամօթ արասցէ նոքօք զհզօրսն՝ որ եղեալ են 'ի կոխան ցանկութեանց: Եւ ընտրեաց զանտոհմսն և զանարգսն և որ բնաւին եղեալ իսկ չէր, զի խափանեսցէ զպարծանս հպարտութեան զայնոցիկ՝ որ եղեալն են. զի մի՛ պարծեսցի ամենայն մարմնաւոր այսուիկ՝ որ անարգեցաւս առաջի Աստուծոյ: Այլ զի 'ի նմանէ դուք էք 'ի Քրիստոս Յիսուս. զի նա ինքն եղև մեզ իմաստութիւն, զի 'ի ձեռն պարգևաց շնորհացն նորա խօսիմք մեք. և արդարութիւն մեր, զի օգնութեամբ նորա արդարացուցանեմք մեք. և փրկութիւն մեր, զի մահուամբ նորա փրկեցաք մեք. և սրբութիւն մեր, զի մկրտութեամբ նորա քաւեցաք մեք: Զի ա՟մի նովաւ պարծեսցուք մեք, և ոչ գործովք մերովք. ո՟պ և գրեալ է. որ պարծի, 'ի տէր պարծեսցի:

## ԳԼՈՒԽ Բ

Նա և ես թէպէտ և եկի առ ձեզ, ոչ եթէ առաւելութեամբ բանիւք, իմաստութեամբ հռետորէից, և ոչ իմաստութեամբ պւետէից աւետարանեցի ես ձեզ զխորհուրդն Աստուծոյ. և ոչ 'ի մտի իմում եդի ես աւելի ինչ գիտել, բայց միայն զՅիսուս Քրիստոս, և զնոյն խաչելեալ: Եւ ես տկարութեամբ, երկիւղիւ և դողութեամբ բազ-

մաւ, և ոչ պարծանօք և հպարտութ̃ եղէ ես առ ձեզ։ Եւ բանն իմ և քարոզութիւն իմ ոչ եթէ պատիր բանիւք իմաստութեան, այլ արդեամբք հոգւոյն զօրութ̃, այս ինքն արդեամբք 'ի գլոց հոգւոց. և զօրութ̃ նշանաց։ Եւ զայս զոր գործեցի, զի մի՛ եղիցին հաւատքն ձեր յիմաստութե̃ մարդկան, այլ 'ի զօրութե̃ անտի ա̃յ։

Օ իմաստութի̃ խօսիմք մեք ոչ եթէ ընդ տղայս, այլ ընդ կատարեալս. զիմաստութի̃ ոչ զաշխարհիս այսորիկ, և ոչ զիշխանաց ժամանակացս այսոցիկ՝ որ խափանելոցս են, այլ խօսիմք զիմաստութի̃ ա̃յ 'ի խորհուրդս ծածկեալս. այս ինքն 'ի ձեռն խորհրդոյն՝ որ ակնարկեալ էին 'ի մարգարէսն, այն որ ծածկեալն էր ճշգրտութ̃ի նորա յամենայնէ, այն զոր ընտրեաց ա̃ծ կանխաւ 'ի փառս իւր յառաջ քան զաշխարհ. այս՝ զի ընտրեալ էր սա յառաջ քան զաշխարհ 'ի խորհուրդս ա̃յ 'ի վախճանի ժամանակաց լինել։ Զոր մի յիշխանաց, այս ինքն թէ մի 'ի քահանայից անտի՝ ոչ գիտաց. զի եթէ էր գիտացեալ, արդեւք ոչ 'ի խաչ հանեալ լինէր զտէրն փառաց։ Այն իսկ է զոր ասացին առաքեալքն. գիտեմք եթէ մոլորութ̃ խաբէութ̃ գործեցէք դուք զայդ. արդ դարձարուք և ապաշաւեցէք, և ոչ ոք համարի ձեզ զայդ 'ի մեղս։

Այլ որպէս գրեալ է. "Զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ"։ Եւ ու՞ր գրեալ է զայս. այլ յաւետարանի անդ տ̃ն մերոյ զոր ասաց՝ եթէ "Թագաւորք և արդարք ցանկացան տեսանել զոր դուքդ տեսանէք, և ոչ տեսին. և լսել յինէն զոր դուքդ լսէք, և ոչ լուան"։ Այլ մեզ յայտնեաց Հոգւովն իւրով։ Կամ զօրութ̃ք զոր գործէր 'ի ձեռս նոցա, կամ այն է զի ասաց՝ թէ "Հոգին բարեխօս առաքեսցէ առ ձեզ Հայր իմ յանուն իմ. նա ուսուսցէ ձեզ զամենայն"։ "Հոգին, ասէ, զամենայն ինչ քննէ". այս ինքն յայտնէ։ Իսկ ո՞վ 'ի մարդկանէ՝ որ գիտէ ինչ զմարդոյ, թէ ոչ հոգին մարդոյ որ 'ի նմա է։ Սոյնպէս և զա̃յն. Հոգւովն նորա բաւական եղեաք հասու լինել խորհրդոց նորա։

Այլ մեք ոչ եթէ զայլ հոգի ընկալաք, այլ զՀոգին՝ որ յա̃յն է. զի նուաւ ծանիցուք մեք զայն ինչ՝ որ յա̃յն շնորհեցաւ մեզ։ Ոչ եթէ գործք մեր միայն հոգևորք են, այլ զոր քարոզեմք մեք՝ ոչ եթէ ու-

սուծն իմաստութե է մարդկան, այլ վարդապետութի Հոգւոյ է. զի 'ի ձեռն հոգևոր գործոց քարոզի ձեզ, և ընդ հոգևորսն զհոգիս մեր համեմատեմք. այս ինքն ձեզ՝ որ 'ի լեզուս Հոգւոյդ խօսիք, ասեմք մեք։ Զի որ շնչաւորքն են, ոչ ընկալան զՀոգին, նոքա յիմարութի համարին զայս. այն է զի ասէ. "Մի՛ արկանէք զմարգարիտ խոզից"։ Եւ ոչ կարէ գիտել եթէ հոգեպէս քննի. այս ինքն զի հոգևոր մարդոյն դատապարտի։ Իսկ մարդն հոգևոր յորում կատարին 'ի նմա գործք Հոգւոյն, այնպիսին իբրև զամենայն քըննէ, ինքն յումեքէ ոչ քննի։ Իսկ արդ ո՞վ գիտաց ըզմիտսն տեառն. բայց այն՝ որ հաղորդի ընդ նմա. զոր օրինակ, ասէ, արդարքն առաջինք որ հաղորդեցան յերկրպագութի Ա՟յ՝ գիտացին զկամս Ա՟յ, սոյնպէս մեք հաղորդութբս մերով չարչարանացն Քրիստոսի՝ ստացաք զմիտսն Քրիստոսի։

ԳԼՈՒԽ Գ

ԱՅԼ դուք թէպէտ և զգործս Հոգւոյն ունիք 'ի ձեզ, սակայն ոչ կարացի խօսել ընդ ձեզ իբրև ընդ մարդս հոգևորս։ Եւ իբրև ընդ տղայս՝ որ սկսան լսել աւետարանի, 'ի Քրիստոս կաթն ջամբեցի ձեզ.՝ և ոչ ետու ձեզ հաստատուն կերակուր, քանզի մարմնաւոր էք. նա և արդ իսկ ոչ էք բաւական հաստատուն կերակրոցն, քանզի մարմնաւոր էք։ Ուր և արդևս 'ի ձեզ հեռ և նախանձ և հակառակութի աճեցուցանել բազմացուցանել զաշակերտս ձեր, և կոչել զնոսա յանուանս իւրաքանչիւր, ո՞չ ապա մարմնաւոր էք։ Մեք իսկ գլխովին վարդապետքս ձեր զի՞նչ եմք. ո՞չ ապա պաշտօնեայք. այս ինքն միջնորդք՝ որով հաւատացէք։ Զի թէպէտ ես տնկեցի և Ապաւղոս ջուր ետ, սակայն Ած աճեցոյց։ Այսուհետև ոչ 'ի վարդապետաց ձերոց, և ոչ 'ի խրատչաց ձերոց է. այլ յԱյ՝ որ աճեցուցիչն է. զի Ա՟յ գործակից եմք, և ընթանամք մեք ձեօք հաճոյ լինել Ա՟յ։

Ըստ շնորհացն Ա՟յ որ տուան ինձ, իբրև իմաստուն ճարտարապետ հիմն եդի. այս ինքն ճարտարապետ

Հոգւոյ։ Հիմն, զի Նա ինքն է հաւատք. բայց յայն-
մանէ զոր քարոզեցի ձեզ, չիք այլ։ Եթէ ոք շինէ 'ի
վերայ սորա գործս բարիս իբրեւ զոսկի, կամ զուսումն
չար և զգործս աղտեղութե իբրեւ զեղէգն և զխոտ,
հուրն նորա ընտրիչ աւուրն մեծի ընտրէ զայն։
Զի որոյ շինուածն իւր կացցէ մնասցէ, զվարձս շի-
նուածոյն իւրոյ յարքայութե ընկալցի։ Իսկ որոյ շի-
նուածն իւր այրեսցի՝ տուժեսցի, այս ինքն զի տան-
ջեսցի։ Զի թէպէտ և յարութի յարուցանէ և կեն-
դանացուցանէ զնա, սակայն ինքն այնպէս լինի կեն-
դանի և ողորմելի իբրեւ 'ի հուր։

Ոչ գիտէք եթէ տաճար այ էք դուք, և Հոգի այ
'ի ձեռն գործոց բնակէ 'ի ձեզ։ Եւ որ ապականէ ըզ-
տաճար այ նախանձու և պոռնկութբ և այլովքն որ
նման է սոցա, ապականէ զնա ած. զի տաճար այ
սուրբ է, այս ինքն էք դուք։ Արդ մի ոք խաբեսցէ
զանձն իւր, և կարծեսցէ եթէ ոչ խնդրի վրէժ՝ որ
առնէ արատ 'ի մարմինս իւր, այն որ արժանի եղեւ
'ի ձեռն պարգեւաց շնորհացն լինել խորան Հոգւոյն։

Արդ եթէ ոք կարծէ 'ի ձէնջ եթէ իմաստուն եմ
յաշխարհիս յայսմիկ, ոչ եթէ պարծելով միայն մի
պարծեսցի յայսմիկ, այլ և յիմար եւս լիցի. այս ինքն
միամիտ, անմեղ. զի եղիցի Նա իմաստուն 'ի տէր։ Զի
իմաստութի աշխարհիս այսորիկ յիմարութի է. այս
ինքն խոտան է առաջի այ։ Զի գրեալ է այսպէս. ասէ.
“Է որ ըմբռնէ զիմաստունս խորագիտութբն իւրեանց
հանդերձ„. այս ինքն դատի զնոսա ըստ խորհրդոց իւ-
րեանց։ Եւ տէր գիտէ զխորհուրդս իմաստնոց. զի
թէպէտ կարծին թէ հանճարեղք և խորինք իցեն,
սակայն ընդունայն են։ Արդ մի այսուհետեւ պար-
ծեսցի ոք 'ի մարդ. զի այս մի միայն է Նորա։ Զի ա-
մենայն ինչ ձեր է, ոչ միայն մարդիկ, այլ և որ երեւի
և որ ոչ երեւի, զոր պատրաստեալ է ձեզ։ Արդ զի
ամ ինչ մեր է, եղիցուք Քրիստոսի. ով Քրիստոս այ։

## ԳԼՈՒԽ Դ

ԱՅՍՊԷՍ համարեսցին զմեզ մարդիկ իբրեւ զպաշտօնեայս Քրիստոսի, իբրեւ զհազարապետս խորհրդոցն ա̃յ. եւ յանուն ուրուք 'ի մէնջ եւ կամ յայլոց դուք մի՛ անուանիք։ Այսպէս խնդիր է 'ի մէջ հազարապետաց, թէ որ հաւատարիմ գտցի յամենայնի։ Ինձ եւ այս անարգանք են, եթէ 'ի ձէնջ դատեցայց, եւ կամ ընաւ ամենեւին յորդւոյ մարդոյ։ Բայց սակայն թէպէտ եւ գիտեմ թէ իւիք ես 'ի ձէնջ ոչ եպերիմ, եւ անձն իմ դարձեալ այլով իրօք զիս ոչ ստգտանէ. նա եւ ոչ յայսմիկ՝ զի ոչ ստգտանեն ինչ զիս միտք իմ, արդէն ինչ արդարացեալ լինիմ. զի ոչ եթէ միտք իմ են դատաւոր իմ, զի տէր է որ դատի զիս։ Եւ մինչ նա արդարացուցանէ զիս, 'ի մէջ խղճի եւ խեթի եմ. վասն այսորիկ մի՛ այսուհետեւ յառաջ քան զժամանակ դատիք զիս մինչեւ եկեսցէ տէր, լուսաւոր արասցէ զգաղտնիս՝ որ գործեցան 'ի ծածուկ. եւ յայտնեսցէ զխորհուրդս սրտից, այս ինքն որ գործեցաւ եւ պաշտեցաւ 'ի խորհուրդս ներքինս. եւ ապա իւրաքանչիւր գովութի̃ յայտ լիցի 'ի յա̃յ դատաւորէ։

Զայս վասն ձեր առակեցի յանձն իմ եւ յԱպաւղոս, զի 'ի մէնջ ուսջիք. զի որպէս ոչ մեք, եւ մի՛ դուք առաւել ինչ իմանալ քան զոր գրեալն է. այս ինքն է զի մի՛ պարծիցիք իմաստութ̃ ձերով. զի գրեալ է վասն նորա՝ թէ յիմարութի̃ է առաջի ա̃յ. եւ մի՛ հպարտանայցէք այսուիկ կամ այլովք 'ի վերայ միմեանց։ Իսկ արդ ո՞վ է որ քննեաց զայդ՝ զոր ունիսդ դու, եթէ ոչ ձրի եւ շնորհօք առեալ է քո։ Ապա եթէ պարգեւօք առեր, զի՞ պարծիս իբրեւ այն՝ թէ քո իցէն։ Եւ զի՞նչ է այդ զոր առէք դուք՝ առ այնու զոր առին առաքեալքն. զի ահա աւանիկ 'ի ձեռն մանր պարգեւացդ զոր առէք՝ յագեալ իցէք եւ մեծացարուք, եւ առանց մեր՝ այս ինքն առաջի մեր թագաւորեցէք։ Լաւ եղեւ զի թագաւորեցէք այսոքիւք. զի եւ մեք որ ունիմք զդոսա, ընդ ձեզ թագաւորեսցուք։

Դարձեալ Առաքեալ խոնարհեցուցանէ զանձն իւր

և զընկերս իւր, զի խոնարհութ̃ իւրեանց հալածեսցէ զպարծանսն՝ որ տռչորեցան 'ի կորընթացիսն : Ինձ այսպէս, ասէ, թուի՝ թէ մեզ առաքելոց յետոյ եցոյց ա̃ծ զճշմարտութի̃ն իբրև մահապարտաց. զի ահա աւասիկ եղեաք մեք տեսիլ աշխարհի, հրեշտակաց և մարդկան. այս ինքն հեթանոսաց և քահանայից և հեբրայեցւոց : Մեք յիմարք վասն Քրիստոսի, և դուք իմաստունք 'ի Քրիստոս. այն իսկ է՝ դուք փառաւորեալք, և մեք անարգք : Մինչև յայսօր ժամանակի քաղցեալք և ծարաւեցաք և գործեցաք ձեռօք մերովք : Եւ ոչ եթէ այսու միայն եղեաք նոցա օրինակ, այլ և այլովք գործովք : Հայհոյէին զմեզ օրհնէաք. և ամենեւին իբրև առակ նշաւակի եղեաք յաշխարհի. և ամենայնի՝ մեք երկիր պագանեմք :

Այլ զայս զի գրեցի առ ձեզ, ոչ եթէ յամօթ ինչ առնելով գրեցի զայս առ ձեզ, փոխանակ զի յետս ընդդէմ աւադիկ գործին 'ի ձեզ. այլ զի նմանողք եղիջիք մեզ իբրև որդիք : Քանզի գիտէք դուք՝ եթէ 'ի ձեռն աւետարանին ես ծնայ զձեզ. և վասն այսորիկ առաքեցի ես առ ձեզ զՏիմոթէոս՝ որ յիշեցուսցէ ձեզ զճանապարհս իմ. այս ինքն զի պատմեսցէ ձեզ զգործս իմ որ 'ի Քրիստոս են. զի գիտասջիք՝ թէ որպէս գործեմ ես, սոյնպէս և ուսուցանեմ յամենայն եկեղեցիս : Քանզի ոմանք հպարտացան 'ի ձէնջ՝ 'ի վելայ միմեանց, և թուեցաւ դոցա թէ ոչ գայցեմ ես և խոնարհեցուցանիցեմ զդոսա : Այլ եկից հուպ ընդհուպ, և 'ի միտ առից ոչ զբան ինչ հպարտացելոցն, այլ զզօրութի̃ նոցա : Զի զարքայութի̃ ա̃յ ոչ եթէ բանիւք իմաստութ̃ ժառանգեմք զնա, այլ զօրութ̃ համբերութեան : Արդ որպէս կամիք՝ գամ առ ձեզ, դաւազանաւ. այս ինքն խստութ̃՞ թէ խոնարհութ̃ :

## ԳԼՈՒԽ Ե

Ու ահա աւադիկ պոռնկութի̃՝ որպէս և 'ի հեթանոսս ոչ՝ գործեցաւ 'ի միջի ձերում. հպարտացեալք 'ի վերայ միմեանց, աւադիկ անուանի որդի զկին հօր իւրոյ ունի : Եւ դուք հպարտացեալ պար-

ծիք հոգեւոր պարգեւօքդ զոր ունիք ։ Եւ ընդէ՞ր ոչ լացէք և սգացարուք չարչարանօք և պարհօք , զի բարձցի 'ի միջոյ ձերմէ , կամ գործն և կամ գործիչ գործոյն ։ Արդ ժողովեցարուք դուք , և ես ընդ ձեզ Հոգւով՝ զօրութ՟բն հանդերձ տեառն մերոյ որ 'ի ձեզդ է , մատնել զայնպիսին 'ի ձեռս սատանայի 'ի սատակումն մարմնոյ , զի ոգին ապրեսցի յաւուրն տ՟ն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Այս ինքն զի մեկնեսցի նա 'ի նոցանէն , և մատնեսցի 'ի ձեռս գործոց իւրոց , զի անխայեալ լիցին այլք 'ի վնասուէ անտի նորա ։ Զի եթէ դարձցի և ապաշխարեսցէ , ընկալցին զնա . ապա թէ ոչ , ահա մեկնելով նորա՝ յանդիմանեալ կըշտամբին այլքն , զի մի նմա նմանեսցին ։

Ոչ բարւոք են պարծանքդ ձեր , զի յայդ իրս ած հասոյց զձեզ ։ Սրբեցէք 'ի ձէնջ զխմորն չարի , զի եղիջիք դուք նոր զանգուած 'ի Քրիստոս , որպէս անխըմորդ իսկ էք ։ Քանզի զատիկ մեր ոչ եթէ գառնն է՝ որ սպանաւ , այլ Քրիստոս է՝ որ զենաւ ։ Վասն այսորիկ արասցուք տօնս նորս , մի 'ի խմորս հինս , այս ինքն մի 'ի գործս օրինացն , և մի 'ի գործս չարութ՟եց . այլ յանխմորս արդարութ՟եց , այս ինքն 'ի գործս արդարութ՟եց և ճշմարտութ՟եց ։ Գրեցի ես ձեզ 'ի թղթի աստ զի մի խառնակ լինիջիք դուք ընդ պոռնիկս . և ոչ ընդ պոռնիկս աշխարհիս այսորիկ , կամ ընդ ագահս՝ գրեցի ես առ ձեզ . ապա եթէ ոչ՝ այդ ինքն էր յաշխարհէ ելանել ։ Այլ եթէ ոք եղբայր անուանեալ իցէ , և պոռնիկ իցէ , և կամ ագահ իցէ , այլովք հանդերձ , ընդ այնպիսին մի խառնակեսջիք ։ Զի՞ կայ մեր և դատել զաշխարհամարդս . զներքինսն դատեցարուք , և զարտաքինսն ա՟ծ յաւուր իւրում դատի , և բարձցէ զչարն 'ի միջոյ ձերմէ 'ի ձեռն առնելեաց չարին , որ որոշի 'ի միջոյ ձերմէ ։

## ԳԼՈՒԽ Զ

Իշխէ՞ ոք 'ի ձէնջ՝ եթէ իրք ինչ դատաստանի իցեն ընդ ընկերի իւրում , թողլով զսուրբս , և դատել առաջի որդւոց աշխարհի ագահաց ։ Եթէ ո՞չ գիտէք

զի սուրբք զաշխարհ դատին . այս ինքն զի դատին նոքօք աշխարհս ։ Եւ եթէ ամենայն աշխարհք ձեօք դատին , ո՞չ արդեւք արժանի իցէք դուք դատել ըզմանրամանր դատաստանսդ ։ Կամ " Ո՞չ գիտէք դուք թէ զհրեշտակս դատիմք մեք ", վս ընկերաց իւրոց առաքելոց ասաց՝ որ դատին զքահանայս՝ որ անուանեցան հրեշտակք ։ Եթէ մեծ դատաստանք որ հանդերձեալ պարտին՝ տուան մեզ , ո՞րչափ եւս առաւել երկրաւոր դատաստանք աշխարհիս այսորիկ ։ Արդ զերկրաւոր դատաստանս եթէ յանձին կրիցէք , զանարգս 'ի ժողովրդենէ դատաւորս նստուցիք ։

Առ ամօթոյ ձերոյ ասացի զայս . կոչեցի զձեզ 'ի դատաստանս անարգաց ։ Ընդէ՞ր որ իմաստուն է 'ի ձեզ՝ ոչ ընտրէ իրաւունս 'ի մէջ եղբօր ընկերի իւրոյ , և անխայեալ լինելին նոքա յերթալոյ 'ի դատաստանս առաջի անհաւատից ։ Ապա ամենեւին իբրև անարգութին յուռութեն իմն է 'ի ձեզ ։ Զի՞ բնաւ դատաստանք իսկ գոյն 'ի միջի ձերում . զի եթէ զրկեալ և զլացեալ լինէիք դուք՝ որպէս և հրամայեցաւ իսկ ձեզ , և եթէ յորժամ յանցանեն ձեզ՝ թողուք , որպէս և քարոզեցաւ ձեզ , և ոչ 'ի դատաստանս ընդ միմեանս մտանէիք դուք ։ Եթէ ո՞չ գիտէք դուք՝ եթէ ագահք և պոռնիկք և որ առնեն զընկերս սոցուն՝ զարքայութիւնն այ ոչ ժառանգեն ։ Եւ դուք այսպէս երբեմն ոմանք էիք . այլ լուացարուք սրբեցարուք և արդարացարուք . արդ մի՛ դարձեալ միւսանգամ նորոգեսցին նոքա ձեզ ։

Ամենայն ինչ մարթ է ինձ ուտել . այլ ոք 'ի պատճառս կերակրոյ 'ի վերայ իմ մի՛ տիրեսցէ ։ Կերակուր վս պորտոյ հաստեալ է , և պորտ ուտել խնդրէ . այլ ած զկերակուր և զցանկութին պորտոյ խափանեսցէ ։ Մարմին դարձեալ որ ընտրեցաւ , ոչ 'ի պոռնկութի՝ այլ 'ի տէր , զի բնակեսցէ 'ի նմա . և տէր 'ի մարմին , զի սրբեսցէ զնա և բնակեսցէ 'ի նմա ։ Այլ ած որ ըզտէրն յարոյց 'ի մեռելոց , և զմեզ ընդ նմա յարուսցէ զօրութե իւրով . այս ինքն Քրիստոսիւ իւրով ։ Ո՞չ գիտէք եթէ մարմինք ձեր անդամք Քրիստոսի են , զոր գնեաց և բնակեաց 'ի նոսա . առեալ զանդամս յորում Քրիստոս բնակեաց 'ի նոսա , տրտմութե առնի

ցեմք մարմին պոռնկութ̃։ Ո՞չ գիտէք դուք՝ զի մի մարմին են ասացեալ յօրէնս, թէ «Եղիցին նոքա մի մարմին»։ Քանզի 'ի մերձենալն մերում՝ 'ի տէր մեր՝ լինիմք մի հոգի։ Փախիցուք 'ի պոռնկութ̃է։ Զամենայն մեղս զոր գործէ մարդ, թէպէտ և 'ի ներքոյ մարհուռն երկրորդի հնազանդեն զնա, այլ արտաքոյ մարմնոյն իւրոյ։ Զի որ սպանանէն և գողանայ, ոչ եթէ սպանանելն և գողանալն խառնին նոքա. իսկ այն որ պոռնըկին, ոչ եթէ միայն միտքն նորա խառնին 'ի կինն՝ որ պատահեաց նմա, այլ և մարմին նորա. վասն այսորիկ ասացեալ է. «Եղիցին երկոքին մի մարմին»։ Արդ այն որ պոռնկին, յիւր մարմինն մեղանչէ. զի զայն որ յառաջն սակաւիկ մի էր նա անդամ Քրիստոսի, 'ի ձեռն պոռնկութ̃ խոնարհի և առնէ զնա անդամ պոռնըկութ̃։ Զայս ոչ գիտէք դուք եթէ մարմինք ձեր տաճար են Հոգւոյն սրբոյ՝ որ բնակեալ է 'ի ձեզ։

Այլ զի ասաց՝ եթէ «Ո՞չ գիտէք դուք՝ թէ մարմինք ձեր անդամք Քրիստոսի են», և յաւելեալ ևս ասաց՝ եթէ «Ո՞չ գիտէք դուք, եթէ մարմինք ձեր տաճար են Հոգւոյն սրբոյ՝ որ բնակեալ է 'ի ձեզ», զի ցուցցէ եթէ բանակետղ և բնակութ̃ի Երրորդութեանն եղեալ են մարդիկ։ Եւ այս այն է զոր ասայն տէր մեր. ասէ. «Որ պահեսցէ զպատուիրանս իմ, նա է որ սիրէն զիս, և Հայր իմ սիրեսցէ զնա. և առ նա եկեսցուք, և օթեվանս առ նմա կալցուք»։ Եթէ պարհեցէք, ասէ, զմարմինս ձեր յամենայն պղծութ̃է, փառաւոր արարէք զա̃ծ՝ որ բնակեալ է 'ի մարմինս ձեր։

## ԳԼՈՒԽ Է

ՅԵՏ այսորիկ ասաց նա վասն կուսութ̃ որ բարձրն է քան զամենայն, զի ոչ իշխեն 'ի վերայ նորա օրէնքն։ Քանզի ետես նա՝ եթէ քարոզեաց վասն նորա տէրն իւր, երկեաւ նա թէ ինքն քարոզեսցէ զնա։ Այլ իբրև ետես նա զմարդիկ՝ թէ խնդրեն զնա, եղև նա նոցա խրատատու և ոչ հրամանատու, և յորդորիչ և ոչ օրէնադիր։ Վասն որոյ գրեցէք, ասէ, դուք առ իս. բարւոք է մարդոյ եթէ 'ի կին մարդ ինչ ոչ մեր-

ձեւցի․ որպէս և դուքդ իսկ ասացէք։ Այլ վասն պոռնկութե̃ ամենայն մարդ զկին իւր յինքն կալցի։ Եւ երանի թէ զրկելով ոչ զրկէք զմիմեանս, բայց եթէ ինչ 'ի միաբանութէ̃ առ ժամանակ մի ուխտից կատարելոյ, պահոց և աղօթից․ զի զաւուրս նշանաւորս համբերէք դուք, և ոչ փորձիք դուք 'ի սատանայէ։ Ջայս ասեմ ներելով, և ոչ հրամանս տալով։ Կամիմ թէ ամենայն մարդ լինէր իբրև զիս․ առանց պատուիրանի ընտրէր զայս։ Այլ իւրաքանչիւր մարդոյ շնորհք տուեալ են յա̃յ։ Ջայն իսկ զտեառնն իւրոյ երկրորդեաց, եթէ "Ոչ ա̃մ մարդ բաւական լինի այդմ,,։

Եւ զի ասաց՝ բայ ոմն զի այսպէս, և ոմն զի այսպէս․ այս զի ոմն է, զի այսու կարէ արդարանալ․ և ոմն է, զի այլով իւիք տուեալ է նմա թագաւորել։ Ամուրեացդ, անկանայցդ․ այս ինքն որ այրիք լեալ են արք և կանայք, լաւ իցէ նոցա եթէ կայցեն մնասցեն իբրև զիս․ ապա եթէ ոչ ունիցին ժոյժ, և նոքա ես ամուսնասցին․ զի լաւ է ամուսնանալ երկրորդում, քան զջեռնուլ ցանկութեամբ։ Այլ կանամբեացն պատուիրէ տէր ինքնին, եթէ կին յառնէ իւրմէ մի մեկնեսցի․ ապա եթէ մեկնեսցի, նոյնպէս անայր կեցցէ եթէ սրբուն ընտրեաց իւր․ կամ անդրէն առ այր իւր հաշտեսցի, և այլում մի լիցի։

Եթէ ոք կին ունիցի կռապաշտ, և կնոջն հաճոյ իցէ կեալ ընդ առնն իւրում՝ կեցցէ․ և կին դարձեալ որ ունիցի այր անհաւատ, և առնն կամ իցէ կեալ ընդ կնոջն՝ կեցցէ։ Եւ եթէ կարծիցէ այրն հաւատացեալ եթէ պղծի ամուսնութիւն իւր 'ի ձեռն անհաւատ ընկերին, գիտասցէն եթէ սուրբ է զաւակ առնն անհաւատի յարգանդ կնոջն հաւատացելոյ․ նոյնպէս և կնոջն անհաւատի սուրբ է 'ի պատճառս առնն հաւատացելոյ։ Ապա եթէ այս որպէս ասացի՛ չէ, որդիք նոցա ըստ մտաց նոցա պիղծ են․ բայց այժմ դեռ սուրբ են, եթէ կայցեն մնասցեն նոքա 'ի հաւատն զոր ետու նոցա։ Ապա եթէ թերահաւատն կամիցի մեկնել առ 'ի հաւատացելոյ անտի՝ մեկնեսցի, զի ոչ ինչ կայ հարկ վտանգի հաւատացելոյն յայսմիկ։ Ուստի՞ գիտէ այրն հաւատացեալ՝ եթէ ապրեցուցանէ զկինն անհաւատ․ կամ ուստի՞ գիտիցէ կինն՝

թէ զայրն կուսապաշտ աշակերտեսցէ նա ։ Այլ իւրաքանչիւր որպէս կոչեաց ած, այս ինքն է որպէս գտաւ նա յորժամ կոչեցաւ յաւետարան նորա, այնպէս և մնասցէ ։ Զի ինչ զոր ձեզ ասեմ, և ամենայն եկեղեցեաց սոյնպէս պատուիրեմ ։

Եթէ թլփատեալ ոք կոչեցաւ, մի՛ զղջասցի եթէ ընդէր չեմ անթլփատ. և եթէ դարձեալ յանթլփատութէ ոք կոչեալ իցէ, մի՛ թլփատեսցի. զի թլփատութիւնդ և անթլփատութի ոչ ինչ են, այլ պահպանութի պատուիրանացն այ ։ Եւ դարձեալ եթէ ծառայ կոչեցար, մի՛ փոյթ լիցի քեզ եթէ կարիցես ես ազատ լինել, և ելանել քարոզել զաւետարանն, և համբերել հալածմանց վասն նորա. քեզ այն լաւ իցէ, ազատեաց ։ Զի որ 'ի տէր կոչեցեալ է ծառայն, ազատ է նա 'ի մկրտուէ անտի տեառն մերոյ. և որ ազատն կոչեալ է, ծառայ է նա 'ի ձեռն խոնարհութէն Քրիստոսի ։ Արդ քանզի այս հաւասարք են, վասն այսորիկ ասացի՝ բամ իւրաքանչիւր յիւրում կոչման կոչեցաւ, 'ի նմին կացցէ ։

Այլ վասն կուսանաց հրամանն ինչ յայ ոչ ունիմ. այլ խրատ մի տամ, որպէս այր մի՝ որոյ ողորմութիւն գտեալ է յայ. արժանի եղէ հաւատարիմ լինել այսմ աւետարանի ։ Ես այսպէս համարիմ՝ եթէ լաւ իցէ այս. այս ինքն է թեթև և դիւրին վասն վտանգի աշխարհիս ։ Եթէ արարեր կին՝ ոչ մեղար ։ Բայց նեղութի՝ զի զնա անուանեաց, 'ի հարկ վտանգի լինի նոցա մարմնապէս ։ Այլ ես, եղբարք, խնայեցի 'ի ձեզ ։ Քանզի ժամանակ, այս ինքն՝ կամ կատարած, կամ օրն վախճանի մերոյ՝ կարճեալ և հասեալ է ։ Վասն այսորիկ և ոյք ունիցին կանայս, եղիցին որպէս թէ չունիցին. և որ լայցեն, այս ինքն որ տրտմեալն իցեն, որպէս թէ չտրտմիցին. և որք փափկանանն գրգանօք, որպէս թէ ոչ ըստ անձին դիւրի լկտութ ։ Եթէ իցէ ոք զի գուցէ նորա կոյս, և կաց մնաց նա ժամանակս ինչ որչափ և իցէ նա յուխտին, և գիտաց յանձն իւր թէ չիցեմ բաւական, մի՛ վասն անցեալ ժամանակեանն ամաչեսցէ[1] ։ Իսկ այն որ հաստատեալն իցէ

1 Յօրինակին ամաչէսցէ ։

'ի միտս իւր, և ինչ վտանգ ցանկութեան ոչ իցէ նմա դառնալ, և զայս ընտրեաց 'ի սրտի իւրում պարհել զկոյսն իւր, բարւոք առնէ։ Եւ այն որ տայն 'ի դուրս զկոյսն իւր, բարւոք առնէ։ Եւ այն որ ոչ տայն և ժուժկալ լինի, բարւոք առնէ։

## ԳԼՈՒԽ Ը

ԱՅԼ վասն զոհելոյ դիւաց գիտեմք, զի յամենեսեան 'ի մեզ գիտութիւն գոյ. Թէպէտ և սոյն իսկ այս գիտութիւն հպարտացուցանէ զայնոսիկ՝ որ ելանեն ուտել անդր, սակայն սէր որ անխայեայ յընկերս իւր՝ ոչ ելանէ անդր. սա շինէ։ Եթէ ոք ձեռն յանձին հարեալ իցէ եթէ ինչ գիտիցեմ, չև ևս իցէ ինչ գիտացեալ որպէս արժան է գիտել նմա, քանզի բազում են այն՝ զոր ոչ գիտացեալ. բայց որ սիրէն օգնել, նա է տեղակացեալ։ Արդ վասն կերակրոցդ կռոցդ գիտեմք մեք՝ զի ոչ ինչ կուռքդ են աշխարհի. և ամենայն որ անուանեալ կոչին աստուածք, չիք ամենեին այլ՝ բայց մի միայն ա͞ծ։ Զի թէպէտ և իցեն ինչ պաշտամունք յերկինս կամ յերկրի, որպէս ասացի ես յառաջագոյն՝ զի կոչին արեգակն և լուսին աստուածք յերկինս, և այլ ևս յերկրի, այլ մեզ մի է ա͞ծ Հայր՝ յորմէ ամենայն ինչ եղև, և մի է տէր Յիսուս Քրիստոս՝ որով ամենայն ինչ եղև։ Այլ ոչ եթէ յամենեսեին գիտուն գտանի այսր բանի զոր ասացի. զի են ոմանք միամիտք 'ի հաւատայելոց անտի՝ որ ելանեն ուտեն 'ի տան կռոցն. քանզի տեսանեն զհաւատացեալս զառաջնորդսն և զվարդապետսն՝ որ ելանեն անդր, և 'ի տկարութէ մտաց իւրեանց պիղծ համարեալ են. վասն զի ածէին զմտօք՝ եթէ զայս ինչ զոր ուտեմք աստ, այն որպէս համարեալ է իբրև զոհեալ։

Արդ տեսէք, ասէ. զգոյշ լինիջիք՝ թէ գուցէ համարձակութիւնդ այդ զոր ունիք դուք, կամ թէ զամենայն ինչ կերիցէք, կամ զի ոչ արգելուք դուք յելանել անդր, լինիցի գայթագղութ͞ տկարաց։ Զի եթէ ոք յեղբարց տկարաց մտօք իւրովք, և տեսանէ զքեզ՝ որ զգիտութիւնդ ունիս՝ բազմեալ ես անդ, և ցանկա-

ցեալ փափագեցուցանէ զնա կեղծաւոր տեսիլ զօհիցն՝ ուտել զզոհեալն, ահա կորեաւ անմեղն՝ վասն որոյ Քրիստոսն մեռաւ: Մի՛ այսուհետեւ յանցուցանէք զեղբարս ձեր եւ կռփէք. այս ինքն դարձուցանէք զնոսա յետս 'ի ձեռն տկար մտաց իւրեանց: Արդ մի՛ թեթեւ ինչ համարիք դուք զայս. զի 'ի Քրիստոս մեղանչէք դուք, եթէ ոչ զգուշանայք յեղբարս ձեր: Եթէ վասն կերակրոյ՝ որ ընկեցեալ լինի յաղբեւս՝ գայթագղեալ լինի եղբայր իմ, ոչ եթէ 'ի մսոյ՝ որ սակաւ աւուրս կերեալ լինի 'ի տան կռոցն՝ արգելեալ լինիմ ես, այլ բնաւ ամենեւին միս ոչ կերայց մինչեւ յաւիտեան, զի մի՛ եղբօրն իմում եղէց գայթագղումն:

## ԳԼՈՒԽ Թ

ՄԻԹԷ չիցե՞մ ազատ, զի ծառայութեան պարտոյ ես ոչ ծառայեմ. կամ թէ չիցե՞մ ես Առաքեալ, եթէ որբեցից եւ կերայց իբրեւ զձեզ զամենայն ինչ. կամ զՅիսուս Քրիստոս զտէր ո՞չ տեսի ես, զի վասն սոցին իսկ զօրացուցանէ զիս. կամ գործ իմ եւ ջան իմ չի՞ցէք դուք 'ի տէր իմ, թէ զայս հրամայեցից ձեզ: Իսկ արդ թէպէտ եւ այլոց որ ոչ տեսին զզօրութիւնս իմ՝ չիցեմ ես առաքեալ, այլ դէպ ձեզ՝ որ 'ի ձեռն իմ առէք պարգեւս Հոգւոյն՝ առաքեալ եմ. եւ նշանակ առաքելութեան իմոյ դուք էք 'ի ձեռն խօսից լեզուացն զոր 'ի ձեռն Հոգւոյն առէք: Զի գուցէ թերեւս 'ի մեծամեծ պարգեւացն առաքելոցն արժանի եղեալք, եւ ուտել եւ ըմպել չունիցի՞մք իշխանութիւն որպէս եւ առաքեալքն՝ զի ուտեն եւ ըմպեն:

Պատասխանի սկսանի առնել վասն անձին իւրոյ՝ ընկերաց իւրոց, եւ ասէ. “Ո՞վ իցէ՝ որ զինուորիցի երբէք իւրով թոշակով„, այլովք հանդերձ: Եւ յօրէնս, ասէ, գրեալ է՝ եթէ “Մի՛ կապեր զցռուկ եզին կալոտւոյ„: Մի՛ թէ, ասէ, վասն եզանց ինչ միայն փոյթ էր Այ, եւ վասն մեր ոչ. այլ յայտ է՝ եթէ զխորհուրդ մեր նկարեաց յեզինս անդ, այն որ կանխեաց յառաջագոյն եւ արար փոյթ վասն եզանց: Արդ ոչ եթէ մեծ ինչ է այս՝ եթէ մեք 'ի ձէնջ զմարմնաւորն հըն-

Ձեզ ցուք, որք զոգևորսն սերմանեցաք 'ի ձեզ։ Եւ այնոքիկ որ 'ի տան կաց գործեն՝ 'ի տանէ անտի կերակրին, և որ սեղանոյն յԵրուսաղէմի պաշտօնեայք են, 'ի սեղանոյ անտի վայելեն։ Եւ տէր մեր հրաման ետ և ասէ, եթէ որ զաւետարանն նորա քարոզեն 'ի ժողովուրդն և 'ի հեթանոսս, յաւետարանէ անտի կեցցեն. այն է զի ասէ. "Ի տանէ անտի եղիջիք ուտել. արժանի է մշակն կերակրոյն իւրոյ"։

Այլ ես թէպէտ և զայս ամենայն առակս օրինակաց ունիմ, սակայն միով իւիք յայսցանէ ես ինչ ոչ աշխատեցուցի զձեզ. զի լաւ է ինձ 'ի սովոյ մեռանել, քան թէ զպարծանս իմ զայս զոր աւետարանեմ ես ձրի՝ ընդունայն[1] համարեսցի։ Նա և զոր աւետարանեմս ես՝ ոչ եթէ շնորհ ինչ է իմ կամ պարծանք, այս ինքն ոչ 'ի կամս իմ. հարկ 'ի վե՞ր կայ այնորիկ՝ որ առաքեաց զիս. վայ է ինձ 'ի դատաստանաց անտի նորա, եթէ ոչ աւետարանեմ։ Զի եթէ կամաւ զայս գործէի, վարձք էին ինձ վասն կամացն բարեաց զոր ունէի ես։ Եթէ տնտեսութե հաւատարիմ լինեալ եմ ես, զի՞նչ վարձք են ինձ՝ եթէ վարձուք դարձուցանեմ ես զտնտեսութիւն հաւատացեալ։

Արդ յայսմ ամենայնէ ազատ էի ես, ամենեցուն զանձն իմ 'ի ծառայութեան կացուցի, զի փոխանակ ժառանգութեն զժառանգաւորսն շահեցայց։ Ընդ Հրեայսն սրբեցայ և մտի 'ի տաճարն, զի զՀրեայսն շահեցայց։ Ընդ այնոսիկ որ ընդ օրինօքն էին՝ գերծայ ես, զի զնոսա շահեցայց։ Եւ եղէ ես ընդ անօրէնս, այս ինքն ընդ աթենացիսն՝ եղէ 'ի ժամանակի զի մտեալ շրջէի ես 'ի մէջ մեհենից նոցա իբրև այր մի անօրէն, զի զնոսա շահեցայց։ Ընդ տկարսն որ գայթագղին և կործանին՝ տկարանայի ես, զի զնոսա շահեցայց։ Այն է զի ասէ. "Ո՞վ է որ տկարանայ[2], և ես ոչ տապիմ. կամ ո՞վ է որ գայթագղի, և ես ոչ մաշիմ"։ Եւ զայս զոր առնեմ ես՝ զի կցորդ գտայց 'ի ձեռն այսր ամենայնի աւետարանին Քրիստոսի, այն որ հաճելն կամեցաւ ընդ կեանս ամենայն մարդկան։

Ո՞չ գիտէք դուք՝ որ յասպարիսին, այս ինքն յե-

1 Յօրինակին ընդունայնք ։ 2 Յօրինակին չտկարանայ ։

ղումպէ ընթանան, թէպէտ բազումք են որ ընթանան, սակայն մի ըստ միոջէ նման, մինչև 'ի մի անդր կրթի պսակն ։ Այնուքիկ որ անդն ընթանան, յամենայնէ իրաց չարաց պարհէ մարդն զանձն, զի առցէ զպըսակն որ եղծանի անցանէ ․ մեր որչափ ևս բազմասցին և յաճախեսցեն ընթացք մեր, և պարհեսցուք զանձինս մեր յամենայն իրաց չարաց ․ զի վասն պսակին՝ որ ոչ անցանի և ոչ եղծանի՝ ընթանամք մեք ։ Արդ ես իսկ աւասիկ այսպէս ընթանամ, որպէս ոչ յաներևոյթս ինչ իբրև զայն՝ որ ոչ գիտէ վասն ոյր մարտնչի ․ թերևս պարտաւորութի դիպեսցի նմա փոխանակ յաղթութեան զոր ակն ունէր՝ պատահիցէ նմա ։ Եւ այսպէս մարտնչիմ, որպէս զի ոչ եթէ զհողմըս ինչ զուր կոծիցեմ․ այլ ճնշեմ զմարմինս իմ պարհօք, և հնազանդեցուցանեմ տքնութք ․ գուցէ երբէք ես այլոց քարոզեցի զարքայուն, ես իսկ գլխովին անպիտան գտանիցիմ յարքայութենէ անտի ։

## ԳԼՈՒԽ Ժ

ԴԱՐՁԵԱԼ առ նա ցուցանել, զի անցանելով նոցա ընդ ծովն, և այնուքիմբք որ եղև նոցա յանապատի անդ, խորհուրդքն տեառն մերոյ նկարեալ լինէին ։ "Հարք մեր, ասէ, ամենեքին ընդ ամպովն էին․ և ամենեքին 'ի Մովսէս մկրտեցան յամպն և 'ի ծովն․ և մանանայ կերակուր հոգևոր կերան, և զըմպելի հոգևոր՝ որ բղխեաց 'ի վիմէ անտի 'ի ձեռն գաւազանին՝ ըմպէին․ այլ վէմն 'ի ձեռն օրինակաց իւրոց նա ինքն է Քրիստոս„ ։ Արդ եդ նա զծովն օրինակ մկըրտութեան, և ամպն որ սփռեալ հովանի ունէր 'ի վերայ նոցա՝ օրինակ ձեռինն քահանային ։ Եւ զոր օրինակ զկնի մկրտութեան գայ հասանէ մարդ առ մարմին և առ արիւն, և ժողովուրդն իբրև մկրտեցան խորհրդով և ապա կերան զմանանայ հոգևոր և արբին զջուրն հոգևոր՝ կոչեցան հոգևորք վասն մանանային որ 'ի բարձանց էջ ։ Եւ ջուրքն որ նորոգապէս՝ որ 'ի վիմէ անտի վիրժէին ։ Եւ զի կոչեաց նա զվէմն Քրիստոս, զի ըստ օրինակի վիմին պատառեցաւ կող

տեառն մերոյ, և բղխեցին 'ի նմանէ արիւն և ջուր, և արիւն 'ի քաւութիւն և ըմպելի ա̃մ հեթանոսաց:

Այլ այս ամենայն զի եղև նոցա, որպէս զի ոչ եթէ 'ի բազմութիւն ամբոխ նոցա հաճեցաւ կամք ա̃յ, 'ի ժամանակի զի դրոշմէին առակքն օրինակի, զի անկան նոքա 'ի մահ յայտնի յանապատի անդ. զի և նովին անկանելովն իւրեանց առակ օրինակի եղիցին նոքա մեզ, զի մեք մի լիցուք ցանկացողք չարեաց, որպէս և նոքայն. մի պոռնկեսցուք, և փորձեսցուք զՔրիստոս ըստ նմանութեան նոցա: Այս ամենայն առակաւ անցանէր ընդ նոսա, արդ գրեցաւ վասն խրատու մերոյ: Այսուհետև որ ոք ձեռն յանձին հարեալ իցէ հաստատուն կալ, զգոյշ լիցի 'ի մեղաց, գուցէ և նա գլորիցի: Այլ հաւատարիմ է ա̃ծ' որ ոչ արկցէ ըզձեզ 'ի փորձանս առաւել քան զկարն ձեր. այս ինքն զի մի ընդերկարեսցին փորձանքն 'ի վերայ տկարութեանս մերոյ. այլ արասցէ ելս երագունս փորձութեան ձերոյ, զի համբերել կարասջիք:

Իբրև պատուիրեաց նա վասն այնր, եկն նա եպերել աղարտել իմաստութեամբ զայնոսիկ' որ ընդ հարս իւրեանց և ընդ եղբարս իւրեանց 'ի տունս հեթանոսաց երթային և ուրախ լինէին: Փախերուք, ասէ, 'ի կռապաշտութենէ. այս ինքն 'ի տեղւոջ' ուր պաշտէին 'ի նմա դևք. թէ գուցէ ելանելովն ձերով անդր' հաղորդք գտանիցիք դուք դիւաց, որ երկիր պագին անդ: Ընտրեցէք դուք ձեզէն զոր ասեմ: Զի զոր օրինակ միով մարմնովն զոր առնումք մեք' մի մարմին լինիմք մեք ամենեքին, նոյնպէս և դուք 'ի ձեռն միոյ կերակրոյն զոր ուտէք անդր, մի լինիք:

Հանդերձ օրինական հոգւոյն զոր բերի ձեզ, միւս ևս օրինակ մարմնաւոր բերի ձեզ: Տեսէք զԻսրայէլ մարմնապէս. զի ոյք ուտէին յողջակիզաց անտի, նոքա լինէին կցորդ սեղանոյն: Այլ ոչ եթէ ասեմք' բամք կուռքդ ինչ[1] իցեն. զի գիտեմ ես' եթէ զոր զոհեն հեթանոսքդ, դիւաց զոհեն. վասն այսորիկ զգուշացուցանեմ զձեզ անտի, զի կցորդութիւն ձեր ընդ դևս' 'ի կցորդութենէ անտի տեառն մերոյ զրկէ զձեզ: Զի

1 Ցօրինակին կրկնեալ էր ինչ ինչ. գուցէ խոյ ինչ:

ոչ կարէք դուք ՚ի բաժակէ տեառն ըմպել, եւ ՚ի բաժակէ դիւաց. ոչ ուտել ՚ի սեղանոյ տեառն, եւ ՚ի սեղանոյ դիւաց։ Մի՛ եթէ նախանձուկս ինչ արկանէք դուք նմա այսուիկ. կամ հզօրք ինչ եմք քան զնա, զի ոչ պահանջեսցէ ՚ի մէնջ զայս։ Թէպէտ եւ ամենայն ինչ մարթ է վասն ազատութեան, այլ ոչ ամենայն ինչ որ մարթ է՝ օգուտ բերէ ընկերաց մերոց։ Ոչ եթէ զանձանց միայն զօգուտ խնդրեսցուք, այլ եւ զընկերաց։

Ամենայն ինչ որ ՚ի վաճառի գտանի՝ կերայք, բայց միայն ՚ի սեղան դիւաց մի՛ մերձենայք։ Վասն խղճի մտաց մի՛ հարցանէք զոր ՚ի վաճառի գտանէք. խիղճ ասեմ ոչ զհարցանելեաց, այլ զհարցողացն։ Եթէ ոք ՚ի հեթանոսաց կոչէ զձեզ յընթրիս եւ կամիք երթալ, զամենայն զինչ առաջի դնեն ձեր՝ կերայք վասն քաղցի. մի՛ հարցանէք վասն խղճի մտաց, զի մի՛ հիւանդասցին։ Ապա եթէ ոք ասիցէ՝ եթէ այդ զոհեալ է, մի՛ ուտէք վասն նորա՝ որ գուշակն եղեւ, զի տեառն է երկիր լրիւ իւրով։ Թէ եւ աստ ոք ոչ տայ ձեզ, սակայն այլում ոչ արգելուն ձեզ։ Վասն խղճի մտաց՝ եթէ տկարանան եւ եթէ ոչ տկարանան. ոչ զիմ ասեմ, այլ զայլոց։ Մի՛ եթէ ազատութիւն իմ յայլոց խղճէ մտաց դատապարտի. այս ինքն եթէ գայթագղին նոքա, ես նոցա նման լինիմ։ Եւ եթէ ես գոհանամ եւ ուտեմ, ընդէ՞ր հայհոյիմ՝ վասն որոյ ես գոհանամ։ Թերեւս սուտ առաքեալքն հայհոյեին ՚ի վերայ նր̃. վ̃ն զի քարոզէր, եւ ինչ յումեքէ ոչ առնոյր. եւ փակեաց դուռն ընդդէմ սուտ առաքելոցն՝ որ յառնուլ եւեթ արձակեալ էր զաչս իւրեանց։

## ԳԼՈՒԽ ԺԱ

ԱՐԴ նմանողք լինիջիք դուք ինձ, որպէս եւ ես Քրիստոսի։ Արդ զի ոչ է տեսեալ ձեր զՔրիստոս, եթէ լինի նա ձեզ օրինակ, մեզ նմանողք եղերուք. որպէս եւ մեք զի ընթանամք նմանող լինել Քրիստոսի։ Հպարտացոյց զնոսա եւ ասաց. «Գովեմ զձեզ, եղբարք, զի զամենայն ինչ յիշէք դուք զիմ. եւ որպէս

եւտու ձեզ զաւանդութիւնսն, նոյնպէս ունիք„։ Գլուխ, ասէ, առն Քրիստոս է. եւ գլուխ կնոջ այր իւր է. եւ գլուխ Քրիստոսի ա̃ծ իւր է։ Ի ձեռն այսց երկուց օրինակաց կամեցաւ ցուցանել. զի զոր օրինակ մարմինն այն՝ որ կոչեցաւ Քրիստոս՝ իբրու բնակից է 'ի նա մարդոյ՝ է գլուխ առն, եւ որպէս այր բնակից կնոջ՝ գլուխ կնոջ, սոյնպէս գլուխ Որդւոյ ոչ եթէ բնութի̃ է՝ որ օտար է նմա. զի ա̃ծ բնակից նորա է, գլուխ նորա է։ Արդ այր ամենայն յորժամ յաղօթս կայցէ կամ մարգարէասցի, եւ զգլուխ ծածուկ ունիցի, յամօթ առնէ զգլուխ իւր. եւ կին ամենայն յորժամ յաղօթս կայցէ կամ մարգարէասցի բացաւ գլխով, ամօթ առնէ գլխոյ իւրում։

Այլ զայս ճառս վասն կանանցն, որ էին 'ի Հռոմէ եւ 'ի Կորընթոս եւ 'ի քաղաքս քաղաքս՝ որ մտանէին յեկեղեցի կալ յաղօթս, քանի անգամ եւ մարգարէանալ մարգարէանային բացաւ գլխով, կամեցաւ ասել։ Այլ ոչ եթէ լկտութեամբ ինչ առնէին, զի զկնի սովորութե̃ հնոյն երթային։ Այլ կամեցաւ Առաքեալ՝ թէ 'ի ձեռն այսր զոր ասէր վասն գլխոյ առն եւ կնոջ, զի ածցէ զգլուխ կանանցն 'ի քող հանդերձի, այն որ յաւուրցն յաւիտենից առանց քողոյ հանդերձի շրջէին բացաւ գլխով։ Ոչ, ասէ, հաստատեցաւ այր վասն կնոջ. այլ զոր օրինակ ամենայն ինչ վասն Ադամայ հաստատեցաւ, սոյնպէս եւ Եւայ վասն Ադամայ հաստատեցաւ. վասն այսորիկ պարտ է կնոջ մարդոյ շուք ունել 'ի վերայ գլխոյ իւրոյ վասն հրեշտակաց. այս ինքն վասն քահանայից։ Զի թէպէտ եւ 'ի տեղիս տեղիս հնազանդէ զնա, եւ յամենայն տեղիս վասն քահանայութե̃ ընդ հնազանդութ̃ նորա են։

Այլ իբրեւ նուաճեցոյց եւ խոնարհեցոյց զկին, շրջեցաւ բարձրացոյց զգլուխ նորա յասել իւրում, եթէ “Որպէս կին յառնէ, սոյնպէս եւ այր 'ի կնոջէ„։ Ահա, ասէ, շրջեցաւ հատոյց նա առն 'ի ձեռն ծննդից երկանց զայն ինչ՝ զոր պարտ էր նմա 'ի ժամանակի զի առեալ լինէր նա 'ի նմանէն 'ի ձեռն քնոյն առանց երկանց։ Ապա եթէ ոք Յունաց անտի հակառակեալ ընդդէմ դարձցի վասն այսր եւ ասիցէ՝ եթէ հին սովորութի̃ է այդ, եւ չիք ինչ հնար անցուցա-

նել, մեր՝ այս ինքն ՚ի կողմանս Ասորւոց՝ չէր այդ սովորութ̅ի, և ոչ եկեղեցեաց ա̅յ՝ որ յայլ կողմանս հաստատեցան ։ Զի ոչ եթէ ՚ի լաւ անդր յառաջադէմ նկրտեցարուք դուք յայսմիկ, այլ ՚ի նկուն անդր ի̇ջեալ խոնարհեցարուք դոքօք․ զի յայս ամենայն բամբասանս եկիք դուք վասն դոցա ։

Դարձեալ յորժամ ՚ի մի վայր ժողովիք ՚ի ժողովս ձեր յեկեղեցւոջ, լսեմ զի հերձուածք գոն ՚ի ձեզ և հակառակութիք լինին․ զի և որ ընտիրքն և համբերողքն իցեն ՚ի ձեզ՝ յայտնի լիցին ։ Քանզի ժողովելով ժողովէին նոքա ՚ի զատիկ անդր յաւուր հինգշաբաթւոջ յերեկորի ՚ի ժամու, յորում կեր տէր մեր զմարմին իւր ՚ի վերնատան անդ ։ Եւ իբրև ուտէին նոքա և ըմպէին, ապա յետոյ կծանէին զմարմինն և առնուին ։ Եւ քանզի ՚ի պահս էին ոմանք ՚ի նոցանէ, համբերէին և մնային ընկերաց իւրեանց, և ոմանք ոչ․ առաջինք որ ուտէին կմ̅ ըմպէին, առնուին[1] զմարմինն և գնային․ իսկ վերջնոցն որոց ոչն էր կերեալ, լինէր նոցա ամօթ և տրտմութ̅ի յոյժ․ ՚ի նոսին իսկ յայնոսիկ ըստգտանէ զնոսա և ասէ․ յորժամ ժողովիք դուք ՚ի մի վայր յօրն տ̅ն մերոյ, իւրաքանչիւր զիւր ընթրիս յառաջանայ ուտել․ ոմանք ՚ի ձէնջ քաղցեալ լինին, և ոմանք արբեալ ։

Եւ ընդէ՞ր, ասէ, արհամարհեայք դուք զեկեղեցեաւն ա̅յ․ զի արարէք դուք զդա իբրև զպանդոկի․ և յամօթ առնէք դուք դարձեալ զաղքատս՝ որ վասն կարօտութ̅ և աղքատութ̅ իւրեանց չէին պատրաստ ։ Այլ թէպէտ և ես ետու ձեզ զայս, որպէս և առի ՚ի տեառնէ իմմէ՝ զայն ետու ձեզ ։ Զի թէպէտ և յետ յնթրեացն բեկ և ետ նոցա զմարմին և զարիւն իւր, այլ ոչ եթէ ՚ի մէջ քաղցելոց և արբելոց բաշխեցաւ այն մարմին, ո̅պ առ ձեզդ աւադիկ պաշտի ։

Այլ քանից անգամ թէ և ուտիցէք զհացս զայս և ըմպիցէք զբաժակս զայս, զմահն տեառն մերոյ յիշեսջիք ։ Այլ մահն տեառն մերոյ ոչ այսու շփոթելովս և խռովութ̅բ արժան է յիշել․ զի ոչ եթէ վասն զի չնորհօք տուաւ նա մեզ, անարգանօք և արհամար-

1 Յօրինակին առնու . . . լինի ։

հանապազ ուտիցեմք զնա ։ Զի զոր օրինակ որ ոչ հաղոր-
դի և կցորդի ընդ խորհուրդս ընդ այս՝ չիք նր̄ կեանք,
և այն որ ուտէ ՚ի հացէ անտի տեառն և ըմպէ ՚ի բա-
ժակէ անտի յանարժանս՝ դատապարտ է նա մարմնոյ
և արեան տեառն ։ Զկնի այս և ՚ի վերայ ամենայն
ազգաց և դարուց ։ Իսկ որ ուտէ և ըմպէ անարժա-
նութբ̄, դատաստանս անձին իւրում ուտէ և ըմպէ ։
Վասն այսորիկ բազումք են ՚ի ձեզ տկարք և հիւանդք՝
որ հարան մարմնովք իւրեանց, զի յաներկիւղս մա-
տեան նոքա ՚ի մարմինն Քրիստոսի ․ և բազում մե-
ռեալք են, զի մատեան նոքա ՚ի դեղն կենաց առանց
ահի դողութե̄ ։ Զի եթէ զանձինս ընտրէաք և մեր-
ձենայաք ՚ի նա, ոչ դատէաք և դատապարտեալք ՚ի
նմանէ ։ Այլ եթէ դատիմք մեք, ՚ի տեառնէ խրա-
տիմք մեք աստ, զի մի ընդ աշխարհի դատապարտես-
ցուք մեք ՚ի կատարածի ։ Այսուհետև, եղբարք, յոր-
ժամ ՚ի մի վայր ժողովիցիք, միմեանց մնասջիք ․ և որ
քաղցեալն իցէ և ոչ ունի ժոյժ մնալ ընկերաց իւրոց,
՚ի տան իւրում կերիցէ, զի մի ՚ի դատապարտութի̄
լինիցի ժողովն ձեր ։

## ԳԼՈՒԽ ԺԲ

ՍԱՑԼ վասն հոգևորացն, այս ինքն որ արժանի ե-
ղեն պարգևաց Հոգւոյն և ամպարտաւանեցին, գի-
տասջիք զառաջին խոնարհութի̄ն ձեր, զի հեթանոսքն
էիք, և զանմռունչ կուռս պաշտէիք ։ Զի զոր օրինակ
զի չիք ոք որ ՚ի Հոգի ա̄ծութե̄ խօսի, և գործէ յա-
նուն Յիսուսի սքանչելիս Հոգւոյ, և ասէ՝ թէ նզո-
վեալ է ինձ Քրիստոս, նոյնպէս չիք այն ոք որ կարէ
ասել՝ եթէ տէր է Յիսուս, եթէ ոչ ՚ի Հոգին սուրբ ։
Քանզի մարդ՝ յորում կատարին ՚ի նմա պարգևք Հո-
գւոյն, նա կարէ ասել ՚ի ձայն բարձր բարբառոյ՝ ե-
թէ տէր է Յիսուս ։

Թէպէտ և, ասէ, բաժինք շնորհաց և պաշտամանց
և զօրութեանց իցէ նա ձեզ, թէպէտ և իցէ բաժին ՚ի
մէջ շնորհաց և շնորհաց, այլ մի է Հոգի ։ Միում
տուեալ է բան իմաստութե̄, այս ինքն բան հանճա-

րոյ. միւսում տուեալ են հաւատք՝ մեռանել փոխանակ նոցա. և այլում տուեալ են շնորհք բժշկութե՟. միւսում տուեալ է զօրութի՟ քաջալերել զընկերս իւր 'ի ժամանակի փորձութե՟. և այլում մարգարէութի՟ յայտնել և ցուցանել՝ որ ինչ լինելոցն է յապայ ժամանակս. այլում ընտրութի՟ք հոգւոց, այս ինքն կարգք բարւոք եկեղեցւոյ. միւսում ազգս լեզուաց պէսպէս. և այլոց թարգմանութի՟ նոցուն իսկ լեզուաց: Այս ամենայն 'ի միջէ անտի Հոգւոյ է՝ որ բաշխէ և տայ ըստ կամաց իւրոց:

Դարձեալ առ ցուցանել 'ի ձեռն առակաց օրինակաց՝ որ 'ի մարմնոյն են: Զի թէպէտ և այս պարգևք ամենայն՝ որ 'ի միում ժամու չեն[1] ինչ պիտոյ, այլ իւրաքանչիւր 'ի նոցանէ յիւրում[2] ժամու պիտոյ են յոյժ: Թէպէտ և իցեն 'ի նոցանէ մեծամեծ քան զընկերս իւրեանց, որպէս զի պիտոյ պաշտօն նորուն մեծ են, այնպէս պիտոյ է գործ և նորուն փոքուն: Արդ թէպէտ և սփռեցան շնորհք Հոգւոյն 'ի վերայ Հրէից և հեթանոսաց և ծառայից և ազատաց, սակայն մի Հոգի արբաք մեք, և նովաւ 'ի պատճառս նորա եղեաք մեք ամենեքին անդամք Հոգւոյ:

Արդ ոչ կարեն պատուականք որ են 'ի մեզ, եթէ ոչ ընկալցին զյայտնութի՟ փոքուն՝ որ է 'ի մեզ: Զի զոր օրինակ ոչ կարէ ասել գլուխ ցոտս՝ թէ չէք ինչ[3] դուք ինձ պիտոյ. զի ահաւասիկ են 'ի մեզ անդամք՝ որ երևին թէ տկարագոյնք իցեն, և նոքօք կատարին պէտք. և այլք որ թուին թէ անարգ իցեն, նոցա աւելի ևս պարտիմք առնել պատիւ. սոյնպէս եթէ մեծ իցէ պարգևն, եթէ փոքր, և եթէ պատուական իցէ մարդն յորում կատարի 'ի նմա, և եթէ անարգ, խառնելով խառնեաց ա՟ծ զեկեղեցի, որպէս և զմարմին, և ետ աւելի պատիւ այնմիկ՝ որ նուազն է, զի մի ինչ հերձուածք եղիցին 'ի մարմին անդ եկեղեցւոյ, որպէս և ոչ յանդամս մարմնոյ հերձուած ինչ է:

Այլ քանզի այսուիկ նախանձէին նոքա, ել և ել առնէին զմիմեամբք, առ նա փոքրկայուցանել զնո-

1 Օր. էն: 2 Օր. յորում: 3 Օր. մի ինչ:

սա , այնոցիկ որ նոքօքն հպարտացեալ պարծէին . և մեծացուցէ քան զամենայն զսէրն , այն որ 'ի բազմաց անտի արհամարհեալ էր ։ Եթէ ունիցիք դուք , ասէ , նախանձել , ոչ , ասէ , փոքուքդ որ ոչդ են ձեր՝ յորում փակեալդ կայք , այլ ընդ մեծամեծս՝ յոր ցարդ ևս չև էք հասեալ 'ի նոսա ։ Ես ցուցանեմ ձանապարհ՝ որ տանի 'ի կեանս , որ լաւ է քան զայդ՝ յորում դուքդ փակեալ կայք ։

## ԳԼՈՒԽ ԺԳ

Ո՛ւնչ պարծանք են այնորիկ՝ որ առ 'ի ձեռն [1] Հոգւոյն խօսել 'ի մի լեզու կամ յերկուս ։ Զի եթէ զլեզուս մարդկան խօսիցիմ և կամ զհրեշտակաց , և սէր ոչ ունիցիմ , եղէ ես այնուհետև իբրև զպղինձ՝ զի հնչէ , կամ ծնծղայք՝ զի ղօղանջեն ։ Զի զոր օրինակ պղինձ կամ ծնծղայք զի անշունչ են , և օտարք են նոքա ձայնին և բարբառոյն՝ որ հնչէ 'ի նոցանէն , սոյնպէս և ամենայն որ խօսի լեզուաւ , յայնժամ զի ոչ գիտէ զինչ խօսի ինքն՝ պղնձոյն նմանի նա , զի զրկեալ է նա 'ի օգտութ̃է ձայնին ։

Եւ ընդդէմ այնոցիկ՝ որ մարգարէութ̃ն և գիտութ̃ն և հաւատովքն հպարտացեալ էին՝ ասաց . զի եթէ ունիցիմ ես զմարգարէութ̃իս ոչ իբրև զձերդ , այլ զի գիտեմ ես զխորհուրդս ամենայն՝ որ ձեզդ իցեն յայտնեալ , և տացի ինձ դարձեալ ամենայն գիտութ̃ի փոխանակ այնր փոքր մի շոգւոյ գիտուե̃՝ որ տուաւ ձեզ , և լինիցին յիս դարձեալ ոչ իբրև զայդ փոքր մի հաւատս զոր ունիք դուք , այլ զամենայն հաւատս մինչև զլերինս փոփոխելոյ , և սէր ոչ ունիցիմ , ոչ ինչ իսկ եմ ։

Եւ քանզի էին ոմանք՝ որ տրովք իւրեանց , և այլք վասն նեղութ̃ե զոր համբերէին վասն աւետարանին՝ հպարտանային 'ի վերայ ընկերաց իւրեանց , և ընդդէմ նոցա և ասաց . եթէ ջամբեմ ես զամենայն ինչս իմ աղքատաց , և մատնեմ զմարմինս իմ

1 Ցօրինակին 'ի յետոյն ։

'ի կիզումն, և սէր ոչ ունիմ, ոչ ինչ օգտիմ։ Այն է զոր ասացն տէրն նր, թէ "Մի, ասէ, առաջի մարդկան իբրև յաչս մարդկան առնիցէք զտուրս ձեր. ապա թէ ոչ՝ վարձս ինչ ոչ ունիք առաջի Հօրն ձերոյ յերկինս»։ Սէր ընդերկայնամիտ է և քաղցրանայ, զոր ինչ դուք առ միմեանս հակառակ դմին գործէք։ Սէր ոչ նախանձի, որպէս և դուքդ։ Սէր ոչ խնդրէ զիւր լաւն, այլ որ ինչ բազմացն լաւն է, զի կեցցեն։ Արդ եթէ զայս զոր համարեցայ ես՝ պաշտօն 'ի ձեզ առ չգոյի սիրոյ, զի՞նչ օգուտ իցէ ձեզ պարծանքն պարգևաց որով պարծիքն դուք։ Դարձեալ ասեմ, եթէ սէր երբէք ոչ անկանի. այս ինքն ոչ խափանի, որպէս խափանին պարգևքդ ձեր զոր ունիք դուք. զի մարգարէութիւնդ զոր ունիք դուք, խափանելոց է, և լեզուքդ դադարելոց են։

Զի թէպէտ և գիտացաք փոքր 'ի շատէ, որչափ հանդերձեալ է գիտել մեզ՝ գիտացաք մեք. այլ յորժամ եկեսցէ կատարումն, խափանեսցի այն՝ որ փոքր 'ի շատէն է։ Զի զոր օրինակ խափանեալ է խորհուրդ տղայութեան առ գիտութեանն զոր ունիս դու այսօր, նոյնպէս խափանելոց է գիտութիւնս այս մեր առ այն՝ որ հանդերձեալն է մեզ գիտել։ Այժմիկ օրինակաւ իբրև ընդ հայելի տեսանեմք. իսկ 'ի կատարածի՝ ճշմարտութիւն. այս ինքն դէմ յանդիման։ Արդ խելամուտ եմ փոքր 'ի շատէ. այլ 'ի կատարածի գիտացից ոչ որպէս գիտացին, այլ որպէս ծանեաւն զիս Ած 'ի ձեռն գնացից գործոցն իմոց։ Արդ քան զամենայն պարգևսդ որով պարծիք դուք դոքօք, հաւատք և յոյս և սէր կան մնան։ Զի մեծ է հաւատալ՝ թէ է Ած. յուսալ այնմ իմիք՝ յոր հաւատացն. և սիրել զպատուիրանս զայնոսիկ՝ որոյ պարգևացն նորա յուսամք մեք։

## ԳԼՈՒԽ ԺԴ

ԶՀԵՏ երթայք սիրոյ, և ապա զհետ շնորհաց Հոգւոյն, առաւել ևս զի մարգարէասջիք։ Զի որ խօսի 'ի լեզուս՝ ընդ Այ, այն որ գիտէն զինչ խօսի.

զի ոչ այլ ոք և ոչ ինքն գիտէ զինչ խօսի ։ Իսկ որ մար-
գարէանայն՝ մարդկան խօսի, զի լսեն և գիտեն՝ եթէ
շինութիւն և մխիթարութիւն և սփոփութիւն խօսի ։ Զի
որ խօսի լեզուաւ, զանձն իւր միայն շինէ, յայսմիկ՝
զի գիտէ նա թէ արժանի եղև պարգևացն Հոգւոյն ․
իսկ որ մարգարէանայն, զեկեղեցին ամենայն շինէ ։
Կամիմ եթէ ամենեքին արժանի լինիջիք խօսել
լեզուաւ, այլ առաւել ևս զի և մարգարէասջիք ․ զի
մեծ է շահիւք իւրովք որ մարգարէանայն, քան
զայն՝ որ խօսին լեզուաւ ։ Զի եթէ եկից ես առ ձեզ
լեզուօք խօսելով, որ օտար իցէ լսելեաց ձերոց, զի՞նչ
օգուտ եղէց ձեզ ․ ո՞չ ապա այնուհետև լինիցիմ ես
որպէս փող և քնար՝ որ անշունչք իցեն ։ Զի եթէ
ընտրութիւն ինչ բարբառոյն չառնիցեն, զիա՞րդ ծանի-
ցեն զփողոյն հարկանել, կամ զքնարին հնչել ։ Սոյն-
պէս և դուք եթէ ասիցէք բան ինչ լեզուով որ օտար
իցէ յոյնութեանդ ձեր, և լինիջիք դուք այնուհետև
իբրև ընդ վայր խօսեցեալք, և ոչ ընդ մարդկան ։
Զի այն՝ որ խօսին լեզուով, յաղօթս կայցէ, զի կա-
րող լինիցի մեկնել ՚ի ձեռն յոյն լեզուին Յունացն
զայն ինչ զոր խօսի օտար լեզուով ։ Զի պարգևք Հո-
գւոյն այսպէս էին, զի միում տուեալ էին ազգք լե-
զուաց, և այլում թարգմանութիւն լեզուաց, զի կա-
րօտ իցեն միմեանց ․ այս ինքն այն՝ զի որ խօսէրն,
այնու որ թարգմանէրն ․ և եկեղեցի երկոքումբք ։
Եթէ կամ, ասէ, յաղօթս ՚ի լեզու, հոգին իմ
կայ յաղօթս, այլ միտք իմ անպտուղ են ․ այս ինքն
Հոգին սուրբ որ խօսի, գիտէ զինչ խօսի յիս ․ այլ
միտք իմ զի ոչ գիտեն զինչ խօսի լեզուն, անպտուղ
են յայնմ աղօթից ։ Իսկ ընդէ՞ր ոչ խնդրեմ ես խըն-
դրուածովք գիտել զզօրութիւն լեզուին ․ և կացից յա-
ղօթս հոգւով, կացից յաղօթս և ընդ միտս իմ ։ Եւ
եթէ դարձեալ ՚ի ձեռն լեզուին զոր ասեր դու՝ օրհ-
նեսցես դու ՚ի հոգի քո, ագէտն որ օտար է լեզուիդ
քո, զիա՞րդ մարթէ ասել ՚ի քում գոհութեան անդ՝ ա-
մէն ։ Թէպէտ և դու բարւոք ասիցես, սակայն ըն-
կերն քո ոչ գիտէ զինչ դուն ասես ․ վասն այսորիկ
և ոչ շինի նա ։ Եւ գիտէք դուք՝ զի առաւել քան ըզ-
ձեզ խօսիմ ես լեզուով ․ այլ ես ոչ ինչ պարծեցայ

այսուիկ ։ Այլ ՚ի մէջ ժողովրդեան կամիմ բանս հինգ՝ օրինօք և խրատու խօսել և շահել, քան զբեւր բանս լեզուս խօսել. որ զի ոչ փառաւոր են, և զընկերս իմ ոչ շահին ։

Մի՛ տղայք լինիք դուք խորհրդովք ձերովք ընթանալ զկնի այնոցիկ՝ որ զանմեղս յողդողդեն, կատարելոց ինչ օգուտ ոչ լինին ։ Եւ յօրէնս գրեալ է, եթէ “Յօտար լեզու և ՚ի շրթունս օտարս խօսեցայց ընդ ժողովրդեանս ընդ այսմիկ. սակայն և այնպէս ոչ լուիցեն ինձ, ասէ տէր„ ։ Արդ եթէ վասն ժողովրդեանն այնորիկ տուան լեզուք, զի գիտասցեն ՚ի ձեռն լեզուացն զժամանակ աւետարանին նորոյ, լեզուք այսուհետև նշանակի վասն իցեն՝ ոչ հաւատացելոց, որպէս դուքդ էք, այլ թերահաւատից, այս ինքն հեբրայեցւոց բաժանելոց. այնոցիկ՝ որ ասացեալն է վասն նդ̃. ասէ. “Եւ ոչ այսպէս իցեն լեզուաց՝ լուիցեն ինձ, ասէ տէր„ ։ Իսկ մարգարէութիւն ոչ անհաւատից, այլ հաւատացելոց. զի եթէ ոչ հաւատան զայն ինչ զոր ասես դու, զիա՞րդ լսեն զայն ինչ զոր խօսիս դու ։

Ապա եթէ կայցէ ժողովուրդն ամենայն ՚ի մի տեղի, և ամենեքին լեզուս խօսիցին միանգամայն, տգէտք որ մտանեն անդր, ո՞չ որպէս ասացին առաքելոցն՝ թէ քաղցուալիցք են արբեալք, ասեն և վասն մեր՝ մոլեգնեալ իմն են ։ Ապա եթէ ամենեքին մարգարէ իցեն և շինիցեն, և գայցէ մտանիցէ ոք յանհաւատից կամ ՚ի տգիտաց, յանդիմանեսցի ՚ի մոլորութէ̃ իւրմէ և քննեսցի ՚ի չարեաց իւրոց զոր գործեաց, և գաղտնիք սրտի նորա յայտնեսցին ՚ի ձեռն մարգարէութէ̃ն՝ որ յայտնեն զգաղտնիս նորա, անկանի խոնարհ երկիր պագանէ և ասէ՝ եթէ արդարեւ ա̃ծ գոյ ՚ի սոսա. զի նա յայտնեաց սոցա զգաղտնիս, որ ՚ի ներքս ՚ի սրտի ծածկեալ էին ։

Արդ յորժամ ժողովիք դուք ՚ի սպաս պաշտաման սպասաւորութե̃ կամ ՚ի միաշաբաթւոջ, որ գիտիցէ սաղմոս՝ ասասցէ, կամ որ ունիցի վարդապետութի̃ ուսուսցէ. և այսպէս մի ըստ միոջէ խօսեսցին ամենեքին ՚ի շինուած եկեղեցւոյ ։ Եւ եթէ ՚ի լեզուս ոք խօսեսցի և ոչ ոք իցէ որ թարգմանիցէ, լուռ լիցի ՚ի

մէջ ժողովրդեանն. ընդ անձին իւրում խօսեսցի աղօթիւք ընդ ա͞ծ: Մարգարէք դարձեալ երկու կամ երեք խօսեսցին, և այլքն մեկնեսցեն. այս ինքն իմացուսցեն ժողովրդեանն զոր ինչ մարգարէք մարգարէացան: Զի[1] հոգի մարգարէութեան՝ մարգարէից հնազանդի. այս զի ինչ որ խօսեալ լինէր 'ի մարգարէէ անտի, 'ի միւսմէ մարգարէէ անտի մեկնեալ լինէին: Զի ոչ է ա͞ծ խռովութեան, այլ խաղաղութեան. այս ինքն ոչ անկարգութեան, այլ ըստ կարգի:

Եւ որպէս յամենայն եկեղեցիս սրբոց՝ կանայք ձեր յեկեղեցիս լուռ լինիցին: Ասեն բան. կին մի 'ի մարգարէից անտի 'ի ներքս յեկեղեցւոջն կորընթացւոցն խօսէր: Վասն այնորիկ ասաց. եթէ ոք ձեռն յանձին համարեալ իցէ մարգարէ լինել կամ հոգևոր, ծանիցէ նախ զինչ գրեցի ես առ ձեզ, զի տեառն պատուիրանք են. ապա եթէ ոչ՝ և ոչ ինքն երևեալ լինի առ տէր մեր: Արդ նախանձեցարուք ընդ մարգարէանալ, իբր ոչ արգելուցուք դուք զայնոսիկ՝ որ խօսին լեզուօք: Այլ ամենայն ինչ սգաստութ̃ և իմաստութ̃ և ըստ կարգի գործեցէք, որպէս և վայել է իսկ:

## ԳԼՈՒԽ ԺԵ

ԴԱՐՁԵԱԼ ասաց նա վասն յարութեան կենդանութեան տեառն մերոյ, այն որ երևեցաւ Պետրոսի և երկոտասանիցն, և երևեցաւ հինգ հարիւր և աւելի եւս եղբարց միանգամայն. զի 'ի նոցանէ բազումք են որ կան մինչև յօրս յայս՝ յորում այս ասացաւ: Եւ յետ երևելոյ Յակովբու և ամենայն առաքելոց, այս ինքն իւթանասունն և երկուցն, հուսկ յետոյ քան զամենեսին երևեցաւ և ինձ իբրև անարգի միոջ Առաքելոյ:

Այսուհետև եթէ ես և եթէ առաքեալքն ամենեքեան այսպէս քարոզեցաք վասն Քրիստոսի՝ եթէ յարուցեալ է 'ի մեռելոց: Զիա՞րդ ասեն ոմանք 'ի ձէնջ՝ եթէ յարութ̃ի մեռելոց չիք. զի եթէ յարութ̃ի մեռելոց չիք, այն որ և խաչելութիւն վասն նորա եղև,

1 Յօրինակին ոչ:

ապա և Քրիստոս չև է յարուցեալ, և ընդունայն են հաւատքն ձեր՝ որ 'ի տէր են, և դեռ անդէն 'ի նոյն մեղս կայցէք դուք. զի ոչ քաւեցայք դուք թերահաւատութ՟բ ձերով, զի թաղեցարուք դուք մկրտութ՟բ ընդ այնմիկ՝ որ մեռաւն և յարեաւ յաւուրն երրորդի: Եւ ըստ ձերոյ բանիդ՝ որք ննջեցին 'ի Քրիստոս մարտիրոսութ՟բն, և կորեան նոքա. յայնմիկ՝ զի չիք նոցա յարութ՟ի: Եւ եթէ այսու հալածական կենօքս միայն յուսացեալ եմք 'ի Քրիստոս, ահա ողորմելի են կեանք մեր քան զամենայն մարդկան՝ որ տառապեալ իցեն յաշխարհիս յայսմիկ: Ապա եթէ աստ 'ի խաչ ելեալ եմք պարհօք, և հալածեալ եմք, և անդ ինչ հատուցմանն ոչ գտանեմք, եթէ այդ այդպէս իցէ՝ կերիցուք և արբցուք, գոնեայ զաստենս ընկալցուք. զի ըստ ձերոց բանիցդ՝ ինչ աւելի քան զոր աստս է, չիք ընդունել մեզ:

Այլ Քրիստոս զի յարեաւ 'ի մեռելոց, զի եղիցի նա սկիզբն յարութ՟ե ամենայն մեռելոց: Զի որպէս եղև Ադամ սկիզբն մահու ամենայն կենդանեաց, եղև և տէր մեր սկիզբն կենդանեաց ամենայն մեռելոց: Այլ թէպէտ և կելով կեան նոքա, այլ իւրաքանչիւր որպէս գտանի ոք՝ այնպէս և կեայ: Նախ Քրիստոս. այս ինքն զի յարեաւ նախ Քրիստոս, և ապա յառնեն 'ի գալստեանն նորա քրիստոսեանքն: Եւ ապա լինի կատարած, յորժամ տացէ 'ի ձեռս զթագաւորութի՟ն այ Հօր: Ոչ եթէ զի Որդի ոչ է թագաւոր. զի եթէ Հայր թագաւոր է, և Որդի թագաւոր՝ որդի թագաւորին. այլ զի եղիցի գլուխ արքայութե՟ն նորոյ՝ Հայր:

Եւ ապա ըստ կարգի օրինի զկնի Հօր եդ զՈրդի: Յորժամ խափանեսցէ, ասէ, զամենայն զիշխանութիս և զպետութիս և զզօրութիս և զիշխանս հալածիչս աւետարանին, և զզօրութիս չարի կողման նախանձու: Զի պարտ է նմա[1] թագաւորել, մինչև դիցէ զթշնամիս իւր՝ այս ինքն մարմնաւորք և հոգեղէնք՝ 'ի ներքոյ ոտից նորա: Եւ յետին՝ այս ինքն յետ այսորիկ՝ խափանեսցի և մահ՝ թշնամին կենդանեաց մարդկան: Եւ զամենայն ինչ հնազանդ արար 'ի ներքոյ ո-

1 Օրինակին նման . որպէս և այլուր նոցան . գուցէ նմայն , նոցայն :

տից նորա 'ի կատարածի ։ Այլ յորժամ ասէ՝ թէ «Ամենայն ինչ հնազանդեալ է», և ուր ասացն՝ թէ «Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ իմմէ», այլ յորժամ ասէ՝ թէ տուաւ ինձ, մի ածեր զմտաւ՝ եթէ չէր տուեալ. ապա թէ ոչ՝ սուտ առնես դու զայն՝ որ ասէ, եթէ «Ամենայն ինչ որ Հօր է, այն իմ է». և զայն զմիւսն ևս, եթէ «Ամենայն ինչ որ իմ է, այն քո է. և որ ինչ քո է, այն իմ է» ։ Խօսեցաւ այսպէս առ մեզ 'ի պատճառս մարմնոյ, իբր ոչ եթէ այսպէս է վասն բնութե̃ ա̃ծութե̃ Որդւոյ ։

Այլ յորժամ ասէ. «Հնազանդեսցի նմա ա̃մ», յայտ է՝ եթէ հնազանդեալ է նմա ամենայն բայց յայնմանէ՝ որ հնազանդեցոյց նմա զամենայն ։ Ապա եթէ յայտ է՝ եթէ հնազանդեալ է նմա զամենայն, որպէս և ասացեր, ով տէր իմ Առաքեալ, զիա՞րդ ասես՝ եթէ յորժամ հնազանդեսցի նմա ամենայն ։ Ապա եթէ ոչ հնազանդեցաւ նմա ամենայն, զիա՞րդ ասես՝ եթէ հնազանդեալ է նմա ամենայն ։ Եւ եթէ հնազանդեալ է նմա ամենայն, զիա՞րդ ասես՝ եթէ յորժամ հնազանդեսցի նմա ամենայն, ապա և ինքն Որդի հնազանդեսցի այնմիկ՝ որ հնազանդեցոյց նմա զամենայն ։ Իսկ ո՞վ իցէ այն՝ որ համարձակիցի յասել՝ յորժամ հնազանդիցի Որդւոյ ամենայն, ապա շրջի հնազանդի և Որդի Հօր ։ Զի ահա իբրև զայս և 'ի թշնամւոյ անտի խօսեցեալ եղև 'ի լերին անդ, եթէ «Զայս ամենայն զթագաւորութիս և զփառս իւրեանց քեզ տաց, եթէ անկցես և խոնարհ երկիր պագցես ինձ» ։ Զի եթէ յորժամ հնազանդեսցի նմա ամենայն, ապա հնազանդի նմա, եթէ այդպէս է, այժմիկ ոչ է հնազանդեալ նա. և յորժամ հնազանդեսցի նմա ամենայն, փոխանակ այսոր շրջի հնազանդի նա այնմիկ՝ որ հնազանդեցոյց նմա զամենայն ։

Իսկ արդ մինչ հնազանդէր Հայր զամենայն ինչ Որդւոյ, ինքն Որդի ո՞չ կարէր հնազանդել իւր [1] զամենայն ։ Եւ սատանայ բաւական եղև հնազանդել զամենայն արարածս վասն սուտ յուսոյ, և Որդի ո՞չ կարէր հնազանդել իւր զամենայն ։ Այլ թէպէտ և

1 Յօրինակին զանձն իւր ամենայնի • ուղղեցաք ըստ յաջորդին ։

պատճառք այսր ամենայնի խոնարհութիւն է, այլ որպէս զի ոչ եթէ յորժամ հնազանդեսցի նմա ամենայն՝ յայնժամ հնազանդեսցի և Որդի Հօր, այն որ ՚ի սկզբանէ յաւիտենից առանց փոփոխելոյ է նա ընդ Հօր իւրում ՚ի ծնչութեն : Սոյնպէս և ոչ զի՝ ոչ հնազանդեալ է նմա ամենայն՝ ասեմք մեք. այլ հնազանդեալ է նմա ամենայն, և ոչ է հնազանդեալ նմա : Հնազանդեալ է ամենայն[1] աստուածութեն նորա. վասն այնր զի ասէ, եթէ "Ամենայն ինչ որ քո է՝ այն իմ է". բայց հնազանդին մարմնոյն. այն որ բնութեամբն իւրով հնազանդ իսկ էր, վասն ողորմութեան շնորհաց այնորիկ՝ հնազանդեցուցիչ վերնոց և ներքնոց արար զնա : Արդ յորժամ հնազանդի Որդւոյ այս ազատութիւն ապստամբ և ՚ի Հօրէ, նովաւ և ընդ նմին հնազանդի և Հօր. զի եղիցի նա Ած ամենայն յամենայնի. այս ինքն զի եղիցի Ած ՚ի մէջ ամենայնի, որպէս և է նա և տեղի ամենայնի : Իբրու զի և այսօր իսկ այսպէս է նա ՚ի ծածուկ և յայնոսիկ՝ որ ոչն կամին. այլ ՚ի կատարածի յամենայնի լինի նա յայտնապէս. զի ծագեն նովաւ արդարք իբրև զարեգակն, կամ աւելի քան զայս, որչափ բաւական լիցի բնութ մարդկեղէն ընդունել :

Բայց դարձեալ շրջեցաւ նա առ ճառսն իւր և ասէ. զի՞նչ գործեսցեն որ մկրտին վասն մեռելոց, եթէ մեռեալք ոչ յառնեն : Զի եթէ ոչ յառնեն, զի՞նչ շահի որ մկրտեն զնա. ընդէ՞ր մկրտէր նա ընդ նմա ՚ի մկրտութիւն : Եւ կամ ընդէ՞ր համբերեմք մեք հալածանաց, եթէ յարութի ոչ լինի : Նա և յեփեսոս գազանաց արկին զիս, զի՞նչ օգուտ էր ինձ զի լինէի ես կերակուր գազանաց, եթէ յարութի անդր՝ որպէս ասէք դուք՝ չեմ գալոց : Կերիցուք այսուհետև և արբցուք մինչ դեռ կենդանիքս եմք. զի կեանք խոստացեալք յետ անցաւորացս այսոցիկ չիք մեզ : Մի՛ խաբիք յետ այնոցիկ՝ որ ասեն ձեզ այսպէս. զի ապականեն զմիտս ձեր յստակս չարաչար պատմութիւնդ Յունաց : Զի ասէին՝ եթէ զիա՞րդ ասեն յառնեն մեռեալք, կամ որո՞վ մարմնով գան : Զի ահա մարմին նոցա որ անկաւ՝ մաշեալ և սպառեալ է :

1 Յօրինակին չէր Ածութեան :

Զօդեաց նդ̃ առաւել ՚ի սերմանեաց՝ որ ՚ի մահուան իւրում կեայ, և ոչ ինչ նման է սերմն նդ̃ բուսոյն. որ հատ մի լոկ մի ՚ի սերմանեաց սերմանես դու, այլ մծ̃ զգեցուցանէ սերմանն քում մարմին, որպէս և կամի: Այլ թէպէտ և զամենայն սերմանիսն բուսուցանէ, քանզի իւրաքանչիւր սերմանեացն զիւր մարմին տայ նոցա, այլ ոչ եթէ ամենայն մարմին թռչնոյ և գազանաց և մարդկան մի են՝ եթէ ՚ի միասին եկեսցեն յարութիւն անդր. Ա՛յլ մարմին է մարդկան՝ որ ստեղծաւ ՚ի ձեռս այ̃ և խոստացեալ է նմա յարութի, և այլ մարմին է անասնոյ և թռչնոյ և ձկան՝ որ պակաս են յայսմանէ. այլ մարմին է երկնաւորաց, այս ինքն որ գործեն զգործս երկնաւորս, և այլ մարմին է երկրաւորաց՝ որ գործեն զչարիս յերկրի: Որպէս աստղ քան զաստղ առաւել է լուսով իւրով, սոյնպէս երկնաւորք քան զերկրաւորս առաւել են անդ յարութեան մեռելոց:

Արդ սերմանին մարմինք ապականութք̃, և յառնեն առանց ապականութե. սերմանին անարգութք̃ մերկութե, և յառնեն փառօք. սերմանին տկարութք̃ մահուանն, և յառնեն զօրութք̃ յարութեն. սերմանի մարմին շնչաւոր, և յառնէ հոգեւոր. այս ինքն սերմանի ըստ նմանութե Ադամայ առաջնոյ, և յառնէ ըստ նմանութեն Ադամայ հոգեւորին: Որպէս մարդն հողեղէն, այս ինքն որ ՚ի գործս երկրիս զանգեալ են, սոյնպէս և հողեղէնքս. և որպէս երկնաւորն էր, սոյնպէս և որ գործովքն իւրեանց երկնաւորք են: Որպէս զգեցաք մեք ծննդեամբ զկերպարանս երկրաւորին, պատրաստեալ եմք զգենուլ յարութե անդ զկերպարանս զերկնաւորին:

Այլ քանզի ոչ միաբանէին աղանդք ուխտիցն Յունաց, որպէս և էին որ ասէին՝ թէ չիք յարութի, այսպէս էին որ ասէին՝ թէ չիք շունչ: Եւ վասն այսորիկ և ընդդէմ նոցա եւս ասէ. եթէ շունչ չիք, որպէս և ասէք դուք, այլ արդարութիւն որ յօրէնսն և յիրաւունս ձեր է՝ վկայէ վասն յարութեն եթէ է նա: Արդ որովհետև այսմ մարմնոյ որ երևիս՝ ապականութիւն յաւիտենից աւետարանեցէք սմա, և որ ապականելոց է՝ ժառանգել զայն ինչ որ ոչ ապականի՝ չէ հնար,

արդ ո՞ւր առնուն զհատուցումն իւրեանց այնոքիկ՝ որ նեղեցին [1] զանձինս իւրեանց աստ վասն ա՟յ. զի առհաշունչն՝ որ մարթ էր առնուլ զհատուցումն՝ չիք 'ի միջի. և մարմինս է՝ ապականութե յաւիտենից նիւթ արարէք զնա:

Արդ, ասէ, այս խորհուրդ է, զի ընտանեաց յայտնի, և ոչ արտաքնոց. հաւատացելոցս որ խոստովան լինի յարութեն անդր՝ ասեմ, և ոչ փիլիսոփայից՝ որ ուրացեալ են յարութե անտի մեռելոց: Ամենեքին ննջեսցուք. և այս բարւոք է վասն այնոցիկ՝ որ մնալոցն են 'ի գալուստն: Ամենեքին նորոգեսցուք. զի թէպէտ և արդարքն յառնեն 'ի նորոգումն փառաց, սակայն և մարմինք մեղաւորացն նորոգին. զի ոչ նովին ցաւովք և խնդութ իւրեանց յառնեն, այն է զի ասէ՝ յառնեն մեռեալք առանց ապականութե, և մեք նորոգիմք: Պարտ է այսմ մարմնոյ մահկանացուի զգենուլ զկենդանութի, զանմահութի. և այսմ մարմնոյ ապականութե զգենուլ զփառս զանապականութե: Եւ յորժամ զգեցցի մահկանացուս և ապականութիս զանմահութի և զանապականութին, կատարեսցի 'ի սմա բանն որ գրեցաւ վասն սորա՝ եթէ ընկլաւ մահ 'ի պարտութի յարութե: Արդ ո՞ւր է յաղթութի քո, մահ, որ յԱդամայ անտի մինչև յայս օր էր. և ո՞ւր է, մահ, խայթոց քո, այն որ սկիզբն արարին 'ի պտղոյ անտի ծառոյն: Այլ խայթոցք մեղաց օրէնքն, որ եդաւ տանն Ադամայ 'ի դրախտի անդ: Այլ շնորհք ա՟յ, որ ետուն մեզ յաղթութիւն յետ այսր ամենայնի պարտաւորութե. ոչ 'ի ձեռն մեր, և ոչ 'ի ձեռն մարգարէիցն փրկչաց մերոց, այլ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ:

## ԳԼՈՒԽ ԺԶ

ԻՍԿ վասն հաշուէին՝ այն որ 'ի սուրբսն է՝ որպէս հրամայեցի ես եկեղեցեացն Գաղատացւոց, սոյնպէս և դուք առնիջիք ըստ միում միում միաշաբաթւոյն:

[1] Յօրինակին գրեալ էր որ ունէղիցին:

Այն էր զոր ժողովէր յամենայն աշխարհաց՝ տալ տանել աղքատացն՝ որ էին յԵրուսաղէմ, որպէս հրաման ետուն նմա առաքեալքն ։ Դուռն մեծ և կարևոր՝ որ բացաւ նմա յԵփեսոս, կամ՝ ի ձեռն մարդկանն որ աշակերտեալ էին նմա, կամ ՝ի ձեռն հալածանացն որ ՝ի թշնամեաց անտի էր. զի յարեան ՝ի վերայ նորա ընկենուլ զնա անդ գազանաց ։

Այլ վասն տանն Ստեփանեայ դուք ձեզէն իսկ գիտէք, զի նոքա եղեն ինձ պտուղ ՝ի կողմանս աքայացւոց ։ Կամ աշակերտութ̃բ և կամ տրովք իւրեանց զոր տային տանել աղքատացն յԵրուսաղէմ ։ Զի ամենայն ինչ՝ ձեր փոխանակ լիցի, գործք իմ և անձն իմ և կեանք իմ՝ որ ՝ի Քրիստոս են ։ Ո՛ սիրոյն Առաքելոյ, որ առ ժողովուրդն իւր էր. ո՛ գթոյն նորա, որ առ հեթանոսս օտարս էր ։ Փոխանակ կենացն հեբրայեցւոց նզով լինել ՝ի Քրիստոսէ խնդրէր նա, և փոխանակ կենացն հեթանոսաց զգործս իւր և զանձն իւր և զկեանս իւր տայ նա ։

ԱՌ

# ԿՈՐԸՆԹԱՑԻՍ ԵՐԿՐՈՐԴ

ՀԱԼԱԾՈՒՄՆ մեծ անհնարին յարեաւ 'ի վերայ աւետարանին, և նեղեցան կորընթացիքն ըստ կարի իւրեանց. բայց Առաքեալ աւելի քան զկարն իւր: Եթող Առաքեալ զգործս նեղութե, որ պատեալ էին զնովաւ յասիացւոց անտի, և զՏիտոս 'ի մխիթարութի և 'ի քաջալերութի կորընթացւոցն փութայր նա առաքել: Այլ իբրև եկն նա առ 'ի նացանէն, և պատմեաց նմա վասն համբերութե նեղութե նոցա զուարթացաւ և ուրախ եղև, և գրեաց առ նոսա վասն նեղութե իւրեանց 'ի ձեռն Ապաղու. զի 'ի ձեռն մեծամեծ նեղութեց զոր տեսանեն 'ի նա, թեթևասցին յաչս իւրեանց նեղութիքն չափաւոր՝ որ պատեալ էին զնոքօք: Գրեաց դարձեալ՝ զի ներեսցեն և թողցեն նմա 'ի ձեռն երկրորդ թղթոյն, այնմիկ՝ զոր կապեացն առաջին թղթովն, համարձակ չարչարանօք և զեղջ և ապաշաւ մնօք զոր ոգեցաւ այնպիսին, և նեղութիքն որ պատեցին զկորընթացիսն՝ փորձեցաւ նա և ոչ շարժեցաւ կամ յողդողդեցաւ նա 'ի թիւրել 'ի հաւատոց անտի: Արդ վասն զղջանալոյ նորա, և վասն ժուժկալութե՛ որ եղև նա 'ի հալածանս, գրեաց նա՝ զի թողցեն նմա. ոչ իբրև բռնադատեր զնոսա, այլ իբրև խնդրեր և աղաչէր զնոսա:

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ Առաքեալ, ոչ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, այլ Յիսուսի Քրիստոսի 'ի կամաց այ. զի յայտնեսցէ զընտանութիւն, և հալածեսցէ զօտարութի:

Եւ Տիմոթէոս եղբայր ։ Խոնարհեցոյց զանձն իւր, զի զանուն իւր ընդ եղբօր 'ի Թղթի առ կորընթացիս հալածանս՝ գրեաց ։ Եկեղեցւոյդ ա՟յ՝ որ է 'ի Կորընթոս, որ նեղեցաւդ. և սրբոցդ՝ որ 'ի կողմանս աքայացւոցդ էն, որ համբերինդ և հալածեալդ եղէն ։ Շնորհք ընդ ձեզ և խաղաղութ՟ի յա՟յ Հօրէ մերմէ, այն որ արժանիին արար զձեզ լինել նմա յորդեգրութ՟ի. և 'ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, այն որ մերձեցոյց զձեզ և արար իւր ժառանգակիցս ։ Օրհնեալ է ա՟ծ Յիսուսի, վասն մարմնոյն. և Հայր գթութ՟եց, վասն որդեգրութ՟են ։ Իբրու յայնմիկ՝ զի ասաց վերագոյն՝ խաղաղութ՟ի յա՟յ 'ի Հօրէ մերմէ և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, և ոչ 'ի ձեռն տ՟ն մերոյ Յիսուսի Քրիստոսի, լուծաւ այն՝ զի ասէ. ա՟ծ Յիսուսի Քրիստոսի ։

Այն, ասէ, որ մխիթարեաց զմեզ յամենայն նեղութ՟եց մերոց ։ Կամ 'ի ձեռն աշակերտութ՟են՝ որ բազմանայր նոցա, կամ 'ի ձեռն զօրութ՟եցն և սքանչելեացն զոր գործէր 'ի ձեռս նոցա ։ Զի և մեք զայլ նեղեալս մխիթարեսցուք 'ի ձեռն բանիւն զոր լուեն 'ի մէնջ, և 'ի ձեռն համբերութ՟ե նեղութ՟են զոր տեսանեն 'ի մեզ. խնդրուածովքն այնուքիմբք, այս ինքն վասն խնդրուածոցն զոր խնդրեցաք մեք յա՟յ վասն ձեր, զի համբերել կարասջիք դուք իբրև զմեզ ։ Զի որպէս յաւելան չարչարանք Քրիստոսի 'ի մեզ, սոյնպէս 'ի ձեռն Քրիստոսի առաւելեցին խնդրուածքն մեր. այս ինքն բանայ դուռն այն իմիք՝ զոր խնդրեմք մեք ։ Զի եթէ նեղիմք մեք, վասն ձերոյ մխիթարութ՟ե և փրկութ՟ե նեղիմք մեք. այս ինքն զի տեսջիք և նմանողք եղիջիք մեզ ։ Եւ եղիցի ձեզ զօրութ՟ի համբերել չարչարանաց զնոյն չարչարանս, զոր և մեք աւելի քան զձեզ կրեցաք ։ Եւ յոյս մեր այս՝ որ վասն ձեր էր, հաստատուն եղև. քանզի գիտեմք մեք՝ եթէ կցորդ եմք չարչարանացն, նոյնպէս և մխիթարութ՟են լինիցիմք. այս ինքն ընդունելութ՟բ մխիթարութ՟ե ։

Օ այս ցուցանեմ ձեզ, եղբարք, վասն չարչարանացն՝ որ անցին ընդ մեզ 'ի կողմանս ասիացւոց, զի առաւել քան զկար մեր ծանրացաւ 'ի վերայ մեր ։ Եւ անձամբք անձանց մերոց վասն բազում տանջա-

նացն զմ ձիր մահու յանձինս մեր ընկալաք. զի մի եղիցուք մեք յանձինս ապաստան՝ թէ կարեմք համբերել մարմնով, այլ յԱծ՝ որ յարուցանէ զմեռեալս. այս ինքն զի կենդանացուսցէ զմեզ 'ի մեռելոց: Զի որպէս 'ի մեռելոց փրկեաց զմեզ և կեցոյց, այն որ յայնչափ մահուց՝ որ յարեան 'ի վերայ մեր՝ փրկեաց զմեզ, և առաւել ևս փրկեսցէ յայնցանէ որ յառնելոցն են՝ օգնականութեամբ աղօթից ձերոց: Զի 'ի բազմադէմ շնորհաց անտի առաւել յաճախեսցեն առ մեզ պարգևքն Այ. շնորհք՝ ոչ որ լինին 'ի մեզ վասն մեր, այլ շնորհք՝ որ գործին 'ի մեզ վասն բազմաց. զի փոխանակ մեր միայնոյ բազումք գոհասցին զնմանէ, վասն մեր 'ի բազմաց փառաւորեսցի նա: Զի պարծանք մեր ոչ եթէ յայլոց են՝ որ ոչ ճանաչեն զմեզ, այլ են պարծանք մեր վկայութիւն միտաց մերոյ. զի սրբութեամբ մարմնով և հոգւով որ ոչ են ինքք թաւալեալ, և արդարութեամբ՝ որ անխառնութեամբ ոչ աղտեղեալ, և շնորհօք՝ որ 'ի վերայ ամենայնի ողորմութեամբ սփռեալք մեք. արդ այսու ամենայնիւ շրջեալ եմք յաշխարհի: Եւ ոչ 'ի ճարտարութիւս մարմնաւորս երևեցաք մեք. այս ինքն ոչ կեղծաւորութեամբ և մարդկեղէն արուեստագիտութեամբ: Արդ ոչ երևեցաք մեք ուրեք այսպիսիք, և առաւել ևս առ ձեզ:

Զի ոչ եթէ այլ ազգ ինչ գրեմ զայս որ գործեցաւս 'ի մեզ՝ առ ձեզ, այլ զոր վկայէք դուք՝ զայն գրեմք առ ձեզ, զՈրդին Այ Յիսուս Քրիստոս՝ որ 'ի ձեռն իմ և Սեղբիանոսի և Տիմոթեայ քարոզեցաւ ձեզ: Ոչ զի 'ի միասին մոլին նոքա 'ի Կորընթոս. ոչ յայնմն և յաջն՝ քարոզեցաւ ձեզ, այլ յայնմն. այս ինքն բանիւ ճշմարտութեամբ: Զի ամենայն աւետիք Այ 'ի նմին իսկ յայնմն հաստատեցան. այս զի կատարեցան նոքա, և ոչ ստեցան: Վասն այսորիկ սոյն իսկ այս ամենայն ճշմարիտ նա ինքնին է ամէն 'ի մեզ 'ի փառս Այ. այս ինքն զի եղանէ զինի փառաւորութ Այ: Զի Ած է որ հաստատէ զմեզ ընդ ձեզ սիրով, և հաստատէ զՔրիստոս մեօք ընդ ձեզ զօրութեամբ. այն որ նա ինքնին օծ և դրոշմեաց զմեզ 'ի ձեռն ռաբունայինն Հոգւոյն զոր ետ 'ի սիրտս ձեր: Այլ ես վկայ զԱծ կոչեմ յանձն իմ, զի անխայեցի 'ի ձեզ. վասն այսո-

ըինկ ոչ եւս եկի ես 'ի Կորընթոս։ Այս ինքն վասն այնր թերութ՟ց՝ զոր անարգեալն և եպերեաց զնոսա առաջին թղթով՟ն։ Զի թէպէտ և տեարք հաւատոց ձերոց չիցեմք մեք, սակայն գործակից եմք ուրախութ՟ց ձերոց։ Զի հաւատովք հաստատեալ էք դուք. այս ինքն հաւատովք՝ զոր ետու ես ձեզ։

ԳԼՈՒԽ Բ

Ընտրեցի զնել 'ի սրտի իմում, զի մի միւսանգամ տրտմութ՟ք եկից ես առ ձեզ։ Զի եթէ ես մխիթարութ՟ս ձեր տրտմեցուցանեմ զձեզ, իսկ այն ո՞վ իցէ որ ուրախ առնիցէ զիս և զձեզ, եթէ ոչ զեղջ և ապաշաւ այնորիկ՝ որ տրտմեցաւն յինէն։ Եւ զայս զի գրեցի ես առ ձեզ 'ի թղթի անդ իմում յառաջնում, զի մի յորժամ գայցեմ՝ տրտմեցուսցեն զիս գործովք իւրեանց չարեօք. այն զի արժան էր նոցա ուրախ առնել զիս գործովք իւրեանց բարեօք։ Քանզի յուսացեալ եմ և գիտեմ՝ եթէ ուրախութ՟ս իմ այս, որ ուղիղ գործովքն այնորիկ՝ որ ապաշաւեաց, և ընկերաց իւրոց՝ որ խոնարհեցան, ամենեցուն ձեր է։ Ի բազում վշտաց որ պատեալ էին զինև և 'ի նեղութենէ սրտի զոր ունիմ ես առ ձեզ, գրեցի ես զայս առ ձեզ բազում արտասուօք 'ի ձեռն Ապաղոս։ Իսկ ոչ եթէ զի տրտմեցուցից զձեզ, այս ինքն ոչ զի վշտացուցից զձեզ նեղութ՟ք իմովք, այլ զի զսէր իմ գիտասջիք դուք զոր ունիմ ես առաւելապէս առ ձեզ։ Զի թո զի ես աղաչել. զի թէ ապրեցայց 'ի փորձանաց անտի՝ որ պատեալ են զինև, և հոգ յանձին առի ես վասն ձեր 'ի ձեռն թղթոյս գրել առ ձեզ։

Իսկ այն որ արար զտրտմութիւն, և առ զկին հօր իւրոյ, ոչ եթէ նա միայն տրտմեցոյց զիս. զի նա փոքր 'ի շատէ ըստ իւրում չափոյ տրտմեցոյց զիս։ Թերևս վասն առաջին յանցանաց նոցա ակնարկէ աստ, եթէ որպէս եթող նոցա, թողցեն և նոքա այնմ՝ որ յանցեաւն։ Այլ զի մի ծանր թուեցայց ես ձեզ ամենեցուն. կամ զի ոչ ասացից ընդդէմ ձեր ամենեցուն, կամ զի ոչ ծանրացուցի 'ի վերայ ձեր ամենեցուն 'ի

խնդրել անդ 'ի ձէնջ ամենեցուն ։ Շատ լիցի այնպիսւոյն պատուհաս՝ որ 'ի բազմաց անտի ընկալաւ․ պարտ և պատշաճ է ձեզ անխայել 'ի վերայ այնպիսոյն, վասն զի զատ և յատուկ է նա 'ի ձէնջ ամենեցուն ։ Եւ մխիթարեսջիք զնա 'ի ոգւոյ անտի և 'ի տրտմութենէ՝ զոր զգեցաւ նա յետ թողլոյն մերոյ առաջնոյ․ գուցէ յաւելու տրտմութենէ անտի որ եղև նմա, ընկղմիցի այնպիսին․ կամ որ նմա իսկ նմանն իցէ մտաց չարչարանօք ։ Նա և ես իսկ աղաչեմ զձեզ, զի հաստատեսջիք 'ի նա զսէր ձեր, այն որ զբազում ժամանակս ամփոփեցէք զնա 'ի նմանէ ։ Եւ առաւել զի գրեցի ես առ ձեզ վասն նորա, զի չափ առից ես զձեր՝ եթէ յամենայն 'ի հպատակութ̃ն կայցէք դուք ինձ․ այս ինքն զի որպէս լուարուք դուք ինձ առաջին թղթոյն, և զատէք մեկնեցէք զնա 'ի ձէնջ, և արդ լուիջիք ինձ, խառնեսջիք զնա ընդ ձեզ․ զի եթէ ինչ ումեք շնորհէք, առաւել և ես ։ Ապա եթէ և ես անխայեցի շնորհեցի ումեք 'ի ձեռն խնդրուածօքս զոր խնդրեցի ես 'ի ձէնջ, վասն ձեր առաջի Քրիստոսի շնորհեցի․ այս ինքն վասն սիրոյն Քրիստոսի ։ Զի ահ և երկիւղ՝ եթէ գուցէ ընկղմեսցի նա 'ի սատանայէ, քանզի չեմք ինչ անտեղեակ խորհրդոցն նորա․ զի և բազում տրտմութ̃ք, որպէս և պատիր ուրախութ̃ն, նոյնպէս գիտէ նա կորուսանել զմիտս ։

Այլ իբրև հասի ես 'ի կողմանս տրուացւոց յաւետարանն Քրիստոսի, և բաց ինձ դուռն աշակերտելոյ, ոչ եղև հանգիստ կատարեալ հոգւոյ իմոյ, զի ոչ գտի ես զՏիտոս զեղբայր իմ․ այլ հրաժարեցի ես զորս աշակերտեցին, և ելի ես 'ի կողմանս մակեդոնացւոց ։ Այլ ա̃յ շնորհքն լիցին՝ որ յամենայնի ընդ հուշակն հարկանէ զմէնջ 'ի Քրիստոս, ոչ յայտնութ̃ միայն, այլ հանապազորդ գործովք իւրովք որ առ մեզ են․ իբրև այն թէ յամենայն ժամ երևի նա մեզ, և յայտնի առնէ 'ի մեզ յամենայն տեղիս զհոտ անուշից գիտութ̃ե իւրոյ ։

Մինչև դեռ մեք 'ի կողմանս ասիացւոց 'ի մէջ հալածանաց եղեաք, 'ի կողմանս մակեդոնացւոց և ընդ ամենայն տեղիս բուրեաց 'ի պատճառս մեր հոտ անուշից գիտութ̃ե նորա ։ Զի հոտ անոյշ եմք մեք

ա̃յ 'ի Քրիստոս 'ի մէջ փրկելոցն և 'ի մէջ կորուսելոցն ։ Զի մեք իբրև առ 'ի մէնջ հոտ անոյշ եմք մեք կողմանցն երկոցունց, այնոցիկ՝ որ փոփոխիցին և աւարտին զմեզ իւրեանց հոտ մահու՝ իբրու էաք մեք հոտ կենաց նոցին իսկ որք հալածեննն զմեզ և մեռանին մեօք 'ի մահ, և այնոցիկ՝ որոց հոտ եմք մեք կենաց որ աշակերտին մեօք, և կեան մեօք 'ի կեանս ։ Որպէս և հոտ երկուց ծծոց, այսպէս բուրէր 'ի ձեռն զօրութե̃ցն և սքանչելեացն հոտ առաքելոցն՝ 'ի պատրաստի ունել նոցա աշակերտս, և հանդերձեալ նոցա հալածիչս ։ Զի մեք ոչ այնպէս եմք, որպէս և այլքն. այս ինքն որպէս և առաքեալքն սուտք՝ որ խառնեն զբանն ա̃յ ընդ ստու̃իս ։ Թէրևս նոքին իսկ այնոքիկ գրեցին զպրակսաւաթայսդ՝ որ խառնեալ և գրեալ են 'ի ճշմարտութենէ և 'ի ստութենէ ։ Այլ մեք ճշգրիտ զճշմարտութի̃ն զոր առաք յա̃յ, առաջի ա̃յ 'ի Քրիստոս խօսիմք ։

## ԳԼՈՒԽ Գ

Ու վասն այսորիկ դուք ձեզէն իսկ վկայէք, զի ոչ եթէ վերստին սկսանիմք զանձինս մեր ձեզ ընծայեցուցանել, և կամ խնդրել թուղթս յայլոց վ̃ձ ձեր ։ Այլ թուղթ մեր, այս ինքն քարոզութի̃ մեր՝ դուք ինքնին իսկ էք, և իբրև 'ի սիրտս մեր գրեալ է գիտուե̃ և իմաստուե̃՝ ընթերցեալք մեւք, առաջի ամենայն մարդկան յայտնեալք և հաստատեալք, զի էք դուք թուղթ Քրիստոսի. զի գործովք ձերովք իբրև 'ի միջոյ գրոց ահա աւասիկ քարոզի Քրիստոս՝ որ պաշտեցաւն մեւք. այս ինքն որ քարոզեցաւն 'ի ձեռն[1] մերում. այն որ գրեցաւն ոչ մելով կամ քարեղէն տախտակօք, այլ Հոգւով և 'ի տախտակս սրտի մարմնեղէնս ։

Յոյս մի զայսպիսի ունիմք մեք 'ի ձեռն Քրիստոսի առ ա̃ծ. իբր ոչ եթէ բաւական ինչ եմք խորհել իբրև 'ի մէնջ, բայց եթէ տուեալ լինի մեզ իմաստութի̃ յա̃յ,

1 Յօրինակին 'ի ձեռնին ։

խնդրել անդ 'ի ձէնջ ամենեցուն ։ Շատ լիցի այնպիսոյն պատուհաս՝ որ 'ի բազմաց անտի ընկալաւ . պարտ և պատշաճ է ձեզ անխայեալ 'ի վերայ այնպիսոյն , վասն զի զատ և յատուկ է նա 'ի ձէնջ ամենեցուն ։ Եւ մխիթարեսջիք զնա 'ի սգոյ անտի և 'ի տրտմութենէ՝ զոր զգեցաւ նա յետ թողլոյն մերոյ առաջնոյ . գուցէ յառաւել տրտմութենէ անտի որ եղև նմա , ընկղմիցի այնպիսին . կամ որ նմա իսկ նմանն իցէ մտաց չարչարանօք ։ Նա և ես իսկ աղաչեմ զձեզ , զի հաստատեսջիք 'ի նա զսէր ձեր , այն որ զբազում ժամանակս ամփոփեցէք զնա 'ի նմանէ ։ Եւ առաւել զի գրեցի ես առ ձեզ վասն նորա , զի չափ առից ես զձեր՝ եթէ յամենայն 'ի հպատակութ՟ե կայցէք դուք ինձ . այս ինքն զի որպէս լուարուք դուք ինձ առաջին թղթոյն , և զատէք մեկնեցէք զնա 'ի ձէնջ , և արդ լուիջիք ինձ , խառնեսջիք զնա ընդ ձեզ . զի եթէ ինչ ումեք շնորհէք , առաւել և ես ։ Ապա եթէ և ես անխայեցի շնորհեցի ումեք 'ի ձեռն խնդրուածօքս զոր խնդրեցի ես 'ի ձէնջ , վասն ձեր առաջի Քրիստոսի շնորհեցի . այս ինքն վասն սիրոյն Քրիստոսի ։ Զի ահ և երկիւղ՝ եթէ գուցէ ընկղմեսցի նա 'ի սատանայէ , քանզի չեմք ինչ անտեղեակ խորհրդոցն նորա . զի և բազում տրտմութ՟ք , որպէս և պատիր ուրախութ՟քն , նոյնպէս գիտէ նա կորուսանել զմիտս ։

Այլ իբրև հասի ես 'ի կողմանս տրովացւոց յաւետարանն Քրիստոսի , և բաց ինձ դուռն աշակերտելոյ , ոչ եղև հանգիստ կատարեալ հոգւոյ իմոյ , զի ոչ գտի ես զՏիտոս զեղբայր իմ . այլ հրաժարեցի ես զորս աշակերտեցին , և ելի ես 'ի կողմանս Մակեդոնացւոց ։ Այլ ա՟յ շնորհքն լիցին՝ որ յամենայնի ըղհռչակն հարկանէ զմէնջ 'ի Քրիստոս , ոչ յայտնութ՟բ միայն , այլ հանապազորդ գործովք իւրովք որ առ մեզ են . իբրև այն թէ յամենայն ժամ երևի նա մեզ , և յայտնի առնէ 'ի մեզ յամենայն տեղիս զհոտ անուշից գիտութ՟ե իւրոյ ։

Մինչև դեռ մեք 'ի կողմանս ասիացւոց 'ի մէջ հալածանաց եղեաք , 'ի կողմանս Մակեդոնացւոց և ընդ ամենայն տեղիս բուրեաց 'ի պատճառս մեր հոտ անուշից գիտութ՟ե նորա ։ Զի հոտ անուշ եմք մեք

ա̃յ 'ի Քրիստոս 'ի մէջ փրկելոցն և 'ի մէջ կորուսելոցն ։ Զի մեք իբրև առ 'ի մէնջ հոտ անոյշ եմք մեզ կողմանցն երկոցունց, այնոցիկ՝ որ փափոխիցին և արարին զմեզ իւրեանց հոտ մահու՝ իբրու էաք մեք հոտ կենաց նոցին իսկ որք հալածեն զմեզ և մեռանին մեօք 'ի մահ, և այնոցիկ՝ որոց հոտ եմք մեք կենաց որ աշակերտին մեօք, և կեան մեօք 'ի կեանս ։ Որպէս և հոտ երկուց ծծոց, այսպէս բուրէր 'ի ձեռն զօրութեցն և սքանչելեացն հոտ առաքելոցն՝ 'ի պատրաստի ունել նոցա աշակերտս, և հանդերձեալ նոցա հալածիչս ։ Զի մեք ոչ այնպէս եմք, որպէս և այլքն ․ այս ինքն որպէս և առաքեալքն սուտք՝ որ խառնեն զբանն ա̃յ ընդ սուտիս ։ Թերևս նոքին իսկ այնուքիկ գրեցին զպարակասաւաթայսդ՝ որ խառնեալ և գրեալ են 'ի ճշմարտութենէ և 'ի ստութենէ ։ Այլ մեք ճշգրիտ զճշմարտութի̃ն զոր առաքյա̃յ, առաջի ա̃յ 'ի Քրիստոս խօսիմք ։

## ԳԼՈՒԽ Գ

Ի՞ւ վասն այսորիկ դուք ձեզէն իսկ վկայէք, զի ոչ եթէ վերստին չսկսանիմք զանձինս մեր ձեզ ընծայեցուցանել, և կամ խնդրել թուղթս յայլոց վ̃ս ձեր ։ Այլ թուղթ մեր, այս ինքն քարոզութի̃ մեր՝ դուք ինքնին իսկ էք, և իբրև 'ի սիրտս մեր գրեալ է գիտու̃ք և իմաստու̃ք՝ ընթերցեալք մեւք, առաջի ամենայն մարդկան յայտնեալք և հաստատեալք, զի էք դուք թուղթ Քրիստոսի ․ զի գործովք ձերովք իբրև 'ի միջոյ գրոց ահա աւասիկ քարոզի Քրիստոս՝ որ պաշտեցաւն մեւք ․ այս ինքն որ քարոզեցաւն 'ի ձեռն[1] մերում ․ այն որ գրեցաւն ոչ մրով կամ քարեղէն տախտակօք, այլ Հոգւով և 'ի տախտակս սրտի մարմնեղէնս ։

Յոյս մի զայսպիսի ունիմք մեք 'ի ձեռն Քրիստոսի առ ա̃ծ ․ իբր ոչ եթէ բաւական ինչ եմք խորհել իբրև 'ի մէնջ, բայց եթէ տուեալ լինի մեզ իմաստութ̃ յա̃յ,

1 Յօրինակին 'ի յետնին ։

այն որ արժանիս արար զմեզ լինել պաշտօնեայք նորոցն կտակարանացն. ոչ այնու մովսէսեան գրովն, այլ Հոգւովն. այս ինքն որ 'ի ձեռն գործոց Հոգւոյն քարոզի: Զի գիրն սպանանէ 'ի ձեռն պատժոյն՝ որ գրեալ են 'ի նմա, բայց Հոգին կեցուցանէ. այս ինքն աւետարանն կեցուցանէ երկայնմտութեամբ՝ որ ներէ նոցա:

Զի եթէ պաշտօն մահուն, վասն զի սպանանէր նա արդարութեամբ իւրով, նոյն իսկ այն որ գրեցաւ և կարգեցաւ 'ի տախտակս քարեղէնս, յայնչափ յահագին փառս եհաս, այս ինքն փառօքն զոր սգեցեալ էր և իշխանէր՝ որ բերէրն զնա, ո՞րչափ ևս առաւել պաշտօն Հոգւոյն եղիցի փառօք, որ մեծ է քան զառաջինն: Եւ եթէ պաշտօն դատապարտութեան, այս ինքն զի պահանջէր նա զպարտիսն՝ 'ի փառս եղև, ո՞րչափ ևս առաւել ծաղկեսցէ պաշտօն արդարութեան 'ի փառս, այս ինքն պաշտօն շնորհաց: Քանզի ոչ եթէ փառաւորեալ լինի փառաւորեալն յայսմ 'ի կողմանէ վասն առաւելութեան փառաց, այս՝ զի յաչս փառացն զոր հանդերձեալ են առաքեալքն ընդունել, իբրև զոչ ինչ համարեալ են փառքն՝ որ տուան յիջանել անդ օրինացն: Զի եթէ որ խափանելովն և անցանելովն է, այս ինքն թէ օրէնքն որ անցին, և Մովսէս որ խափանեցաւ՝ փառօք երևեցաւ, ո՞րչափ ևս առաւել որ կալոցն և մնալոց է յետ յարութեան յաւիտենից՝ առաւել ևս իցէ նա փառօք յաւիտենից:

Արդ վասն զի ունիմք մեք զայսպիսի յոյս վասն փառացն մշտնջենաւորացն, վասն այսորիկ բազում համարձակութեամբ, այս ինքն դուզնաբար շրջիմք մեք: Եւ չեմք ինչ կարօտ երևելոյ, որպէս և Մովսէսն՝ այն որ արկանէրն զքողն 'ի վերայ երեսաց իւրոց, զի չկարէին հայել որդիքն Իսրայէլի յերեսսն Մովսէսի 'ի կատարած խափանելոյն. քանզի կուրացան միտք իւրեանց, և ոչ կարացին հայել 'ի խորհուրդսն՝ որ էին յօրէնսն նոցա: Զի մինչև յայս օր յորժամ ընթեռնուն զհին կտակարանս, նոյն քող ձգեալ է 'ի մէջ երեսացն Մովսէսի և աչաց նոցա: Նոյն իսկ քող ձգեալ է 'ի մէջ գրոյն Մովսէսի և մտաց նոցա. և վասն այնորիկ ոչ երևի նոցա՝ եթէ 'ի ձեռն Քրիստոսի խափանելոց է, այս ինքն կատարելոց է:

Այլ մինչև յայսօր որչափ և կարդան զՄովսէս տեսօղք. զի կոչեցան կտակարանք հինք յանուն ծառայի, որպէս և կոչեցան գիրքն այլք յանուն մարգարէիցն որ մարգարէացան զնոսա: Արդ զի հաւասարեցան գիրք Մովսէսի ըստ մարգարէիցն ընկերացն իւրոց, մեծացան աւետիքն Որդւոյ քան զմարգարէիցն, և աւետարանն տեառն քան զքարոզութ՟ ծառայիցն: Այլ յորժամ կարդան, ասէ, զՄովսէս, այս ինքն զգիրսն Մովսէսի, առագաստեալ են սիրտք նոցա ծածուկ քօղովն փոխանակ յայտնի քօղոյն՝ որ դարձաւն յաչաց նց՟: Եւ յորժամ դարձցին առ տէր, զոր օրինակ յորժամ հայէր Մովսէս առ ած՟՝ 'ի բաց առնոյր զքօղն յերեսաց իւրոց, սոյնպէս և 'ի մտաց անտի նոցա բառնայ, յորժամ դարձցին և հաւատասցեն 'ի տէր: Զի տէր Հոգի սուրբ է. այս՝ զի ոչ է նա կապեալ և արգելեալ 'ի միում տեղւոջ: Եւ ուր Հոգին տեառն է, անդ ազատութ՟ի է. այս ինքն նորին ազատութ՟է է գտանել յամենայն տեղիս՝ ուր և իցէ տէր: Այլ մեք ամենեքին բացօք երեսօք, որ ոչ ծածկեալ են իբրև զերեսն Մովսէսի, զի զփառսն տեառն զծածկեալսն իբրև ընդ հայելի տեսանեմք, և 'ի նոյն կերպարանս նորոգիմք մեք. այս ինքն սպասեալ ակն ունիմք ընդունել 'ի փառաց 'ի փառս. այս ինքն 'ի փառաց անտի որ կորեան 'ի դրախտի անդ, 'ի փառսն զոր հանդերձեալ եմք մեք ընդունել յարքայութ՟է: Որպէս և 'ի տեառն Հոգւոյն. այս զի 'ի ձեռն գործոց ահա վկայէ վասն որոյ իրիք մեքս խօսիմք:

## ԳԼՈՒԽ Դ

ՎԱՍՆ այսորիկ ունիմք մեք զպաշտօնս զայս, և հանապազօր չարչարիմք վասն սորա. վասն զի գտաք մեք զողորմութ՟ի, զի դառնայցեմք անդրէն 'ի տեղին զոր կորուսաք: Այլ հրաժարեմք յամօթալից խաբէութենէ անտի յայնցանէ՝ որ ոչն իշխէին օրէնքն 'ի վերայ նոցա: Եւ ոչ գնասցուք մեք խորամանկութ՟բ, և ոչ նենգեսցուք զբանն ած՟յ, որպէս և սուտ առաքեալքն. այլ յայտնութ՟բ և ստուգութ՟բ, այն որ

եղև 'ի վերայ իմ 'ի ճանապարհի անդ Դամասկեայ, ընծայեցուցանեմք զանձինս մեր. այս ինքն զճշմարտութի̃ մեր՝ առ ամենայն խորհուրդս բաժանեալս մարդկան։ Զի ոչ է ծածկեալ յումեքէ աւետարանն մեր. և եթէ իցէ ևս ծածկեալ, յայնցանէ իցէ ծածկեալ՝ որոց ա̃ծ ժամանակաց այսոցիկ, այս ինքն մամոնայ ժամանակաց այսոցիկ կուրացոյց զմիտս նոցա, զի մի՛ ծագեսցէ 'ի նոսա լոյս աւետարանին՝ որ քարոզի նովաւ փառքն Քրիստոսի. այս ինքն չարչարանքն Քրիստոսի, որ է ինքն պատկեր կերպարանաց ա̃յ։ Զի ոչ եթէ զանձինս ինչ քարոզեմք յաշխարհի, այլ զՅիսուս Քրիստոս զտէր. իբրու վասն անձանց մերոց չարչարանօք մերովք, և 'ի ձեռն նշանաց մերոց քարոզեմք մեք՝ եթէ ծառայք նորա եմք։ Զի ա̃ծ որ ասաց յաւուրն առաջնում յարարածոց՝ 'ի խաւարէ անտի որ ծածկեալ ունէր զգործս՝ լոյս ծագեսցէ մաշիչ և սպառիչ խաւարի, նա էր՝ որ ծագեաց 'ի սիրտս մեր, զի լուսաւորեսցուք գիտութ̃բ մեք՝ որ զրկեալս էաք յամենայն գիտութե̃նց. վասն լուսաւորութ̃ե, ասէ, գիտութ̃ե փառացն, ոչ երեսացն Մովսէսի, այլ երեսացն Քրիստոսի։

Ի յաւուհետև ունիմք մեք զգանձս զայս զծածուկ յամանս խեցեղէնս. այս ինքն է՝ տուան մեզ այս պարգևք 'ի ձեռն մարմնոյն Քրիստոսի։ Զի առաւելութի̃ զօրութ̃են իցէ յա̃յ, և ոչ 'ի մէնջ. այս ինքն զի առ 'ի նմանէ իցէ առաւելութի̃ և կատարումն մեր, և ոչ իբրև 'ի գործոց մերոց։ Յամենայնի նեղիմք մեք, այլ ոչ նուաղիմք. զի վասն յուսոյն կենաց խոստացելոց ոչ նուաղիմք մեք։ Եթէ կարօտանամք ինչ, այլ ոչ տարակուսիմք. զի ոչ եթէ վասն չարեաց ինչ տարակուսիմք մեք։ Եթէ հալածիմք, այլ վասն զօրութ̃են պահպանութ̃են [1] որ էր ընդ մեզ՝ ոչ լքանիմք։ Եւ ոչ դարձեալ յաշակերտութ̃է անտի մերմէ լքանիմք մեք. զի մեծութ̃բ մեծացուցանեն զաշակերտութի̃ն մեր 'ի ձեռն այսորիկ։ Եթէ չարչարիմք, այլ ոչ սատակիմք. զի զբազումս գտանեմք մեք։ Յամենայն ժամ զմահ չարչարանացն տեառն մերոյ 'ի մար-

1 Յօրինակին պահպանութենէն։

մինս մեր կրեսցուք․ զի վասն զի անմահ կեանքն Յիսուսի 'ի մահկանացու մարմինս մեր յայտնեսցին։ Այսուհետև մահ 'ի մեզ զօրանայ, և կեանք 'ի ձեզ․ այս ինքն 'ի մեզ հզօրանայ մահ յայտնի, և 'ի ձեզ կեանք 'ի ծածուկ։

Արդ ունիմք մեք զնոյն հոգի հաւատոյ, զմի խորհուրդ կալցուք ամենեքեան․ որպէս և գրեալ է․ ասէ․ "Հաւատացի զոր և խօսեցայ"։ Եւ մեք հաւատամք, քանզի և խօսիմք ևս․ և զնոյն զայն ինչ՝ որ հաւատացաւն մեզ, քարոզեմք մեք։ Զի գիտեմք՝ եթէ որ յարոյց զտէր մեր Յիսուս 'ի մեռելոց, և զմեզ ընդ Յիսուսի․ այս ինքն որպէս յարոյց նա զՅիսուս, յարուսցէ և զմեզ, և յանդիման կացուսցէ, և հաստատեսցէ զմեզ ձեօք հանդերձ․ կամ զի հաստատեսցէ զմեզ և զձեզ, կամ զի հաստատեսցէ զաւետարանն մեր 'ի սիրտս ձեր։ Այս ինքն զի ամենայն ինչ որ եղև, վասն հեթանոսաց եղև․ զի փոխանակ շնորհաց՝ որ եղև միում ժողովրդեանն և 'ի միջէ ժողովրդենէ անտի փառաւորէր, շնորհքն յաճախեսցեն 'ի բազմաց գոհութենէ անտի, յաւելլեսցին 'ի փառս ա՟յ։ Վասն այսորիկ ոչ ձանձրանամք հալածանօք արտաքնոց, և նեղութ՟ք անձանց մերոց։ Զի թէպէտ և արտաքին մարդկութիւն մեր ապականի պահովք և տքնութ՟ք և հանապազորդ վիրօքս՝ որ լինին 'ի սմա, այլ ներքինս նորոգի օր քան զօր։ Զի թէպէտ և այժմիկ սակաւիկ մի նեղիմք մեք չարչարանօք և տանջանօք, այլ փառքն զոր ժառանգելոցն եմք՝ յաւիտենից են։ Քանզի ոչ գիտեմք մեք դիտել զայս՝ որ երևիս, քանզի ժամանակեան է․ այլ զայն՝ որ ոչն երևի, որ թոշնի յաւիտենից։

ԳԼՈՒԽ Ե

ԶԱՅՍ գիտեմք՝ զի այս որ երկրաւոր տաճար շինուածոց մերոց է, զի նա է մարմին մեր, քակելոց է․ զի մեք շինած յերկինս ունիմք ա՟ծ, այս ինքն ընդ փառսն զոր կորոյս Ադամ․ այն որ ոչ թէ 'ի ձեռս ստեղծեալ իբրև զմարմին, և ոչ եթէ ժամանակեան

է մնալոց մեզ, որպէս և առ Ադամն, այլ տաճար է նա յերկինս. այս ինքն երկնաւոր է, որ կալոց մնալոց է 'ի մեզ յաւիտեանս յաւիտենից։ Եւ վասն այն բնակու֊թեան որ յերկինս է՝ զոր կորուսաքն, փափագեմք ագե֊նուլ։ Եւ երանի թէ յորժամ մերկացեալն իցեմք. այս ինքն յորժամ մեռեալն իցեմք, և յարուցեալ ոչ մերկ գտանիցիմք որպէս տուննն Ադամայ, զի կորու֊սին։ Քանզի որ եմք ընդ յարկաւս ընդ այսուիկ, այս ինքն մարմնովս, տաղտկամք, ծանրացեալ եմք և աս֊տէն թաթաւիմք. քանզի ոչ կամիմք մերկանալ, այլ զայս 'ի վերայ այնր ագենուլ. այս ինքն զի 'ի կեանս մեր ագեցցուք զփառս, և ընկղմեսցի մահկանացուս մեր 'ի կեանսն։ Եւ այն որ պատրաստէ մեզ զայս 'ի կատարածի, ա̃ծ է այն՝ որ ետն իսկ մեզ զառհաւատ֊չեայն Հոգւոյն իւրոյ։ Զի զոր օրինակ արժանի եղեն մարմինքս մեր լինել բնակութեան Հոգւոյ նորա, սոյն֊պէս արժանիս առնէ զնոսա 'ի կատարածի. զի և ընդ փառսն յաւիտենից ագեցցին նոքա։

Արդ մի այսուհետև տրտմեսցուք մեք՝ զի մեռա֊նիմք. քանզի գիտեմք ստոյգ՝ եթէ որչափ յամեմք 'ի մարմնի աստ, օտարանամք մեք 'ի տեառնէ. այս ինքն յայտնի անտի տեառն մերոյ։ Զի հաւատովք գնամք, և ոչ կարծեօք. զայս զի թէպէտ և հաւա֊տովք մերովք որ 'ի նայն են՝ ընդ մեզ է նա 'ի ծա֊ծուկ, այլ տեսլեամբ 'ի ծածուկ է նա 'ի մէնջ։ Վասն այսորիկ համարձակիմք և հաճեալ եմք առաւել ե֊լանել 'ի մարմնոյ աստի, զի մտցուք առ ա̃ծ և տես֊լեամբ ևս։ Վասն այսորիկ և առատանամք ևս. զի եթէ ելանիցեմք և եթէ մտանիցեմք, հաճոյ լեթ իցեմք նմա. այս ինքն գործովք՝ որ 'ի կեանս մեր գործեմք մեք, և չարչարանօք մարտիրոսութեան որ յելանելն մերում կատարի մեզ։ Քանզի էին ոմանք զի 'ի ժամ նշանացն առաքելոցն մերձենային 'ի նոսա և խոստովան լինէին. և 'ի ժամ չարչարանաց և տան֊ջանաց նոցա երկնչէին և փախչէին 'ի նոցանէ։

Այս է, զայս զոր գրեմք մեք առ ձեզ, ոչ եթէ զանձինս ինչ ընծայեցուցանեմք ձեզ, այլ պատճառս իմն տամք ձեզ զպարծանաց վասն մեր, զի ունիջիք առ այնոսիկ՝ որ առ աչսն պարծիցին. այս ինքն զի

յայտնեօքն պարծին, իբրու հեռի էին նոքա 'ի գործոցն ծածկելոց ։ Զի եթէ առանցաք ինչ, այն առ ա̃ծ քանք․ և եթէ հաստատուն կամք 'ի միտս, այն ձեզ ։ Այս ինքն թէ չարչարիմք մեք, այս ուրախ առնացէ զաստուածութիւն՝ որ ուրախ լինի ընդ չարչարանս․ և եթէ նշանօք առաքինանամք, այս ուրախ արասցէ զանմեղութիւդ ձեր՝ որ խնդայ ընդ առաքինութիս ։ Զի սէրն Ք̃ի՝ որ մեռաւ վասն ձեր, ստիպէ զմեզ խորհել զայս, եթէ որպէս ա̃ծ փոխանակ բազմաց մեռաւ, և բազումքն որ ապրեցան յայտնի մահուանէ անտի, մեռցին 'ի ցանկութեց անտի և վասն աւետարանին նորոյ․ զի մարդկեղէն մահուամբն իւրեանց հատուսցեն Որդւոյ, այնմիկ՝ որ 'ի վերայ նոցայն մեռաւ և յարեաւ ։

Այլ զի փակեսցէ զդուռն ընդդիմասուտ Քրիստոսիցն՝ որ գալոցն էին՝ ասաց ։ Այսուհետև մեք զոք ոչ գիտեմք ամենևին մարմնով․ զի թէպէտ և գիտէաք մարմնով, զՔրիստոս գիտէաք․ այլ այսուհետև զայլ ոք եթէ եկեսցէ, ոչ գիտեմք զնա Քրիստոս ։ Զի նա ինքնին հաստատեաց 'ի մեզ զբանն հաշտութե, և լինել մեզ վասն Քրիստոսի պատգամաւոր ։ Քանզի չէ ինչ մարթ դարձեալ միւսանգամ վերստին գալ առ ձեզ Քրիստոսի մարմնով, ահաւասիկ եկաք մեք առ ձեզ պատգամաւորք խաղաղութե փոխանակ Քրիստոսի ։ Այլ ոչ եթէ պատգամաւորք միայն հաշտութեան եմք մեք, այլ բարեխօսք ևս ։ Եւ զոր օրինակ Քրիստոս մեւք աղաչեաց զձեզ, և վասն Քրիստոսի աղաչեմք զձեզ մեւք, հաշտեցարուք ընդ ա̃յ ։ Զի այն որ ոչն գիտէր զմեղս, զի ոչ գործեաց նա զմեղս, վասն ձեր մեղս արար զնա, այս ինքն խաչ արար զմարմին նորա, զի դուք լինիջիք ոչ մեղք՝ որպէս էիքն իսկ, այլ արդարութիւն՝ որ չէիք ։

ԳԼՈՒԽ Զ

ԱՅԼ թէպէտ և աղաչեցաք զձեզ մեւք վասն Քրիստոսի, և Քրիստոս մեւք աղաչեաց զձեզ, արդ և անձամբք մերովք աւասիկ աղաչեմք զձեզ՝ մի ընդու-

նայն զշնորհսն ա՟յ ընդունիջիք դուք. այն որ յայս ամենայն չարչարանս եկին վասն սիրոյ ձերոյ, ընկալարուք զմեզ և կեցջիք։ Քանզի այս է ժամանակ ընդունելի զոր մարգարէքն մարգարէացան վասն սորա. և այս է օր փրկութե՟, զի ՚ի սմա ՚ի ծածուկ մահուանէ անտի ապրեցայք դուք, որպէս և գիրք քարոզեցին վասն սորա։ Եւ մի՛ ինչ ՚ի մի իրս ումեք դնիցէք գայթագղութի՟, զի մի՛ հայհոյեսցի պաշտօն մեր, այս ինքն աւետարանութի՟ն մեր. այլ յամենայնի ընծայեցուցուք զանձինս մեր գործովք և ճշմարտութ՟բ իբրև զպաշտօնեայս Քրիստոսի։

Ո ՚ի պարտ և պատշաճ է լինել ՚ի մեզ համբերութիւն՝ բազում քան զամենայն հանգիստս արտաքինս մարմնոց մերոց, և քան զչարիս՝ որ բղխեն յանձանց մերոց, ՚ի նեղութիս, ՚ի վիշտս, ՚ի բանդս հալածչաց, ՚ի խռովութիս յիշխանաց, ՚ի վաստակս ճանապարհի, ՚ի քարոզել զաւետարանն, և ՚ի տքնութիս աղօթից, և ՚ի պահս կերակրոց, և ՚ի սրբութիս անձանց, և ՚ի գիտութիս ճշմարտութե՟, և յերկայնմտութիս, և ՚ի քաղցրութիս առ միմեանս, և ՚ի Հոգի սրբութե՟, այս ինքն ՚ի գործս Հոգւոյն, և ՚ի սէր առանց երկմտութե՟, և ՚ի բանս ճշմարտութե՟ առ արտաքինս և առ ներքինս, և ՚ի զօրութի՟ ա՟յ. այս ինքն ՚ի ձեռն մեծ օգնութե՟ն ա՟յ։ Իսկ վասն զինուն արդարութե՟ որ ընդ աջմէն և ընդ ահեկէն է, այս ինքն առ որդիսն աջու, և առ որդիսն ձախու, փառօք և անարգութ՟բ. այս ինքն նշանօք և հալածանօք. իբրև գոհութ՟բ և պարսաւանօք. գոհութ՟բ առ ՚ի բարեկամաց, և պարսաւանօք առ ՚ի թշնամեաց. իբրև մոլարք կարծեալ եմք, իբրու ճշմարիտ եմք. իբրու անծանօթք ՚ի ժամ հալածանաց, և ծանուցեալք ՚ի ժամ նշանաց. իբրև մահկանացուք ՚ի հալածանաց, ահա աւասիկ կենդանի եմք ՚ի տէր մեր. իբրև խրատեալք յապականութիւնս, այլ ոչ եթէ մահապարտեալք. իբրև տրտմեալք թուիմք ՚ի ժամ չարչարանաց, այլ ՚ի ներքոյ հանապազ ուրախ եմք. իբրև տնանկք թէ չիցէ ինչ մեր, և զբազումս ծածուկ կենօքն մեծացուցանեմք մեք. իբրու թէ ոչ ինչ ունիցիմք մեք յաշխարհի, և զամենայն ինչ ունիմք մեք իշ-

խանութեմբ. զի և յերկինս և յերկրի ունիմք մեք։

Բերանք մեր բացեալ են առ ձեզ. այս ինքն բերանք մեր համարձակ որտիւք մերովք սփռեալ կան առաջի ձեր, կորընթացիք։ Ոչ ինչ այսուհետև նեղիք դուք 'ի մէնջ. այլ թէ նեղիցիք ևս, 'ի գութս ձեր նեղիք դուք սիրել զմեզ։ Եւ քանզի իբրև որդիք սիրեցէք զմեզ, հատուցումն մեծ զորդւոց պարտիմք ձեզ։ Արդ ընդարձակեցարուք դուք. այս ինքն անմեղք եղերուք, և մի լինիք բաժանորդք այնոցիկ՝ որ քննեն, այլ հաւատացելոցն. քանզի զոր օրինակ չիք հաղորդութիւն արդարութեան ընդ անօրէնութիւն, և ոչ լուսոյ ընդ խաւարի, և ոչ Յիսուսի Քրիստոսի ընդ սատանայի, նոյնպէս չիք մասն և բաժին հաւատացելոյն ընդ այնմիկ՝ որ կամակորին և ոչ հաւատայ։ Վասն այսորիկ ելէք 'ի միջոյ նոցա և մեկնեցարուք, որպէս ասաց Եսայի. և պղծուն, այս ինքն և 'ի պիղծ պաշտօնէն զոհից մի մերձենայք։ Եւ ես ընկալայց ըզձեզ, զի խոտեալք և անարգեալք էիք. և եղէց ձեզ հայր, զի երբեմն տարագիրք էիք. և եղեսջիք դուք ինձ յորդիք և դստերք, փոխանակ զի դառնացուցին զիս և նախանձ արկին ինձ օտարօք որդիքն առաջինք։

## ԳԼՈՒԽ Է

Արդ որովհետև և զայս աւետիս ընկալաք մեք, սիրելիք, յաւուրց անտի Եսայեայ, սրբեսցուք զանձինս մեր յամենայն պղծութենէ մարմնոյ. այս ինքն 'ի հիւանդոտ զոհից անտի օրինացն և որ արտաքոյ օրինացն են. և կատարեալս արասցուք զոգիս մեր սրբութեամբ 'ի ձեռն աւետարանին՝ որ ետ մեզ զսէրն Քրիստոսի։ Ներեցէք մեզ, եղբարք, զի ոչ եթէ ձեզ ասեմք մեք, այլ դէմս ձեր ասեմք մեք այլոց. զի զոք 'ի նոցանէն որ առ ձեզդ գան և զմեզ հայհոյեն, ոչ խուեցաք և ոչ զոք զրկեցաք և ոչ զլացաք, զի վասն աւետարանիս առնեն ընդ մեզ զայդ։ Այլ ոչ եթէ դատապարտել զձեզ ընդ նոսա ասեմք զայս. քանզի յառաջ իսկ ասացի վերագոյն՝ եթէ 'ի սրտի մերում կայք դուք մեռանել ձեզ ընդ մեզ 'ի հալածչաց, և

կեալ ձեզ ընդ մեզ յայտնութե՟ն անդ Քրիստոսի ։
Բազում համարձակութի՟ է ինձ առ ձեզ վասն առաջին սիրոյն ձերոյ, և բազում պարծանք են ինձ վասն ձեր վասն արդի համբերութե՟ն ձերոյ ։ Եւ լի եմ մխիթարութե՟բ, և առաւելեալ եմ ուրախութե՟բ յամենայն նեղութե՟ն մերում. այս զի մեծացաւ ուրախութի՟ն որ եղև ինձ 'ի լուր համբերութե՟ն ձերոյ ։ Քանզի ամենայն նեղութի՟ս զոր կրեցաք և զոր կրեմք աւասիկ 'ի կողմանս մակեդոնացւոց, և ոչ միով իւիք հանգիստ գտաւ մարմնոյ մերում. այլ յամենայն նեղութե՟ն իբրև զձեզ և աւելի քան զձեզ 'ի մէջ եղեաք ։ Արտաքոյ մարտ 'ի թշնամեաց, և 'ի ներքոյ պատերազմ 'ի բարեկամաց, թէ գուցէ ոք գայթագղեսցի ։ Այլ ա՟ծ՝ որ մխիթարէն զխոնարհս, այս ինքն զհալածեալս, մխիթարեաց զմեզ 'ի գալստեանն Տիտոսի առ 'ի ձէնջ ։ Հոգք մեծամեծք բարձան յինէն, յորժամ յանձն առ նա զաղօթսն իմ, և մատնեաց զանձն իւր 'ի մահ՝ գալ յեռանդ անդ հալածանաց, և զօրացուցանել զտկարս՝ որ իցեն 'ի միջի ձերում ։ Այլ յորժամ եկն նա և պատմեաց մեզ՝ զի թողէք դուք զհոգս զանձանց և զնեղութեց որ յարուցեալ էին 'ի վերայ ձեր, և սիրոյն զոր ունիք դուք առ մեզ՝ 'ի մերում սգի նստիք դուք, յորժամ լուայ ես զայս՝ ուրախութի՟ մեծ եղև ինձ 'ի սաստիկ նեղութի՟ս աստ զոր ունիմ ես ։
Արդ թէպէտ և տրտմեցուցի ես զձեզ առաջին թղթովն իմով, բազում բամբասանօք զոր բամբասեցի ես զոմանս 'ի ձէնջ, ոչ ինչ զղջացայ ես վասն որոյ ըզձեզն տրտմեցուցի. քանզի ոչ եթէ վնասեցայք ինչ դուք ։ Այլ արդ ուրախ եմ ես, ոչ եթէ վ՟ն զի տրտմեցարուք դուք, այլ զոր տրտմեցարուք վասն յանցանացն՝ յապաշխարութի՟ կենաց ած զձեզ ։ Քանզի տրտմեցարուք դուք ըստ ա՟յ. այս ինքն վասն ա՟յ. զի մի՛ և մի իւիք զրկեալ գտանիջիք դուք 'ի մէնջ. այս ինքն զի մի՛ 'ի ձեռն միոյն յանցանաց խոնարհեալ գտանիջիք դուք 'ի մէնջ ։ Զի որ ըստ ա՟ծութե՟ն տրտմութի՟ է, զծածուկ մեռելութի՟ կենդանացուցանէ. իսկ որ աշխարհիս տրտմութի՟ է, զկենդանիս մեռուցանէ ։
Արդ տեսէք դուք. այս ինքն իսկ՝ որ վասն ա՟ծու-

թեան տրտմեցարուք դուք, զի նա ինքն է ապաշխա-
րութի, որչափ փոյթ գործեաց 'ի ձեզ 'ի ձեռն քառ-
ւոք գնացից, կամ քանից պատասխանի զոր առնէին
վասն ձեր ընկերքն ձեր հանդերձ գործովք ձերովք.
Եթէ գայթագղելով գայթագղեցան յանցաւորք որ
'ի ձեզ, և ահ և երկիւղ՝ որ անկաւ 'ի վերայ այլոց
'ի պատճառս նոցա, և սէրն այնոցիկ՝ որ հաստատե-
լինն զնոսա, և նախանձ այնոցիկ՝ որ սպառնայինն նո-
ցա, յամենայնի ընծայեցուցէք զանձինս ձեր՝ սուրբ
լինել. այս ինքն զի հանդերձեալ և պատրաստեալ
էք դուք աւետարանին կենաց: Ապա ուրեմն թէպէտ
և գրեցի ես առ ձեզ, ոչ վասն այնորիկ որ զրկեացն,
և ոչ վասն այնորիկ որ զրկեցաւն, այլ զի յայս պատ-
ճառս յայտնի լիցի առաջի այ փոյթ հնազանդութեան
ձերոյ: Վասն այսորիկ խնդրեցաք մեք կամ 'ի Տիտո-
սէ, զի եկեսցէ առ ձեզ, կամ զի թողջիք դուք յան-
ցաւորացն. վասն զ' 'ի պատճառս յանցանաց նոցա և
զղջանալոյ նոցա յայտնի եղև առաջի այ փոյթն յօ-
ժարութեան ձերոյ:

Այլ խնայեցաք մեք վասն ուրախութեան Տիտոսի,
զի եբեր նա մեզ զաւետիս յաղթութեան ձերոյ. զի հան-
գուցեալ էր հոգի նորա ոչ յումանց 'ի ձէնջ, որպէս
և այլքն կարծէին, այլ 'ի ձէնջ ամենեցուն. որպէս
և պարծեցայն ես նմա մինչ չև եկեալ էր նորա առ
ձեզ: Այլ որպէս զամենայն ճշմարտութբ խօսեցաք
ընդ ձեզ, սոյնպէս և պարծանքն մեր որ վասն ձեր
առաջի Տիտոսի՝ արդարութբ գտան: Թէպէտ և յա-
ռաջ քան զայս սիրէր զձեզ Տիտոս, սակայն արդ-
գութն նորա առաւել ևս եղև ընդ ձեզ. զի 'ի մտի
իւրում ունէր զամենեցուն ձեր հնազանդութի, զի
ահիւ և դողութբ առաւել շքով ընկալարուք զնա:
Ուրախ եմ, զի ամենայնիւ համարձակ եմ ես առ
ձեզ. զի բարեկամաց շքով և պատուով ընդ առաջ
ելանել գիտէք դուք, և առաջի հալածչաց ժուժկալ
լինել պատրաստ էք:

## ԳԼՈՒԽ Ը

ԱՅԼ. քանզի փոյթ յանձին կալաւ Առաքեալ կատարել զբանն՝ որ պատուիրեցաւ նմա 'ի տանէ անտի Շմաւոնի վիմի՝ հոգաբարձ լինել սրբոցն, այս ինքն հալածելոցն, և կնքաւորացն որ էին յԵրուսաղէմ, գրեաց նոցա կցորդ լինել նոցա օրհնութեան, յիշեցուցանելով նոցա՝ եթէ մակեդոնացիքն սոքին իսկ այսու նեղութեամբ՝ որ յարուցեալ է 'ի վերայ նոցա, ինքնակամ բազում խնդրուածովք աղաչէին զմեզ, զի զշնորհս և զհաւասարութիւն պաշտամանն որ 'ի սուրբս՝ տալ ցմեզ։ Կամեցաք մեք անփոյթ առնել 'ի նոցանէ, զի նեղութեան և հալածանաց իւրեանց՝ որ յարուցեալ են 'ի վերայ նոցա, բաւական լինիցին։ Իսկ նոքա՝ ոչ որպէս կարծէաք զնոցանէն՝ այլ և զանձինս իւրեանց եւս ետուն նախ տեառն, և ապա մեզ. տեառն, զի մեռցին վասն նորա. և մեզ՝ զի պատրաստեցին զայն ինչ զոր մեք ոչ արկաք 'ի վերայ նոցա։ Արդ ահա աւասիկ աղաչեցաք մեք զՏիտոս, զի որպէս զի սկսաւ 'ի ձեզ, նոյնպէս և կատարեսցէ։ Զի որպէս եկն նա և ուրախ արար զմեզ հնազանդութեամբն ձերով և ուրախութեամբն զոր ունիք 'ի նեղութիւնս ձեր, դարձեալ եկեսցէ և ուրախ արասցէ զմեզ ձեռն յաղքատս ձգելով և առատութեամբն՝ որ գտանի 'ի ձեզ. որպէս զի ամենայն իւիք քան զամենայն մարդ առաւել լիցիք։

ԱՅԼ որպէս յամենայնի լի էք հաւատովք և հալածանօք և ամենայն պնդութեամբ և բանիւ, գիտութեամբ և սիրովն մերով որ ինչ 'ի մէնջ սերմն էր առ ձեզ, նոյնպէս և յայս եւս շնորհս առաւել լիջիք դուք։ Իբր ոչ եթէ սաստիւ ինչ հրամայեմ ես ձեզ, այլ վասն այլոց փութոյ, և ձեր և մեր սիրոյդ զգուշութեամբդ 'ի հանդիսի կամիմք տեսանել։ Այլ որպէս աղքատացաւ տէր մեր 'ի մեծութենէ անտի իւրմէ, զի դուք նորա աղքատութեամբն մեծասջիք, նոյնպէս 'ի ձեռն աղքատութեան սրբոցն՝ որ վասն Քրիստոսի է, մեծանալ կարէք դուք։ Քանզի հերուն հետէ կամեցարուք առնել, արդ կատարեցէք զխոստումն ձեր. զի որպէս յօժա-

րութիւն կամացն է, նոյնպէս և առնելն լիցի 'ի գոյէ անտի ձերմէ ։

Զի ոչ եթէ որպէս տայքն դուք, այնչափ միայն առնուք. զի եթէ սակաւ իցեն տուրքն վասն նուաղութեան ստացուածոց, այլ կամքն կատարեալք՝ որ ցանկացան զառնելն, բազում գտանի առ ձեզ ։ Ոչ եթէ 'ի սակաւ տուրսն զոր ունիք 'ի ձեռս ձեր՝ հայի ընդունիչն, զի ընդ առատամիտ կամսն ձեր հայի հատուցիչն և չափէ տայ, ոչ որպէս դուք ետուք, այլ որպէս տալն ցանկացեալ էք ։ Իսկ ոչ եթէ ձեզ նեղութիւն կամիցիմ և նոցա հանգիստ՝ ասեմ ես զայս, այլ որ ինչ ձեր յայտնի մթերքն է, լցցէ զնոցա զանցաւոր պակասութիւն. և նոցա մթերքն որ առանց անցանելոյ է, լցցէ զծածուկ պակասութիւն ձեր. զի եղիցի հաւասարութիւն յամենայնի. այս ինքն 'ի ծածուկ և յայտնի, որպէս զի եղև յանապատի անդ յայտնի հաւասարութիւն առ քաղողս մանանային ։ Զայս խղձեալ արդեւք, գուցէ ստգտանիցէ ոք զմեզ վասն առատութեան պաշտամանս այսորիկ՝ որ պաշտեցաւ 'ի մէնջ. հանդերձ իշխեմք մեք բարեաց ոչ 'ի ծածուկ առաջի այ̃ միայն, այլ և յայտնեօք մերովք առաջի ամենայն մարդկան ։

Վասն այսորիկ առաքեցաք մեք զՏիտոս, որ պատուականն և ընդունելին է ձեզ ։ Ընդ նմին առաքեցաք և զեղբայրն մեր. այն զոր թէպէտ և դուք ոչ գիտէք զնա, սակայն նորա գովութիւն յաւետարանի անդ իսկ պատմի ընդ ամենայն եկեղեցիս. այս ինքն Ղուկաս. և ձեռնադրութիւն ընկալաւ յեկեղեցեաց՝ գործակից լինել մեզ 'ի շնորհս յայս՝ որ պաշտի 'ի մէնջ ։ Առաքեցաք մեք և զեղբայր մեր զմիւս ևս, թէպէտ և ձեր զփորձ նորա չիցէ առեալ, այլ մեր բազում անգամ 'ի բազում իրս պնդութե̃. զի պնդէ և գործակից իմ է նա փոխանակ Տիտոսի. այս ինքն ըդ̃ մեր տեղի լինու նա ընդ Տիտոսի ։ Այլ մի՛ փոքր ինչ թուիցին նոքա յաչս ձեր, զի կոչեցի ես զնոսա եղբարս. առաքեալք են նոքա. ոչ յերկոտասանից անտի, այլ յեւթանասունն և յերկուց անտի ։ Իսկ արդ զհանդէս սիրոյն ձերոյ զճշմարիտ զոր ունիք առ մեզ, և զպարծանաց մերոց որ 'ի ձեզ՝ որչափ են հաւատա-

ցեալ՝ 'ի նոսա ցուցջիք, և 'ի ձեռն նոցա դէմ յան-
դիման ամենայն եկեղեցեաց:

## ԳԼՈՒԽ Թ

Այու. քանզի պարծեցայ ես 'ի մէջ մակեդոնացւոցն և ասացի՝ բամ 'ի հերուն հետէ պատրաստեալ են, և այս նախանձ ձեր զբազումս յօժարեցոյց նմանող լինել ձեզ, վասն այսորիկ առաքեցի ես առ ձեզ զեղբարս, զի պատրաստեսցեն զձեզ. զի մի յորժամ եկեսցեն ընդ իս մակեդոնացիքն, և գտանիցեն զձեզ անպատրաստս, զայն որ 'ի հերուն հետէ խոստացաք մեք՝ թէ պատրաստք են, և ամաչեսցուք մեք պարծանօքն մերովք՝ որ վասն ձերն պարծեցաք. զի մի ասացից թէ դուք ամաչեսջիք խոստանալովն ձերով որ առ մեզ խոստացարուք: Արդ պատրաստեցէք դուք զօրհնութիւն զոր 'ի հերունն հետէ խոստացեալ էր ձեր. ոչ այնպէս իբրև զագահութիւն ասեմ ես՝ եթէ յաճախեսջիք, այլ իբրև զօրհնութիւն: Այլ ոչ վասն զի ասացի ձեզ՝ թէ մի յաճախիցէք, սակաւացուցանիցէք. զի զայս սերմն՝ որ սերմանէ ճշդելով աստ, առատութիւն հնձել յաշխարհն հանդերձեալ ոչ ոք տայ նմա: Իսկ այն՝ որ սերմանէ օրհնութիւն և առատութիւն, յօրհնութենէ անտի այ զկեանս հնձեսցէ 'ի վախճանն կատարածի: Արդ մի այսուհետև տայցէ ոք իբրև առ հարկի ամօթոյ տրտմութիւն, և կորուսանիցէ զվարձս իւր, և անարգիցի. քանզի զուարթառատ տրուչին խոստացեալ են պարգևք, և զնոյն սիրէ և ած:

Այլ պաշտօն հարկիս այսորիկ ոչ միայն զպակասութիւն սրբոցն՝ որ են յԵրուսաղէմ՝ լնու, այլ և զձեզ ևս առաւելուն գոհութիւն բազմաւ առաջի այ. վասն հանդիսի պաշտամանս այսորիկ. այս ինքն վասն տրոց ձերոց զած փառաւորեմք. զի 'ի նեղութիւնս այդ ձեր հնազանդիք դուք հոգալ վասն աղքատաց վասն բազում խոստովանութեան ձերոյ յաւետարանն Քրիստոսի: Եւ երևի հաւասարութիւն ձեր որ առ սուրբսն է իբրև անարգ ինչ և դուզնաքեայ: Այլ հաւասա-

րութեն աղօթից նոցա՝ որ է վասն ձեր, սիրով բաղձման է. այս ինքն 'ի ձեռն պնտութեն և փութոյ մեծի: Այս զի եղև այսպէս, թէ փոխանակ մարմնաւորացն զհոգևորսն առջիք վասն շնորհացն այ որ առաւելուն 'ի ձեզ: Այլ շնորհն այ 'ի վերայ պարգևացն նորա. կամ վասն հատուցման նորա, կամ վա զի ետ զՈրդի իւր փոխանակ մեր. մեծ է առաջինն, բայց վերջինս և անպատում ևս:

## ԳԼՈՒԽ Ժ

Ո՞ւր քանզի էին ոմանք՝ որք վաճառականք լեալ էին պարգևացն այ, զի բամբասէին վասն հաշուի տրոցն զոր արկեալ էր Պաւղոսի, և այսպէս ասէին՝ թէ յանուն սրբոցն անձին իւրում ժողովէ նա, սկսանի գրել նա և ընդդէմ նոցա 'ի մատուցանել իւրում հաճութիս և հաւանութիս կորընթացւոցն, թէ գուցէ որք ապրեցան յուրացութէ անտի հալածչաց, վերաւորեսցին նոքա 'ի հայհոյութէ անտի սուտ առաքելոցն: Աղաչեմ, ասէ, զձեզ գթութեն այ և հեզութեն Քրիստոսի, այն որ ցայսօր ժամանակի տեսանէք դուք յիս. զի թէպէտ և յանդիման, այս ինքն թէպէտ մարմնով հեռի եմ ես 'ի ձէնջ, այլ աղաչեմ զձեզ՝ եթէ ճշմարտութ յուսացեալ եղէց ես 'ի ձեզ: Զի եթէ դուք ոչ հիւանդասջիք բանիւք հայհոյչաց մերոց, համարձակեալ գտանիցիմ ես 'ի վերայ այնոցիկ որ կարծեն զմէնջ՝ եթէ նոքա մարմնով գնայցեն. այս ինքն 'ի վերայ ամենայնի՝ որ զրպարտեն զմեզ և ասեն՝ եթէ նք զտուրսն անձանց իւրեանց ժողովեն:

Քանզի թէպէտ և մարմնով գնամք, այլ ոչ եթէ ըստ մարմնոյ զինուորիմք. այս՝ զի թէպէտ և ժողովեմք մեք զտուրսն, այլ ոչ եթէ անձանց ժողովեմք, որպէս և նոքայն ասեն: Զի զէն զինուորութե մերոյ, այս ինքն խոնարհութի մեր և համբերութի՝ որ է 'ի փորձանս մեր, վկայէ 'ի վերայ մեր՝ եթէ ոչ եմք 'ի մարմնաւորաց, այլ 'ի զօրութենէ այ, այն որ նովաւ զօրացաք մեք կալ ընդդէմ այսր ամենայնի: Իսկ զէն զինուորութե մերոյ զնոյն իսկ զաւետարան կո-

չէ, զի նովաւ աւերեաց զամենայն ամուրս հեթանոսութե՟, և քակեաց զխորհուրդս հինս զկռապաշտութե՟. և զամենայն բարձրութի՟ս. այս ինքն ամենայն իշխանութի՟ս՝ որ բարձրացի և հպարտացի 'ի վերայ նոր գիտութե՟ն ա՟յ՝ որ մեւք աւասիկ ամենայն հեթանոսաց քարոզի։ Գերեմք մեք զամենայն միտս, որ վարեալ են 'ի գերութի՟ խաբէութե՟ն, դարձուցանել զնոսա 'ի հնազանդութի՟ն Քրիստոսի։ Եւ 'ի պատրաստի ունիմք խնդրել զվրէժ յամենայն անհնազանդութե՟, որ արհամարհեցին զայն ինչ որ սփռեցաւն և լցաւն, և լցան լսելիք ձեր։ Կամ զի համդերձեալ են դատել առաքեալքն զազգսն Յակովբու, զի լուան զաւետարանն և ոչ ընկալան. կամ 'ի պատրաստի ունիմք մեք խնդրել զվրէժ յայնցանէ՝ ոյք լսեն զհայհոյութի՟ս մեր, և լռեն. այն զի պարտ և պատշաճ էր նոցա պատասխանի տալով ճշմարտութ՟ հայհոյչացն մերոց՝ ընթերանել և կարկեցուցանել զն՟ս։

Արդ հայեցարուք դուք ընդ մարդս մարդ. այս ինքն ընդ մեզ և ընդ նոսա։ Զի եթէ ոք ձեռն յանձին հարեալ իցէ՝ եթէ ես Քրիստոսի եմ, դոնեայ իբրև զինքն համարեսցի զմեզ, թէ որպէս նայն Քրիստոսի է, սոյնպէս և մեք։ Ոչ պարծիմ ես ձեզ՝ եթէ մեծ եմ ես քան զնոսա իշխանութե՟ առաքելութե՟ս զոր ետ ինձ տէր իմ. այն զի և ոչ պարծանօքս այսուիկ իսկ ամաչեմ ինչ ես։ Քանզի 'ի շինել տուեալ է ինձ, և ոչ 'ի քակել զձեզ. այս ինքն զի կատարեալս արարից զձեզ պարգևօք, և ոչ մեծացուցից զձեզ մեզօք։ Եւ զի ոչ գիտեմ ես 'ի ձեզ որ ինչ գործ գործեցաւ ինև, որպէս և պարծին այլք մեծամեծօք զոր ոչ ունին առ իւրեանս, և փոքունք զոր ոչ ունին. զի մի թուեցայց ես նոցա իբրև ահ ինչ արկանել 'ի ձեզ թղթովքս մերովք, որպէս զի երկիցէք և շրջեսջիք առ մեզ 'ի ձեռն զօրութե՟ցն զոր արարաք, և չարչարանօքն որ գործեցան 'ի ձեզ։

Լուաւ նա զի ասէին վասն նորա՝ թէ ոչ ըստ բանից իւրոց են գործք իւր, և ոչ ըստ պատգամաց իւրոց արդիւնք[1] իւր. զարդարանք, ասեն, զարդարի.

1 Յօրինակին արդինք։

գրէ նա վասն անձին իւրոյ զայն ինչ՝ զոր արդեամբք ոչ ունի գնա ։ Եւ վասն այնորիկ ասէ ․ զայս խորհիցի այնպիսին՝ եթէ որպէս երեւիմք բանիւք թղթովքս ՚ի հեռաստանէ, նոյնպէս և արդեամբք երեւեսցուք ։ Քանզի ոչ իշխեմք մեք յարդել զանձինս ինչ, կամ համարել ոմանց՝ որ զանձինս իւրեանց երեւելիս առաջի ձեր ընծայեցուցանեն ․ այլ մեք խոնարհեցուցանեմք զանձինս մեր և յայնմանէ եւս՝ որչափ և եմքն ։ Եւ եթէ հաւատարիմք և կշռիմք, ընդ անձինս մեր հաւատարիմք և կշռիմք ․ այս ինքն ընդ փոքրկութի մեր ։ Եւ ոչ պարծիմք մեք իբրև զնոսա աւելի քան զչափն մեր ․ այլ պարծիմք մեք առ նոցա հեստանս ըստ չափոյ կարգին, յորչափ և վիճակեցոյց զմեզ ա̃ծ ․ այս ինքն յայնոսիկ՝ որ արժանի արար զմեզ ա̃ծ աւետարանել նոցա ։ Իբր ոչ եթէ իբր ոչ քարոզեցաք ձեզ՝ ձգտեցուցանեմք զանձինս մեր պարծել ձեւք ․ քանզի մինչև առ ձեզ հասեալ եմք աւետարանաւն Քրիստոսի ։ Եւ ոչ պարծիմք մեք օտար վաստակօք ․ այս ինքն քարոզութե̃ աւետարանչաց այլոց ․ կամ զի ոչ պարծիմք մեք առ այնոսիկ՝ որ զմեզն ոչ գիտիցեն ։ Այլ ունիմք մեք զյոյս յանձինս մեր, զի աճեցեալ տեսանեմք օր ըստ օրէ զհաւատս ձեր, զի այդրէն ՚ի ձեզ մեծանալ մեզ սովին իսկ այսուիկ, և կարգն օրինաց մերոց առաւել լիցի ։ Զի տացի մեզ և անդր եւս քան զձեզ աւետարանել ․ ոչ այնոցիկ՝ որոց աւետարանեալն, զի մի յօտար կարգէ յայլոց պատրաստութենէ անտի պարծիցիմք ։ Այլ որ պարծելոցն իցէ քարոզութե̃ն զոր ետ նմա տէր քարոզել, ՚ի մէջ հեթանոսաց ապատամբողաց պարծեսցի ․ զի ոչ եթէ որ զանձն իւր յարգէ բանիւք՝ նա է ընտիր, այլ զոր տէր յարգէ ՚ի ձեռն գործոց ։

## ԳԼՈՒԽ ԺԱ

Լաւ էր եթէ ներէիք փոքր մի մտօք ձերովք 'ի միտ առնուլ ձեզ զայս ինչ՝ զոր փոքր մի խօսիմ ես անզգամութե. այս ինքն պարծանօք։ Նա և արժան իսկ է ձեզ անսալ ինձ. քան զի 'ի նա խօսիմ ես, այն զի 'ի ձեռն քարոզութեն որոյ հաստատեցի՝ խօսեցայ մարմնով և խորհրդովք իւրովք։ Այսպէս հաստատեցի և խօսեցայ զանձինս ձեր 'ի ձեռն ճշմարտութեն որքոյ յանդիման առնել ձեզ յաւուրն յետնում, առաջի Քրիստոսի կացուցանել։ Այլ երկնչիմ, գուցէ իբրև օձն զի խաբեաց զԵւայ 'ի խորամանկութի իւր, և մոլորեցոյց յայ, այնպէս ինչ ապականիցին ինչ միտք ձեր յառաքելոց անտի օձին 'ի միամտութենէ անտի սրբութե զոր 'ի Քրիստոսն ունիք. այս ինքն 'ի ճշմարտութէ անտի սրբութե Քի։

Զի եթէ ոք եկն առ ձեզ, և այլ Քրիստոս զոք քարոզեաց զոր մեք ոչ քարոզեցաք ձեզ, կամ զոգի[1] ինչ օտար ընկալարուք 'ի ձեռն նոցա զոր ոչ մինչ դեռ մեքն առ ձեզն էաք՝ առեալ էր ձեր, կամ եթէ աւետարան ինչ այլ քարոզեցին ձեզ զոր չիցէ ընկալեալ ձեր 'ի մէնջ, բարւոք անսայիք և լսէիք բանից այնոցիկ՝ որ հայհոյեն զմեզ։ Այսպէս համարիմ զանձն իմ՝ եթէ ոչ ինչ կարի պակաս եՏու ես ձեզ քան զայն ինչ՝ զոր տան լաւ առաքեալքն քան զիս աշակերտաց իւրեանց։ Ապա եթէ տգէտ ևս իցեմ բանիւ, որպէս ասացինն, այլ ոչ եթէ գիտութե. այս ինքն ոչ եթէ ճշմարտութե և քարոզութե իմով. սակայն յամենայնի յայտնեցաք զանձինս մեր առ ձեզ ճշմարիտ աւետարանաւն և հոգևոր պարգևօքն։

Գուցէ արդեւք վնաս ինչ գործեցի ես զայս, զի զանձն իմ խոնարհեցուցի. ո՞չ պարծեցայ զի դուք բարձրասջիք խոնարհութեն զոր 'ի մէնջ ստանայք. կամ թէ այսու արդեւք փոքրկացայ, զի ձրի քարոզեցի ես ձեզ զաւետարանն այ. կամ զայլ եկեղեցիս

1 Յօրինակին զոգ։

կողոպտեցի, զի կաշառեցից զձեզ այլով թոշակաւ, և զձեր գործ վճարեցից։ Այլ յորժամ ինչ պակասեաց ինձ մինչ դեռ առ ձեզն իսկ էի, որպէս և դուք ինքնին վկայէք, ոչ զոք 'ի ձէնջ ձանձրացուցի երբէք խնդրել ինչ։ Այլ յետ համբերութեն իմոյ պէտքն իմ լցան ինձ. ոչ յորդւոց քաղաքին ձերոյ, այլ եղբարքն որ եկին 'ի կողմանց մակեդոնացւոց, նոքա լցուցին զպէտսն իմ։ Եւ ոչ եթէ այսուիկ միայն պահեցի զանձն իմ, զի մի ծանրացայց ինչ ձեզ. այլ յամենայնի ձեզ առանց ծանրանալոյ զանձն իմ պահեցի և պահեցից։ Զի գոյ ճշմարտութի Քրիստոսի յիս, որ ոչ փոխի. զի պարծանք իմ այս մինչև յայսօր ժամանակի ոչ ընդունայն լիցին, ոչ 'ի քաղաքի ձերում միայն, այլ յամենայն կողմանս աքայացւոց։

Այլ զայս զի առնեմ ես՝ միթէ ոչ սիրիցեմ զձեզ որպէս զմակեդոնացիսն, զի առի 'ի նոցանէն. այլ զայս զոր արարի և զոր առնեմ մինչ 'ի վախճան կատարածի, զի հատից զպատճառս՝ որ 'ի ձեռն այսր պատճառանաց կամին ստգտանել և բծել զմեզ. զի և այսուիկ օրօվ պարծիցին թէ չառնումք ինչ, իբրև գոյ նոցա, գտցին նոքա իբրև զմեզ՝ որ պակասեաց մեզ, և ոչ առաք ինչ։ Արդ մի խաբիք դուք զկնի նոցա վասն սակաւոյ՝ զոր զգեցեալ են կերպարանօք. զի այնպիսիքն սուտ առաքեալք են և մշակք նենգաւորք, և զարդարին 'ի կերպարանս առաքելոց Քրիստոսի. զոր օրինակ և սատանայ 'ի կերպս կերպս եղև 'ի լուսաւոր հրեշտակի 'ի ժամու յորում ասաց տեառն մերում 'ի վերայ աշտարակին. ասէ. "Եթէ Որդի ես դու այ, արկ զքեզ վերուստ 'ի վայր. զի գրեալ է՝ եթէ հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո,,։ Սոյնպէս 'ի կերպս 'ի կերպս առնէ զպաշտօնեայս իւր 'ի նման պաշտօնէից արդարութե. իբրև ոչ[1] յերկոտասանից անտի և ոչ յեւթանասուն և յերկուց առաքելոցն են նոքա, որոց կատարածն իւրեանց 'ի կատարածի եղիցի ըստ գործս իւրեանց որ աստ։

Դարձեալ ասեմ, այս ինքն պարծիմ. այլ քանզի զայս ոչ լուեալ էր ձեր յինէն, մի ոք զիս առ անըս-

1. Ցօրինակին պակասի ոչ։

ւանց մարմնոյ իցէ, ոչ գիտեմ : Այս ինքն 'ի ժամուն՝ զի յափշտակեցաւ նա․ յետ յայտնուԹեն գիտաց նա՝ եԹէ միտք նորա յափշտակեցան․ և ուղեկիցք նորա ասացին՝ Թէ մարմին նորա ուրեք ոչ փոխեցաւ :

Յափշտակեցաւ մինչև յերիս յերկինս, կամ յեր-րորդ յերկնից, որպէս և Յոյնք ասեն․ զի նա է ար-քայուԹին երկնից, ոչ է երկինս : Կամ աւելի է նա քան զերկուս երկինս, որպէս Մովսէսն համարեցաւ մեզ․ կամ երկինք որ եղեն ընդ երկրի՝ բազում են, և մեզ Թուեցաւ եԹէ մի է : Մեկնէ զայս ԴաւիԹ Թէ բազումք են, և ասէ․ "Երկինք պատմեն զփառս ա̃յ, և զարարածս ձեռաց նորա պատմէ հաստատու-Թին,, : Եւ Առաքեալ ասէ․ "Գործք ձեռաց քոց երկինք են,, : Դարձեալ ասէ․ "Ել նա 'ի վերոյ քան զամենայն երկինս,, : Իսկ զբանս զանճառս զոր լուաւ՝, վասն ծննդեան Որդւոյ ասաց : Լուաւ և հաճեցաւ նա : Եւ վասն այսորիկ ըմբոստացեալ էր և հալածէր զեկեղեցիս : Եւ քահանայքն և դպիրքն հրէից այ-սուիկ գայԹագղէին, եԹէ զիարդ ծնանի ա̃ծ : Մարդ ես դու, ասեն, և առնես զանձն քո ա̃ծ :

Վասն այնպիսեացն, ասէ, պարծեցայց․ այլ վասն անձին իմոյ ոչ պարծեցայց, Թէ տկարուԹ̃ : Զի սուտ առաքեալքն ոչ իւրեամբքն զանձինս իւրեանց զար-դարէին․ իսկ Առաքեալ և զիւրն ես յանուն այլոց պատմէր : Զի Թէպէտ և կամիցիմ ինչ պարծել, այս ինքն այլովք յայտնուԹ̃ք, ոչ ինչ սուտ երևեցայց, քանզի զարդարն խօսիմ : Այլ անխայեմ, գուցէ որ-պէս այլքն զի համարեցան զիս ա̃ծ 'ի ձեռն զօհիցն զոր բերին, իբրև այնու խորհեցան վասն իմ, և այլք 'ի պատճառս յայտնուԹեց աւելի ինչ քան զայն զոր տեսանէ ոք ինչ յիս, և կամ լսէ ոք ինչ յինէն : Այլ զի մի հպարտացայց վասն առաւելուԹեց յայտնուԹեց զոր յայտնեցի ես[1], տուաւ ինձ խայԹ մարմնոյ հրեշ-

1 Աստանօր Թուի Թէ չփոԹեալ իցէ գրիչն՝ կրկին գաղափարեալ զերկու հատուածս այլ և այլ տեղեաց յարելով ընդ միմեանս, յորս չերևի միաբանուԹի և ոչ յարմարուԹի ընդ կարգի բանիցն : Զի զկնի բառիցդ․ յայտնեցի ես, առեալ երկու տողս 'ի հատուածոյն Դարձեալ ասէմ, որ կայ յէջն 109 յարէ ընդ նմա մինչև [illegible]ղի․ և զհետ նորա զայլ հատուած այ-լայլուԹ̃ այն ինչ քան զայն որ տե-սանէ ոք ինչ յինէն լսէ յինէն, յէջ 112 :

տակ սատանայի՝ զի կռփեսցէ զիս, զի մի՛ հպարտացայց: Իսկ խայթ՝ կամ ցուրտ էր, որպէս ոմանք ասեն. կամ Աղեքսանդր դարբին էր, որպէս այլք ասեն: Եւ վասն այսորիկ երից անգամ աղաչեցի զտէր, զի 'ի բաց արասցէ յինէն. և ասէ ցիս. շատ են քեզ շնորհքն իմ՝ որ կռփեն զխայթն քո. զի զօրութի իմ 'ի տկարութե կատարի: Այս՝ զի զօրութի շնորհաց յօգնականութի տկարաց կատարի: Այլ սովին իսկ այսուիկ ոչ լսելով լսելի եղև. զի յայտնութի և վասն այսորիկ՝ որ ոչ եղև լսելի՝ եղև 'ի վ՛ր ն՛ր. զի հաճեսցէ և հաւանեցուսցէ զնա՝ եթէ վասն էր ոչ եղև լսելի:

Արդ լաւ լիցի ինձ պարծել. այս ինքն ակն ունել տկարութք. զի բնակեսցէ յիս զօրութն Քրիստոսի: Վասն այսորիկ հաճեալ եմ ընդ տկարութիւնս, ընդ թշնամանս և ընդ հալածանս. զի յորժամ տկարանամ ես այսու արտաքնովս, յայնժամ զօրացեալ լինիմ ես ներքնովքն: Ո՛հ անսգամ եւս եղէ և պարծեցայ. զի ձերով հնազանդութքն զոր հնազանդեցայք թշնամանելոց և հպարտից, ստիպիցէք զիս գալ հասանել ինձ յայս. զի պարտ իսկ էր ձեզ մինչ մեք լուռ կայաք՝ վկայել ձեզ վասն մեր առաջի հայհոյչացն մերոց: Զի ինչ մի յամենայն պարգևացն՝ որ տուեալ լինի 'ի ձեռն Հոգւոյն, ոչ ինչ պակասեալ գտայ ես առ ձեզ քան զայնոսիկ՝ որ լաւ առաքեալքն իցեն: Զի թէպէտ և ես ոչ ինչ իցեմ գործովք իմովք, սակայն զնշանս առաքելոց գործեցի 'ի միջի ձերում. և 'ի ձեռն այսր որ բարձրացուցանեն զմարդիկ, մեք ամենայն համբերութ եղեաք առ ձեզ. համդերձ նշանօք և արուեստիւք և զօրութք զոր գործեաք մեք, ոչ միով իւիք համբերեաք մեք. զի ամենայն ումեք ամենայնիւ մեք հնազանդեաք:

Զի՞նչ այն ինչ իցէ՝ որով դուք պակաս գտեալ իցէք քան զայլ եկեղեցիս. բայց եթէ այսչափ, զի ես ոչ ինչ ծանծրացուցի զձեզ. այս ինքն զի ոչ առի յանձն ինչ առնուլ 'ի ձէնջ: Զի ոչ եթէ խնդրեմ ինչ զձեր, այլ զձեզ. քանզի ոչ եթէ որդիք հարց 'ի ծածուկ

տող 30 . և ապա այլայլութ իմաստիցն դարձեալ կրկնէ զսկիզբն առաջինկայ հատուածոյդ. Աւլ ...
... կողոպտացայց . . զորս ոչ յայտնեցի ես :

կամ յայտնի զանձինս, այլ հարք որդւոց։ Արդ ես մտադիւրութեք ծախեցից և ծախեցայց, ոչ 'ի վերայ ստացուածոց ձերոց, այլ 'ի վերայ անձանց ձերոց։ Իսկ ես զի զայս ամենայն սէր սիրեմ զձեզ, ընդէր սակաւ սիրիմ 'ի ձէնջ։ Այլ դու գրես թէ ես ինչ ոչ ձանձրացուցի զձեզ. Թերևս իբրև այր մի խորագէտ խելօք կալայ զձեզ։ Ի ձեռն այլոց զորս առաքեցի առ ձեզ, նոքօք ինչ զրկեցի՞ զձեզ։ Մի՞թէ ադահեա՞ց ինչ 'ի ձէնջ Տիտոս 'ի ժամանակի իբրև առաքեցի ես զնա առ ձեզ. ո՞չ նովին հոգւով և նովին շաւղօք իմովք շրջեցաւ նա առ ձեզ, զի մի՛ բեռն ինչ ամեք լինիցի նա 'ի ձէնջ։

Այլ զայս զոր առնեմ ես և պատուիրեմ այնոցիկ զորս առ ձեզս առաքեմ, վասն ձերոյ շինութեան առնեմ. թէ զոր ինչ տեսէք դուք յիս և 'ի Տիտոս[1], արասջիք և վկայեսջիք վասն մեր։ Այլ երկնչիմ, գուցէ գայցեմ, և որպէս ոչ ես կամիմ՝ գտանիցեմ զձեզ. գուցէ դարձեալ հեռ և նախանձ, այլովք հանդերձ։ Գուցէ առ ձեզ յորժամ գայցեմ, նկուն առնիցէ ա̃ծ իմ զիս առ ձեզ. այս ինքն չարչարեսցէ զիս ա̃ծ իմ վասն ձեր, և սուգ առեալ գտանիցիմ 'ի ձէնջ վասն բազմաց՝ որ յանցուցեալ իցեն, և չիցեն ապաշխարեալ։

## ԳԼՈՒԽ ԺԳ

ՅԱՌԱՋ յանցուցելոցն և այլոցն ամենեցուն, արդ ապաշխարեսցեն. զի եթէ եկից դարձեալ և ոչ գտից զնոսա ապաշխարեալս, ոչ եւս անխայեցից 'ի նոսա։ Կամ թէ զփորձ ինչ առնուլ խնդրէք զՔրիստոսի, այն որ ոչ եթէ տկար ինչ է նա 'ի ձեզ. զի զօրացեալ է նա 'ի ձեզ։ Եթէ կամիջիք կարդալ զնա օգնական լինել նմա ձեզ 'ի ժամանակի, իբրև յարուցեալ իցեն 'ի վերայ ձեր խորհուրդք չարին և ցանկութիւն մարմնոյ։ Արդ զի զօրացեալ է նա 'ի ձեզ, ահա վկայեն պարգևք Հոգւոյն՝ որ տուան ումանց 'ի ձէնջ, և ոչ ամենեցուն ձեզ։ Զի թէպէտ և եղ նա 'ի խաչ

1 Յօրինակին և Տիտոս։

տկարութ՟բ վասն մարդկութ՟ե իւրոյ , այլ կենդանի է զօրութ՟բ ա՟ծութ՟ե իւրոյ ։ Եւ ահաւասիկ կնքեն և հաստատեն նշանքն և սքանչելիք՝ որ գործին յանուն նորա ։ Եւ եթէ մեք տկար եմք 'ի նա հալածանօք և թշնամանօք , կենդանասցուք նովաւ նշանօք զոր գործեմք մեք յանուն նորա ։

Փորձեցէք դուք զմիմեանս , եթէ կայցէք դուք 'ի նոյն հաւատս զոր ետուն ես ձեզ , և ոչ խոտորեալ իցէք դուք զկնի սուտ առաքելոցն ։ Եւ զանձինս ձեր ևս փորձեցէք , գուցէ երկմտութ՟ի ինչ լիալ իցէ 'ի միտս ձեր . զի եթէ երկմտիք դուք , Քրիստոս մեկնի գնայ 'ի ձէնջ , և անպիտանք գտանիջիք ։ Ակն ունիմ եթէ գիտիցէք՝ եթէ մեք չեմք անպիտանք , որպէս սուտ առաքեալքն կարծեն զմէնջ . զի աւասիկ տանջանքս մեր վկայեն վասն ճշմարտութ՟ե մերոյ , և յայտնի վէրքս մարմնոցս մերոց և կնքեն և հաստատեն վասն ծածուկ հաւատոց մտաց մերոց ։ Խնդրեմք յա՟յ , զի մի ինչ արասցէք դուք չար . զի մի երևեսցուք մեք իբրև ընտիրք , այս ինքն մեք ընտրիմք ձեւք . այլ զի դուք բարիս գործեցէք , և մեք անպիտանք երևեսցուք ։ Այն է զի ասէ . ուրախ եմք , յորժամ մեք տկարանամք , և դուք զօրանայք . այս ինքն յորժամ մեք հալածիմք , և դուք 'ի խաղաղութ՟ե բնակեալ էք ։ Սոյնպէս և մեք աղաչեմք զդոյն , զի դուք կատարեալք լինիջիք բանիւք և արդեամբք ։ Վասն այսորիկ զայս 'ի հեռուստ գրեմ , զի մի յորժամ առ ձեզ եկից , խստութ՟բ սաստկացայց 'ի վերայ ձեր ըստ իշխանութ՟ես՝ որ տուեալ է ինձ 'ի տեառնէ կապել յերկինս և յերկրի ։

Այսուհետև ուրախ լերուք , զի տրտմեցուցի զձեզ առաջին թղթովն իմով . և կատարեալք լերուք որով իւիք պակաս էիք . և մխիթարեցարուք , զի սգացեալ էիք . և միաբանեցէք , զի հեռիւ էիք ընդ միմեանս ։ Եւ Ա՟ծ սիրոյ և խաղաղութ՟ե եղիցի ընդ ձեզ , զի նովաւ սիրեսջիք դուք զայնոսիկ զորս վասն յանցանացն իւրեանց մերժէիք և օտարացուցանէիք 'ի ձէնջ . և խօսեցարուք զխաղաղութ՟ի ընդ այնոսիկ՝ որ վասն չմարթութ՟ե նոցա արգելիք 'ի նոցանէ զբան բերանոյ ձերոյ ։

# ԿՈՐՆԹԱՑԻՍ ԵՐՐՈՐԴ

ԿՈՐԸՆԹԱՑԻՔ յետ միաբանելոյն իւրեանց 'ի ձեռն Թղթոյն Առաքելոյ, 'ի հերձուածոց անտի՝ որ անդէն և անդ յինքեանց 'ի վերայ իւրեանց ծնան՝ խռովեցուցիչք օտարք մտին 'ի նոսա և խռովեցուցին զնոսա: Սոյն իսկ այսու նախանձու չարին՝ որ զօրանայր 'ի նոսա, յայտ յանդիմանութ̃ք քարոզեցին զմոլորութ̃ի խաբէութ̃են իւրեանց 'ի հրապարակս, և ոչ ծածկեցին կամ թագուցին յամենայնէ որ և դիպէր նոցա: Իսկ երիցունքն կորընթացւոց իբրև տեսին թէ օր ըստ օրէ սփռեն և տարածանեն զքարոզութ̃ին իւրեանց, փութացան գրել ցուցանել Առաքելոյ զայն ինչ զոր քարոզէինն նոքա, եթէ կամ ինքն գլխովին փութապէս եկեսցէ, կամ ցրումն և լուծումն բանից նոցա մեծաւ հոգաբարձութ̃ք առաքեսցին 'ի նմանէ: Արդ վասն այսորիկ և վասն որ ինչ նման է սոցա, գրեն թուղթ և տան տանել 'ի ձեռն փոյթ երկուց սարկաւագաց առ Պաւղոս, յասելն իւրեանց այսպէս:

ՍՏԵՓԱՆՆՈՍ և որ ընդ նմա երիցունք, առ Պաւղոս եղբայր տէր՝ ողջոյն:

Արք ոմանք երկու եկին 'ի Կորընթոս, Սիմոն անուն և Կղովբիոս. և զոմանս ոմանս 'ի հաւատացելոց անտի առ ինքեանս դարձուցանեն: Բայց ոչ եթէ բանիւք ճշմարտութ̃ք դարձուցանեն զնոսա, այլ ապականեալ բանիւք. յորոց բանից վերայ դու ինքնին պարտիս հասանել: Զի մեք ոչ 'ի քէն երբէք լուաք զայսպիսի բանս, և ոչ յայլոց առաքելոց ընկերաց անտի քոց, զոր ինչ միանգամ յարանց աստի յայսցա-

նէ լսեմք մեք։ Այսչափ գիտեմք, եթէ որ ինչ 'ի քէն լուաք և որ ինչ յայլոց առաքելոցն, հաստատուն պարհեմք։ Արդ մեր տրտմութիւն ոչ եթէ վասն անձանց ինչ է, այլ վասն ժողովրդեանս։ Բայց յայսմիկ յոյժ ողորմեցաւ մեզ տէր. զի մինչ դեռ դու իսկ մարմնով ընդ մեզ ես, միւսանգամ 'ի քէն լուիցուք թղթով զայն ինչ զոր լուաք 'ի քէն բանիւք. կամ դու իսկ ինքնին փաղփաղակի առ մեզ եկեսջիր։ Մեք հաւատամք 'ի տէր՝ զի կամ յայտնեցաւ Եթէոնիայ և փրկեաց զքեզ Քրիստոս 'ի ձեռաց անտի անօրինի՝ առաքեաց առ մեզ, կամ թուղթ գրեսցես առ մեզ։ Այլ թերևս այս անուն դատաւորին էր, որ կապեացն զնա և եդ 'ի բանդի 'ի քաղաքի անդ փիղիպեցւոց։ Եւ են բանք մոլոր զոր ասեն և ուսուցանեն՝ այսպէս։ Չէ պարտ, ասեն, զմարգարէս ընդունել, այլ զաւետարանն. և ոչ զա̃ծ ասեն ամենակալ. այս ինքն այն, ասեն, որ խօսեցաւն 'ի մարգարէս, չէ ա̃ծ ամենակալ. և ոչ ասեն յարութի̃ մարմնոյ. և ոչ զմարդն ասեն բնաւ ստեղծեալ յա̃յ, այլ յեւթն վարչաց անտի. և ոչ ասեն երկրաւոր մարմնով եկն տէր մեր, այլ երկնաւոր մարմնով. և ոչ 'ի կուսէ Մարիամայ ծնեալ առնեն զնա. զի անցանելով անց, ասեն, ընդ նա՝ իբրև ոչ առ 'ի նմանէ ինչ. և ոչ զաշխարհս արարած առնեն ա̃յ, այլ հրեշտակաց ուրուն, այս ինքն նորուն իսկ եւթն վարչաց։

Այլ այս ուսումն վարդապետաց տանն Բարդեծանու է. և վասն այսորիկ ոչ թողին դեծանացիքն զայս թուղթ յառաքեալ իւրեանց։ Ասացեալ իսկ էր զայս Առաքելոյ 'ի գործս առաքելոցն. ասէ. զկնի իմ՝ յորժամ գնացից, մտցեն առ ձեզ գայլք յափշտակողք, որ ոչ անխայեսցեն 'ի վերայ աշակերտաց. և 'ի ձէնջ յարիցեն մարդք կամակորախօսք, և դարձուսցեն զաշակերտս երթալ զկնի իւրեանց։ Արդ յաւուրց անտի Առաքելոյ, որպէս և մարգարէացաւ ինքն Առաքեալ, որպէս և գրեցին և կորընթացիքն, հաստատեցաւ այս աղանդ։ Զի կարծեն աշակերտքն Բարդեծանու եթէ 'ի Բարդեծանն վարդապետէն նոցա գիտ զայս. և 'ի նոցանէ իսկ գրեցան պրակսա-

թոյքն. զի 'ի մէջ զօրութեանց և նշանաց առաքելոցն զոր գրեցին, գրեսցեն յանուն առաքելոցն զանօրէնութիւն՝ զոր խափանեցին առաքեալքն: Վասն այսորիկ ասեն. զոր գրեցաք մեք առ քեզ թուղթ, փոյթ յանձին կալջիր հասանել առ մեզ դու իսկ գլխովին. որպէս զի տեսլեամբ քով և բանիւք քովք առանց գայթագղութեան կացցէ քաղաքս կորընթացւոց, և նոցա յիմարութիւն ճշմարտութեան և քարոզութեան քո յայտ յանդիմանութ̃ ամենեցուն խայտառակեալ մերժեսցի:

Առին տարան զթուղթն 'ի քաղաք փիղիպեցւոց: Եւ քանզի դիպեցաւ օրն հալածմանց Պաւղոսի, այն որ տանջեցին զնա գաւազանօք և եդին 'ի բանդի, քանզի հանեալ էր նորա զդևն յաղախնոյ անտի՝ որ դիւթէրն՝ շրջէր, երկեան նոքա երթալ առ նա. և ետուն տանել զթուղթն 'ի ձեռն Ապողափանի կնոջն: Ապա եթէ չէ այս այն գիշէր, քանզի յայնմ գիշերի շարժումն եղև 'ի նմա, և դրունք բանդին առ հասարակ բացան, և կապանքն արձակեցան 'ի նմանէ, և հան զնոսա անտի բանդապետն, և տարաւ 'ի տուն իւր, և մատուցին զթուղթն:

Այլ իբրև առ նա զթուղթն, և մնացաւ նա ընդ կապանօքն, և սուգ առնու վասն բանիցն զոր լուաւ. և ասէ լալով. Իբրու զի լաւ էր ինձ թէ վախճանեալ էի, և ընդ տեառն էի յուսով և խաղաղութ̃, և ոչ զի յետ կապանացս համբերութեան վասն մարդկան՝ դարձեալ յառաջեն քահանայք սատանայի, և խռովել և մոլորեցուցանել զմարդիկ զոր դարձուցանեմ ես: Եւ այսպէս բազում չարչարանօք 'ի հալածչաց և 'ի խաբէից անտի զոր համբերէր Պաւղոս, առնէր թղթոյն պատասխանի կորընթացւոցն լալով յառելն իւրում այսպէս.

ՊԱՒՂՈՍ կալանաւոր Յսի Քրիստոսի. այս ինքն վասն Յիսուսի Քրիստոսի. առ եղբարս կորընթացիս, 'ի բազում նեղութենէ աստի զոր ունիմ ես 'ի տանջանաց և կապանաց և համբաւուց չարեաց, ողջոյն: Ես ինչ ոչ կարի զարմացեալ եմ. այս ինքն զի յոյժ

զարմացեալ եմ, զի այդչափ վաղվաղակի ընթանան հրապոյրք չարին յաշխարհ։ Այլ տէր մեր Յիսուս Քրիստոս վաղվաղակի արասցէ զգալուստ իւր վասն այնորիկ որ անարգեն զնա սովին իսկ այսուիկ՝ զի փոփոխեն զճշմարտութ՟ բանիցն նորա։ Այլ ես 'ի սկըզբանէ, այս ինքն յորմէ հետէ տեսի զձեզ, զայս ինչ լուայ յառաքելոց անտի, որ զամենայն ժամանակ աւետարանութե՟ ընդ տեառն մերում շրջէին, ուսուցի ձեզ՝ թէ Յիսուս Քրիստոս 'ի Մարիամայ ծնաւ, ոչ եթէ անց ընդ նա. և 'ի զաւակէ Դաւթի, և ոչ եթէ մարմին երկնաւոր. և ըստ աւետեաց Հոգւոյն սրբոյ առ յերկնից առաքելոյն 'ի նա, և ոչ եթէ Յուսեփայ մօտելոյն 'ի նա։ Եւ այս զի եղև, զի ազատեցուսցէ յապականութե՟ զամենայն մարմին իւրով մարմնովն. և զի զմեզ 'ի մեռելոցն յարուսցէ մարմնով, որպէս ցոյց զանձն իւր օրինակ։

Մարդն առաջին 'ի Հօրէ ստեղծաւ, և ոչ եթէ 'ի վարչաց անտի. որպէս և դրդայդ ասեն։ Վասն այսորիկ և 'ի կորստեան խնդրեցաւ նա 'ի ձեռն Որդւոյ. ոչ զի խրամատեցի և մեռցի արդարութ՟, վն՟ զի կորոյս նա զանձն իւր մեղօք, այլ զի կենդանասցի շնորհօք, և եղիցի յորդեգրութի՟։ Այլ ած՟ ամենայն աշխարհաց, այս ինքն ամենայն դարուց, այն որ ամենակալն է, այն որ արար զերկինս և զերկիր, և ոչ եթէ հրեշտակք, որպէս խաբիչքն ձեր քարոզեն, և առաքեաց նախ առ Հրէայսն զմարգարէսն, զի փըրկեսցին յիշատակօքն նոցա 'ի մեղաց, և յերկրպագութենէ անտի կռոցն։ Զի կամէր նա փրկել զտունն Իսրայէլի. և վկայէ փոյթն առնել 'ի ձեռն մարգարէիցն՝ որ եղև վասն նոցա. վասն այսորիկ բաշխեաց արկ նա յՈգւոյ անտի Քրիստոսի 'ի վերայ մարգարէիցն։ Այս զի այն Հոգին՝ որ քարոզէր 'ի ձեռն առաքելոցն, նոյն և 'ի մարգարէսն զանմոլար ած՟պաշտութիւն, և զծնունդն Քրիստոսի ժամանակօք բազմօք քարոզէր. այս ինքն հազար չորեքարիւր և երեսուն ամ. յելից անտի յերկրէն եգիպտացւոց մինչև 'ի գալուստ տեառն մերոյ ընդ շատ և ընդ փոքր այդչափ լինին։ Քանզի որ անօրէնն իշխանն էր, իբրև ած՟անալն կամեցաւ, վասն այնորիկ ձեռն ար-

## ԳԼՈՒԽ ԺԱ

Աւ էր եթէ ներէիք փոքր մի մտօք ձերովք 'ի միտ առնուլ ձեզ զայս ինչ՝ զոր փոքր մի խօսիմ ես անզգամութ՟բ. այս ինքն պարծանօք ։ Նա և արժան իսկ է ձեզ անսալ ինձ. քան զի 'ի նա խօսիմ ես, այն զի 'ի ձեռն քարոզութե՟ն որոյ հաստատեցի՝ խօսեցայ մարմնով և խորհրդովք իւրովք ։ Այսպէս հաստատեցի և խօսեցայ զանձինս ձեր 'ի ձեռն ճըշմարտութե՟ն սրբոյ յանդիման առնել ձեզ յաւուրն յետնում, առաջի Քրիստոսի կացուցանել ։ Այլ երկընչիմ, գուցէ իբրև օձն զի խաբեաց զԵւայ 'ի խորամանկութի իւր, և մոլորեցոյց յա՟յ, այնպէս ինչ ապականիցին ինչ միտք ձեր յառաքելոց անտի օձին 'ի միամտութենէ անտի սրբութե՟ն զոր 'ի Քրիստոսն ունիք. այս ինքն 'ի ճշմարտուե՟է անտի սրբուե՟ն Ք՟սի ։

Զի եթէ ոք եկն առ ձեզ, և այլ Քրիստոս զոք քարոզեաց զոր մեք ոչ քարոզեցաք ձեզ, կամ զոգի [1] ինչ օտար ընկալարուք 'ի ձեռն նոցա զոր ոչ մինչ դեռ մեքն առ ձեզն էաք՝ առեալ էր ձեր, կամ եթէ աւետարան ինչ այլ քարոզեցին ձեզ զոր չիցէ ընկալեալ ձեր 'ի մէնջ, բարւոք անսայիք և լսէիք բանից այնոցիկ՝ որ հայհոյեն զմեզ ։ Այսպէս համարիմ զանձն իմ՝ եթէ ոչ ինչ կարի պակաս ետու ես ձեզ քան զայն ինչ՝ զոր տան լաւ առաքեալքն քան զիս աշակերտաց իւրեանց ։ Ապա եթէ տգէտ եւս իցեմ բանիւ, որպէս ասացին, այլ ոչ եթէ գիտութ՟բ. այս ինքն ոչ եթէ ճշմարտութ՟բ և քարոզութ՟բ իմով. սակայն յամենայնի յայտնեցաք զանձինս մեր առ ձեզ ճշմարիտ աւետարանաւն և հոգևոր պարգևօքն ։

Գուցէ արդեւք մեղս ինչ գործեցի ես զայս, զի զանձն իմ խոնարհեցուցի. ո՞չ պարծեցայ զի դուք բարձրասջիք խոնարհութ՟բն զոր 'ի մէնջ ստանայք. կամ թէ այսու արդեւք փոքրկացայ, զի ձրի քարոզեցի ես ձեզ զաւետարանն ա՟յ. կամ զայլ եկեղեցիս

1 Յօրինակին զոփ ։

կողոպտեցի, զի կաշառեցից զձեզ այլով թօշակաւ, և զձեր գործ վճարեցից։ Այլ յորժամ ինչ պակասեաց ինձ մինչ դեռ առ ձեզն իսկ էի, որպէս և դուք ինքնին վկայէք, ոչ զոք 'ի ձէնջ ձանձրացուցի երբէք խնդրեալ ինչ։ Այլ յետ համբերութեան իմոյ պէտքն իմ լցան ինձ. ոչ յորդւոց քաղաքին ձերոյ, այլ եղբարքն որ եկին 'ի կողմանց մակեդոնացւոց, նոքա լըցուցին զպէտսն իմ։ Եւ ոչ եթէ այսուիկ միայն պահեցի զանձն իմ, զի մի ծանրացայց ինչ ձեզ. այլ յամենայնի ձեզ առանց ծանրանալոյ զանձն իմ պահեցի և պահեցից։ Զի գոյ ճշմարտութի Քրիստոսի յիս, որ ոչ փոխի. զի պարծանք իմ այս մինչև յայսօր ժամանակի ոչ ընդունայն լիցին, ոչ 'ի քաղաքի ձերում միայն, այլ յամենայն կողմանս աքայացւոց։

Այլ զայս զի առնեմ ես՝ միթէ ո՞չ սիրիցեմ զձեզ որպէս զմակեդոնացիսն, զի առի 'ի նոցանէն. այլ զայս զոր արարի և զոր առնեմ մինչ 'ի վախճան կատարածի, զի հատից զպատճառս՝ որ 'ի ձեռն այսր պատճառանաց կամին ստգտանել և բծել զմեզ. զի և այսուիկ որով պարծինս թէ չառնումք ինչ, իբրև գոյ նոցա, գտցին նոքա իբրև զմեզ՝ որ պակասեաց մեզ, և ոչ առաք ինչ։ Արդ մի խաբիք դուք զկնի նոցա վասն սակաւոյ՝ զոր զգեցեալ են կերպարանօք. զի այնպիսիքն սուտ առաքեալք են և մշակք նենգաւորք, և զարդարին 'ի կերպարանս առաքելոց Քրիստոսի. զոր օրինակ և սատանայ 'ի կերպս կերպս եղև 'ի լուսաւոր հրեշտակի 'ի ժամու յորում ասաց տեառն մերում 'ի վերայ աշտարակին. ասէ. “Եթէ Որդի ես դու ա՟յ, արկ զքեզ վերուստ 'ի վայր. զի գրեալ է՝ եթէ հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո„։ Սոյնպէս 'ի կերպս 'ի կերպս առնէ զպաշտօնեայս իւր 'ի նման պաշտօնէից արդարութե. իբրև ոչ[1] յերկոտասանից անտի և ոչ յեւթանասունն և յերկուց առաքելոցն են նոքա, որոց կատարածն իւրեանց 'ի կատարածի եղիցի ըստ գործս իւրեանց որ աստ։

Դարձեալ ասեմ, այս ինքն պարծիմ. այլ քանզի զայս ոչ լուեալ էր ձեր յինէն, մի ոք զիս առ անըս-

1 Յօրինակին պակասի ոչ։

գամս հաստատեցէք. և եթէ առ անզգամս ևս ունի-
ցիք զիս, վասն զի անժուժեցայ ես պարծել, գոնեայ
իբրև զմի յանզգամաց ընկալարուք զիս: Քանզի և
ես գիտեմ՝ թէ զոր խօսիմս, ոչ եթէ ըստ տեառն
ինչ խօսիմ, այլ իբրև անզգամութեամբ. այս ինքն յայս
տեղի պարծանաց: Քանզի բազումք եկին առ ձեզ,
և ընդունելի եղեն ոմանք 'ի մէնջ: Իբրու դուք ի-
մաստուն էք, և անսայք դուք ձերովդ իմաստութեամբդ,
և լուէք դուք քաջցրութեամբ զպարծանս զոր նոքա ըն-
ծայեցուցանեն զանձինս իւրեանց առ ձեզ. և խո-
նարհիք դուք նոցա, զի առաւելապէս ծառայեսջիք
դուք նոցա: Աւրակերպ լինելով ուտեն զձեզ. զի
թէպէտ և չառնուցուն 'ի ձէնջ, իբրև ոմանք 'ի նո-
ցանէն, և առնլով առնուն 'ի ձէնջ: Եւ կէսք հպար-
տանան 'ի վերայ ձեր իբրև իշխանք, և յանդիման իսկ
հարկանեն զձեզ: Արդ վասն զի զայս ամենայն զոր
մեք ոչ արարաք ձեզ՝ առնեն ձեզ վասն ձերոյ պար-
ծանաց, նա և մեք իսկ հիւանդացաք այդու[1] իրօք
յայդ, զի զձեզ յայդմանէ անխայեսցուք:

Այլ քանզի 'ի նոցունց առաքելոցն՝ որոց հերքայե-
ցիք էին, առ[2] նա ասել ընդդէմ նոցա, որ անուանեալքն
Աբրահամու ձեռն յանձին հարեալ պարծէին: Զի
եթէ, ասէ, որ ոք իշխեսցէ համարձակ ասել, յանզգա-
մութենէ ասեմ և իշխեմ և ես. եթէ հերքայե-
ցիք իցեն, և ես. և եթէ որդիք Յակովբու իցեն,
այն որ Իսրայէլն կոչեցաւ, և ես. եթէ յօրհնեալ
զաւակէ Աբրահամու իցեն, և ես. և եթէ պաշտօ-
նեայք Քրիստոսի իցեն, արտաքոյ մտաց ասացից,
այս ինքն ասացից որ յիս, առաւել ևս ես իցեմ: Իսկ
ե՞ւ եմ ես առաւել քան զնոսա. այլ վաստակովք և
կապանօք և հարուածովք 'ի մահու բազում ան-
գամ: Եթէ 'ի Հրէից ասէք, հնգապատիկ՝ քառա-
սուն միով պակաս արբի. երից անգամ ըստ կարգի
թագաւորաց ձաղկեցայ. միանգամ՝ 'ի քաղաքէ քար-
կոծեցայ. երից անգամ 'ի ծովու նաւաբեկ եղեայ.
ընդ տիւ և ընդ գիշեր ժամէ 'ի ժամ առանց նաւի

1 Յօրինակին այդու. որպէս և այլ
լուր այնու.

2 Յօր. գրեալ էր առ նոսա ասել
ընդդէմ նոցա. ասել որ անուանեալքն:

յանդուգնդս տառապեցայ ։ Այս ինքն 'ի ժամանակի՝ իբրև եղ նա 'ի Հռոմ քաղաք ։ Վիշտս 'ի Ճանապարհաց և 'ի գետոց ․ 'ի ժամանակի՝ իբրև անցանէր նա 'ի հեռաւոր աշխարհս քարոզել զաւետարանն ։ Վիշտըս յաւազակաց ․ այնոցիկ՝ որ դարանս գործեցին , և նզովեցին զանձինս իւրեանց՝ եթէ ոչ կերիցեն հաց , մինչև զնա սպանցեն ։ Վիշտս 'ի քաղաքաց ․ յԵփեսոս և յԻկոնիոն և յԱնտիոք և յայլ ևս ։ Եւ ոչ եթէ այս միայն , այլ և 'ի ջանս և 'ի վաստակս , զի շրջէր ընդ աշխարհս ամենայն հետիոտս ․ 'ի քաղց և 'ի ծարաւ առ չքի հացի և ջրոյ , բայց 'ի բաղում պահոց անտի՝ որ 'ի կամաց և 'ի ցուրտ Ճանապարհի , և 'ի մերկութե առ չգոյէ հանդերձի ․ Թող զայլ նեղութիւնս՝ որ հանապազ 'ի վերայ իմ կուտակեալ էին ․ Դարձեալ և հոգք , ոչ միոյ քաղաքի կամ միոյ աշխարհի , այլ ամենայն եկեղեցեաց ։

Ո՞վ է որ հիւանդանայ իբրև զձեզ մտովք իւրովք , և ոչ ես տրտմիմ ընդդէմ նոցա ․ ո՞վ է որ գայթագղի 'ի հաւատոց , և ոչ ես մաշիմ՝ եթէ որպէս դարձուցից զնա ։ Եւ եթէ պարծել ինչ պարտ իցէ , զգործ տկարութե այս ինքն եթէ փորձանօք պարտ իցէ պարծել ։ Երդնում ես և ոչ ստեմ ․ 'ի Դամասկոս շահապն Արետ արքայի զամենայն քաղաքն յուզեաց գտանել զիս ․ և իբրև ոչ կարացի ես թաքչել 'ի մէջ նորա և կամ ելանել ընդ դուռն նորա , ընդ պատուհան պարսպացն ապրեցայ 'ի ձեռաց նորա ։

## ԳԼՈՒԽ ԺԲ

Արդ պարծել այսուքիմբք վասն սորին պիտի , բայց մեզ ինչ ոչ օգնէ ։ Բայց սակայն եկեսցուք դարձեալ 'ի տեսիլս և 'ի յայտնութիս տեառն ։ Թէպէտ և բազում յայտնութիք եղեն 'ի վերայ նորա , սակայն քան զամենայն զայն որ եղև 'ի վերայ նորա 'ի Ճանապարհին Դամասկեայ , որ ամենայն մարդոյ յայտնի էր , կամեցաւ ասել ․ և ոչ եթէ յիւր անուն գրեաց զնա ։ Գիտեմ ես , ասէ , այր մի 'ի Քրիստոս յառաջ քան զչորեքտասան ամ ․ եթէ մարմնով իցէ և եթէ ա-

ռանց մարմնոյ իցէ, ոչ գիտեմ։ Այս ինքն 'ի ժամուն՝ զի յափշտակեցաւ նա. յետ յայտնութեան գիտաց նա՝ եթէ միտք նորա յափշտակեցան. և ուղեկիցք նորա ասացին՝ թէ մարմին նորա ուրեք ոչ փոխեցաւ։

Յափշտակեցաւ մինչև յերրիս յերկինս, կամ յերրորդ յերկնից, որպէս և Յոյնք ասեն. զի նա է արքայութիւն երկնից, ոչ է երկինս։ Կամ աւելի է նա քան զերկուս երկինս, որպէս Մովսէսն համարեցաւ մեզ. կամ երկինք որ եղեն ընդ երկրի՝ բազում են, և մեզ թուեցաւ եթէ մի է։ Մեկնէ զայս Դաւիթ թէ բազումք են, և ասէ. "Երկինք պատմեն զփառս ա̃յ, և զարարածս ձեռաց նորա պատմէ հաստատութիւն"։ Եւ Առաքեալ ասէ. "Գործք ձեռաց քոց երկինք են"։ Դարձեալ ասէ. "Ել նա 'ի վերոյ քան զամենայն երկինս"։ Իսկ զբանս զանճառս զոր լուաւ, վասն ծննդեան Որդւոյ ասաց։ Լուաւ և հաճեցաւ նա։ Եւ վասն այսորիկ ըմբոստացեալ էր և հալածէր զեկեղեցիս։ Եւ քահանայքն և դպիրքն հրէից այսուիկ գայթագղէին, եթէ զիարդ ծնանի ա̃ծ։ Մարդ ես դու, ասեն, և առնես զանձն քո ա̃ծ։

Վասն այնպիսեացն, ասէ, պարծեցայց. այլ վասն անձին ինչ ոչ պարծեցայց, թէ ոչ տկարութ̃ք։ Զի սուտ առաքեալքն ոչ իւրեամբքն զանձինս իւրեանց զարդարէին. իսկ Առաքեալ և զիւրն ևս յանուն այլոց պատմէր։ Զի թէպէտ և կամիցիմ ինչ պարծել, այս ինքն այլովք յայտնութ̃ք, ոչ ինչ սուտ երևեցայց, քանզի զարդարն խօսիմ։ Այլ անխայեմ, գուցէ որպէս այլքն զի համարեցան զիս ա̃ծ 'ի ձեռն զօհիցն զոր բերին, իբրև այնու խորհեցան վասն իմ, և այլք 'ի պատճառս յայտնութեանց աւելի ինչ քան զայն զոր տեսանէ ոք ինչ յիս, և կամ լսէ ոք ինչ յինէն։ Այլ զի մի հպարտացայց վասն առաւելութեանց յայտնութեանց զոր յայտնեցի ես[1], տուաւ ինձ խայթ մարմնոյ հրեշ-

1 Կատանոր թուի թէ շփոթեալ իցէ գրիչն՝ կրկին գաղափարեալ զերկու հատուածս այլ և այլ տեղեաց յարելով ընդ միմեանս, յորս չերևի միաբանութի̃ և ոչ յարմարութի̃ ընդկարգի բանիցն։ Զի զկնի բառիցդ յայտնեցի ես, առեալ երկու տողս 'ի հատուածոյն Դարձեալ ասէմ, որ կայ յէջն 109 յարէ ընդ նմա մինչև վանդի. և զհետ նորա զայլ հատուած այլայլութե̃ այն ինչ քան զայն որ տեսանէ ոք ինչ յինէն լսէ յինէն, յէջ 112.

տակ սատանայի՝ զի կռփեսցէ զիս, զի մի հպարտացայց ։ Խոկ խայթ՝ կամ ցուրտ էր, որպէս ոմանք ասեն. կամ Աղեքսանդր դարբին էր, որպէս այլք ասեն ։ Եւ վասն այսորիկ երից անգամ աղաչեցի զտէր, զի 'ի բաց արասցէ յինէն. և ասէ ցիս. շատ են քեզ շնորհքն իմ՝ որ կռփեն զխայթն քո. զի զօրութի իմ 'ի տկարութե կատարի ։ Այս՝ զի զօրութի շնորհաց յօգնականութի տկարաց կատարի ։ Այլ սովին իսկ այսուիկ ոչ լսելով լսելի եղև. զի յայտնութի և վասն այսորիկ՝ որ ոչ եղև լսելի՝ եղև 'ի վր նր. զի հաճեսցէ և հաւանեցուսցէ զնա՝ եթէ վասն էր ոչ եղև լսելի ։

Արդ լաւ լիցի ինձ պարծել. այս ինքն ակն ունել տկարութք. զի բնակեսցէ յիս զօրութին Քրիստոսի ։ Վասն այսորիկ հաճեալ եմ ընդ տկարութիւնս, ընդ թշնամանս և ընդ հալածանս. զի յորժամ տկարանամ ես այսու արտաքնովս, յայնժամ զօրացեալ լինիմ ես ներքնովքն ։ Ո՛հ անզգամ եւս եղէ և պարծեցայ. զի ձերով հնազանդութքն զոր հնազանդեցայք թշնամանելոց և հպարտից, ստիպեցէք զիս գալ հասանել ինձ յայս. զի պարտ իսկ էր ձեզ մինչ մեք լուռ կայաք՝ վկայել ձեզ վասն մեր առաջի հայհոյչացն մերոց ։ Զի ինչ մի յամենայն պարգևացն՝ որ տուեալ լինի 'ի ձեռն Հոգւոյն, ոչ ինչ պակասեալ գտայ ես առ ձեզ քան զայնոսիկ՝ որ լաւ առաքեալքն իցեն ։ Զի թէպէտ և ես ոչ ինչ իցեմ գործովք իմովք, սակայն զնշանս առաքելոց գործեցի 'ի միջի ձերում. և 'ի ձեռն այսր որ բարձրացուցանեն զմարդիկ, մեք ամենայն համբերութք եղեաք առ ձեզ. հանդերձ նշանօք և արուեստիւք և զօրութք զոր գործէաք մեք, ոչ միով իւիք համբերէաք մեք. զի ամենայն ումեք ամենայնիւ մեք հնազանդէաք ։

Օ ի՞նչ այն ինչ իցէ՝ որով դուք պակաս գտեալ իցէք քան զայլ եկեղեցիս. բայց եթէ այսչափ, զի ես ոչ ինչ ծանծրացուցի զձեզ. այս ինքն զի ոչ առի յանձն ինչ առնուլ 'ի ձէնջ ։ Զի ոչ եթէ խնդրեմ ինչ զձեր, այլ զձեզ. քանզի ոչ եթէ որդիք հարց 'ի ծածուկ

տող 30. և ապա այլայլութ իմաստից դարձեալ կրկնէ զսկիզբն ա- ռաջիկայ համառօտութ. Այս ու ի՞ հպարտացայց. . զորս ոչ յայտնեցի ես ։

կամ յայտնի զանձեն, այլ հարք որդւոց։ Արդ ես մտադիւրութեամբ ծախեցից և ծախեցայց, ոչ 'ի վերայ ստացուածոց ձերոց, այլ 'ի վերայ անձանց ձերոց։ Իսկ ես զի զայս առաւել սէր սիրեմ զձեզ, ընդէ՞ր սակաւ սիրիմ 'ի ձէնջ։ Այլ դու գրեա թէ ես ինչ ոչ ծանծրացուցի զձեզ. թերևս իբրև այր մի խորագէտ խելօք կալայ զձեզ։ Ի ձեռն այլոց զորս առաքեցի առ ձեզ, նոքօք ինչ զրկեցի՞ զձեզ։ Մի՞ թէ ագահեա՞ց ինչ 'ի ձէնջ Տիտոս 'ի ժամանակի իբրև առաքեցի ես զնա առ ձեզ. ո՞չ նովին հոգւով և նովին շաւղօք իմովք շրջեցաւ նա առ ձեզ, զի մի՛ բեռն ինչ ումեք լինիցի նա 'ի ձէնջ։

Այլ զայս զոր առնեմ ես և պատուիրեմ այնոցիկ զորս առ ձեզն առաքեմ, վասն ձերոյ շինութեան առնեմ. թէ զոր ինչ տեսէք դուք յիս և 'ի Տիտոս [1], արասջիք և վկայեսջիք վասն մեր։ Այլ երկնչիմ, դուցէ գայցեմ, և որպէս ոչ ես կամիմ՝ գտանիցեմ զձեզ. դուցէ դարձեալ հեռ և նախանձ, այլովք հանդերձ։ Գուցէ առ ձեզ յորժամ գայցեմ, նկուն առնիցէ Ած իմ զիս առ ձեզ. այս ինքն չարչարեսցէ զիս Ած իմ վասն ձեր, և սուգ առեալ գտանիցիմ 'ի ձէնջ վասն բազմաց՝ որ յանցուցեալ իցեն, և չիցեն ապաշխարեալ։

## ԳԼՈՒԽ ԺԳ

ՅԱՌԱՋ յանցուցելոցն և այլոցն ամենեցուն, արդ ապաշխարեսցեն. զի եթէ եկից դարձեալ և ոչ գտից զնոսա ապաշխարեալս, ոչ ևս անխնայեցից 'ի նոսա։ Կամ թէ զփո՞րձ ինչ առնուլ խնդրէք զՔրիստոսի, այն որ ոչ եթէ տկար ինչ է նա 'ի ձեզ. զի զօրացեալ է նա 'ի ձեզ։ Եթէ կամիջիք կարդալ զնա օգնական լինել նմա ձեզ 'ի ժամանակի, իբրև յարուցեալ իցեն 'ի վերայ ձեր խորհուրդք չարին և ցանկութեան մարմնոյ։ Արդ զի զօրացեալ է նա 'ի ձեզ, ահա վկայեն պարգևք Հոգւոյն՝ որ տուան ոմանց 'ի ձէնջ, և ոչ ամենեցուն ձեզ։ Զի թէպէտ և եղ նա 'ի խաչ

1 Յօրինակին և Տիտոս։

*տկարութեամբ վասն մարդկութեան իւրոյ, այլ կենդանի է զօրութեամբ աստուածութեան իւրոյ: Եւ ահաւասիկ կնքեն և հաստատեն նշանքն և սքանչելիք՝ որ գործին յանուն նորա: Եւ եթէ մեք տկար եմք 'ի նա հալածանօք և թշնամանօք, կենդանասցուք նովաւ նշանօք զոր գործեմք մեք յանուն նորա:*

*Փորձեցէք դուք զմիմեանս, եթէ կայցէք դուք 'ի նոյն հաւատս զոր ետուն ես ձեզ, և ոչ խոտորեալ իցէք դուք զկնի սուտ առաքելոցն: Եւ զանձինս ձեր ևս փորձեցէք, գուցէ երկմտութիւն ինչ լիալ իցէ 'ի միտս ձեր. զի եթէ երկմտիք դուք, Քրիստոս մեկնի զնայ 'ի ձէնջ, և անպիտանք գտանիջիք: Այն ունիմ եթէ գիտիցէք՝ եթէ մեք չեմք անպիտանք, որպէս սուտ առաքեալքն կարծեն զմէնջ. զի աւասիկ տանջանքս մեր վկայեն վասն ճշմարտութեան մերոյ, և յայտնի վէրքս մարմնոցս մերոց և կնքեն և հաստատեն վասն ծածուկ հաւատոց մտաց մերոց: Խնդրեմք յայ, զի մի ինչ արասցէք դուք չար. զի մի երևեսցուք մեք խբրև ընտիրք, այս ինքն մեք ընտրիմք ձեւք. այլ զի դուք բարիս գործեցէք, և մեք անպիտանք երևեսցուք: Այն է զի ասէ. ուրախ եմք, յորժամ մեք տկարանամք, և դուք զօրանայք. այս ինքն յորժամ մեք հալածիմք, և դուք 'ի խաղաղութեան բնակեալ էք: Սոյնպէս և մեք աղաչեմք զդոյն, զի դուք կատարեալք լինիջիք բանիւք և արդեամբք: Վասն այսորիկ զայս 'ի հեռուստ գրեմ, զի մի յորժամ առ ձեզ եկից, խստութեամբ սաստկացայց 'ի վերայ ձեր ըստ իշխանութեանս՝ որ տուեալ է ինձ 'ի տեառնէ կապել յերկինս և յերկրի:*

*Այսուհետև ուրախ լերուք, զի տրտմեցուցի զձեզ առաջին թղթովն իմով. և կատարեալք լերուք որով խելք պակասն էիք. և մխիթարեցարուք, զի սգացեալ էիք. և միաբանեցէք, զի հեռի էիք ընդ միմեանս: Եւ Աստուած սիրոյ և խաղաղութեան եղիցի ընդ ձեզ, զի նովաւ սիրեսջիք դուք զայնոսիկ զորս վասն յանցանացն իւրեանց մերժէիք և օտարացուցանէիք 'ի ձէնջ. և խօսեցարուք զխաղաղութիւն ընդ այնոսիկ՝ որ վասն չմարթութեան նոցա արգելլիք 'ի նոցանէ զբան բերանոյ ձերոյ:*

ԱՌ

# ԿՈՐԸՆԹԱՑԻՍ ԵՐՐՈՐԴ

ԿՈՐԸՆԹԱՑԻՔ յետ միաբանելոյն իւրեանց 'ի ձեռն Թղթոյն Առաքելոյ, 'ի հերձուածող անտի' որ անդէն և անդ յինքեանց 'ի վերայ իւրեանց ծնան' խռովեցուցիչք օտարք մտին 'ի նոսա և խռովեցուցին զնոսա ։ Սոյն իսկ այսու նախանձու չարին' որ զօրանայր 'ի նոսա, յայտ յանդիմանութ̃ քարոզեցին զմոլորուի̃ խաբէուե̃ն իւրեանց 'ի հրապարակս, և ոչ ծածկեցին կամ թագուցին յամենայնէ որ և դիպէր նոցա ։ Իսկ երիցունքն կորընթացւոց իբրև տեսին թէ օր ըստ օրէ սփռեն և տարածանեն զքարոզութի̃ն իւրեանց, փութացան գրել ցուցանել Առաքելոյ զայն ինչ զոր քարոզէինն նոքա, եթէ կամ ինքն գլխովին փութապէս եկեսցէ, կամ ցրում̃ն և լուծում̃ն բանից նոցա մեծաւ հոգաբարձութ̃բ առաքեսցին 'ի նմանէ ։ Արդ վասն այսորիկ և վասն որ ինչ նման է սոցա, գրեն թուղթ և տան տանել 'ի ձեռն փոյթ երկուց սարկաւագաց առ Պաւղոս, յասելն իւրեանց այսպէս ։

ՍՏԵՓԱՆՆՈՍ և որ ընդ նմա երիցունք, առ Պաւղոս եղբայր տէր' ողջոյն ։

Արք ոմանք երկու եկին 'ի Կորընթոս, Սիմոն անուն և Կղովբիոս. և զոմանս ոմանս 'ի հաւատացելոց անտի առ ինքեանս դարձուցանեն ։ Բայց ոչ եթէ բանիւք ճշմարտութ̃բ դարձուցանեն զնոսա, այլ ապականեալ բանիւք. յորոց բանից վերայ դու ինքնին պարտիս հասանել ։ Զի մեք ոչ 'ի քէն երբէք լուաք զայսպիսի բանս, և ոչ յայլոց առաքելոց յընկերաց անտի քոց, զոր ինչ միանգամ յարանց աստի յայսցա֊

նէ լսեմք մեք ։ Այսչափ գիտեմք, եթէ որ ինչ 'ի քէն լուաք և որ ինչ յայլոց առաքելոցն, հաստատուն պահեմք ։ Արդ մեր տրտմութիւն ոչ եթէ վասն անձանց ինչ է, այլ վասն ժողովրդեանս ։ Բայց յայսմիկ յոյժ ողորմեցաւ մեզ տէր. զի մինչ դեռ դու իսկ մարմնով ընդ մեզ ես, միւսանգամ 'ի քէն լուիցուք թղթով զայն ինչ զոր լուաք 'ի քէն բանիւք. կամ դու իսկ ինքնին վաղվաղակի առ մեզ եկեսջիր ։ Մեք հաւատամք 'ի տէր՝ զի կամ յայտնեցաւ Եթէոնիայ և փրկեաց զքեզ Քրիստոս 'ի ձեռաց անօրինի՝ առաքեաց առ մեզ, կամ թուղթ գրեսցես առ մեզ ։ Այլ թերևս այս անուն դատաւորին էր, որ կապեացն զնա և եդ 'ի բանդի 'ի քաղաքի անդ փիղիպեցւոց ։ Եւ են բանք մոլոր զոր ասեն և ուսուցանեն՝ այսպէս ։ Չէ պարտ, ասեն, զմարգարէս ընդունել, այլ զաւետարանն. և ոչ զա͞ծ ասեն ամենակալ. այս ինքն այն, ասեն, որ խօսեցաւ 'ի մարգարէս, չէ ա͞ծ ամենակալ. և ոչ ասեն յարութի͞ մարմնոյ. և ոչ զմարդն ասեն բնաւ ստեղծեալ յա͞յ, այլ յեւթն վարչաց անտի. և ոչ ասեն երկրաւոր մարմնով եկն տէր մեր, այլ երկնաւոր մարմնով. և ոչ 'ի կուսէ Մարիամայ ծնեալ առնեն զնա. զի անցանելով անց, ասեն, ընդ նա՝ իբրև ոչ առ 'ի նմանէ ինչ. և ոչ զաշխարհս արարած առնեն ա͞յ, այլ հրեշտակաց ուրումն, այս ինքն նորուն իսկ եւթն վարչաց ։

Այլ այս ուսումն վարդապետաց տանն Բարդեծանու է. և վասն այսորիկ ոչ թողին զեծանացիքն զայս թուղթ յառաքեալ իւրեանց ։ Ասացեալ իսկ էր զայս Առաքելոյ 'ի գործս առաքելոցն. ասէ. զկնի իմ՝ յորժամ գնացից, մտցեն առ ձեզ գայլք յափշտակողք, որ ոչ անխայեսցեն 'ի վերայ աշակերտաց. և 'ի ձէնջ յարիցեն մարդք կամակորախօսք, և դարձուսցեն զաշակերտս երթալ զկնի իւրեանց ։ Արդ յաւուրց անտի Առաքելոյ, որպէս և մարգարէացաւ ինքն Առաքեալ, որպէս և գրեցին և կորընթացիքն, հաստատեցաւ այս աղանդ ։ Զի կարծեն աշակերտքն Բարդեծանու եթէ 'ի Բարդեծան վարդապետէն նոցա գիտ զայս. և 'ի նոցանէ իսկ գրեցան պրակսաւ-

Թոյքն. զի 'ի մէջ զօրութեանց և նշանաց առաքելոցն զոր գրեցի, գրեցեն յանուն առաքելոցն զանօրէնութիւն՝ զոր խափանէին առաքեալքն: Վասն այսորիկ ասեն. զոր գրեցաք մեք առ քեզ թուղթ, փոյթ յանձին կալջիր հասանել առ մեզ դու իսկ գլխովին. որպէս զի տեսլեամբ քով և բանիւք քովք առանց գայթագղութեան կացցէ քաղաքս կորընթացւոց, և նոցա յիմարութիւն ճշմարտութեան և քարոզութեան քո յայտ յանդիմանութեամբ ամենեցուն խայտառակեալ մերժեսցի:

Առին տարան զթուղթն 'ի քաղաք փիղիպեցւոց: Եւ քանզի դիպեցաւ օրն հալածմանց Պաւղոսի, այն որ տանջեցին զնա դաւաղանօք և եդին 'ի բանդի, քանզի հանեալ էր նորա զդևն յաղախնոյ անտի՝ որ դիւթէրն՝ շրջէր, երկեան նոքա երթալ առ նա. և ետուն տանել զթուղթն 'ի ձեռն Ապողափանի կնոջն: Ապա եթէ չէ այս այն գիշեր, քանզի յայնմ գիշերի շարժումն եղև 'ի նմա, և դրունք բանդին առ հասարակ բացան, և կապանքն արձակեցան 'ի նմանէ, և հան զնոսա անտի բանդապետն, և տարաւ 'ի տուն իւր, և մատուցին զթուղթն:

Այլ իբրև առ նա զթուղթն, և մնացաւ նա ըղկապանօքն, և սուգ առնու վասն բանիցն զոր լուաւ. և ասէ լալով. Իբրու զի լաւ էր ինձ թէ վախճանեալ էի, և ընդ տեառն էի յուսով և խաղաղութեամբ, և ոչ զի յետ կապանացս համբերութեան վասն մարդկան՝ դարձեալ յառաջին քահանայք սատանայի, և խռովել և մոլորեցուցանել զմարդիկ զոր դարձուցանեմ ես: Եւ այսպէս բազում չարչարանօք 'ի հալածչաց և 'ի խաբէից անտի զոր համբերէր Պաւղոս, առնէր թըղթոյն պատասխանի կորընթացւոցն լալով յանձին իւրում այսպէս.

ՊԱՒՂՈՍ կալանաւոր Յիսուսի Քրիստոսի. այս ինքն վասն Յիսուսի Քրիստոսի. առ եղբարս կորընթացիս, 'ի բազում նեղութենէ ասաւ զոր ունիմ ես 'ի տանջանաց և կապանաց և համբաւուց չարեաց, ողջոյն: Ես ինչ ոչ կարի զարմացեալ եմ. այս ինքն զի յոյժ

զարմացեալ եմ, զի այդչափ վաղվաղակի ընթանան հրապուրք չարին յաշխարհ։ Այլ տէր մեր Յիսուս Քրիստոս վաղվաղակի արասցէ զգալուստ իւր վասն այնորիկ որ անարգեն զնա սովին իսկ այսուիկ՝ զի փոփոխեն զՃշմարտութի̃ բանիցն նորա։ Այլ ես 'ի սկըզբանէ, այս ինքն յորմէ հետէ տեսի զձեզ, զայն ինչ լուայ յառաքելոց անտի, որ զամենայն ժամանակ աւետարանութե̃ ընդ տեառն մերում շրջէին, ուսուցի ձեզ՝ թէ Յիսուս Քրիստոս 'ի Մարիամայ ծնաւ, ոչ եթէ անց ընդ նա. և 'ի զաւակէ Դաւթի, և ոչ եթէ մարմին երկնաւոր. և ըստ աւետեաց Հոգւոյն սրբոյ առ յերկնից առաքելոյն 'ի նա, և ոչ եթէ Յուսեփայ մօտելոյն 'ի նա։ Եւ այս զի եղև, զի ազատեսցուցէ յապականութենէ զամենայն մարմին իւրով մարմնովն. և զի զմեզ 'ի մեռելոցն յարուսցէ մարմնով, որպէս ցոյց զանձն իւր օրինակ։

Մարդն առաջին 'ի Հօրէ ստեղծաւ, և ոչ եթէ 'ի վարչաց անտի. որպէս և դոքայդ ասեն։ Վասն այսորիկ և 'ի կուսութեան խնդրեցաւ նա 'ի ձեռն Որդւոյ. ոչ զի խոտամատեսցի և մեռցի արդարութ̃ք, վ̃ն զի կորոյս նա զանձն իւր մեղօք, այլ զի կենդանասցի շնորհօք, և եղիցի յորդեգրութի̃։ Այլ ա̃ծ ամենայն աշխարհաց, այս ինքն ամենայն դարուց, այն որ ամենակալն է, այն որ արար զերկինս և զերկիր, և ոչ եթէ հրեշտակք, որպէս խաբիչքն ձեր քարոզեն, և առաքեաց նախ առ Հրեայսն զմարգարէսն, զի փըրկեսցէն յիշատակօքն նոցա 'ի մեղաց, և յերկրպագութենէ անտի կռոցն։ Զի կամէր նա փրկել զտունն Իսրայէլի. և վկայէ փոյթն առնել 'ի ձեռն մարգարէիցն՝ որ եղև վասն նոցա. վասն այսորիկ բաշխեաց արկ նա յՈգւոյ անտի Քրիստոսի 'ի վերայ մարգարէիցն։ Այս զի այն Հոգին՝ որ քարոզէր 'ի ձեռն առաքելոցն, նոյն և 'ի մարգարէսն զանմոլար ա̃ծպաշտութիւն, և զծնունդն Քրիստոսի ժամանակօք բազմօք քարոզէր. այս ինքն հազար չորեքարիւր և երեսուն ամ. յելից անտի յերկրէն Եգիպտացւոց մինչև 'ի գալուստ տեառն մերոյ ընդ շատ և ընդ փոքր այդչափ լինելին։ Քանզի որ անօրէնն իշխանն էր, իբրև ա̃ծանալն կամեցաւ, վասն այնորիկ ձեռն ար-

կանէր սպանանել զմարգարէսն յիշեցուցիչս. որպէս զի զամենայն մարմինս մարդկան ցանկութք կալեալ է:

Իսկ իշխանն զի կոչեաց զնա, զի իշխանութի ունէր նա 'ի վերայ զօրաց բնակչաց իւրոց. և անօրէնն՝ զի անուանեաց զնա, զի ոչ շատ եղև նմա իշխանութիւն դիւաց, և կամեցաւ և 'ի վերայ մարդկան եւս տածանալ: Եւ զի սպանանէր նա զմարգարէսն, ոչ եթէ ինքն, այլ 'ի ձեռն մարգարէից իւրոց և 'ի ձեռն Յիզաբէլայ և Ախաբու և 'ի ձեռն Թագաւորաց՝ որ նման նոցին են՝ սպանանէր զմարգարէսն, զի մի քարոզեսցեն զճշմարտութի, և բացցեն զաչս այնոցիկ՝ որ քարեղինաց և փայտեղինաց և այլոց ձուլածուից՝ որ 'ի բնութենց են՝ աստուածս կոչէին զնոսա և ոչ իմանային: Եւ զամենայն մարմինս, ասէ, մարդկան ցանկութք կալեր: Նայեաց և տես՝ զի ցանկութք կալեր նա, և ոչ եթէ բռնութք մարտնչէր. ոչ եթէ միով ցանկութք կալեր նա զամենայն մարդիկ, այլ և ոչ բազում ցանկութքք զմի մարդ կալեր նա. զի չիք այն մարդ՝ որ ամենեքումբք նեղի՝ թէ ամենեքումբք կալեսցի. այլ իւրաքանչիւր 'ի մարդկանէ ցանկութբն՝ որ զնայն ստիպէր՝ այնու կալեր զնա. որպէս զի յաւիտեանս ժամանակաց ոչ իցէ պիտոյ նմա արձակումն:

Այլ մեծ ամենակալ արդարութք իւրով, զի նորա է իշխանութի, և ոչ եթէ յափշտակելով յափշտակեալ է, որպէս և վարդապետքդ ձեր ասեն, ոչ դիւր թուեցաւ նմա այս՝ զի սատանայ զմարդիկ վարէր, թէպէտ և պատրանօք յանցուցանէր զնոսա և ոչ բռնութք. սակայն և ոչ յայսմիկ ներեաց և թուլացոյց նմա. քանզի ողորմեցաւ նա ստեղծուածոյն իւրում, այն զի ինքնին ձեռօք իւրովք զանձն իւր կորուսանէր: Առաքեաց զՀոգին սուրբ ջերմաջերմ, այս ինքն փութապէս, 'ի Մարիամ գալիլեացի. քանզի ազատութն այսպէս թուէր՝ թէ չիք այն ոք՝ որ կարէ յաղթել մարմնով, զգեցաւ տէր մեր զմարմինն, և յաղթեաց նովաւ. և յաղթեցին զկնի նորա որք նմանող եղեն նմա, զի մի գտցի պատասխանի այնոցիկ՝ որ պարտա-

ւորին նովաւ։ Բայց դարձեալ քանզի հնազանդեցաւ մարմինն թշնամոյն և շրջեցաւ նա նովաւ յամենայն պէտս ցանկութե, զգեցաւ տէր մեր զմարմինն և փորձեցաւ նովաւ յանապատի անդ 'ի սատանայէ, և անտի յաղթահարեցաւ և յանդիմանեցաւ՝ եթէ ոչ լինի նա ած 'ի վերայ աշխարհի, որպէս և միտքն իւր կարծիս տային նմա։ Զի չէր նա ած՝ ինքն իսկ գիտէր. այլ կարծելով կարծէր՝ եթէ լինի նա ած յաղթութն, որ 'ի վերայ ամենայն մարմնոյ առնոյր։ Այլ իբրև յաղթեաց նմա տէր մեր մարմնովն, ոչ երկնաւորովն, այլ ընակցաւն այնորիկ՝ որ պարտաւորեցաւն 'ի նմանէ, ապա գիտաց թէ չլինի ած, որպէս և կարծէր նա։ Զի 'ի մարմնոս անդ իւր, ասէ, Յիսուս Քրիստոս կոչեաց և փրկեաց զամենայն մարմին, զի յարդարութե տաճար սուրբ յիւր մարմնոս անդր ցուցցէ. այս ինքն գործովք մարմնոյն իւրոյ ցուցէ՝ թէ որպէս մարթ է լինել մարդոյն տաճար արդարութե։ Եւ մեք նովին իսկ մարմնով ազատեցաք 'ի ծածուկ և յայտնի մահուանէ անտի. այս ինքն 'ի մահուանէ մեղաց և 'ի մահուանէ մարմնոյ։

Արդ ոչ են նոքա որդիք արդարութե. զի եթէ է 'ի նոսա գործք արդարութե, հատուցմանն արդարութեն ակն ունէին, և ոչ եթէ զմարմնոս իւրեանց և յարութենէ անտի զրկէին։ Արդ որդիք են նոքա բարկութե, որք զողորմութի գթութեն այ՝ որ եղև վասն յարութեն՝ կարճեն յանձանց իւրեանց. և զարարչութի նորա անարգեն, յայնմիկ զի ասեն՝ եթէ ոչ են երկինք և երկիր և ամենայն արարածք ձեռագործք այ Հօր ամենայնի, այլ իշխանաց։ Այլ նոքա զանիծեալ օձին հաւատս ունէին. այս ինքն կամ դատաւլճիւն՝ որ եղև 'ի պատճառս անիծից օձին՝ եթէ հող էիր և 'ի հող դարձցիս, հաստատեալ ունէին նոքա. կամ զոր օրինակ հաւատաց օձին, և այն՝ որ յօձի անդ էր՝ եթէ յաւիտեան լինելոց են տունն Ադամայ յերկրի, նոյնպէս հաւատան և դոքա։ Այլ դուք զօրութբ 'ի բաց մերժեցարուք 'ի դոցանէ. այս ինքն լուծէք զբանս դոցա և զխոտոր վարդապետութի նոցա 'ի ձէնջ 'ի բաց հալածեցէք։ Զի դոցա է ուսումն, և ոչ Հոգւոյ. և սատանայի է որ զօրանայ 'ի նոսա, և

ոչ յԱստուծոյ ։ Եւ որ ասեն՝ բայց չիք յարութիւն մարմնոյ, նոցա մի՛ լիցի յարութիւն ․ ոչ եթէ վասն զի ուրացան նոքա յարութեանն անտի, այլ զի յայնպիսի յարուցելոյ անտի ուրացեալք գտանին ։ Դա և դուք արդ, կորընթացիք, զի՞նչ աւելի էին սերմանիք ցորենոյ և կամ այլ սերմանիք՝ որ մերկ անկանին յերկիր և ապականին, քան զմարմին՝ որ անկանի յերկիր և ապականի ։ Այլ զոր օրինակ յառնեն սերմանիքն կամաքըն Աստուծոյ 'ի նոյն մարմին զգեցեալ, ոչ թեփոքն որ էջ ընդ նմա յերկիր, այլ բազմապատիկ տոհմականով կանգնեալ, և օրհնէ և զարդարեալ թեփովք և ցողնով և քստով զոր յաւելու նոցա երկիր, սոյնպէս և յարուցանեն և կամքն Աստուծոյ և զմարմին իբրև զգեցեալ զարդարեալ, ոչ կապերտիւքն որ իջին ընդ նմա յերկիր, այլ փառքն որ առաքին նմա յերկնից ։

Ո՞ր դարձեալ դժուարին թուին ձեզ․ Յովնան՝ որ անկաւ 'ի պորտ ձկանն զերիս տիւս և զերիս գիշերս, և ապա 'ի ներքին դժոխոց լուաւ Աստուած աղօթից նորա, և դարձաւ նա և ոչ ինչ ոչ ապականեցաւ 'ի մարմնոյ նորա, կամ թէ մարմինն որ մեռաւ՝ կենդանասցի, որպէս և Քրիստոս կենդանացուցիչ նորա մեռաւ և կենդանացաւ ։ Եւ եթէ ոսկերքն Եղիշէի[1] կենդանացուցին զմեռեալն՝ որ անկաւ 'ի վերայ նոցա, դուք ո՞րչափ ևս առաւել որ յարիւն և 'ի մարմինն և 'ի Հոգին Քրիստոսի յեցեալ էք հաւատովք ձերովք, այս ինքն 'ի մարդկութիւն նորա՝ որ մեռաւ, և յաստուածութիւն նորա՝ որ ոչ մեռանի, զի էջ սիրով իւրով ընդ մարմինն 'ի գերեզման, և վասն այսորիկ եւ ոչ ապականութիւն տիրեաց նմա, ո՞րչափ ևս առաւել դուք յայնմ աւուր յարիջիք ողջանդամ մարմնովք, այն որ իբրև զհող 'ի մէջ երկրի ցրուեալ էր ։ Ապա եթէ այլ ինչ 'ի տարապարտուց 'ի դոցանէ և կամ որ զկնի դոցա գան՝ ընդունիք դուք, աշխատ ոք ինչ զիս յայսմ հետէ մի՛ արասցէ ․ զի իբրև տղայոց հանապազօր գրեմ առ ձեզ ․ զի ես զկապանս զայս յանձին իմում կրեմ, զի զՔրիստոս շահեցայց յետ յարութեան ։ Եւ զվէրս զայս զոր ստացայ ես 'ի մարմնիս իմ 'ի տանջանաց և 'ի քարկոծա-

1 Օրինակին Եղիսայի ։

նաց և 'ի քաշելոյ, զի արժանի եղէց հատանել յարութենն՝ որ 'ի մեռելոցն է. այն զի դողքա ուրացեալ են 'ի նմանէ, և զի ասեն ընդ ձեզ՝ եթէ չէ պարտ ընդունել զմարգարէսն: Եւ որ կացցէ մնասցէ 'ի չափ կարգին, այս ինքն որ կացցէ մնասցէ 'ի ճշմարտութի անդր զոր ընկալաւ 'ի ձեռաց երանեալ մարգարէից և 'ի սրբոյն աւետարանէ, զվարձս սորա և զգործոց իւրոց յարութե անդր մեռելոց ընկալցի: Ապա եթէ թերահաւատ ոք լինի և յանցանէ յայնցանէ զոր մեք նմա տուաք, հուրն է ընդ նմա. այս ինքն հուր է մատն և քաժինն նորա. ոչ եթէ այնպիսոյն միայն, այլ և այնոցիկ՝ որ այսպէս մինչ կանխաւ շրջէին մարդիկ առանց այ յաշխարհի. զի նոքա ինքն են ծնունդք օձից և քարբից, որ հարկանեն և սպանանեն զմարդիկ 'ի խայթոցս լեզուաց իւրեանց: Զի զայնպիսիսն նեղիչիք դուք կործանել զօրութեամբն այ. այս ինքն օգնականութեամբն այ:

# ԳԱՂԱՏԱՑԻՍ

ԳԱՂԱՏԱՑԻՔ *աշակերտեցան 'ի Պաւղոսէ, ոչ 'ի պահել զպահպանութիւս օրինացն՝ որ խափանեցան 'ի ձեռն չարչարանաց խաչին, այլ հաւատալ յԵրրորդութիւն անդր, և 'ի քարոզել զնոր աւետարանն: Այլ ոմանք 'ի հեբրայեցոց անտի եկին ոչ շրջել զնոսա յաւետարանէ անտի՝ որ քարոզեցաւ նոցա 'ի ձեռն Պաւղոսի, այլ զի յաւելցեն նոցա զպահպանութիւս հին կտակարանացն, և լծեսցեն զնոսա ընդ լծով ծառայութեան, այն որ ազատեցանն 'ի նմանէ 'ի ձեռն շնորհացն: Եւ քանզի նոքա յանուն Շըմաւոնի պարծէին, այն որ զօրացեալն էր յառաքելութիւն թլփատութեան, սկիզբն առնէ Պաւղոս գրել ընդդէմ նոցա՝ յասել իւրում այսպէս:*

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ *առաքեալ ոչ 'ի մարդկանէ. այս ինքն ոչ 'ի Շմաւոնէ և ոչ 'ի ձեռն Շմաւոնի, այլ Յիսուսի Քրիստոսի, այն որ յայտնեցաւն ինձ 'ի ճանապարհի անդ Դամասկեայ. և ա̅յ Հօր՝ որ յարոյց զնա 'ի մեռելոց. զի յայտ արասցէ վասն յարութեան իւրոյ ամենայն հերձուածողաց՝ որ յուրաստ լինին և յարուէ անտի նորա: Եկեղեցեացդ այդոցիկ՝ որ իցեն 'ի կողմանս գաղատացւոց, որ հիւանդացան բանիւք հեբրայեցւոց, և որ ոչ հիւանդացան: Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յա̅յ Հօրէ մերմէ, այն որ կոչեաց զմեզ յորդեգրութիւն. և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, և ոչ եթէ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Որ ետ զանձն իւր վասն մեղաց մերոց,*

զի զմեզ փրկեսցէ յաշխարհէ աստի չարէ . այս ինքն 'ի չարեաց աստի՝ որ գործին յաշխարհի աստ յայսմիկ ։ Ըստ կամաց այ Հօր մերոյ . զի յայտ արասցէ վասն յարութեան շնորհացն Հօր և Որդւոյ՝ որ գործեցաւ յաշխարհի ։

Զարմացեալ եմ ես, զի այդպէս վաղվաղակի փոփոխիք դուք, ոչ յինէն, այլ յայնմանէ որ կոչեացն զձեզ ինև 'ի շնորհսն իւր՝ երթալ ձեզ յայլ աւետարան ։ Այն զի թէպէտ և կարծիցի՝ թէ իցէ վասն քարոզութեն Շմաւոնի, այլ ոչ գոյ այլ . զի կատարեցաւ ժամանակ օրինացն՝ որ քարոզէր 'ի նմա ։ Ոչ գոյ այլ, կամ Քրիստոս այլ, կամ Ճշմարտութի այլ . և մարդիկ ըստ միտս անձանց իւրեանց կամին շրջել զձեզ յաւետարանէ անտի Քրիստոսի ։ Ապա եթէ զօրութիւս տեսանէք 'ի նոսա, կամ վասն զի աշակերտք Շմաւոնի կոչէին զանձինս իւրեանց՝ գերի վարեցայք դուք 'ի բանս նոցա, ես գլխովին թէ եկից շրջեցայց առ ձեզ այլով աւետարանաւ, կամ հրեշտակ որ ոչ է իջեալ՝ վասն այսր եթէ իջցէ յաւելուլ կամ պակասեցուցանել քան զայն զոր ետու ես ձեզ, նզովեալ լիցի ։ Այլ մի մարդահաճոյք լինիք թլփատութեդ քարոզաց թլփատութեդ . զի եթէ քահանայից՝ որ զիմն ոչ աշակերտեցին՝ հաճոյ լինէի, ծառայ Քրիստոսի՝ որպէս տեսանէք զի եմ, աւասիկ այնուհետև ոչ լինէի ։

Արդ զայս աւետարան զոր աւետարանեցի ես ձեզ, ոչ եթէ 'ի մարդկանէ առի ես, որպէս և նոր վարդապետքն ձեր, այս ինքն պինդ դայթագղեցուցիչքն ձեր . այլ այն յայտնութիւն՝ որ եղև 'ի վերայ իմ, դարձոյց զիս 'ի գնացից անտի, որ 'ի հրէութե անդ էր ։ Լուեալ իցէ ձեր, զի առաւել անչափ հալածէի ես զեկեղեցիս այ . աւերէի և աւար հարկանէի . կամ որչափ յառաջադէմ լինէի 'ի հրէութե անդ քան զբզմ ընկերս հասակակիցս իմ, այնոքիմբք որ յօրինացն էին ։ Այլ յորժամ կամեցաւ ած՝ որ ընտրեացն զիս յորովայնէ մօր իմոյ, ոչ հալածել, այլ զի հալածեցայց ես 'ի մէջ եկեղեցւոյ Քսի, և աւետարանեցից զՔս ոչ 'ի ժողովուրդն, այլ 'ի հեթանոսս, ոչ եկի ես յԵրուսաղէմ առ առաքեալսն, զի մի երթայց ես ուր ոչ իցէ

զիս առաքեալ. այլ գնացի ես 'ի կողմանս արաբացւոց և 'ի Դամասկոս հեթանոսաց ։ Եւ յետ երից ամաց ապա եկի ես յԵրուսաղէմ. ոչ ուսանել զաւետարանն 'ի Պետրոսէ, այլ տեսանել զՊետրոս ։ Եւ զի եղէ ես առ նմա աւուրս հնգետասան, ոչ ինչ նորոգեցաւ ինձ առ 'ի նմանէն. այլ եկի ես սովին քարոզութբ̃ 'ի կողմանս ասորւոց և 'ի կեղիկացւոց ։ Եւ յանծանօթս ևս էի ես եկեղեցեացն որ 'ի թլփատութ̃է անտի էին 'ի Քրիստոս. զի ոչ ինչ շրջեցայ ես անդ զկնի յայտնութ̃են ։ Բայց այն՝ զի լսելով լսէին, եթէ այն որ հալածէրն զմեզ յայնժամ, արդ աւետարանէ՝ եկեալ նա՝ զհաւատսն, որ յայնժամ անարգէր և աւերէր, և փառաւոր առնէին յիս զա̃ծ վասն առաւել նորոգմանն զոր արար առ իս ։

## ԳԼՈՒԽ Բ

ՊԱՐԶԵԱԼ յետ ամաց չորեքտասան միւսանգամ ելի ես յԵրուսաղէմ ոչ առանց հրամանի, այլ յայտնութ̃բ. ցուցի նոցա յանդիման Տիտոսի զաւետարանն զոր աւետարանեցի ես 'ի հեթանոսս ։ Քանզի խղճէի և խիթայի ես վասն յայտնութ̃են՝ որ առաքեաց զիս, եթէ ցուցէ ընդունայն ինչ ընթացեալ իցեմ 'ի ձեռն այսր քարոզութ̃ե ։ Եւ Տիտոս անգամ՝ որ 'ի հեթանոսաց էր, և ոչ 'ի մէջ յԵրուսաղէմի յանձն առ ընդթլփատութ̃ի ըստ ստիպելոյ սուտ եղբարցն. զի կամեցան խոնարհեցուցանել զմեզ յազատութ̃է անտի զոր ունիմք մեք 'ի Քրիստոս՝ 'ի ծառայութ̃ի օրինացն ։ Որոց և ոչ առ սակաւ մի ժամանակս ոչ խոնարհեցուցաք զանձինս մեր 'ի հնազանդութ̃ի, այս ինքն 'ի պահպանութ̃իս օրինացն. որպէս զի նմանողք եղիջիք մեզ, և մի խոտորիջիք. զի ճշմարտութ̃ի աւետարանին զոր քարոզեցաք ձեզ, հաստատեսցի առ ձեզ ։

Այլ որ ձեռն յանձին հարեալ իցեն՝ եթէ մեք եմք ինչ, յայսմիկ զի պարհեն զհինն նորոյն հանգերձ, որպէս և էին նոքա յայսմիկ, չէ ինչ ինձ փոյթ զնոցանէն. զի անձն առնուլ մարդկան ա̃ծ ոչ գիտէ, այնոցիկ՝ որ կարծեն թէ հաճոյ իցեն նմա պահելով

զօրէնսն և թլփատութե՜ն Աբրահամու ։ Նոքին իսկ հակառակ եղեն ինձ, իբրև տեսին թէ հաւատարիմ եմ ես յաւետարանն 'ի մէջ հեթանոսաց առանց թլը-փատութե ․ որպէս և հաւատարիմ եղև Պետրոս 'ի պարտել իւրում զնոսա 'ի ձեռն աւետարանին թլփա-տութե ։ Զի այն՝ որ զօրացոյց զՊետրոս յառաքելութի թլփատութե, այս ինքն զի աշակերտեսցէ զթլփա-տեալսն 'ի ձեռն այսոցիկ, առաքեաց զիս աշակեր-տել զհեթանոսս առանց այսոցիկ ։

Այլ իբրև գիտաց Պետրոս և Յակոբոս և Յոհան-նէս՝ անուանիքն յառաքեալս, որ բուն սիւնքն էին եկեղեցեաց, ոչ պակասեցուցին կամ յաւելին ինչ յայն ինչ՝ զոր յայտնեցի ես նոցա, զոր քարոզէի ես 'ի հեթանոսս ։ Այլ աջ հաւանութեան ետուն ինձ և Բառնաբայ, զի մեք քարոզեսցուք 'ի հեթանոսս, որ-պէս և հրամայեցաւ մեզ ․ և նոքա 'ի թլփատութի, որպէս և պատուիրեցաւ նոցա ։ Բայց միայն զայս պա-տուիրեցին մեզ, խնամ ունել աղքատացն՝ որ 'ի հե-թանոսս էին, զոր և առնէաք իսկ ․ այլ զի խնամ կալ-ցուք աղքատացն՝ որ էին յԵրուսաղէմ, զոր և ես իսկ փութացայ 'ի ջանալ և կատարել ․ քանզի թըշ-նամիք խաչին ոչ ինչ հայէին 'ի նոսա 'ի հեթանոսաց 'ի սիրելեաց Քրիստոսի, զի պակասութին նց լցուցից ։

Այլ զի գիտասջիք՝ զի եթէ էր եկեալ առաքելոցն 'ի հեթանոսս, զքարոզութի զոր ես քարոզեմ՝ քա-րոզէին ․ զի ահա յորժամ եկն Պետրոս յԱնտիոք, զայն զգլուխն առաքելոց և զհիմն եկեղեցւոյ հա-մարձակեցայ ես յանդիմանել ․ ոչ զի արժանի էր նա յանդիմանութեան, այլ քանզի ստգտեալ էր նա յայնցանէ՝ որ 'ի թլփատութէ անտի շրջէին ընդ նմա ։ Զի մինչ չև եկեալ էին առ նմա թլփատեալքն՝ առ Յակովբայ յեղբօրէ տեառն մերոյ, 'ի միասին ընդ հեթանոսս և 'ի կերակրոց հեթանոսաց ուտէին ։ Այլ իբրև եկին՝ խտրեաց, ոչ անխտիր՝ այլ խտրելով ․ և երկեաւ, թէ գուցէ թլփատեալքն՝ որ էին 'ի հե-թանոսս հաւատացեալքն 'ի Քրիստոս, դարձցին ան-դրէն առ որդիս ժողովրդեան իւրեանց, իբրև ուրա-ցեալ իցեն 'ի Քրիստոսէ ։ Այլ ոչ եթէ նա միայն գոր-ծեաց զայս ․ քանզի և Հրեայքն որ աշակերտեալ էին

յԱնտիոք, այն որ երբեմն ոչ տասանորդէին [1] իբրև զՇմաւոն, դարձան նոքա տասանորդել ընդ Շմաւոնի։ Այսպէս և Բառնաբաս անգամ՝ որ 'ի հեթանոսաց էր, բռնադատեցաւ վասն Շմաւոնի խորել զկերակուրս հեբրայեցւոց։

Այլ իբրև տեսի թէ ոչ ուղիղ գան 'ի ճշմարտութ աւետարանին, զի հեթանոսերէնք էին և հրէերէնք և քրիստոսերէնք էին և օրէնսերէնք, և Շմաւոն երկնչէր ինչ ասել ընդ նոսա՝ թէ գուցէ գայթագղին նոքա, ասեմ ցՊետրոս ոչ 'ի ծածուկ, այլ առաջի ամենեցուն. ոչ եթէ նա ինչ հիւանդացաւ, այլ վասն հիւանդաց զայս առնել ներէր։ Արդ ասաց նովաւ ցԹլփատեալսն. եթէ դու հրեայ ես՝ հեթանոսաբար կեիր երեկ, և այսօր զիա՞րդ ստիպես ոչ բանիւք այլ արդեամբք՝ հեթանոսաց հրէաբէն կեալ։ Իսկ արդ եթէ մեք բուն հրեայք եմք օրէնսդէտք, գիտացաք եթէ ոչ արդարանայ մարդ 'ի գործոց օրինաց, եթէ ոչ 'ի հաւատոցն Յիսուսի Քրիստոսի, և վասն այսորիկ թողաք մեք զօրէնսն, և հաւատացաք մեք 'ի Յիսուս Քրիստոս, զի 'ի հաւատոց արդարացուք և ոչ 'ի գործոց օրինացն. արդ եթէ յօրինաց ոչ ոք կարէ արդարանալ, յայնմիկ զի ոչ կարեն կատարել զնոսա, և մեք մինչ խնդրիցեմք արդարանալ 'ի Քրիստոս՝ գտանիցիմք մեք մեղաւորք, յայնմիկ զի ոչ կատարէին իմն պահպանութիք օրինաց։ Ապա եթէ այդ այդպէս իցէ, Յիսուս Քրիստոս մեղա՞ց պաշտօնեայ եղև, որ խափանեաց զպահպանութիսն՝ որ դատապարտն առնէին զլուծանելիսն իւրեանց. քաւ լիցի։ Իսկ արդ եթէ զայն զոր քակեցին ես մինչև ցայսօր ժամանակի, և յօրէ ատի յայսմանէ և անդր միւսանգամ զայն անդրէն շինեմ, ապա յանցաւոր պատուիրանի զանձն իմ ես ինձէն երևեցուցանեմ. զի դարձայ ես պահել զայն ինչ, զոր ոչ բարւոք լուծեալ էր իմ։ Այլ ես ամենայն պահպանութեբ օրինացն մեռեալ եմ, զի Աստուծով կեցից։ Եւ այս զիա՞րդ. կենդանի եմ, ոչ եթէ որպէս զառաջինն օրինօք, այլ 'ի հաւատոց անտի Որդւոյն այ կեամ ես։ Ոչ ինչ

1 Ի լուսանցս օրինակին նշանակի օտար գրչաւ խորշել։

անարգեմ ես զշնորհսն՝ որ եղեն յիս 'ի ձեռն խաչին. զի եթէ յօրինաց է արդարութիւն, որպէս ասէք դուք, ապա Քրիստոս զուր մեռաւ :

## ԳԼՈՒԽ Գ

ԱԻ իբրև հաճեցայ և հաւանեցայց զնոսա վասն որոց յԱնտիոքն եղև, և շրջեցաւ նա եպերել և բծել զգաղատացիս, յասել իւրում : Ո՛ անմիտք գաղատացիք, որ յամենայն ուսմունս խոտորիք, ո՞ նախանձ արար զձեզ. զի վաղահասք եղերուք դուք յաւետարանին, և արդ յետս կամիք կալ 'ի նմանէն : Զի ահա առաջի աչաց ձերոց գրեալ է 'ի նորում ասա և 'ի հնում վ̃ս Յ̃սի Ք̃սի, զի 'ի խաչ ելանելոց էր : Եւ ուրովհետև զհնոյն զոր սիրէք դուք՝ վկայէ եթէ 'ի խաչ ելանելոց էր, արդ զայս միայն կամիմ հարցանել զձեզ. 'ի գործո՞ց անտի օրինաց՝ որ ստիպեն զձեզ այսօր թլփատեալքն՝ ընկալարուք զՀոգին մարգարէութե̃ և լեզուացն և զթարգմանութե̃ լեզուացն, եթէ 'ի լուրն հաւատոցն զոր քարոզեցաք մեք ձեզ : Զի եթէ նուաղեալք էիք, վասն զի ոչ պարհէիք զպահպանութի̃ օրինացն, և զիա՞րդ եղէք արժանի պարգևացն Հոգւոյն : Ապա եթէ կատարեալք էիք, տեսէք որչափ անմիտք էք. զի Հրեայք թողին զօրէնս և եկին 'ի նոր այսր, և դուք որ սկսեալ էիք հոգւով, այս ինքն աւետարանաւ, այժմիկ 'ի ձեռն օրինացն կամիք մարմնո՞վ վախճանել : Եթէ այդ այդպէս իցէ, ապա և ըդնեղութիս զոր համբերէք դուք վասն աւետեացն Քրիստոսի, զուր համբերէք :

Արդ աղէ ասասջիք ինձ. այն որ բաշխեաց 'ի ձեզ զՀոգին, և զօրացոյց 'ի ձեզ զօրութիս նորին Հոգւոյ, 'ի գործո՞ց օրինաց էր՝ որ ոչն կատարեն զմարդ, եթէ 'ի լուր հաւատոց էիք : Ապա եթէ կարծիցէք դուք կամ վարդապետքն ձեր՝ եթէ փոքր են հաւատք քան զգործս, ահա Աբրահամ ոչ վասն զի գործեաց, այլ զի հաւատաց յա̃ծ՝ համարեցաւ նմա յարդարութի̃ : Արդ զայս գիտիցէ՞ք արդեւք, զի հաւատացեալքն որ նման են Աբրահամու, կոչլին որդիք Աբրահամու.

Յառաջագոյն գիտէին. այս ինքն յաւուրց անտի Աբրահամու ցուցանէին գիրք՝ եթէ 'ի հաւատոց անտի արդարացուցանէ ած զհեթանոսս, յայնմանէ զի ասաց նմա՝ թէ 'ի քեզ օրհնեսցին ամենայն հեթանոսք։ Այսուհետեւ որ հաւատացինն, օրհնեցան ընդ Աբրահամու հաւատացելոյ։

Օ'ի որ միանգամ ընդ գործովք օրինաց են, ընդ անիծիւք են. զի գրեալ այսպէս է. ասէ. "Անիծեալ լիցի ամենայն մարդ, որ ոչ կայցէ յամենայնի զոր գրեալ իցէ 'ի գիրս օրինաց՝ առնել զամենայն։ Յայտ է եթէ յօրինաց անտի ոչ ոք արդարանայ. զի չիք յարդարոց կամ մեծաւ կամ փոքու՝ որ ոչ անց զօրինօքն, եւ հնազանդեցաւ ընդ անիծիւք օրինացն։ Քանզի ասէ դարձեալ. "Որ արդարն է, 'ի հաւատոց անտի կեցցէ"։ Իսկ օրէնք ոչ եթէ 'ի հաւատոց կեցուցանեն, այլ որ արասցէ զայն՝ կեցցէ 'ի նոսին։ Զմեզ Քրիստոս փրկեաց յանիծից անտի օրինացն, զի եկն եւ բարձ ընդ մեր զանէծսն. "Անիծեալ եղիցի, ասէ, ամենայն՝ որ կախեալ իցէ զփայտէ"։ Արդ զի եկն եհաս 'ի մէջ հեթանոսաց օրհնութիւն Աբրահամու 'ի ձեռն աւետարանին Քրիստոսի, ընդէր ոչ փութացեալ պնտիմք առնուլ զօրհնութիւն Հոգւոյն զոր խոստացաւ Աբրահամու 'ի ձեռն հաւատոց՝ որ յառաջագոյն արդարացուցին զԱբրահամ։

Այլ ած նա օրինակ բանին իւրոյ՝ եթէ որպէս կտակք հաստատեալք ոչ անարգին եւ ոչ այլ ինչ հրաման դնին 'ի նոսա, սոյնպէս եւ Աբրահամու՝ որ խոստացան աւետիքն, ոչ եթէ նմա եւ զաւակաց նորա բազմաց՝ տանն Կենտուրայ եւ Իսմայելի, այլ նմա եւ զաւակի նորա, որ է զաւակ նորա Քրիստոս։ Արդ այս աւետիքս՝ որ իբրեւ զկտակ հաստատեալ էր առ ած յաւուրց անտի Աբրահամու, օրէնք որ յետ չորեքարիւր եւ երեսուն ամի եղան՝ ոչ կարեն անարգել եւ զանցուցանել զաւետիսն։ Զի եթէ որպէս ասեն վարդապետքն ձեր նորք՝ եթէ յօրինաց անտի է ժառանգութի, ապա չէ յաւետեաց. որպէս ածն ասաց։ Այլ մեք գիտեմք՝ եթէ Աբրահամու աւետեօք շնորհեաց ած, եւ ոչ եթէ յօրինաց. այն որ վասն յանցաւորաց եղան, զի կարասցեն ըստ իւրեանց զօրութե

պատրաստել մինչ 'ի ժամանակ . այս ինքն մինչև ե֊
կեսցէ հասցէ զաւակն՝ որ խոստացեալ էր 'ի խրա֊
խունս հրեշտակաց 'ի ձեռն միջնորդին :

Իսկ միջնորդութիւն հրեշտակացն ոչ եթէ մի էր ան֊
ձամբ . իսկ ա͞ծ որ 'ի նոսա էր , որ խոստացաւն զայս ,
մի էր՝ որ ոչ փոխի : Արդ օրէնք հակառակ աւետեաց
Աբրահամու ոչ են . զի եթէ տուեալ էին օրէնք՝ որ
կարող էին կենդանի առնել , ապա խափանեալ էին
աւետիքն : Այլ ածին փակեցին և արգելին գիրք
զպահողս օրինացն ընդ մեղօք . զի աւետիքն 'ի հա֊
ւատոց անտի Յիսուսի Քրիստոսի տացին . ոչ այնոցիկ
որ գործենն , այլ 'ի հաւատացելոցն : Այլ ոչ եթէ
բնաւ ընդունայն ինչ էին օրէնքն . պահէին զմեզ 'ի
ձեռն սպառնութեանց իւրեանց և յայտնի պատժովք
իւրեանց 'ի մեղաց : Փակեալ և արգելեալ կայեաք .
այս ինքն զի պարհեալ էաք մեք հաւատոցս այսոցիկ ,
որ պատրաստեալ էին յայտնել :

Այսուհետև օրէնք դաստիարակ եղեն մեզ . զի
կարգեցին և ածին զմեզ առ հաւատսն Քրիստոսի ,
որ արդարացուցանեն զմեզ : Իսկ արդ զի եկին հասին
հաւատքն , չեմք ընդ դաստիարակօք . այս ինքն ընդ
օրինօքն . զի ամենեքին որդիք ա͞յ էք 'ի հաւատոց ան֊
տի Յիսուսի Քրիստոսի : Եւ չեմք ծառայք , այն որ
յառաջագոյն ընդ լծիւք օրինացն հնազանդեալ կայ֊
եաք : Որ միանգամ 'ի Քրիստոս մկրտեցան , և հա֊
ւատան եթէ զՔրիստոս զգեցան , ոչ եթէ զանէծս
միայն զօրինացն մերկացան և օտարացան , այլ իբրև
այն թէ ոչ ինքեանք իսկ ինքեանք են կերպարանօք .
թէպէտ և ինքեանք իցեն բնութ͞բ : Զիք այսուհետև
յետ թողութեան մկրտութեան ոչ հրեայ հպարտացեալ ,
և ոչ հեթանոս անարգեալ . ոչ ծառայ տկարացեալ ,
և ոչ տէր ամպարտաւանեալ . ոչ արու իշխանութ͞բ
իւրով , և ոչ էգ հնազանդութ͞բ իւրով . զի ամենեքին
դուք մի էք 'ի Ք͞ս Յ͞ս : Ապա եթէ դուք Քրիստոսի
էք , որ յԱբրահամէն է , ուրեմն զաւակ էք դուք Ա֊
բրահամու . եղերուք դուք ժառանգք աւետեաց :

## ԳԼՈՒԽ Դ

ԴԱՐՁԵԱԼ բեր նա միւս ևս առակ օրինակի բանին իւրոյ և ասէ. ցորքան ժամանակս, ասէ, ժառանգն տղայ է, չէ ինչ աւելի քան զծառայն, թէպէտ և տէր իցէ նա ամենայնի. այլ ընդ հազարապետօք է և ընդ գաւառապետօք մինչ 'ի ժամանակս եդեալ հօր իւրոյ: Սոյնպէս և մեք մինչ դեռ տղայքն էաք, այս ինքն մինչ դեռ աշխարհս տղայ էր, ընդ տկար կարգօք օրինացն իբրև ընդ կարգօք աշխարհի 'ի ծառայութ̅ե կայեաք: Իբրև եկին հասին լցան ժամանակք, առաքեաց ա̅ծ զՈրդի իւր, և եկն ծնաւ 'ի կնոջէ, որպէս և ասաց Եսայի. և մուտ ընդ օրինօք, զի զտղայսն որ մտեալ էին 'ի ներքոյ նոցա՝ գնեսցէ, և եղիցին նմա յորդեգրութ̅ի: Այլ ձեզ յայտ լիցի թէ որդիք էք, առաքեաց ա̅ծ զՀոգին Որդւոյ իւրոյ 'ի սիրտ ձեր. այն որ աղաղակէ ձեւք իբրև որդեօք համապազօր. Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի անուն քո:

Այլ յայնժամ մինչ ոչն գիտէիք դուք զա̅ծ, ծառայէիք դուք կռոցն՝ որ 'ի բնէ իւրեանց չէին աստուածք: Այլ այժմիկ ծանէրուք զա̅ծ. մանաւանդ թէ ա̅ծ իսկ ծանեաւ զձեզ 'ի ձեռն գործոց ձերոց, և ընտրեաց իւր ժողովուրդ ս̅ր, զիա՞րդ դառնայք անդրէն միւսանգամ 'ի մնոտի և 'ի տկար կարգս օրինացն. և յետ ժամանակաց նոցա կատարելոյ դարձեալ վերստին միւսանգամ 'ի լուծ ծառայութ̅ե մըտանել կամիք: Զաւուրս խտրէք և զամիսս և զտարիս, զոր ժողովուրդն պարհէր: Երկնչիմ ես 'ի ձէնջ. գուցէ թէ 'ի հրէութ̅ի անդր խոնարհիցիք, և լինիցին վաստակքն մեր զուր՝ զոր վաստակեցաք 'ի ձեզ: Լերուք դուք իբրև զիս այսօր առանց այսոցիկ. քանզի և ես իբրև զձեզդ էի այսոքիմբք: Զիք ինչ ձեր մեղուցեալ առ իս, եթէ այլ ընդ այլոյ ինչ տայի ես ձեզ:

Գիտեմ ես՝ զի տկարութ̅ե [1] մարմնոյ իմոյ աւետա-

1 Յօրինակին փչացուցեալ:

րանեցի ես ձեզ զառաջինն. կամ 'ի հիւանդութեան անդամոց իւրոց, և կամ փորձանք 'ի թշնամեաց իւրոց։ Զնոյն իսկ փորձանսն՝ որ յանձին իմում ունէի, ոչ անարգեցիք. այլ իբրև հրեշտակ՝ որ հեռի է 'ի չարչարանաց, այսու չարչարանօք ընկալարուք զիս։ Արդ մարդք՝ որ եթէ հնար ինչ էր, զաչս ձեր հանէիք և տայիք ինձ, խաբէութի՞ւն ընդ ճշմարտութեան խառնէի տայի ձեզ։ Նա և ես ոչ եթէ թշնամի եմ ձեզ, այլ հաւատացի ձեզ ճշմարտութիւն. այս ինքն հաստատեցի զձեզ ամենայն ճշմարտութիւն զոր քարոզէի ես։ Այլ այնոքիկ որ նախանձին ընդ ձեզ, զի առիք դուք զհոգին առանց պահպանութեան օրինացն, արգելուլ կամին զձեզ, զի դուք շրջեսջիք նախանձեսջիք ընդ նոսա՝ թլփատեալ ընդ այնոսիկ՝ որ նախանձին ընդ ձեզ. վասն զի զրկեալ են նոքա յայնմանէ զոր ընկալարուքն դուք։ Լաւ է եթէ նախանձեալ ոք իցէ ոչ յիրս վնասակարս, այլ յամենայն բարիս օգտակարս։

Դարձեալ 'ի վերստին երկնեմ ես զձեզ մինչև նկարեսցի 'ի ձեզ Քրիստոս. այս ինքն մինչև բնակեսցէ 'ի ձեզ Քրիստոս։ Այլ ես կամէի եթէ եկից և 'ի ձերում միջի, և փոփոխեցից զբարբառ իմ այլ ուսմամբ վասն փորձելոյ զձեզ. զի զարմացեալ իմն եմ ես ընդ ձեզ, զի այդպէս վաղվաղակի փոփոխեցարուք։ Ընդ Աբրահամ իսկ ոչ հայէիք դուք, զի երկուք որդիք եղեն նորա. որ յաղախնոյ անտի էր՝ ըստ մարմնոյ ծնեալ էր, զի ոչ էր նա ըստ աւետեաց. որպէս և Սահակ որդին ազատին։ Եւ այս զի եղեն՝ առակ են երկուցն կտակարանաց. մի ժողովրդեանն Հրէից ըստ օրինաց 'ի ծառայութիւն ծնեալ ըստ նմանութեան նորին Հագարու. քանզի Հագարդ իսկ է լեառն Սինէ՝ որ 'ի կողմանս արաբացւոց. և նմանութիւն է նա այժմ Երուսաղէմի, զի կայ 'ի հնազանդութեան և ծառայէ որդւովք իւրովք հանդերձ Հոռոմոց։ Այլ վերինն Երուսաղէմ ազատ է, որպէս Սառայն. և 'ի վերոյ է նա քան զիշխանութիւնս և զպետութիւնս. և նա ինքն է մայր մեր եկեղեցի սուրբ, որում խոստովանին եղեաք նմա։ Եւ ոչ եթէ մեք ինչ եմք գտօղք այսուիկ. քանզի Եսայի յառաջագոյն կանխեաց և ասաց վասն այսորիկ. «Ուրախ լեր ամուլդ՝ որ ոչ

ծնանէիր, զի բազումեղեն որդիք եկեղեցւոյ ամլոյ առաւել քան զորդիս ժողովրդեանն արամբւոյ»: Այլ դուք, եղբարք, ըստ Սահակայ աւետեացն որդիք էք: Այլ որպէս հալածէր Իսմայէլ զՍահակ, սոյնպէս հալածիմք մեք 'ի նոցանէն այսօր: Որպէս ասաց նմա՝ «Իբաց հան զաղախինն և զորդի նորա, զի մի ժառանգեսցէ որդի աղախնոյ ընդ որդւոյ ազատի», սոյնպէս ելին և նոքա՝ զի մի ժառանգեսցեն ընդ ձեզ: Արդ չեմք ծառայք վասն ազատութեան զոր առաք մեք 'ի ձեռն Քրիստոսի:

## ԳԼՈՒԽ Ե

Պինդ կացէք 'ի Քրիստոս, և մի միւսանգամ ընդ լծով ծառայութեան օրինացն մտանիցեմք: Ահա աւասիկ ես Պաւղոս՝ որ աւելի քան զձեզ գիտեմ զզօրութիւն հնոյն, ասեմ ձեզ. զի եթէ թլփատիք, որպէս ասեն ձեզ, յայսմիկ և վասն այսորիկ Քրիստոս ինչ ձեզ ոչ օգնէ: Բայց սակայն ամենայն որ առնու յանձն զթլփատութիւն, պարտ է նմա այնուհետև զամենայն օրէնսն կատարել. այս ինքն պարհել զշաբաթս նոցա, և առնել զտօնս նոցա, և ուտել զբաղարջս նոցա և զգառանն և զեղէգ նոցա: Եւ եթէ զայս առնէք դուք, խափանեալ էք 'ի Քրիստոսէ՝ որ օրինօքդ կամիք արդարանալ: Եթէ գործովքդ ձերովք ըստ օրինաց արդարանալ ցանկայք դուք, 'ի շնորհաց՝ որ եղև 'ի ձեզ որպէս յամենայն հեթանոսս՝ անկեալ էք դուք: Զի մեք հոգւովն հաւատոց զոր ընկալաք, յուսոյն արդարութեան որ տուեալ լինի 'ի մեզ 'ի հաւատոց անտի՝ ակն ունիմք մեք: Զի 'ի Քրիստոս Յիսուս ոչ թլփատութիւն ինչ օգնէ, և ոչ անթլփատութիւն. այլ հաւատք սիրով զօրացեալք. այս ինքն հաւատովք մերովք՝ որ առ տէր մեր, և սիրով մերով որ առ միմեանս:

Բարւոք իմն ընթանայիք և դուք յայսմիկ զոր համարեցայս, ո՞ կասեցոյց զձեզ և հրապուրեաց զձեզ թերահաւատս լինել ձեզ 'ի ճշմարտութենէ անտի զոր ետու ես ձեզ: Զի հաւատալն ձեր յայնմանէ է՝ որ կոչեացն զձեզ: Կամ այս հրապոյրք ձեր որ հակառակ են առաջնոյն, յայնմանէ է՝ որ հրապուրեացն և կա-

սեցոյց զձեզ այսօր. կամ հրապոյրքն ձեր յայս են, այն որ 'ի նմանէ է կոչումն ամենայն հեթանոսաց։ Որպէս խմոր է ամենայն ուսումն. և յոր անկանի նա, զմիտս նորա իբրև զզանգուածն առ ինքն ձգէ։ Այլ ես յուսացեալ եմ 'ի ձեզ տէրամբ՝ եթէ այլ ինչ դուք քան զոր ետու ես ձեզ, մի խռովեսջիք. և այն որ խռովեցուցանէ զճշմարտութիւն զոր սփռեցի ես 'ի ձեզ, նա միայն ընկալցի զդատաստանսն՝ որ գալոց են 'ի վերայ այնորիկ որ զընկերս գայթագղեցուցանէ։ Այլ ես եթէ զթլփատութիւն քարոզէի, և ոչ 'ի հրէից անտի հալածական լինէի։ Ապա ուրեմն խափանեցաւ գայթագղութիւն խաչին. այս ինքն խոնարհութիւն խաչին զոր քարոզեմք մեք, 'ի ձեռն թլփատութեանն զոր քարոզէն նոքա։ Երանի եթէ բնաւ հատանէին իսկ և ընկենուին առ մերոյ նախանձու այնոքիկ՝ որ խռովեցուցանեն զձեզ։

Այլ դուք, եղբարք, յազատութիւն կոչեցարուք. և մի այսուհետև դառնայք դուք յօրէնսն, և լինիցի ազատութիւն ձեր 'ի պատճառս մարմնոյն. այլ սիրով ծառայեցէք միմեանց, և ոչ օտար ուսմամբ։ Զի օրէնքն յոր դուքն ընթանայք կատարել զբազում պահպանութիւնս նորա, սակաւ իւիք կատարի. այս ինքն զի սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո։ Ապա եթէ զմիմեանս զզուիցէք և զմիմեանս խածատիցէք, ոչ միայն զօրէնսն ոչ կատարէք դուք, այլ և 'ի միմեանց սատակիք։ Զայս ասեմ. Հոգւով, այս ինքն գործովք հոգւոյն գնասջիք, և զցանկութիւն մարմնոյ ձերոյ մի կատարէք. զի մարմին ցանկայ՝ որ ոչ կամք հոգւոյ են. և հոգի ցանկայ՝ որ ինչ չարչարանք են մարմնոյ։ Եւ քանզի այդք երկոքին միմեանց թշնամի են, մի ևեթ զամենայն ինչ զայն առնիցէք զոր կամիցիք. այլ զայն ինչ առնիջիք զոր կամի հոգին՝ որ բնակեալ է 'ի ձեզ։ Ապա եթէ հոգւով վարիք, չէք ընդ օրինօք։ Զի յայտնի են գործք մարմնոյ, զի 'ի վերայ նոցա տիրեն օրէնք. այս ինքն են պոռնկութիւնք և պղծութիւնք և այլ ևս։ Այն զի մինչ առ ձեզն էի՝ ասացի, և այժմիկ հեռաստանէ գրեմ առ ձեզ՝ եթէ որ զայնպիսի ինչ գործեն, զարքայութիւն Աստուծոյ ոչ ժառանգեն։ Իսկ պտուղ Հոգւոյ այս է, սէր և խաղաղութիւն,

այլովք հանդերձ ։ Զայսպիսեացս աստի օրէնք չեն հակառակ ․ զի ոչ գրեալ է յօրէնս գործել զայս, այլ յազատութենէ մերմէ ընտրեմք մեք գործել զայս ։ Իսկ որք քրիստոսեանքն են, զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին հանդերձ ամենայն ցանկութեամբք մարմնոյ զոր համարեցայ ։ Մերձեսցուք առ հոգին, և զհետ երթիցուք նորա 'ի ձեռն գործոց մերոց ․ և մի լիցուք ընդունայնակարծք, միմեանց ձայն տալով պահել զօրէնս հնոյն ։

ԳԼՈՒԽ Զ

Իսկ եթէ յանկարծ գայթագղեսցի մարդ յինչ և իցէ յանցանս, այնոքիկ՝ որ հոգևոր գործովքն իւրեանց հեռի են յանցանաց, նոքա խրատեսցեն զայնպիսին 'ի հոգին հեզութեան ․ և զգոյշ լինիցին եթէ գուցէ սոքին իսկ՝ որով զի ոչ ևս յանցեան, տիրեսցէ 'ի նոսա հպարտութիւն ամպարտաւանութեան ․ և այնոքիկ որք ապրեցան յանօրէնութենէ անտի յայնմանէ՝ ուր ընկերքն իւրեանց անկեալ էին, մտանիցեն նոքա 'ի փորձանս պարծանաց ։ Զմիմեանց բեռն բառնալով կատարին օրէնք, և ոչ եթէ այնուիկ՝ որ ձեռն յանձին հարեալ իցէ եթէ ես եմ ինչ ։ Այլ զանձինս մեր կշռեսցուք, զգործս մեր՝ եթէ ո՞յ իցեն ․ և ապա անձանց մերոց միայն պարծանս տացուք, և ոչ 'ի վերայ ընկերի ․ այս ինքն և ոչ այլոց գործովք ։ Իւրաքանչիւր մարդ զբեռն իւր բարձցէ, և մի պարծեսցի այլոց բեռամբ զոր բարձեալ ունիցին ։ Ի հաւանութեան մտցէ տգէտն գիտնոյն յամենայն ինչ 'ի բարիս ․ այս ինքն նմանող լիցի աշակերտն ամենայն բարութեամբք վարդապետին իւրոյ՝ որ ուսուցանէ զնա ։

Այլ մի կարծիցէք եթէ չեն դատաստանք, և համարձակիցիք 'ի մեղանչել ․ զի Աստուած զարհամարհանս ուրուք յանձն ոչ առնու ։ Զի այն որ սերմանէ 'ի մարմին իւր զգործս մարմնոյ, զապականութիւն հնձէ ․ այս ինքն ապականութիւն է շահ նորա ։ Եւ որ 'ի հոգի զգործս հոգւոյ սերմանէ, 'ի գործոց անտի իւրոց զկեանս յաւիտենից յարութեան հնձէ ։ Այլ զբարիս գործել մի ձանձրասցուք յաճախել ․ զի եկեսցէ ժամանակ,

զի հեռի իցէ 'ի դանդաղմանց. և յաւիտենից հնձեսցուք առանց լքանելոյ։ Գործեսցուք զբարիս առ միմեանս, մանաւանդ առ ընտանիս հաւատոց. այս ինքն առ սուրբսն՝ որ էին յԵրուսաղէմ, և առ ընկերսն իւրեանց՝ որ էին 'ի հեթանոսս. որք զյափշտակութիւն ընչից իւրեանց ուրախութեամբ ընկալան։ Տեսէք որչափ գործովք գրեցի ես առ ձեզ իմով ձեռամբ վասն թլփատութեան։ Եւ որ միանգամ կամին բարեմարդիկ լինել և պարծել մարմնով, այս ինքն թլփատութեամբ, նոքա ստիպեն զձեզ 'ի թլփատութիւն, զի ձերով թլփատութեամբդ պարծեսցին՝ եթէ ահա աւասիկ մեք թլփատեցաք զնոսա, զայնոսիկ՝ որ աշակերտեցան 'ի Պաւղոսէ, զի մի՛ թլփատեսցին։

Այլ ինձ քաւ լիցի պարծել այսոքիւք, կամ որ ինչ նման է նոցա. բայց միայն 'ի խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եղիցին պարծանք իմ. զի նովաւ աշխարհ 'ի խաչ հանեալ իմ յանդիմանութեամբ, և ես 'ի խաչ ելեալ եմ չարչարանօք և նեղութեամբք յանդիման աշխարհի։ Այլ Քրիստոսի Յիսուսի ոչ թլփատութիւն ինչ կարէ առնել, և ոչ անթլփատութիւն. բայց եթէ եղիցի մարդ նոր արարածք։ Եւ որ միանգամ այսմ կարգի շնորհաց հաստատուն կան, խաղաղութիւն լիցի 'ի վերայ նոցա, եթէ հեթանոսք իցեն, եթէ իսրայէլացիք իցեն Աստուծոյ։ Զի այսուհետև կարգաւն թլփատութեան աշխատ ոք մի՛ արասցէ. զի փոխանակ թլփատութեան՝ որ եդեալ լինի 'ի վերայ միոյ անդամոյ, և պարծին նովաւ թլփատեալքն, ես զչարչարանս տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ամենայն մարմնով իմով բարձեալ կրեմ։ Շնորհքն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսին։ Մի՛ այսուհետև կարօտիք դուք արդարութեան օրինաց։

# ԱՌ

# ԵՓԵՍԱՑԻՍ

ԵՓԵՍԱՑԻՔ աշակերտեալ էին Յովհաննու աւետարանչի : Սա քանզի ետես զերիս ընկերան իւր եթէ սկիզբն աւետարանացն իւրեանց առ 'ի մարմնոյ արարին, զի մի զմտաւ ածեալ կարծիցեն մարդիկ եթէ մարդ իսկ էր նա՝ այն որ երեւեցաւ նմա՝ և ոչ Որդի ա̅յ, խոտորեցաւ յընկերաց անտի իւրոց՝ առնել ճանապարհ. նոր, զոր ոչ արարին ընկերքն : Արդ սկիզբն արար նա ասել 'ի գլուխ աւետարանի իւրոյ, ոչ զի ծնաւ նա 'ի Մարիամայ, կամ 'ի Դաւթայ և յԱբրահամէ և յԱդամայ, այլ 'ի սկզբանէ էր Բանն. և ինքն Բանն էր առ ա̅ծ, և ա̅ծ էր ինքն Բանն : Արդ Առաքեալ քանզի գիտէր եթէ եփեսացիքն ա̅ծութ̅ին տեառն մերոյ կատարեալ են ըստ աւետարանին Յովհաննու քարոզին իւրեանց, թող նա զայս, քանզի կատարեալ էին սովաւ. և առ նա գրել նոցա վասն տնտեսութեան մարմնոյն նորա :

Արդ պատմեաց նա վասն խոնարհութեան մարմնոյ նորա յիջանել նորա 'ի ստորին կողմն երկրի. և գրեաց նա վասն մեծութեան նորա յելանել նորա 'ի վերոյ քան զամենայն երկինս : Զի թէպէտ և 'ի սկիզբն թղթոյս զՈրդի ընդ Հօր ողջունի զոր գրէ առ եփեսացիսն՝ խառնէ զնա, և 'ի տեղիս տեղիս հանդերձ մարմնովն զոր զգեցաւն՝ յիշէ զնա, այլ ինքն Առաքեալ վասն մարդկութեան նորա առաւել քան վասն աստուածութեան նորա գրեաց եփեսացւոցն, որպէս 'ի վերուստ իսկ ասացաք :

## ԳԼՈՒԽ Ա

Պաւղոս, ասէ, առաքեալ Յիսուսի Քրիստոսի 'ի կամաց այ, զի կամեցաւ նա ընդ մուտն հեթանոսաց. սրբոց և հաւատացելոց, այս ինքն կնքաւորաց և երախայից. շնորհք ընդ ձեզ և խաղաղութի յայ 'ի Հօրէ մերմէ և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ. և ոչ եթէ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Օրհնեալ է Հայրն մեր, Հայրն տեառն մերոյ. Հայրն մեր՝ զի շնորհօք կոչեցաւ և մերձեցոյց զմեզ յիւր յորդեգրութի. իսկ Հայրն տեառն մերոյ՝ ճշմարտութբ և ոչ առնլով. և բնութբ և ոչ շնորհօք: Ամենայն զի ասաց աստ՝ Հայրն տեառն մերոյ, զի արասցէ որոշումն 'ի մէջ Որդւոյ և մարմնոյ: Զի ուր ասէ՝ Հայր տեառն մերոյ, յայտ արասցէ եթէ վասն Որդւոյ ասէ. և ուր գրէ՝ ած տեառն մերոյ, յայտ լիցի եթէ վասն մարդկութե նորա պատմէ նա: Այն, ասէ, որ օրհնեացն զմեզ ոչ երկրաւոր օրհնութեքն օրինաց, այլ յամենայն օրհնութիս Հոգւոյ յերկնաւորս 'ի Քրիստոս:

Որպէս և կանխեցաւ 'ի խորհուրդս իւր ընտրեաց զմեզ սոցին այսոցիկ յառաջ քան զաշխարհ, զի լիցուք մեք 'ի ձեռն մկրտութեն սուրբք և անարատք. այս ինքն սիրով և ոչ ըստ արդարութե գնացիցն մերոց: Եւ կանխեաց յառաջագոյն ընտրեաց զմեզ 'ի ձեռն խորհրդոց մարգարէիցն, և եդ զմեզ յայնմ ժամանակէ հետէ յորդեգրութի 'ի Քրիստոս ըստ հաճութեան կամաց իւրոց, զի զոյն իսկ զայս արասցէ մեզ: Զի փառաւոր լիցի յամենայնի. այս ինքն զի առաւել իցէ քան զամենայն գովեստն շնորհաց նորա, նովին իսկ Որդւով իւրով գթացաւ 'ի մեզ: Այն զի նովաւ ունիմք մեք զայս փրկութի և զյոյս զոր ստացաք արեամբ նորա. զթողութի մեղաց առաք մեք, ոչ եթէ 'ի գործոց մերոց, այլ ըստ մեծութե շնորհաց նորա՝ որ առաւելաւ 'ի մեզ. այս ինքն զի մեծացուցին զմեզ ամենայն իմաստութբ և գիտութբ: Ի ձեռն իմաստութե իւրոյ ցոյց մեզ զխորհուրդ կամաց իւրոց, այն որ կանխեաց եդ զնա և ծածկեաց

զայս խորհուրդ առաջնորդութե՟՝ որ հանդերձեալ
էր յայտնել։ Զի 'ի կատարած ժամանակաց ամենայն
ինչ վերստին նորոգի 'ի Քրիստոս, այն ինչ որ յերկինս
է և որ յերկրի, 'ի նոյն. այս ինքն լուսաւորք՝ որ նո-
րոգին 'ի միտս և 'ի խորհուրդս մեր, և ճանաչեալ
լինին նոքա՝ եթէ արարածք են նոքա և ոչ ա՟ծք. և
կուռք յերկրի լուսաւորին մեզ՝ եթէ ձեռագործք
են նոքա և ոչ արարիչք. նորոգութի՟՝ որ լինի մեզ՝
նորոգին նոքա, ոչ եթէ անձամբք իւրեանց, այլ 'ի
ճշմարիտ գիտութե՟ բնութե՟ն իւրեանց։

Արդ սոյն իսկ յայս խորհուրդս որոշեցաք, և ըն-
տրեցաք 'ի սմին իսկ յայսմիկ զոր յառաջագոյն հրա-
ւիրեաց ա՟ծ, զի ամենայն ինչ 'ի ձեռն Յիսուսի Քրիս-
տոսի զօրասցի հաճոյ լինել, որպէս զի կատարեսցին
խորհուրդք կամացն ա՟յ։ Զի եղիցուք մեք քան զա-
մենայն դարս որ յառաջեցին քան զմեզ՝ 'ի գովեստն
փառաց նորա. այս ինքն մեք՝ որ յառաջագոյնս յու-
սացաք 'ի Քրիստոս։ Զի և դուք 'ի ձեռն Յիսուսի
լուարուք զբանն ճշմարտութե՟. զի նա ինքն է աւե-
տիք կենաց, և նովաւ յամենայն կռոց դարձարուք,
և հաւատացէք 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ՝ որ ջուրբքն
աւետարանեալ էր ձեզ։ Այն զի այս որ եղև ձեզ,
գրաւական է սա ճշմարիտ ժառանգութե՟ն ձերոյ,
այն զոր ընդունելոց էք դուք 'ի փրկութիւն նուա-
ճութե՟ ձերոյ, այս ինքն փրկութեամբն որ լինելոց
է 'ի ժողովելն հեթանոսաց, յաւուրն գալստեան
տեառն մերոյ. զի եղիցի սոյն իսկ այս 'ի գովեստն
փառաց նորա, այս ինքն 'ի փառս յայտնութե՟ նորա։

Վասն այսորիկ և ես իբրև լուայ զհաւատսն ձեր՝
որ 'ի տէրն Յիսուս են, և սէրն ձեր՝ որ է առ ծա-
ռայսն տեառն մերոյ, ոչ դադարեմ գոհանալ վասն
ձեր՝ յամենայն ժամ յիշել յաղօթս իմ։ Զի ա՟ծ
տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ որ Հայրն փառացն
էր, վասն զի ինքն իսկ 'ի ձեռն Որդւոյ իւրոյ եղև
պատճառք այսց օրհնութե՟ց՝ որ եղանեն այսօր 'ի հե-
թանոսաց, այն որ յառաջ հայհոյութի՟ փոխանակ
օրհնից հանէին, Հայրն, ասէ, փառացն տացէ ձեզ
զհոգին գիտութե՟ և յայտնութե՟. այս ինքն յայտ-
նութի՟ իմաստութե՟ Հոգւոյն ծանիջիք զնա։ Եւ լու-

սաւոր եղիցին աչք սրտից ձերոց. զի գիտասջիք դուք զինչ է յոյսն առաւելութեան կոչման ձերոյ, և զինչ է մեծութիւն փառաց ժառանգութեան նորա՝ որ պատրաստեալ պահի սրբոց, և կամ զինչ է առաւելութիւն մեծութեան զօրութեան նորա 'ի ձեզ 'ի հաւատացեալս, այս ինքն 'ի դառնալն ձերում. և 'ի գործս հոգւոյն՝ որ 'ի ձեզ 'ի հաւատացեալսդ: Եւ աւադիկ գործին ըստ զօրութեան իշխանութեան նորա, այն որ զօրացոյց նա զՔրիստոս, և կեցոյց զամենայն ծագս, և զՈրդին յարոյց 'ի մեռելոց: Արդ այն, զի ասաց վերագոյն՝ եթէ Աստուած տեառն մերոյ Յիսուսի՝ վասն մարմնոյ, ասաց աստ՝ թէ յարոյց զնա 'ի մեռելոց, և նստոյց զնա ընդ աջմէ իւրմէ յերկինս: Ի վերոյ քան զամենայն իշխանութիւնս և պետութիւնս ասաց զնմանէ, և վասն նորին մարմնոյ ասաց՝ թէ հնազանդեցէ 'ի ներքոյ ոտից նորա: Եւ զնա արար գլուխ 'ի վերայ ամենայնի և 'ի վերայ եկեղեցւոյ, այս դարձեալ զի ասաց՝ թէ զի այս ինքն է մարմին նորա, կատարումն, որ ամենայն ինչ՝ յամենայնի կատարի: Զոր օրինակ զգեցաւ նա զմարմին մեր աստ, լինի և 'ի կատարածի և եկեղեցի մարմին մարմնոյ նորա. և այսպէս կատարի ամենայն յայնմանէ, որ յամենայնին կատարի:

## ԳԼՈՒԽ Բ

ԵՒ դուք որ երբեմն մեռեալ էիք 'ի մեղս գնացից ձերոց ըստ կամաց իշխանին իշխանութեան օդոյն և այսոյն, այս ինքն զի իշխան է նա 'ի վերայ օդոյն՝ առնուլ 'ի նմանէ 'ի նմանութիւն կերպարանաց երևել, և իշխան է 'ի վերայ այսոյն պղծութեան. այն, ասէ, որ և արդէն իսկ զօրացեալ է 'ի վերայ որդւոցն թերահաւատից՝ որ ոչ կամին հաւատալ յաւետարան: Որով և մեք ամենեքին շրջէաք 'ի ցանկութիւնս մարմնոյ մերոյ, և առնէաք մեք ոչ զկամս Աստուծոյ, այլ զկամս մտաց և մարմնոց մերոց. և էաք արդարև որդիք բարկութեան իբրև զայնոսիկ՝ որ մինչև ցայսօր ժամանակի 'ի թերահաւատութեան կան: Ամենայն, զի արգելոյր և փակէր զանձն իւր Առաքեալ 'ի ներքոյ

այսոցիկ, զի մի՛ օտարասցի նա 'ի շնորհացն՝ որ անխայեցին և անխայեն զամենայն որ միանգամ հաւատան և մկրտին յայսցանէ ։

Այլ ա՛ծ վասն մեծ առատութե՛ և սիրոյ իւրոյ զոր սիրեաց զմեզ, ողորմեցաւ և գթացաւ 'ի մեզ. և զի մեռեալ էաք մեք 'ի մեղս մեր, կենդանի արար զմեզ 'ի ձեռն մկրտութե՛ն 'ի Քրիստոս. շնորհօք նորա ապրեցոյց զմեզ, զի ձրի քաւեաց զմեզ, և յարոյց զմեզ ընդ նմա 'ի ձեռն աւետեացն՝ և մինչ չև իսկ գլորեալ էաք։ Եւ նստոյց զմեզ ընդ նմա յերկնաւորս. այս ինքն պատուեաց և փառաւորեաց զմեզ 'ի ձեռն մարմնոյն մերոյ զոր նստոյց յերկնաւորս ։ Զի ընծայեցուսցէ աշխարհաց՝ որ գան յարութե՛ն անդր՝ զառաւելութե՛ն մեծութե՛ն շնորհաց նորա, որ եղև 'ի ձեռն Քրիստոսի 'ի դարու աստ մերում։ Շնորհօք նորա կոչեալ էք դուք, զի հաւատովք էք դուք կոչեցեալ։ Եւ սոյն իսկ այս ոչ եթէ 'ի ձէնջ ինչ եղև և կամ 'ի գործոց ձերոց, այլ պարգևք ա՛յ են. զի մի՛ ոք պարծեսցի գործովք իւրովք, այլ շնորհօքն՝ որ գթացան նմա ։ Արարածք նորա եմք մեք՝ ստեղծեալ նորոգապէս 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի գործս բարիս. այն որ յառաջագոյնն, այս ինքն յորմէ հետէ ընտրեացն զմեզ, պատրաստեաց զմեզ՝ զի 'ի նոյն գնասցուք ։

Վասն այսորիկ և դուք յիշեցէք, զի և դուք երբեմն՝ հեթանոսք էիք մարմնով, զի զգործս մարմնոյ գործէիք. և կոչեցեալ էիք դուք անթլփատք՝ 'ի թլփատել հեբրայեցւոց անտի ։ Եւ էիք 'ի ժամանակին յայնմիկ առանց Քրիստոսի, թէպէտ և պարհեալ էիք դուք կոչմանն Քրիստոսի. և օտարացեալ էիք յընկերութէ՛ անտի բնակութե՛ն Իսրայէլի, այս ինքն 'ի պահպանութե՛ պատուիրանին օրինաց. և օտարացեալ էիք ոչ յաւետեացն, այլ 'ի կտակարանաց անտի աւետեացն. և յոյս ինչ ոչ ունէիք, զի աւետեացըն չէիք հմուտ. և առանց ա՛յ յաշխարհի շրջէիք, զի Աստուածն ճշմարտութե՛ ոչ գիտէիք ։ Իսկ այսօր զի եղերուք 'ի ձեռն հաւատոցն ձերոց Քրիստոսի, և զի հեռի էիք դուք 'ի նմանէ, արեամբն նորա զոր առնուք՝ մերձաւորք նորա եղերուք ։ Զի նա ինքն է

խաղաղութ՟ի մեր, այս ինքն զի նա արար խաղաղութ՟ի 'ի մէջ հեբրայեցւոցն և հեթանոսաց. վասն զի արար զերկոսին կտակարանս մի, և քակեաց 'ի մարմնի իւրում զկրձիմն թշնամութ՟ե, այս ինքն զմոլորութ՟ի կռոց՝ որ 'ի վերայ ամենայնի առագաստեալ էր, և 'ի վեր քան զերկինս անցանել մտաց մարդկան ոչ տայր թոյլ. և զօրէնս երկրաւոր պատուիրանացն հոգեղէն պատուիրանօք իւրովք խափանեաց, զի զերկոսին՝ այս ինքն զհեթանոսս և զհեբրայեցիս՝ ստեղծցէ անձամբ իւրով 'ի մի մարդ նոր, և արասցէ խաղաղութ՟ի, և հաշտեցուսցէ զերկոսին 'ի ձեռն միոյ մարմնոյ՝ որ սպանաւն փոխանակ երկոցունց. և խաչիւն իւրով սպան նա զթշնամութ՟ին, այս ինքն զի խափանեաց և մաշեաց նա զթշնամութ՟ին՝ որ էր 'ի մէջ մեր և ա՟յ: Եւ եկն աւետարանեաց զխաղաղութ՟ի ձեզ. այս ինքն հեթանոսաց հեռաւորաց, և հեբրայեցւոց մերձաւորաց: Զի նովաւ ընկալաք մեք ըզնուաճութ՟ի. զի յամօթ առնէին զմեզ և որոշէին յիւրեանց վասն օրինաց իւրեանց: Արդ ահա աւասիկ եղև մեզ նուաճութ՟ի 'ի մի Հոգի առ Հայրն ամենայնի. այս ինքն 'ի ձեռն Հոգւոյն զոր ընդունիմք մեք 'ի մկրտութ՟է անտի. այն որ 'ի միջոյ նորա դարձեալ միւսանգամ հրեայ և հեթանոս չիք, զի ամենայն յամենայնի Քրիստոս է:

Ապա այսուհետև չէք օտարք յաւետեացն կտակարանաց, և ոչ պանդուխտք 'ի ժառանգութ՟ե՝ որ պատրաստեալն պարհի ձեզ. այլ քաղաքակիցք սրբոց և ընտանիք ա՟յ: Եւ շինեալ էք 'ի վերայ հիման. այս ինքն 'ի վերայ քարոզութ՟ե մարգարէից և առաքելոց: Զի ինքն Յիսուս Քրիստոս եղև գլուխ անկեան. այս ինքն պսակիչ և կնքիչ այսր հոգեղէն վարդապետութ՟ե. և 'ի նա ամենայն շինուած եկեղեցւոյ հաստատի և պատշաճի և աճէ 'ի շինած տաճարի սրբութ՟ե, այս ինքն ըստ նմանութ՟ե տաճարի սրբութ՟ե, 'ի բնակութ՟ի ա՟ծուն: Քանզի և դուք իսկ ընդ նմին եկեղեցւոյ շինեալ լինիք լինել ձեզ բնակութ՟ի ա՟ծուն 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ:

## ԳԼՈՒԽ Գ

ՎԱՍՆ այսորիկ ես Պաւղոս կապեալ Յ̃ի Քրիստոսի վասն ձեր հեթանոսաց. այս ինքն երբեմն 'ի ձէնջ, և երբեմն 'ի հեբրայեցւոց անտի, ոչ վասն այլոյ իրիք, այլ վասն զի աւետարանեմ ձեզ զայս աւետարան. արդ եթէ արդարեւ լուեալ իցէ ձեր զպաշտօն շնորհաց, և հաստատեալ կայցէք յառաջնորդութեան, ոչ յօրինաւորն, այլ 'ի հոգեղէնն. առաջնորդութեան շնորհացն ա̃յ՝ որ տուան ինձ 'ի ձեզ, այս ինքն վասն ձեր, զի յայտնութեամբ Ճանապարհին Դամասկեայ յայտնեցաւ ինձ խորհուրդս այս, զի փոքր մի 'ի սմանէ գրեցի ես առ ձեզ, զի կարող լինիջիք դուք ընթեռնուլ և 'ի մտի դնել զգիտութիւն որ ծածկեալ կայր 'ի խորհրդեանն Քրիստոսի։ Այն որ այլոց ազգաց, թէպէտ և գրեցին նորա մարգարէքն առակաւ օրինակաւ, սակայն ոչ յայտնեցաւ երբէք որդւոց մարդկան՝ որպէս և այսօր յայտնեցաւ առաքելոց իւրոց 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ. այս ինքն 'ի ձեռն պարգևաց Հոգւոյն։ Զի եղիցին հեթանոսք ժառանգակիցք առաջինն արդարոց 'ի ձեռն մարմնոյ նորա. զի 'ի միասին ընկալջիք զաւետիսն՝ որ նա ինքն է մարմին նորա, այն որ խոստացեալ էր 'ի միասին ընդունել զնա հեբրայեցւոց և հեթանոսաց 'ի ձեռն Քրիստոսի աւետարանին։ Որոյ եղէ ես սպասաւոր մատակարար ըստ պարգևաց առատութեան շնորհացն ա̃յ, այն որ տուաւ ինձ ոչ ըստ գնացից տկար մարմնոյ, այլ ըստ զօրութեան բազկի նորա. ինձ՝ որ տրուպս եմ ոչ միայն ամենայն առաքելոց, այլ և ամենայն սրբոց՝ այս ինքն կնքաւորաց, տուաւ ինձ շնորհքս այս, իբրև չեմ արժանի աւետարանել 'ի հեթանոսս ոչ զանուն Քրիստոսի, այլ զանքնին մեծութիւն Քրիստոսի։ Եւ լուսաւոր առնել զամենայն մարդ, զի գիտասցեն եթէ զինչ է առաջնորդութիւն խորհրդեանս այսորիկ՝ այս ինքն զի զվարս հոգեղէնս սիրէ, և ոչ զօրինաւորս. այն որ ծածկեալն էր յաւիտենից 'ի ժամանակէ անտի առ ա̃ծ՝ որ զամենայն ինչ արար։

Զի թէպէտ և պատմեցաւ գալուստ նորա խորհրդովք, այլ զի թէ մարմին նորա կերակուր բաշխելոց էր, ա̃ծ միայն գիտէր զայս. առ որում ծածկեալն կայր:

Ի մէջ եկեղեցւոյ, ասէ, յայտնեսցի բազմապատիկ իմաստութիւն ա̃յ իշխանութեանցն և պետութեանցն՝ որ յերկինս է: Կամ քահանայս և զպետս ժողովրդեանն կոչէ իշխանս որ յերկինս՝ վասն պէսպէս սրբութեանց բարոտութեանն, և երբ երբ արատոց՝ որ սակաւուց օգուտ ինչ լինէր յերկնից 'ի ձեռն նոցա. կամ վասն պետութեանց և իշխանութեանցն՝ որ 'ի ձեռն պատրանաց մարտնչէին ընդ մեզ՝ ասաց, այնոքիկ՝ որ վասն զի ոչ գիտացին զԱրդի 'ի ձեռն նշանին զոր խնդրեաց 'ի նմանէ յանապատի անդ, և 'ի ձեռն պատգամին զոր երկրորդեաց նմա 'ի մարգարէէ անտի, գիտել ճանաչել կամէր զնա: Արդ 'ի մէջ եկեղեցւոյ տեսին նոքա ըզբազմապատիկ իմաստութիւն ա̃յ, և յիմարեալ հայէին և զարմանային՝ թէ զիարդ հնարեցաւ 'ի ձեռն մարմնոյն իւրեանց որ շրջէինն, և առնուին զնա լինին հոգևորք փոխանակ մարմնաւորաց, և երկնաւորք փոխանակ երկրաւորաց, և կենդանիք փոխանակ մահկանացուաց, և ա̃ծեղէնք փոխանակ մարդկեղինաց: Այն զի, ասէ, յօժարուն ժամանակացն յաւիտենից, այս ինքն յառաջ քան զաշխարհ, 'ի մէջ եկեղեցւոյ արար զնա 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի: Այն զի նովաւ ընկալաք մեք զնուաճութիւնս զայս, որ եղև 'ի մեզ 'ի ձեռն համարձակութեան հաւատոց նորա: Եւ վասն այսորիկ խնդրեմ 'ի ձէնջ, մի ձանձրանայք 'ի նեղութիս այս մեր. ոչ այնոքիւք որ վասն մեր է, այլ այնոքիւք որ վասն ձերդ կրեմք մեք հանապազօր: Զի եթէ կամեցեալ էր մեր նստել 'ի միում վայրի և պաշտել զա̃ծ, կարէաք. այլ ոչ լինէաք հալածեալք: Այլ քանզի սիրեցաք մեք եթէ զամենայն հեթանոսս ապրեցուսցուք, զի ամենայն հեթանոսաց քարոզեմք մեք, վասն այսորիկ և յամենայն հեթանոսաց հալածիմք մեք: Արդ մի այսուհետև ձանձրանայք դուք վ̃ն մեր. քանզի ինքն համբերութիւն մեր փառք ձեր են:

Վասն այսորիկ դնեմ ծունր առ Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. այն զի 'ի նմանէն անուա-

նեալ են ամենայն նահապետութիւնք երկնաւորաց և երկրաւորաց . այս ինքն յերկինս նորին Հօր , և յերկրի ամենայն ծնչաց : Զի նա տացէ ձեզ ըստ մեծութեան փառաց իւրոց զօրութիւն 'ի ձեռն Հոգւոյն իւրոյ . այս ինքն կամ 'ի ձեռն հոգևոր գործոցն հաստատեսջիք 'ի նա , կամ զօրութիւն՝ որ ոչ պարտաւորի 'ի հալածչաց՝ հաստատեսջիք 'ի ձեռն Հոգւոյն մկրտութեան զոր առէք դուք : Զի 'ի նոյն իսկ յայն 'ի ներքին մարդն մեր որ առ զՀոգին , բնակեսցէ Քրիստոս հաւատովք և ճշմարտութիւն և սիրովն նորա , որ սփռի 'ի սիրտս ձեր . զի եղիցի հաստատուն արմատք ձեր , այս ինքն հիմն հաւատոց ձերոց : Զի կարող լինիջիք հասանել ընդ ամենայն սուրբս , և գիտել եթէ զինչ է բարձրութիւնք և խորութիւնք և երկայնութիւնք և լայնութիւնք . այս ինքն զինչ է կատարած խորհրդեանս այսորիկ զոր մեք ձեզ քարոզեմք , և զինչ է առաւելութիւն գիտութեան սիրոյն Քրիստոսի՝ որ եղև առ մեզ . որպէս զի լցջիք ամենայն լրութեամբն Աստուծոյ : Այն՝ որ կարողն է առաւել քան զամենայն ինչ որ արար մեզ՝ առնել մեզ , ոչ որպէս մեք խնդրեմք , այլ առաւել քան զոր խնդրեմքն մեք և խորհիմք մեք , ըստ ծածուկ զօրութեան նորա որ զօրացաւ 'ի մեզ , նմա փառք 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի յեկեղեցւոյ յամենայն ազգս յաւիտենից յաւիտեանս . ամէն :

## ԳԼՈՒԽ Դ

Արդ աղաչեմ ես զձեզ՝ որ կապեալս եմ 'ի տէր վասն տեառն մերոյ և վասն ձեր , գնալ ձեզ արժանի կոչմանն յոր կոչեցարուքն դուք . այս ինքն զի գնասջիք դուք ամենայն հեզութեամբ և երկայնմտութեամբ , փութալ պահել զմիաբանութիւն Հոգւոյն սրբոյ . այս ինքն 'ի հաստատութիւն խաղաղութեան : Եղիջիք 'ի մի մարմին և 'ի մի Հոգի , որպէս կոչեցարուք դուք . և մի հաւատք և մի մկրտութիւն , և ոչ բազում : Եւ 'ի վերայ ամենեցուն հոգաբարձութիւն և ընդ ամենայնի և 'ի վերայ ամենեցուն մեր է 'ի մկրտութեան : Եւ իւրաքանչիւր 'ի մէնջ տուեալ են շնորհք , ոչ հաւասա-

րապէս, այլ որոշելով. այս ինքն ըստ չափոյ պարգեւացն Քրիստոսի։ Վասն այսորիկ ասացեալ է. ասէ. «Ել 'ի բարձունս, այս ինքն յերկինս, և գերեաց ըզգերութիւն». զի դարձոյց նա զգերութիւն՝ որ գերեալն էր մոլորութեան խաբէութեան։ «Եւ բաշխեաց զպարգևս և ետ որդւոց մարդկան». այս զի 'ի կատարած պենտեկոստէիցն բաշխեացն և ետ աշակերտացն։ Իսկ այն որ ելն զի՞նչ է[1], ասէ. այլ մարմինն՝ որ էջ 'ի ձեռն մահուն 'ի դժոխս, զի նա ինքն է ստորին կողմն երկրի։ Այս որ էջս՝ նոյն է, և որ ելն 'ի վերոյ քան զամենայն երկինս, այս ինքն 'ի վերոյ քան զամենայն բարձրութիւն երկնից. զի կատարեսցէ զամենայն զոր ասաց, այն է զի ասէ. զոր ընդունիք դուք ոչ եթէ յետ աւուրց բազմաց, այլ մինչև 'ի պենտեկոստէ։

Եւ նա, ասէ, ետ զոմանս առաքեալս, երկոտասանս և իւթանասուն և երկուս. և զոմանս մարգարէս, ասօղք որ ինչ լինելոցն էր առ յապա, որպէս Ագայն զի մարգարէացաւ վասն սովոյն՝ որ լինելոցն էր ընդ ամենայն երկիր. և զոմանս աւետարանիչս, այս ինքն քարոզիչս. և զոմանս հովիւս վասն առաջնորդութեան խաժամուժ մարդկան. և զոմանս վարդապետս՝ ուսուցանել զմիտս հաւատացելոց։ Այս ամենայն գործ պաշտամանն տուան 'ի շինուած մարմնոյն Քրիստոսի, զի նա ինքն է եկեղեցի Քրիստոսի. մինչև եկեսցուք հասցուք և մեք ամենեքին 'ի միաբանութիւն հաւատոց, այս ինքն զի միաբանիցեմք հաւատովք և տիրութեամբն Աստուծոյ՝ յայր, ասէ, կատարեալ 'ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի. այս ինքն եղիցուք նմանողք Քրիստոսի, զի կատարեսցի 'ի ձեռն նորա չափ հասակի ներքին մարդոյն մերոյ։

Արդ որովհետև տէր մեր եդև մեզ նշան կատարման, մի եղիցուք իբրև տղայք 'ի միտս մեր խռովեալք և տատանեալք և դանդաչեալք ամենայն հողմաւ 'ի ճշմարիտ ուսմանէ անտի Աստուծոյ՝ յուսմունս սուտ մարդկան, այնոքիկ՝ որ խորամանկութեամբն իւրեանց խորհրին գայթագղեցուցանել զձեզ 'ի ձեռն խաբէութեան մոլորութեան։ Այլ եղիցուք հաստատեալք և ստու-

1 Յօրինակին պակաս զի՞նչ է։

գտալք սիրովն Քրիստոսի. ահա այնուհետեւ հաստատիմք մեք վարդապետութեան Քրիստոսի: Արդ սովին իսկ այսու սիրով աճեսցուք մեք, եւ առաւել լիցուք. եւ Քրիստոս՝ որ նա ինքն է գլուխ եւ կատարիչ ամենայնի, նա յօդէ եւ հաստատէ զմարմին եկեղեցւոյ յամենայն ճաշակս եւ յամենայն յօդս ըստ պարգեւացն զօրութեան չափոյն իւրաքանչիւր կողմն. այս ինքն ինքեանքն պարգեւք Հոգւոյն իբր անդամք են՝ որ լինին յաճումն մարմնոյ եկեղեցւոյ, զի սիրով կատարիցի շինուած նորա. այս զի կարօտութիւն նոցա որ միմեամբք՝ որ լինի, սէր մեծ սերմանէ 'ի մէջ միմեանց:

Մի՛ այսուհետեւ գնայք դուք որպէս եւ հեթանոսք 'ի կուրութիւն մտաց իւրեանց. այս ինքն զի ցարդ չեւ եւս է ծագեալ լոյս 'ի միտս նոցա նոր կտակարանացն: Ոչ եթէ այսու կուրութեամբ գտիք դուք զՔրիստոս: Արդ եթէ արդարեւ լուարուք դուք այնմիկ որ ինչ քարոզեցաւ 'ի ձեզ՝ թէ որպէս է ճշմարտութիւն 'ի ձեռն Յիսուսի, այս ինքն որպէս կատարեցաւ ճշմարտութիւն 'ի ձեռն Յիսուսի, նոյնպէս մերկացարուք դուք զհին մարդն՝ որ ապականելացն է. այս ինքն զի հարկանի եւ մաշի ցանկութեամբք մոլորութեան: Եւ նորոգեցարուք դուք 'ի հոգի մտաց ձերոց. այս ինքն 'ի խորհուրդս ձեր: Եւ զգեցարուք դուք, ոչ զմարդն հին՝ որ յօդի եւ յառնէ 'ի գործոց չարաց, այլ զմարդն նոր՝ որ ըստ աստուածութեան ստեղծեալ է արդարութեամբ եւ սրբութեամբ եւ ճշմարտութեամբ. այս ինքն գործովք արդարութեան եւ քաւութեամբք մկրտութեան: Եթէ բարկանայք, սակայն մի՛ մեղանչէք. զի կոխան առնէք դուք զպատուիրան այնորիկ՝ որ եւթն իւթանասնեկին հրամայեաց զմիմեանց թողուլ: Արդ մարդ ոք՝ որ չորեքարիւր եւ իննսուն հրամայեցաւ մեզ թողուլ 'ի միում աւուր, տեսէք զգոյշ կացէք՝ մի՛ մտցէ արեգակն եւ թողուցու մեզ զյանցանս աւուրն. զի թէ գայ խաւարն եւ հասանէ յանցանացն, տիրէ մեզ այնուհետեւ եւ թշնամին. եւ նորա հոգւովն եւ յատակ աղօթից անտի գիշերոյ զոր կամք յաղօթս՝ զրկէ եւ յետնեալս առնէ զմեզ: Եւ գուցէ 'ի ձեռն չարաչար խորհրդոցն եւս տրտմեցուցանիցէք զՀոգին սուրբ, որով մկրտեցարուքն դուք յօրն փրկութեան ձերոյ եւ քաւութեան ձերոյ:

## ԳԼՈՒԽ Ե

ԵՂԵՐՈՒՔ դուք նմանողք այ̃ · այս ինքն ողորմութե̃ն այ̃ ։ Զի ամենայն մարդ՝ որ պոռնիկ և պիղծ և ագահ է, և ձեռն յանձին հարեալ իցէ՝ ասէ եթէ ես կռոց երկիր ոչ պագանիցեմ, այնպիսին կռապաշտ իսկ է ։ Եւ զոր օրինակ կռապաշտին՝ չիք և ոչ այնպիսոյն ժառանգութի̃ յարքայութե̃ Քրիստոսի · զի ոչ կարէ մինն առանձինն կեցուցանել զնա առանց ընկերաց իւրոց ։ Մի՛ ոք զձեզ խաբեսցէ բանիւք սնոտիւք և ասիցէ՝ թէ ոչ պահանջին և ոչ խնդրին գործք ցանկութե̃ և ագահութե̃ · զի վասն այսորիկ իսկ գործոց եկն բարկութի̃ այ̃ 'ի վերայ ազգին տանն Նոյի և Ղովտայ ։ Մի՛ լինիք դուք նոցա հաղորդք գործովք · դուցէ լինիցիք բաժանորդք և հարուածոցն նոցա ։ Զի եթէ յայնմ ժամանակի զի էիք դուք խաւար՝ գործեցէք դուք զգործս նոցա, այսօր պարտ է հրաժարել յայնցանէ, քանզի եղերուք դուք լոյս 'ի տէր · արդ իբրև որդիք լուսոյ զպտուղ լուսոյ, զի են նոքա արդարութիք և ճշմարտութիք, գործեցէք ։ Եւ մի՛ բաժանորդք լինիք գործոց խաւարի, այս ինքն այնոքիկ՝ որ գործեն զգործս խաւարի · զի պտուղ աւետեաց բարեաց չիք նոցա ։ Այլ որքան հեղեղիք դուք 'ի գործս նոցա, յանդիմանելով յանդիմանեսջիք դուք զայնոսիկ՝ որ զայնպիսիսն գնացսն գնայցեն ։ Քանզի որ 'ի ծածուկն ինչ գործի 'ի նոսա, նոյն իսկ յարենան ընդ որով մեղանչեն, վկայէ՝ եթէ աղտեղի է այն ինչ զոր գործեն նոքա՝ և խօսել զնա ։

Այլ ամենայն ինչ որ 'ի լուսոյ է, այս ինքն յորդւոց անտի լուսոյ, յանդիմանի · յայտ է եթէ եղև այնպիսին լոյս 'ի ձեռն որդւոցն լուսոյ, որ յանդիմանեցին զնա ։ Թերևս արդեւք զգործս բարիս կոչէ յանուն լուսոյ, և զգործս չարեաց յանուն խաւարի ։ Թէպէտ և գործին գործք չարեաց 'ի տուէ, և գործք բարիք 'ի գիշերի, սակայն Առաքեալ 'ի լոյս նմանող նոցունն ասաց՝ բայ գործին գործք լուսոյ, և 'ի խաւար կցորդ չարեաց ասաց՝ բայ գործին ամենայն չարիք ։

Վասն այսորիկ է ասացեալ. «Զարթիր որ ննջեսդ, և կանգնեաց 'ի մեռելոց, և լուսատու լիցի քեզ Քրիստոս»։ այս ինքն զարթիր 'ի քնոյ մեղաց, և կանգնեաց 'ի մեռելոց, այս ինքն 'ի մեռելոտի գործոց անտի, և լուսատու լիցի քեզ Քրիստոս վասն բարւոք և գեղեցիկ գործոց։ Խօսեցարուք 'ի միտս ձեր. այս ինքն 'ի միտս ձեր առանձինն։ Խօսեցարուք սաղմոսիւք. այն իսկ է զի ասէ. յերգս հոգևորս օրհնեցէք 'ի սիրտս ձեր զա̃ծ։

Կանայք արանց իւրեանց իբրև տեառն հնազանդեսցին, որպէս և եկեղեցին զի հնազանդի Քրիստոսի։ Զոր օրինակ սէրն եկեղեցւոյ սրտի է և ոչ երեսաց, սոյնպէս և կին սիրեսցէ զայր իւր. և զոր օրինակ եկեղեցւոյ այլ Քրիստոս ընդ Քրիստոսի չիք նորա, սոյնպէս և կնոջ այլ այր 'ի տեղ առնն իւրում մի եղիցի նորա։ Սոյնպէս արք սիրեսցեն զկանայս իւրեանց, որպէս և Քրիստոս սիրեաց զեկեղեցի իւր։ Զի թէ սիրեսցէ զնա և հոգաբարձ լինիցի նմա, ոչ կարէ փոխանակել զնա ընդ իրիք զայն ճշմարիտ սէրն։ Որպէս առ սուրբս ամուսնութ̃ին, զնա արար Առաքեալ 'ի խորհուրդս Քրիստոսի և եկեղեցւոյ իւրոյ. այս ինքն զի այս սէր յատակ՝ որ յԱդամայ մինչև 'ի տէր մեր կարգէր և գայր, խորհուրդ էր կատարեալ սիրոյ տեառն մերոյ։ Զի նովաւ թող եկեղեցի զկուռս և զստացուածս ըստ նմանութե̃ հօր և մօր. և Քրիստոս իսկ թող զՀայր 'ի բարձունս և զմայր 'ի խորս, և մեռաւ վասն եկեղեցւոյ իւրոյ. զի զեկեղեցի զոր սիրեաց մահուամբ իւրով, կեցուսցէ զնա, և վերացուսցէ հանցէ զնա յարքայութի̃ անդ իւր։

## ԳԼՈՒԽ Զ

ՄՑՆ զայս զի ասաց Առաքեալ վասն կանանց և արանց և որդւոց և հարց և ծառայից և տերանց, քանզի հեբրայեցիքն զրպարտէին զնա այսոքիմբք, և ոմանք 'ի հեթանոսաց, թերևս և եփեսացիքն զըրպարտէին զնա այսուիկ. գրեաց զայս առ եփեսացիսն, զի պատասխանի արասցէ վասն անձին իւրոյ, զի ա-

ուսանել քան զժողովրդեանն և հեթանոսաց նմա փոյթ էր վասն այսորիկ. զի առանց նոցա նա և բընութիւն իսկ կարգել չէ հնար։ Յետ ասելոյ նորա այնոցիկ՝ որ զաշխարհ սիրէին, դարձաւ նա 'ի զօրացուցանել զայնոսիկ՝ որ յաշխարհէ աստի հրաժարել կամէին։ Եւ զի զգեցուցէ նոցա զէն աստուածութեան 'ի ձեռն հոգևոր գործոց իւրեանց, որպէս զի կարող լինիցին ընդդէմ կալ ոչ բռնութե՟ն նորա, այլ ընդդէմ ամենայն հնարից թշնամոյն, մարտ պատերազմի ձերոյ, ասէ, ոչ է ընդ մարմնոյ և ընդ արեան. այս ինքն ոչ ընդ մարդկան է մարտ պատերազմի ձերոյ։ Զի թէպէտ և 'ի ձեռն մարդկան չարեաց և հալածչաց, և 'ի ձեռն բարեկամաց մարտնչի ընդ ձեզ թըշնամին, մարտ պատերազմի ձերոյ, ասէ, ընդ իշխանութիւս և ընդ պետութիւս է, և ընդ աշխարհակալս աշխարհիս խաւարիս այսորիկ, և ընդ այսս պղծութե՟ օդոյս երկնիս այսորիկ։

Այլ 'ի միտ առ դու. զի ոչ ասաց մարտ պատերազմի նոցա, այլ մարտ պատերազմի ձերոյ։ Արդ ոչ եթէ նա մարտնչի ընդ ձեզ, այլ մեք ընդ նմա։ Թէպէտ և պատրանք իցեն նորա, սակայն զօրութի՟ չիք նորա. և եթէ և զօրութի՟ իցէ նորա, ոչ է նմա տըւեալ առնել ընդ մեզ մարտ պատերազմի զօրութե՟, այլ հնարիւք մեքենայից։ Զի զոր օրինակ մարտեաւ առ Ադամ և առ Եւայ ոչ զօրութե՟, այլ պէսպէս հնարիւք խորհրդոյ, և ոչ խիստ և բուռն բարբառով, այլ պատրանօք, այսպէս մերձեցաւ և մերձենայ առ ամենայն մարդիկ. բայց յայնմանէ ևեթ՝ եթէ ժտիցի և խնդրիցէ իշխանութի՟ յ՟այ, և տացի նմա հրաման համարձակութե՟ 'ի տեղիս տեղիս. որպէս խնդրեաց և առ նա հրաման 'ի վերայ Յովբայ։ Զի եթէ բռնութի՟ ինչ ոչ խնդրէ իւր, հաճելով հաւանութե՟ և պատրանօք մերձենայ առ որդիս Ադամայ և Եւայի, որպէս առ Ադամն և առ Եւայ։ Զի թէպէտ և ինքն թշնամին պատրանօք մերձենայ առ մեզ և 'ի խաղով, սակայն մեք մարտիւ և պատերազմաւ որպէս և ըստ կարի մերում՝ այս ինքն վաստակովք պահոց և աղօթից՝ կարեմք մեք զերծանել 'ի մեքենաւոր հնարից և 'ի խաղից պատրանաց չարին։

Իսկ զի կոչեաց զնոսա վերագոյն իշխանս յերկինս, զի արասցէ որոշումն 'ի մէջ իշխանաց և իշխանաց. այս ինքն 'ի մէջ մարմնաւորաց իշխանացն, և հոգեւոր։ Այլ որպէս յորժամ ասէ Դաւիթ. «Ի նմա բնակեսցեն ամենայն թռչունք երկնից», թռչունս օդոց լսեմք մեք, և ոչ երկնից։ Սոյնպէս յորժամ ասէ՝ իշխանք երկնից, իշխանս օդոց լսեմք մեք, և ոչ եթէ իշխանք երկնից։ Աշխարհակալս դարձեալ զի կոչեաց զնոսա, վասն իշխանութեան նոցա՝ որ տարածեալ է ընդ ամենայն աշխարհ պատրել և յանցուցանել զմարդիկ, որ են ընդ ամենայն տիեզերս։ Այսս դարձեալ խաւարինս 'ի ներքոյ երկնիս՝ զի ասաց, զի ցուցցէ եթէ 'ի ծածուկ և 'ի խաւարի գործին գործք խաւարի զոր ուսուցանէ։ Եւ 'ի ներքոյ երկնի՝ զի ասաց, զի յայտ արասցէ եթէ 'ի ներքոյ երկնից է բնակութիւն նորա, և ոչ 'ի վերոյ քան զերկինս. և 'ի մէջ մարդկան գործին և պաշտին չարիք նոցա, և ոչ եթէ 'ի մէջ հրեղէն և հոգեղէն զուարթնոցն. որպէս և աղանդք հերձուածոց ասեն։ Եւ ընդ այսս պղծութեան՝ որ զի ասաց, այնոքիկ են՝ որ համարձակին մտանել 'ի մարդիկ. որպէս և 'ի Մարիամն Մագդաղենացի, և յայլն յայնմիկ՝ որ զանձինն իւր քարամբք կոծէր։

Վասն այսորիկ, ասէ, վառեցարուք պահօք և աղօթիւք և տքնութեամբ, զի կարող լինիք դուք ունել ըդտեղի, և կալ ընդդէմ նոցա յաւուր չարի. այս ինքն յաւուրն յորում յառնէ ընդդէմ մեր 'ի ցանկութեանց անտի. զի յաղթեմք մեք նոքօք։ Եւ ամենայնիւ պատրաստեցարուք. այս ինքն ճշմարտութեամբ և արդարութեամբ։ Զի 'ի ձեռս նոցա և ընկերաց իւրեանց կարող լինիջիք շիջուցանել զնետս մուխս չարին հրեղէնս. այս ինքն զխորհուրդս կիզիչս թշնամոյն։ Ամենայն աղօթիւք և ամենայն խնդրուածովք աղօթս առնիցէք վասն այսոցիկ. ոչ վասն անձանց ձերոց միայն, այլ և վասն ամենայն սրբոց։ Եւ 'ի վերայ իմ աղօթս առնիջիք, զի տացի ինձ բանք 'ի բանալ բերանոյ իմոյ, այս ինքն իբրև հեռի իցէ յինէն երկիւղ և ամօթ, համարձակութեամբ ցուցանել զխորհուրդ զայն՝ վասն որոյ եմ պատգամաւորիմ, ոչ պատուով ինչ կամ պարգևօք, այլ կապանօք և շղթայիւք։

Ուլ զի և ձեզ յայտ լիցի վասն իմ զինչ գործեմ, ահա աւասիկ ես առաքեցի զՏիւքիկոս. զի ձեզ ցուցցէ՝ որ ինչ առ մեզ է, և մեզ պատմեսցէ՝ որ ինչ առ ձեզդ է. և մխիթարեսցէ զսիրտս ձեր 'ի տրտմութենէ անտի զոր զգեցեալ էք. այս ինքն քաղցրութեան մերոյ և խրախութեան զոր խնդամք մեք ընդ նեղութիս մեր: Շնորհք ընդ ամենեսին՝ ոյք սիրեն զտէր մեր Յիսուս Քրիստոս առանց ապականութեան. այս ինքն առանց գործոց ապականութեան:

ԱՌ

# ՓԻՂԻՊՊԷՑԻՍ

ՀԱԼԱԾԱՆՔ մեծ յարեան ՚ի վերայ Պաւղոսի ՚ի քաղաքի անդ փիղիպպեցւոց. և նեղեցան ընդ նմա և փիղիպպեցիքն։ Եւ իբրև գնաց անտի Պաւղոս, դարձեալ միւսանգամ նորոգեցան հալածանքն ՚ի վերայ փիղիպպեցւոցն։ Այլ իբրև լուաւ Պաւղոս վասն նեղութեանցն նոցա՝ որ էր ՚ի հալածչաց անտի, և վասն եղբայրեցւոցն՝ որ հալածէին և հաւատացուցանէին զնոսա թլփատել և պարհել զպահպանութիւն օրինացն, եթող նա զհոգս նեղութեանն մեծի՝ որ պատեալ պաշարեալ էին զնա ՚ի Հռոմ քաղաքի. և ՚ի վերայ այնոցիկ և վասն այսոցիկ առ փիղիպպեցիսն ՚ի Հռոմ քաղաքէ գրեաց, յասելն իւրում այսպէս։

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ և Տիմոթէոս ծառայք Յիսուսի Քրիստոսի։ Զի թէպէտ և ՚ի թղթի որ զկնի այսր թղթոյ է, զՏիմոթէոս եղբայր ՚ի սկիզբն թղթոյ իւրոյ գրեաց, այլ աստ և զանուն իսկ առաքելութեան ՚ի բաց առ յիւրմէ. զի միով ծառայութեամբն զոր սփռեաց նա ՚ի վերայ երկոցունց, մի միաբանութիւն է. ՚ի վերայ երկոցունց սփռեցի։ Ամենեցունց, ասէ, սրբոց՝ որ են ՚ի կողմանս փիղիպպեցւոց, և առ երիցունս և առ պաշտօնեայս, սարկաւագունս՝ առաջնորդս նոցա, շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ՝ որ կոչեաց զմեզ իւր յորդեգրութիւն. և ՚ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, և ոչ ՚ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Գոհանամ զԱստուծոյ իմոյ յամենայն յիշատակս ձեր, որ է հանապազօր. այս ինքն վասն յի-

շատակաց բարեաց նեղութե̃ցն զոր համբերէք դուք։ Թերեւս վասն բարեացն զոր արարեալ էր նոցա Առաքելոյ 'ի ժամանակի իւրեւ հալածեցաւ նա, յամենայն ժամու 'ի մտի ունէր եւ յիշէր։ Զի թէպէտ ամենայն աղօթիւք եւ խնդրուածովք վասն ընդարձակելոյ ձեզ 'ի նեղուե̃ց այտի ձերոց աղօթս առնեմ ես, սակայն խնդրութբ̃ աղաչեմ վասն հաւասարութե̃ հաւատոյն ձերոց եւ վասն աւետարանին, այն զի նոքօք հաստատեալ էք դուք յորէ յառաջնմէ մինչեւ ցայսօր ժամանակի. զի ամենայն նեղութի̃ք որ անցին 'ի վերայ մեր, դուք ոչ նուաղեցարուք։ Զայս հաստատեալ եմ եւ գիտեմ՝ եթէ որ սկսաւ 'ի ձեզ զայս զգործս բարեաց՝ որովք առաքինանայք դուք այսօր, զնոյն կատարեսցէ 'ի ձեզ մինչեւ յօրն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. զի 'ի նմա յաշխարհէ աստի ժողովիք դուք։ Այսպէս իսկ արժան է ինձ խորհել զայն ինչ՝ որ ձեզ լինելոց է։ Քանզի 'ի սրտի իմում ունիմ զձեզ ամենեսին, զի եղերուք դուք 'ի ձեռն շնորհաց՝ որ զօրացուցին զձեզ, կցորդք եւ հաւասարորդք ամացն իմոց 'ի ժամանակի՝ զի եդեալ էի ես տալ պատասխանի 'ի քաղաքին ձերում վասն հաւասարութե̃ ճշմարտութե̃ աւետարանին։ Վկայ է ինձ ա̃ծ, որպէս անձկացեալ եմ ես առ ձեզ, եւ սիրեմ զձեզ յայնմ ժամանակէ հետէ։ Եւ այսպէս կամ յաղօթս եւ աղաչեմ, զի սէրն ձեր եւս քան զեւս յաւելցի եւ բազմասցի, ոչ առանց իմաստութե̃ [1], այլ հոգեւոր ամենայն իմաստութբ̃. զի նորին գիտուն սիրովն գիտասջիք որոշել եւ ընտրել՝ ինչ որ լաւն իցէ. եւ եղիջիք դուք որպէս եւ այժմդ՝ հաստատեալք եւ ստուգեալք առանց գայթագղութե̃ յաւուրն դատաստանի Քրիստոսի. եւ լի իցէք՝ ոչ երկրաւոր պտղովն կամ օրինաւոր, այլ պտղով արդարութբ̃, զայն զոր գործեցէքն դուք 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի 'ի գովեստն փառացն ա̃յ։

Կամիմ եթէ գիտունք իցէք, եղբարք, եթէ մեք 'ի նեղութի̃ս մեր առաւելով առաւելումք՝ եթէ որ ինչ վասն մեր ինչ իրք էին, եւս քան զեւս յառաջա-

1 Յօրինակին իմաստութե̃, եւ։

գէմ եղև աւետարանին ա՟յ․ այս՝ զի չարչարանք իմ և նեղութիք իմ աճեն և զարգանան ընդ աւետիսն աւետարանին․ մինչև զկապանս իմ յայտնի առնել 'ի Քրիստոս 'ի սքանչելի և 'ի մեծ հրապարակ հռովմայեցւոց, և երևեցան յայտնեցան յանդիման ամենայն աշխարհի։ Զի և բազումեղբարք՝ որ 'ի տէր էին, յուսացան 'ի կապանս իմ․ այս ինքն զօրացան և քաջալերեցան 'ի տեսլենէ անտի կապանաց իմոց, և 'ի քաջալերութե՟ն իմոյ համարձակեցան և արհամարհեցին զմահ, և յահագին յահաւոր քաղաքի անդ առանց երկիւղի քարոզեցին նոքա զբանն ա՟յ։ Այլ քանզի տեսին ոմանք յօտարաց անտի եթէ սիրեցան և պատուեցան աւետարանիչք բանին, ոմանք 'ի նոցանէն վասն նախանձու, և այլք վասն հակառակութե՟ եղեն և նոքա քարոզիչք բանին զոր ոչն կամէին երբեմն․ և ոմանք մտադիւրութե՟ զՔրիստոս քարոզեն, և ոմանք վասն սիրոյ մերոյ․ զի գիտեն՝ եթէ այսմ իսկ պահակ եմք, զի պատասխանի մարթասցեն տալ աւետարանին․ և ոմանք վասն հակառակութե՟ մերոյ զՔրիստոս քարոզեն, այլ ոչ սրբութե՟․ զի բանս ինչ խառնեսցեն նոքա ընդ քարոզութիւնն իւրեանց, և խառնելովն իւրեանց արասցեն նեղութի՟ կապանացն իմոց։ Այլ ես և վասն այնոցիկ իսկ որ կարծեն եթէ տրտմեցուցանեն զիս, խնդամ և ուրախ եմ․ զի տեսի ես՝ եթէ պատճառանօք և եթէ ճշմարտութեամբ Քրիստոս քարոզի։

Նու գիտեմ ես, այս ինքն յուսացեալ եմ, եթէ այս պարհի ինձ 'ի կեանս փրկութե՟․ փոխանակ զի ուրախ եղէ ես ընդ այնոսիկ՝ որ վասն յաւելուածութե՟ն նեղութե՟ կապանացն իմոց զՔրիստոս քարոզեն․ թէպէտ և ոչ սրբութե՟ քարոզեն զնա։ Զի ես սպասեալ ակն ունիմ յուսով իմով, եթէ մինչև 'ի վախճան ոչ իւիք ոչ ամաչեցից վասն կապանաց իմոց։ Այլ որպէս յամենայն ժամ, այս ինքն որպէս յամենայն նեղութիւս իմ, և յայսմ ևս նեղութե՟ իմում համարձակութե՟ բարձրասցի Քրիստոս 'ի մարմնի իմում, եթէ մահու իմով յորժամ սպանանեն զիս, և եթէ կենօք իմովք յորժամ չարչարեն զիս․ զի կեանք իմ ոչ եթէ այս են մարմնոյս՝ որ հային թշնամիք իմ յափշտակել յինէն,

այլ կեանք իմ Քրիստոս է, այն որ ոչ կարեն մեկնել զիս 'ի նմանէ։ Եւ եթէ մեռանիմ, սակայն օգուտ է ինձ մահն իմ. քանզի վասն Քրիստոսի մեռանիմ ես։ Եւ եթէ և այս կեանք ես մարմնոյս պտուղ հոգւոյ գոյ ինձ 'ի ձեռս գործոց իմոց, և արդ զի՞նչ ընտրելի է ինձ յերկոցունց՝ զայն ես ոչ գիտեմ։ Լուծանել 'ի մարմնոյ աստի վասն Քրիստոսի ցանկացեալ եմ, զի խառնեցայց ես 'ի գունդն Քրիստոսի. և զայս առաւել ես լաւ համարիմ վասն քաջալերութե ձերոյ, զի 'ի հանապազորդ չարչարանաց անտի անխայեալ լինէի ես և ընդ Քրիստոսի հանապազ լինէի ես։ Նա և կեալ ես աստէն 'ի մարմնի աստ լաւ համարիմ վասն քաջալերութե ձերոյ։ Եւ զայս յուսացեալ եմ և գիտեմ, եթէ կացից և մնացից ամենեցունց ձեզ 'ի ձեր յառաջն գալ և զարգանալ և խրախ լինել 'ի հաւատս անդր. զի յորժամ դարձեալ միւսանգամ գայցեմ ես առ ձեզ, առաւել լինիցին ինձ այս պարծանքն՝ որ պարծիմ ես ձեւք 'ի Քրիստոս։ Մի՛ այսուհետև խրտխրտ ինչ լինիցիք 'ի թշնամեաց անտի. այն որ հանդէսն նոցա՝ այս իմքն կատարած՝ նոցա կորուստ է, և ձեր՝ կենաց և փրկութե յաւիտենից։ Ոչ եթէ 'ի մերս ձեր բազմազան նեղութիւնքն ձեր. զի 'ի ձեռն պարգևացն շնորհեցաւ ձեզ այս՝ ոչ միայն հաւատալ 'ի Յիսուս Քրիստոս, այլ և 'ի վերայ նորա չարչարանս ընդունել. զնոյն պատերազմ յանձին կալարուք, որպէս ինչ տեսիք յիս մինչ դեռ առ ձեզն էի, իբրև զայս՝ որ արդ լսէք դուք վասն իմ 'ի հեռաստանէ։

ԳԼՈՒԽ Բ

Արդ մի հպարտանայք դուք նեղութիւնքն ձերովք. և այն որ հալածեցաւն աւելի քան զընկերն իւր, մի բարձրասցի 'ի վերայ ընկերին իւրոյ. այլ հեզութե մտովք և քաղցր բարուք իւրաքանչիւր մարդ զընկեր իւր աւելի քան զինքն համարեսցի։ Եւ մի ոք զանձին իւրոյ միայն գործ վճարեսցէ 'ի ծածուկ կամ յայտնի, այլ և զընկերի իւրոյ։ Ցայսմիկ նմանողք լինիք դուք՝ այն որ կերպարանօքն նմա էր նա մինչև

զմարմինն զգեցեալ էր. և ոչ յափշտակութն̅ համա-
րեցաւ ունել զանձն իւր հաւասար այ̅, այլ զանձն իւր
յինքն ամփոփեաց. զի ծածկեաց նա զփառսն իւր, և
զկերպարանս ծառայի զգեցաւ: Այս զի որդի Դաւթի
արքայի ապտակս յանձն առ. որպէս և ծառայ՝ 'ի ժա-
մանակի իբրև եղև նա 'ի նմանութն̅ մարդկան 'ի կուսէ,
և ոչ 'ի զաւակէ առն. և 'ի կերպարանս մարդկան գը-
տաւ, այս ինքն յամենայն չարչարանս մարմնոյ բայց
'ի մեղաց նորին: Եւ խոնարհեցոյց զանձն իւր, այն որ
հաւասարն էր այ̅, մինչ 'ի հնազանդութն̅ մահու խաչի:
Վասն այսորիկ և ա̅ծ վերացոյց և բարձրացոյց զնա.
ոչ եթէ զայն որ ամփոփեաց զանձն իւր և խոնարհե-
ցոյց, այլ զմարմինն զայն որով խոնարհեցաւ նա. և
շնորհեաց նմա անուն՝ որ 'ի վեր է քան զամենայն ա-
նուն. այս ինքն զՅիսուսի: Ի՞ւ է նա 'ի վեր. այլ սոյն
իսկ յանուանս յայս Յիսուսի ամենայն ծունր կրկնես-
ցի, երկնաւորաց և երկրաւորաց և սանդարապե-
տականաց. այս ինքն մեռեալք և կենդանիք և հրեշ-
տակք: Եւ ամենայն լեզու խոստովան լիցի՝ թէ տէր է
Յիսուս Քրիստոս 'ի փառս այ̅ Հօր:

Արդ այսուհետև որպէս յամենայնի հնազանդե-
ցարուք դուք յայսմիկ, սոյնպէս և արդ մինչ հեռիս
եմ՝ առաւել պարտ և պատշաճ է, զի մի̅ յուսացեալ
ապաստան լինիջիք դուք 'ի նեղութիւդ զոր համբե-
րէք. այլ ահիւ և դողութ̅բ զկեանս ձեր ապրեցուս-
ջիք: Ոչ է ձեր այս՝ թէ հպարտանայցէք դուք սոքօք.
զի ա̅ծ է որ զօրացուցանէ զձեզ, ոչ միայն 'ի կամել,
այլ և զօրանալ 'ի գործս յայս՝ որ ինչ վասն կամաց
նորա է, այս ինքն վասն հանգստեան նորա: Զամե-
նայն ինչ գործեսջիք առանց տրտնջելոյ, որ ծնանի
'ի վեհերելոյ. և առանց երկմտութն̅, զի նա է պտուղ
լքեալ մտաց: Այլ եղիջիք դուք ամբիծք և անմեղք
և անարատք 'ի մէջ կամակոր և խեղաթիւր ազգիս
այսորիկ. զի այսու գործովք հանդերձ միամտութ̅բ
և անմեղութ̅բ երևիք դուք աշխարհի, որ սիրէ ըղ-
գործս խաւարի, որպէս լուսաւորք: Մանաւանդ թէ
զբան կենդանութն̅ ունիջիք յանձինս ձեր. այն զի նա
ինքն է պարծանք իմ յօրն տեառն մերոյ առաւել
քան զընթացս գնացից իմոց. զի երևեցայց ես 'ի ձեռն

հաստուցման նորա, զի ոչ զուր ինչ ընթացայ և ոչ ընդունայն ինչ վաստակեցի։ Այլ թէպէտ և պատարագիմ ես յուխտս պատարագաց վասն պաշտաման հաւատոց ձերոց, խնդամ ես և ուրախ եմ ընդ ձեզ ամենեսին՝ թէ այսմ արժանի լինիք։ Նա և դուք նոյնպէս խնդասջիք յորժամ չարչարիք. և ընդ իս ուրախ լերուք յորժամ այս գործք գործին յիս։

Այլ ահա աւասիկ առաքեմ ես զՏիմոթէոս, զի եկեսցէ և պատմեսցէ ինձ զամենայն իրս ձեր. այս ինքն զի եթէ համբերէք և ժուժկալ լերուք 'ի նեղութիս ձեր. զի եղիցին ինձ առ 'ի ձէնջ աւետիք բարեաց սրտի դեւր։ Զի այլ ոչ ոք գոյ ինձ սրտի մտաւք՝ որ գթայ ընտանեբար վասն ձեր. զի ամենեքին զիւրաքանչիւր խնդրեն, և ոչ զայն ինչ՝ որ Յիսուսի Քրիստոսի իցէ. այս ինքն եթէ փոխանակ զի մեռցին նոքա փոխանակ մարդկան հոգաբարձութե̃՝ որ լինի նոցա վասն մարդկան, զանձինս և եթ միայն խնդրեն ստանալ։ Իսկ սա որպէս որդի հօր, այս ինքն որպէս և պատուէ և պահէ որդի զկեանս հօր իւրոյ, այսպէս ծառայեաց ինձ յաւետարանի աստ իմում. զի յամենայն տեղիս ուր և հալածեցան, և ոչ թոյլ ետ ինձ հալածումին որ յարուցեալ էր իմ երթալ զօրացուցանել զնոսա, զսա առաքեցի ես յամենայն քաղաքս վասն քաջալերութե̃ հալածելոցն. զի յամենայն քաղաքս հալածեալ էին։ Արդ զսա առաքեմ ես առ ձեզ, յորժամ զանձնէ ինչ մարթացից ստուգել. այս ինքն յորժամ տեսից զինչ անցք անցանիցեն ընդ իս։ Այլ ես յուսացեալ եմ 'ի տէր՝ եթէ և ես ինձէն եկից առ ձեզ։ Այլ քանզի ոչ զիս թողու բռնութի̃, և ոչ զՏիմոթէոս թողու արժանն, հարկ եղև ինձ առաքել առ ձեզ զԵպափրոդիտոս զեղբայր և զգործակից իմ յաւետարանի. բայց ձեր Առաքեալ է նա առ յինէն և պաշտօնեայ այսր պիտոյից. զի վասն սոցին իսկ առաքեցի զնա առ ձեզ։ Զի սա վասն գործոյն տեառն մինչ 'ի մահ մատնեաց զանձն իւր։ Ո՞ր են գործք Քրիստոսի. այլ այն են, զի համարձակեցաւն նա, և արհամարհեաց զմահ վասն կապանաց իմոց, զի նա միայն առանձինն լցցէ ինձ պաշտամամբ զպակասութիւն բազմաց՝ որ թողին զիս և գնացին։

## ԳԼՈՒԽ Գ

Յետ այսորիկ իբրև քաջալերեաց և զօրացոյց ըզ-
նոսա ժուժկալ լինել նեղութե̃նն մեծի հալածչացն, դարձաւ նա զգուշացուցանել զնոսա և վասն չար վարդապետութեանն հեբրայեցւոց։ Ոչ, ասէ, դանդաղիմ ես գրել առ ձեզ՝ որ ինչ ձեզ զգուշալի է, և զգուշանալ ձեզ յայնցանէ՝ որ հանապազօր գան խռովեցուցանեն զձեզ։ Զգոյշ լերուք 'ի շանց անտի, զի նոքա են մշակք նենգաւորք՝ որ զթլփատութի̃ քարոզեն ձեզ. զի թլփատութի̃ մեք իսկ եմք, որ Հոգւոյն այ̃ պաշտօնեայք կարգեալ եմք. այս ինքն հոգևոր գնացիւք։ Եւ պարծիմք մեք 'ի Քրիստոս՝ որ գթացաւ 'ի մեզ, և ոչ եթէ գործովք մերովք՝ որ արդարացուցին զմեզ։ Եւ ոչ էաք մեք պանձացեալ 'ի մարմինս մեր որպէս և նոքայն. այս ինքն ոչ 'ի գործս օրինաց,'և ոչ 'ի թլփատութի̃ պանձացեալ եմք մեք ըստ նմանութե̃ն նոցա։ Զի եթէ յայս ապաստան ինչ էին իրքս այս, այս ինքն թլփատութի̃ կամ ազգատոհմ, առաւել քան զնոսա ես յուսացեալ պանծայի 'ի նոսա։ Թլփատեալ եմ ես ութօրեայ ըստ օրինաց յազգէ իսրայելեան, 'ի գնդէ Բենիամենի. չեմ օտար և պանդուխտ, այլ հեբրայեցի 'ի հեբրայեցւոց, և ըստ օրինաց փարիսացի. ըստ նախանձայոյզ լինելոյ վասն հնոյն՝ հալածեալ է իմ զաւետարանիչս նորոյն. և ըստ արդարութե̃ն որ քարոզէր յօրէնսն՝ լեալ եմ ես անբիծ և անարատ։

Այլ այս զի շահ և օգուտ է ինձ անդ, վասն Քրիստոսի որ յայտնեցաւ ինձ 'ի ճանապարհի անդ՝ վնաս և պակասութի̃ համարեցայց զնոսա. և մինչև յայսօր ժամանակի համարիմ զնոսա վնաս և պակասութի վասն առաւելութե̃ գիտութե̃ Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ, այն որ վասն նորա զոր միանգամ ստացեալ ունէի յօրէնսն՝ յամենայնէ զրկեցայ. և իբրև զխուիւ և իբրև զկղկղանս այսպէս համարեցայց զնոսա, զի զՔրիստոս միայն շահեցայց։ Եւ գտայց ես 'ի նմա, իբր ոչ թէ իցէ յիս արդարութի̃ անձին իմոյ,

այն որ յօրինաց անտի էր՝ որով պարծիմն որ զձեզն ուսուցանեմն թլփատել, այլ գտայց ես յարդարութիւն հաւատոցն Քրիստոսի՝ որ յԱյն է։ Զի սովին այսու ճշմարիտ գիտութեամբ ծանեայ ես զՅիսուս և զմեծ զօրութիւն յարութեան նորա. և հաղորդ գտայց ես չարչարանացն նորա, այս որ շուրջս պատեալ պաշարեալ պահեն զիս. և կցորդ լինել կերպարանաց մահուն նորա, այս որ յարուցեալս է 'ի վերայ մեր, զի թերևս կարացից հասանել 'ի ձեռն այսոցիկ յարութիւն որ 'ի մեռելոց յարութիւն է։ Զի ոչ եթէ իբրև հեռի են աւետիքն՝ արդէն առեալ է իմ, կամ ոչ արդէն առեալ է իմ՝ որ ոչ արժան է մարդոյ առնուլ. ոչ եթէ արդէն 'ի ձեռն այսր ընթացից իմոց կատարեալ իցեմ ես, այլ 'ի ձեռն հալածանաց և այլոց իրաց զհետ մտեալ եմ ես ստէպ, ակն ունիմ հասանելոյս աւետեաց աշխարհին նորոյ. այն որ վասն նոցա իսկ հաս 'ի վերայ իմ Յիսուս Քրիստոս։ Զի ոչ համարիմ ես զանձն իմ թէ հասեալ իցեմ. այս ինքն զի բաւական եղեն վաստակք իմ կենաց իմոց։ Բայց զայս ինչ մի ճշմարտեալ ունիմ յանձին իմում, զի որ ինչ զկնի է իմ, զայս լքեալ և մոռացեալ՝ այս ինքն ընդ գործս մարմնոյ որ ինչ յօրէնս՝ լքեալ և մոռացեալ, և որ ինչ առաջոյ կայ, 'ի ձեռն հոգևոր գնացից որ ըստ օրէ ձկտեալ և նկրտեալ եմ։ Եւ կորովութք կրշռեմ 'ի նպատակ անդր. այս ինքն յաւետիս անդր. զի առից ես զնոսա ամբիծ և անարատ յաղթութեամբ 'ի ձեռն վերին կոչմանն[1] որ կոչեաց զիս 'ի Ճանապարհի անդ Դամասկեայ։

Այսուհետև որ միանգամ կարծիցեն եթէ կատարեալք իցեմք, իբր ոչ էր պարտ և պատշաճ նոցա զայս կարծել, այլ որպէս խորհեցայ ես՝ խորհիցեն նոքա. և եթէ այլ ազգ ինչ ոք արտաքոյ քան զայս խորհեսցի, և զայս զի ասացի եթէ յոյժ օգուտ է ձեզ, սակայն և զայս յայտնեսցէ ձեզ Աստուած։ Բայց յոր սկսաք, այս ինքն 'ի գործս հոգւոյ զոր սկսաք, 'ի սմին կատարեսցուք. և ոչ եկեսցուք մեք 'ի գործս օրինաց։ Նմանող ինձ լինիջիք, զի թողի ես զնոսա, և

1 Յօրինակին կոչմանն ։

այլ ոչ դարձայ 'ի նոսա . և ոչ ինձ միայն նմանող լինիջիք, այլ ամենեցուն որ այնպէս գնայցեն . այս ինքն ըստ նմանութե առակիդ մերոյ զոր ունիք դուք մինչև յայսօր ժամանակի : Զի են բազումք 'ի հեբրայեցւոց անտի՝ որ գնան ուսուցանել զայն զօրինացն, այն որ վասն որոց մինչ մերձն էի առ ձեզ՝ բազում անգամ ասացի ձեզ վասն նոցա . բայց արդ.և լալով իսկ ասեմ՝ եթէ հեբրայեցիք թշնամի են խաչին, և գտին նոքա իւրեանց այսու թշնամութե կատարած կորըստեան . որոց ա̃ծ զպորտն իւրեանց համարեալ է, այս զի վասն աւետեաց երկրաւորաց նոքա պաշտեցին զա̃ծ . և զփառսն իւրեանց ամօթոյն իւրեանց ծածկեալ ունէին . այս ինքն զի և նովին իսկ այնուիկ՝ որ վարձկան մտեալ պորտոյն իւրեանց, պարծէին նովաւ . որ զերկրաւորն եւեթ խորհին յանձինս իւրեանց, և զաւետիսն զերկրաւորս զօրինացն : Այլ մեր գործք՝ այս ինքն աւետիք մեր՝ յերկինս են, ուստի ակն ունիմք տեսանելոյ ոչ զայն՝ որ ժառանգեցուցանէ զմեզ զերկիրն քանանացւոց, այլ զտէր մեր Յիսուս զկենդանարար մարմնոց մերոց . զի նա նորոգեսցէ յաւուրն յարութե մերոյ զմարմինս խոնարհութե մերոյ, այն որ լինի 'ի ներքս 'ի դժոխս հող քարշելի : Եւ նմանեցուցանէ զնա 'ի կերպարանս մարմնոյ փառացն իւրոց . այս ինքն կենացն անմահութե զոր ընկեցուցանէ նմա ըստ զօրութե հաստատութե իւրոյ, զի կարասցէ հնազանդեցուցանել զամենայն ընդ իւրև . այս ինքն ըստ կարողութե զօրութե իւրոյ զոր եցոյց առ մարմին անդ իւրում : Զի որպէս նորոգեցաւ մարմին նորա, սոյնպէս հնազանդեսցին նմա ամենայն մարդկան մարմին նորոգեալ :

## ԳԼՈՒԽ Դ

ԱՅԼ աղաչեմ զքեզ, Քենեսիս, հարազատ լծակից իմ . այս ինքն հալածական և ծեր իբրև զիս . զի եղիցես դու հաստատել զմիտս զԵւոդիայ և զՍնտիքեայ : Քանզի նոքա մարտեան և կցորդ եղեն պատերազմին իմոյ՝ որ յաւետարանի անդ էր . այս ինքն

'ի հալածանս անդր՝ որ յարեան 'ի վերայ իմ 'ի քաղաքի անդ ձերում 'ի ժամանակի իբրև պատասխանի տայի ես վասն աւետարանի ։ Եւ ոչ եթէ նոքա միայն կցորդ եղեն ինձ 'ի պատերազմին իմոյ, այլ և Կղեմէնտէ հանդերձ այլովք օգնականօք. որոց թէպէտ և զանուանս նոցա ես աստ ոչ գրեցի, զի բազումք էին, որ սակայն 'ի դպրութ̃ե կենաց գրեալ են ։ Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ 'ի նեղութ̃իս ձեր. և դարձեալ ասեմ՝ ուրախ լերուք 'ի ժամանակի չարչարանաց ձերոց ։ Եւ ընդ սոյն իսկ յայս յօժարութ̃ի փութոյ ձերոյ մի՛ ամաչեսջիք, այլ առաջի հալածչացն և առաջի ամենայն մարդկան յայտնի լիցի. զի տէր մեր որ տայ մեզ զօրութ̃ի, մերձ է ։ Մի՛ ինչ հոգայք և վհատիք, որպէս ասացն. այլ յամենայն ժամ աղօթիւք և խնդրուածովք գովութ̃ խնդրուածքն ձեր յայտնի լիցին առ ա̃ծ. այս ինքն եղիջիք համապազորդք ։ Զի որ ինչ ճշմարիտն է, որ ստոյգն է և որ ինչ խոնարհութ̃ն է՝ զոր ինչ ուսարուք 'ի մէնջ և տեսէքն 'ի մեզ, զայս խորհեցարուք և արարէք ։

Ուրախ եղէ ես յոյժ, զի և դուք զուարճացարուք հոգալ վասն պիտոյից իմոց և այժմ, որպէս հոգացիքն դուք յառաջագոյն. բայց բարբառեցարուք իմ̃ վասն յապաղիչ մոլորութ̃եցն՝ որ պատեալ էին զձեւք ։ Իբր ոչ եթէ առ կարօտութ̃ ինչ եղէ ես ուրախ, այլ և ոչ եթէ աւելի ինչ է զինև՝ ասեմ ես. զի ես ուսայ ինքնին՝ որով բաւական լինելոց եմ՝ յորս հաստատեալս կամ ես այսօր ։ Գիտեմ ես խոնարհել և կեալ նուազութ̃. և գիտեմ առաւելուլ, թէպէտ և չունիցիմք ինչ. և գիտեմ դարձեալ նուազել, թէպէտ և ունիցիմ ։ Յամենայնի խելամուտ եմ, և քաղցենալ առանց տրտնջելոյ, և յագենալ. զի մի՛ թագաւորեսցէ 'ի վերայ իմ սովորութ̃ի նորա ։ Յամենայնի հզօր եմ. այս ինքն այնուիկ՝ որ զօրացոյցն զիս ։ Բայց սակայն բարւոք արարէք, զի կցորդ եղերուք նեղութ̃են իմոյ յորժամ մերձ իցեմ և յորժամ հեռի իցեմ ։ Գիտէք դուք՝ զի ոչ մի ոք յեկեղեցեաց անտի հաւասարեաց ինձ յաղագս տալոյն և առնլոյ, զոր դուք հաղորդեցարուք ինձ ։ Այլ դուք ոչ միայն ըղկարօտութ̃ի մերձաւորութ̃ես մերոյ լցէք մեզ, այլ

*և 'ի Թեսաղոնիկէ միանգամ և երկիցս 'ի պէտս իմ ետուք բերել ինձ. զի ոչ եթէ խնդրեմ ես զտուրսն ձեր, այլ զպտուղ բարեաց՝ որ յաճախէ և բազմանայ 'ի ձեզ: Զամենայն ինչ ընկալայ ես. և իբրև լի եմ և յագեալ եմ, վասն սիրոյ ձերոյ առի ես զոր միանգամ ետուք բերել ինձ 'ի ձեռն Եպափրոդիտեայ 'ի հօտ անուշից: Եւ Ա̄ծ իմ լի արասցէ զամենայն պէտս ձեր. այս ինքն զծածկեալ յայտնելովք հանդերձ: Ողջոյն շատ առէք յամենայն սրբոց՝ որ 'ի սակաւ ժամանակի 'ի Հռոմ է, մանաւանդ որ 'ի տանէն Կեսարեայն են: Զի եթէ ներքինք[1] և ընտանիք Կեսարեայ աշակերտեցան, իսկ ո՞վ էր 'ի խաժամուժ մարդկանէ անտի՝ որ ոչ վաղվաղակի 'ի բանիցն Առաքելոյ լսէր և հաւատայր: Զի յառաջ քան զմեռանելն իւրում 'ի Կեսարեայ՝ քակեաց և բաժանեաց զտունն իւր 'ի Կեսարեայ. և մինչ չև սպանեալ էր զնա Հռոմայեցւոց՝ փութացաւ և կեցոյց նա զքաղուսն 'ի Հռովմայեցւոց:*

[1] Յօրինակին յօտար գրչէ ուղղագրեալ Ներքինիք:

ԱՌ

# ԿՈՂՈՍԱՑԻՍ

Կողոսացիք աշակերտեալ էին յեպափրոդիտեայ, այն որ 'ի նոցանէն իսկ էր։ Յետ վարդապետութե̃ սորին իսկ այսորիկ եկին ոմանք 'ի փիլիսոփայից անտի և հեբրայեցւոց դայթագղեցուցանել զնոսա։ Հեբրայեցիքն վասն պահպանութե̃ց օրինացն ստիպէին զնոսա. իսկ փիլիսոփայքն ասէին ընդ նոսա՝ եթէ 'ի կարգաց արարածոց եղև այս աշխարհ, և ոչ եթէ յոչընչէ, որպէս ոմանք ուսուցանեն ձեզ։ Այլ իբրև 'ի վերայ եհաս Պաւղոս և ուսաւ յեպափրոդիտեայ վասն երկոցունց, այս ինքն զի ընկալեալ էր նոցա զաւետարանն, և զի մշտնջենացան առ նոսա հեբրայեցիքն և հեթանոսք, առ գրել առ նոսա՝ յասել իւրում սկիզբն թղթոյ իւրոյ այսպէս։

## ԳԼՈՒԽ Ա

Պաւղոս առաքեալ Յիսուսի Քրիստոսի և Տիմոթէոս եղբայր։ Զանուն եղբօր ընդ Առաքելոյն գրեաց 'ի թղթի իւրում Պաւղոս, զի եղիցի առակ օրինակի քահանայից. զի թէպէտ և անուն երիցու վերագոյն է քան զեղբօր, սակայն գրեաց նա ընդ անուանս իւրեանց՝ որ խոնարհագոյն են քան զԱռաքելոյ։ Սրբոց, ասէ, և հաւատացելոց։ Սուրբս զկնքաւորսն կոչէ, և հաւատացեալս զերախայսն անուանէ։ Գոհանամ զա̃յ Հօրէ տեառն մերոյ. և ոչ եթէ զարարչէ և զհաստչէ տեառն մերոյ, 'ի կանխել աղօթից մերոց վասն ձեր։ Մանաւանդ յորժամ լուաք զհաւատսն ձեր ճշմարիտս 'ի տէր Յիսուս Քրիստոս, և զսէրն ձեր զմեծ՝ որ առ ամենայն սուրբս ունիք, այս ինքն առ

ամենայն աղքատս. մանաւանդ վասն յուսոյն որ յեր-
կինս ակն ունիմք՝ առնէք դուք զտուրսդ ձեր. այն
որ ոչ թէ այժմ լուարուք դուք, այլ յառաջագոյն։
Զի ոչ եթէ ձեզ միայն առանձինն ակնառութք կամ
իբրեւ վայրապար ինչ քարոզեցաւ, այլ քարոզեցաւ
ձեզ որպէս ամենայն աշխարհի, եւ որպէս եւ ընդ ա-
մենայն աշխարհ։ Եւ այսպէս աճէ աւետարանս այս,
եւ լինի պտղաբեր 'ի ձեզ յամենեսին։ Առաւել յա-
ճախեաց եւ բազմացաւ պտուղն ձեր 'ի ժամանակէ
յորմէ հետէ լուայք եւ տեսէք զշնորհսն այ ճշմար-
տութք. որպէս ուսարուք յԵպափրեայ սիրելւոյ ծա-
ռայակցէ մերմէ, որ է հաւատարիմ վասն ձեր պաշ-
տօնեայ Քրիստոսի. այս ինքն սորա վկայութք եւ բա-
րեխօսութք հաւատարիմ եղեւ ձեզ պաշտօնն Քրիս-
տոսի։ Զի նա պ'ատմեաց մեզ ոչ զսէրն ձեր մարմնա-
ւոր, այլ զսէրն ձեր հոգւոյ զոր ունիք դուք առ մեզ։
Վասն այսորիկ եւ մեք յորմէ հետէ լուաք՝ ոչ դա-
դարեմք վասն ձեր աղօթս առնել. զի կատարեալք
լինիջիք դուք այսու գիտութք, ամենայն իմաստութք
ոչ արարածոց՝ որպէս ոմանք ստիպեն զձեզ, այլ ա-
մենայն հոգեւոր հանճարով. եւ պտղաբերք եւ աճե-
ցունք լինիջիք դարձեալ ոչ երկրաւոր գիտութք, այլ
գիտութք այ։ Եւ ամ զօրութքք զօրասջիք. այս ինքն
զամենայն զօրութիս ինձ եւեթ հաւատոցն կարող
լինիջիք գործել ըստ առաջնորդութն՝ որ տուաւ 'ի
մէջ եկեղեցւոյ 'ի փառս այ. այս ինքն ամենայն համ-
բերութք հալածչաց եւ երկայնմտութք առ աւետիսն.
զի ուրախութք գոհասջիք յայնմ աւուր զՀօրէ, զի
արժանիս արար զձեզ մասին հասելոյ. այս ինքն ար-
քայութեն՝ որ աւետարանեցաւ սրբոց յաշխարհն
լուսոյ։ Եւ փրկեաց զձեզ յիշխանութէ անտի սատա-
նայի, որ է գայթագղեցուցիչ հոգւոցն, այն որ առա-
կեցաւ 'ի խաւար գայթագղեցուցիչ մարմնոյ. եւ փո-
խեաց զձեզ, այս ինքն 'ի գեհենէ անտի զոր պատրաս-
տեալ էր ձեւք սատանայի, երթալ ձեզ յարքայու-
թին, այն որ սէրն Որդւոյ նորա ետ ձեզ զնա։ Զի
նովաւ եղեւ մեզ փրկութի 'ի ձեռն խաչի նորա, եւ ա-
րեամբ նորա քաւութի թողութե մեղաց. այս ինքն
'ի ձեռն խորհրդոյ մկրտութե նորա։ Այն որ 'ի ձեռն

յայտնի գործովք իւրովք է կերպարան աներևութ-ա̃յ. և նա ինքն է անդրանիկ ամենայն արարածոց։ Վասն մարմնոյ ասաց, այն որ յառաջ քան զամենայն ինչ նա էր 'ի խորհուրդս այնորիկ՝ որ զգեցաւ զնա։ Եւ նա ինքն է գլուխ մարմնոյ եկեղեցւոյ աստ և անդ. և նա է սկիզբն յարութեան, անդրանիկ մեռելոց։ Զի զոր օրինակ ոչ էր նա անդրանիկ մեռելոց՝ արար զնա անդրանիկ յարութեան, նոյնպէս եւ երիցացոյց՝ արար զնա անդրանիկ արարածոց, իբրու նա 'ի դարու անդ Առաքելոյ ծնեալ էր։

Դարձեալ որպէս անարգեցաւ ա̃ծութի̃ նորա մարդկութք̃ իւրով, այսպէս պատուեաց զմարդկութի̃ն իւր ա̃ծութք̃ իւրով։ Ի նա, ասէ, հաստեցաւ, որ երևի և որ ոչ երևի. այս ինքն ամենայն որ եղև և որ լինելոցն է յերկոսին աշխարհս։ Եթէ աթոռք և եթէ տէրութիւնք. կամ վասն թագաւորութե̃ց երկրի ասաց, կամ վասն աթոռոց առաքելոցն ասաց։ Այլ տէրս զի կոչեաց զնոսա, վասն դատաւորութե̃ թագաւորաց՝ որ սպանանեն և կեցուցանեն իշխանութբ̃ք իւրեանց, որպէս և ա̃ծ. կամ վասն պատրաստեալ դատաստանին առաքելոցն՝ որ հրամայեն զազգատոհմն իւրեանց, որպէս և տեարք, 'ի հուրն յաւիտենից։ Եթէ պետութիւնք և եթէ իշխանութիւնք. այս վերանայ 'ի վերայ վերնոց և 'ի վերայ ներքնոց և 'ի վերայ զօրաց չարին։ Եւ նա ինքն է յառաջագոյն քան զամենայն. այն իսկ է զի ասէ. “Ի սկզբանէ էր Բան„։ Եւ նա ինքն է գլուխ մարմնոյ եկեղեցւոյ. այս զի նովաւ տնկեցաւ եկեղեցի յերկրի։ Եւ նա է անդրանիկ մեռելոց արդեամբք, այլ բանիւն իշխանութք̃. զի նա ինքն եղիցի ամենայնի յառաջագոյն։ Զի որպէս յառաջագոյն է նա քան զարարածս, յառաջագոյն է նա և քան զամենայն գործս ներքնոցս։ Եւ 'ի նա հաճեցաւ ամենայն լրութի̃ ա̃յ բնակել. կամ Հայր յՈրդի, կամ Որդի 'ի մարմին։ Եւ նովաւ հաշտեցուցանել. այս ինքն նովին մարմնով հաշտեցաւ ընդ մարդկան։ Եւ արար խաղաղութի̃ արեամբն իւրով 'ի ձեռն խաչին յանձն իւր՝ ինչ որ յերկինս, և ինչ որ յերկրի. այս ինքն 'ի մէջ վերնոցն և ներքնոց։ Եւ զձեզ որ երբեմն թշնամիք էիք ա̃յ չար գործովքն ձերովք, և արդ

աւասիկ հաճեցարուք դուք, ոչ երկնաւոր մարմնով, այլ յանդամս մարմնոյ նորա ։ Եւ մահուամբ իւրով կացոյց զձեզ առաջի իւր սուրբս և ամբիծս . այս զի քաւեցան նոքա 'ի լուանալ գրոցն, և կացին յանդիմանն նորա անարատք ։ Այս ինքն եթէ կացջիք մնացջիք դուք՝ 'ի հաւատս այդր ձեր՝ որ քաւեցինն զձեզ 'ի ձեռն ջուրցն մկրտութեան, և անշարժ իցէք դուք 'ի պատրանաց և 'ի հալածանաց, և ոչ շարժեսջիք դուք 'ի խոստացեալ յուսոյ անտի աւետարանին, այն որ քարոզեցաւ ընդ ամենայն տիեզերս . որոյ եղէ ես Պաւղոս պաշտօնեայ 'ի մէջ հեթանոսաց ։

Եւ ոչ ինչ տրտմիմ ես ընդ չարչարանս զոր կրեցի և կրեմ ։ Արդ խրախ եմ ես ընդ չարչարանսն զոր կրեցի վասն ձեր . զի լնում փութամ ես 'ի մարմինս իմ . այս ինքն զմթեր նեղութեան չարչարանացն Քրիստոսի ես կրեցից յանձն իմ վասն կենաց աշխարհի ։ Զի եթէ նզովս լինել 'ի Քրիստոսէ վասն կենաց խաչահանուացն կամէր, զյայտնի կեանսն մարմնոյ իւրոյ որչափ և ևս առաւել տայր նա վասն հեթանոսաց՝ վասն մարմնոյ նորա, զի նա ինքն է եկեղեցի ։ Այս ինքն փոխանակ մարմնոյն Քրիստոսի չարչարանօք մարմնոյ իմոյ կամիմ լնուլ զպակասութիւնս եկեղեցւոյ նորա . որոյ եղէ ես պաշտօնեայ, ոչ ըստ գործոց իմոց, այլ ըստ խորհրդոց առաջնորդութեան տնօրէնն, այն որ կոչեաց զիս 'ի ճանապարհէ անտի Դամասկեայ ։ Այն որ տուան ինձ 'ի ձեզ . այս ինքն զի 'ի ձեզ կատարեցից [1] զբանն Քրիստոսի ։ Զի խորհուրդս այս մարմնոյ և արեան՝ որ ծածկեալ էր յազգաց 'ի ժամանակացն յաւիտենից, արդ յայտնեցաւ սրբոց իւրոց . որոց կամեցաւ Ած 'ի ձեռն աւազանին մկրտութեան ցուցանել նոցա զինչ է մեծութիւն փառաց նորին մարմնոյ կենդանւոյ ։ Զի նա ինքն է Յիսուս Քրիստոս, այն որ է ընդ ձեզ յոյս փառացն նորա . այս ինքն զի յուսայք դուք 'ի նա, և ակն ունիք դուք փառացն՝ որ խոստացեալ էր ձեզ, այն զոր մեք իսկ քարոզեցաք ձեզ և պատմեցաք . ոչ թէ ձեզ միայն առանձինն, այլ և զամենայն մարդ ուսուցանեմք իմաստութեամբ ։

1 Յօրինակին կատարեսցի զբանն ։

Եւ այս վաստակ իմ պահօք և ջան պատերազմի իմոյ՝ զի աղօթիւք և հալածանօք հանդերձ առաջնորդութ̃ն ա̃յ որ զօրանայ յիս, զօրութ̃ն զոր տայ նա ինձ, և 'ի ձեռն գործոցն զոր գործէ 'ի ձեռս իմ․ զի հաստատեցի ես ոչ զմի մարդ և ոչ զմի ժողովուրդ զհեթանոսս, այլ զի հաստատեցից զամենայն մարդ կատարեալս 'ի Քրիստոս ։

## ԳԼՈՒԽ Բ

Մեծ է ձիգն պատերազմին զոր ունիմ ես աղօթիւք ոչ վասն ձեր միայն, այլ և վասն ղաւոդիկեցւոցն և վասն [1] միանգամ որոց չիցէ տեսեալ զերեսս իմ մարմնով ։ Եւ զայս զի ասեմ ես, զի և մինչ հեռիս եմ՝ մխիթարեցից զսիրտս նոցա 'ի տրտմութ̃է անտի թշնամեաց նոցա․ և զի տեղակացեալք լիցին նոքա 'ի սիրոյն յամենայն մեծութ̃ի լրութ̃ե հաւատարմութ̃ե, և ոչ հակառակութ̃բ և հեստութ̃բ․ և հանճարով գիտութ̃ե խորհրդոցն ա̃յ․ այս ինքն և ճանաչելով զխորհուրդս ա̃յ, զի նա ինքն է մարմին Ք̃ի ։ Այն զի նովաւ յայտնեցան ամենայն գանձք իմաստութ̃ե․ այս ինքն ամենայն աւետիքն ծածկեալք ա̃յ ։ Արդ մի այսուհետև զառանցուսցէ ոք զձեզ պատիր բանիւք․ զի թէպէտ մարմնով հեռի եմ ես 'ի ձէնջ, սակայն քան զի հոգւով մերձ եմ առ ձեզ, ուրախ արասջիք զիս իբրև զմերձաւոր, ոչ մի միայն բարեօք գործովք ձերովք, այլ իբրև կատարեալ իցէ պակասութ̃ի պիտոյից հաւատոցն ձերոց ։ Արդ որպէս ընկալարուք դուք զՅիսուս Քրիստոս, այս ինքն զաւետարանն Յ̃ի Ք̃ի, նովաւ գնասջիք արմատացեալք և հաստատեալք․ զի գուցէ մի 'ի հողմոց անտի կամ յիմաստնոց կամ 'ի հեբրայեցւոց շարժիցեն զձեզ ։ Արդ հաստատեցարուք հաւատովքն զոր ուսարուք, զի նոքօք կարող լինիջիք լինել լի և գոհութ̃բ ։

Արդ զգոյշ լերուք, զի մի ոք իցէ որ կապուտ կողոպուտ թողուցու զձեզ 'ի հաւատոց անտի 'ի ձեռն

[1] Յօրինակին վասն որոյ ։

Ճարտարմտութ՟ն համբերութ՟ն որ պատկառեցուցանէ զհաւատս ։ Այլ և մի՛ 'ի մոլորութ՟ին 'ի համբերութ՟ն ունայնութեան մարդկան պատրիցիք դուք ․ և մի՛ 'ի կարգս աշխարհիս այսորիկ ․ այս ինքն և ոչ զհետ չորիցն բնութ՟ց գնայցէք դուք , և կարծիցէք՝ եթէ 'ի նոցանէն եղև ամենայն ինչ , և ոչ յոչընչէ ։ Այլ գընասջիք դուք վարդապետութ՟ն Քրիստոսի , այն զի 'ի նմա բնակեալ է ամենայն լրութ՟ի ա՟ծութ՟ մարմնապէս և ոչ 'ի վարդապետութիւնս մարդկան , որ են նոքա 'ի ձեռն մոլորութ՟ իւրեանց բնակութիւն դիւաց ։ Բայց 'ի նմա բնակեալ է ամենայն լրութիւն ա՟ծութ՟ , և 'ի նա լցեալ և պարարտացեալ ։ Այն իսկ զտեառն իւրոյ երկրորդեաց , զի ասէ ․ “Ես 'ի Հայր եմ , և Հայր յիս է „ ։ Բայց զի է նա գլուխ պետութ՟ց և իշխանութ՟ց ․ այս ինքն տէր և արարիչ և առաջնորդ իշխանութ՟ց և պետութ՟ց ։ Այն զի 'ի նա թլփատեցարուք , ոչ զթլփատութ՟ի հեբրայեցւոց՝ որ թլփատի ձեռագործեան 'ի մերկանալ մարմնոյն , այս ինքն 'ի մերկանալ անդամոյն թլփատութ՟ն , այլ 'ի թլփատութ՟ Քրիստոսի , զի նա ինքն է մկրտութ՟ն Քրիստոսի , այն որ մերկաց նա 'ի ձէնջ զհին մարդկութիւնն ձեր ։ Եւ նովաւ յարեայք դուք ընդ նմա հաւատովք ․ այս զի վասն հաւատոցն ձերոց որ է վասն յարութ՟ , իբրու այն թէ յարեայք ընդ նմա՝ մինչ չև գլորեալ իսկ էք՝ զօրութ՟ն ա՟յ ։ Զի վասն սորին իսկ այսորիկ յարոյց զնա 'ի մեռելոց , զի մեզ տացէ ստանալ զհաւատոն յարութ՟ մեռելոց ։ Եւ զձեզ որ երբեմն մեռեալ էիք 'ի մեղս ձեր , կենդանացոյց զձեզ նովաւ հանդերձ աւետեօքն , և շնորհեաց մեզ և թող զամենայն զմեղս մեր 'ի ձեռն մկրտութ՟ , և ջնջեաց նա կենդանի պատուիրանօք իւրովք զդատակնիքն մեղաց՝ որ գրեալ էր 'ի հնում անդ ․ զի ամենայն հեթանոսք 'ի սուր և 'ի սատակումն համարեալ էին նմա ։ Եւ զանէծս օրինացն որ կային և մնայ մերում հակառակութ՟ն , մարմնովն իւրով բարձ զնոսա 'ի միջոյ անտի , այս ինքն յամենայն մարդկանէ , և բևեռեաց զնոսա ընդ խաչին փայտի , յայնմիկ՝ զի եղև ինքն փոխանակ մեր անէծք ։ Եւ ոչ եթէ զանէծսն միայն բարձ նա , այլ և զանուն ա՟ծութ՟ն

որով զարդարեալ լինէին կուռքն՝ բարձնա։ Եւ մերկացոյց նա զիշխանութիւնս և զպետութիւնս, և յայտ յանդիմանութ̃բ խայտառակեաց զնոսա. զի ուսոյց թէ արարեալք են նոքա, և ցոյց 'ի նոսա նշանս յաղթութե̃ իւրոյ։ Այս զի ոչ բաւական եղեն օգնական լինել ոչ երկրպագուաց իւրեանց՝ զի մի վարեսցին 'ի նոցանէն, և ոչ անուանն որով զարդարեալ էին, զի մի մերկասցէ զնա 'ի նոցանէ։

Արդ մի այսուհետև յետ այսր մեծամեծ իրաց որ եղեն ձեզ, եկեսցէ ոք և յողդողդեսցէ զձեզ 'ի ձեռն հիւանդ իրաց. այս ինքն ուտելով կամ ըմպելով, կամ ամսագլուխ տօնիւք, կամ տարևոր տարեկանօք հեբրայեցւոցն. զի սոքա հանդերձ շաբաթուն նշմարանք են լինելոց ժամանակացն։ Բայց մարմինն այն՝ որ 'ի նմա բովանդակեցան և սահմանեցան այսոքիկ, Քրիստոս է, այս զոր մեք քարոզեցաք։ Եւ գուցէ ոք կամիցի 'ի խոնարհութ̃ի մտաց մերոց նմանել և գալ և համբերել ձեզ, և շրջեալ զձեզ յօրէնս հրեշտակացն, այս ինքն 'ի վարդապետութ̃ի քահանայիցն. իբր այն թէ ինչ իցէ տեսեալ, ոչ 'ի գրոց անտի Հոգւոյն, այլ 'ի մտաց անձին իւրոյ։ Եւ տարապարտ հպարտացեալ է այնպիսին 'ի գիտս անտի իւր, զի գիտք մտաց մարմնոյ նորա են. և ոչ ունիցի 'ի գլխոյ Աբրահամէ, զի խոստացաւ նմա՝ եթէ 'ի զաւակէ նորա օրհնեսցին ամենայն հեթանոսք. ուստի ամենայն մարմին եկեղեցւոյ հաստատեալ է յօդովք և խաղալեօք, այս ինքն ամենայն վկայութ̃ք և ամենայն օրինակօք որ 'ի գրոց Հոգւոյ են՝ զօդի և աճէ զաճումն ա̃յ. այս ինքն զաճումն հոգեղէն և ոչ զմարմնեղէն։

Եթէ մեռարուք ընդ Քրիստոսի յայսմ արարածոցս յաշխարհէ աստի, այս ինքն յերկրաւոր աւետեաց անտի օրինացն, զի՞ ևս իբրև կենդանիք աստէն յաշխարհի ընդ սոյն թաթաւիք։ Մի՛, ասէ, մերձենար, և մի՛ հուպ լինիր. այս ինքն մի՛, ասէ, մերձենար 'ի բորոտն, և մի՛ հուպ լինիր 'ի մշտակաթն. և մի՛, ասէ, ճաշակեր զկերակուր հեթանոսաց. զի սոքա ինքն են պէտք ապականութ̃. այս ինքն զի հնացան և մաշեցան և ապականեցան սոքա։ Թէրևս զի ապակա-

նեցին[1] նոքա զմիտս հաւատացելոց, կոչեաց զնոսա պէտս ապականութեան։ Պատուիրանք են սոքա վարդապետութեան, ոչ ա՟յ, այլ մարդկան։ Ի սոսին իսկ յայտնի է և իմն բան իմաստութեան և ինքնակամ պաշտաման. այս ինքն զի 'ի պատճառս այսոցիկ իմաստնանան և խոնարհին. զի 'ի ձեռն իմաստութեան և խոնարհութեան գերեսցեն նոքա զմարդիկ 'ի պահպանութիւնս օրինացն և յանխնայութեան մարմնոյ. զի թլփատեն և չարչարեն զմարմին։ Բայց ոչ եթէ յարժան բաւականի ինչ իցէ առ 'ի լրութիւն մարմնոյն. այս ինքն զի 'ի միտս մարմնաւորս են որչափ և յօրէնսն են, այն որ պղծեն զամուսնութիւն յաչս նոցա։

## ԳԼՈՒԽ Գ

Եթէ յարերուք ընդ Քրիստոսի հաւատովք, ապա զվերինն խնդրեցէք, այս ինքն զհոգևորսն խորհեցարուք, ուր Քրիստոսն է նստեալ ընդ աջմէ ա՟յ. անդ լինիցին միտք մեր, և ոչ առ երկրաւորս օրինացն։ Զի մեռարուք դուք 'ի հանգստեան յաշխարհէ, և կեանքն ձեր ծածկեալ են 'ի Քրիստոս առ ա՟ծ. այս ինքն կեանք ձեր ծածուկք ծածկեալ են 'ի Քրիստոս։ Յորժամ Քրիստոս յայտնիցի կեանք մեր, յայնժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք փառօքն նորա. այն որ 'ի գալստեան իւրում յառաջնումն խոստացաւ ձեզ։ Սպանէք այսուհետև զմարմինս ձեր, այս ինքն զմարմինն հին մարդոյն ձերոյ. այս ինքն են պոռնըկութիւնք և պղծութիւնք և ցաւք մաշիչք ցանկութեան չարի, այլովք հանդերձ. զի վասն սոցունց իսկ այսոցիկ գայ բարկութիւն ա՟յ 'ի կատարածի։ Ոչ եթէ օտար ինչ էիք դուք զայսց մեղաց, այլ և դուք երբեմն թաթաւեալ գնայիք մինչ դեռ յայսր ամենայնի 'ի մէջ կէիք դուք։ Արդ մերկացարուք դուք զհին մարդկութիւն գործովք իւրովք հանդերձ, և զգեցարուք զնորն՝ որ նորոգի 'ի ձեռն մկրտութեան, և լինի առանց մեղաց ըստ նմանութեան պատկերի կերպարանաց ա-

1 Յօրինակին ապականեցան . . . զնոսա ոչ պէտս ։

ըարչին իւրոյ. ուր ոչ է Հրեայ և ոչ հեթանոս, և ոչ թլփատութիւն և ոչ անթլփատութիւն, ոչ յոյն և ոչ բարբարոս, ոչ տէր և ոչ ծառայ։ Եւ ո՞ր տեղի իցէ այն՝ զի չիցէ այս ամենայն ՚ի նմա. այլ մկրտութիւն և արքայութիւն. այն զի ՚ի մէջ միոյ միոյ ՚ի նոցանէն ամենայն յամենայնի առ հասարակ Քրիստոս է։ Այսուհետև զգեցարուք զգաստացարուք՝ իբրև սուրբք և ընտրեալք մկրտութեան ՚ի գութ ողորմութեանց, գթալ և ողորմել ՚ի վերայ միմեանց։ Եւ գոհացողք լինիջիք վասն որոյ յառաջն ընկալարուք։ Եւ բանն Քնի բնակեսցէ ՚ի ձեզ առատապէս և զայլս ևս աշակերտել։ Եւ լի շնորհօք եղիջիք օրհնեալ. այս ինքն լի շնորհօք օրհնեսցեն ՚ի սիրտս իւրեանց զա̃ծ։

## ԳԼՈՒԽ Դ

Յաղօթս յիշեսջիք միանգամայն և զմեզ։ Տես դու զխոնարհութիւն Առաքելոյն. զի յաշակերտութէ անտի իւրմէ խնդրէր աղօթս առնել նմա, զի բացցէ նմա դուռն բանի խօսել զխորհուրդն Քրիստոսի։ Իսկ դուռն բանի՝ կամ ունկն լսողաց է, կամ նշանքն որ գործին ՚ի ձեռն նորա է. զի ՚ի ձեռն նշանացն բանայր դուռն, կամ ՚ի ձեռն լսելեացն՝ զի խոնարհէին ունկնդիր լինել նմա։ Զի վասն նորին խորհրդոյ կապեալ եմ ես, զի յայտնի արարից զնա ՚ի մէջ սրբոց, և խօսեցայց զնա ահիւ երկիւղիւ որպէս արժան իցէ ինձ։ Այլ որ զինչ ինչ իցէ, այս ինքն վս̃ նեղութեն որ է առ մեզ, և քաջալերութե մերոյ և վասն ուրախութե մերոյ՝ որ է ՚ի նեղութիւնս մեր, ցուցցէ ձեզ Տիւքիկոս հաւատարիմ պաշտօնեայ։ Զի վասն սորին իսկ այսորիկ առաքեցի զնա առ ձեզ, զի ՚ի ցուցանելն նորա ձեզ վասն մեծի նեղութեանս մերոյ՝ մխիթարեսցին սիրտք ձեր վասն փոքու նեղութեանցդ ձերոց զոր համբերէք դուք։ Եւ ասասջիք դուք ցԱրքիպպոս. զգոյշ լեր դու սպասու պաշտամանդ զոր ընկալար դու ՚ի տէր, զի լի կատարեալ տացես դու զդա ՚ի ձեռն այնորիկ՝ որ զկնի քո մնալոց է ՚ի տէր։

ԱՌ

# ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ ԵՐԿՐՈՐԴ

Պաւղոս իբրև հալածեցաւ 'ի քաղաքէ անտի փիլիպեցւոց, եկն նա 'ի քաղաքն Թեսաղոնիկեցւոց յետ աշակերտելոյն Թեսաղոնիկեցւոց. զի ընկալեալ էր նոցա զբան նորա։ Եւ իբրև ետես Պաւղոս զոմանս 'ի նոցանէն թէ ուղիղ գնան ըստ առաջին վարդապետութեանն նորա, արգել զանձն իւր ինչ առնուլ 'ի նոցանէն. և պէտք կարօտութեան նորա 'ի քաղաքէ անտի փիլիպեցւոց՝ ուստի հալածեցաւն՝ լցեալ լինէին։ Այլ իբրև եկն նա 'ի յԱթենս քաղաք, և լուաւ վասն հալածանացն՝ որ յարուցեալ էին 'ի վերայ Թեսաղոնիկեցւոցն, առաքեաց նա զՏիմոթէոս քաջալերել և զօրացուցանել զնոսա, և բերել նմա անտի զհամբաւ նոցա։ Այլ իբրև դարձաւ եկն անտի Տիմոթէոս, և պատմեաց նա Առաքելոյ վասն համբերութեան նոցա, և զի տրտմեալ էին նոքա ոչ վասն նեղութեանցն իւրեանց, այլ վասն ոմանց 'ի նոցանէ՝ զի հանգուցեալ էին, առ գրել նոյն Առաքեալ յԱթենայ՝ յասելն իւրում այսպէս։

## ԳԼՈՒԽ Ա

Պաւղոս և Սիղուանոս և Տիմոթէոս։ Հայեաց դու և տես, զի խոնարհութեամբ իւրով մատուցանէ նա զանուն առաքելութեան իւրոյ. և զայնոսիկ որ հաղորդն և կցորդն էին նորա 'ի ջան և 'ի վաստակ աւետարանին, պատիւ՝ որպէս և անձին իւրում՝ արար նոցա 'ի սկիզբըն թղթոյն իւրոյ։ Եկեղեցեացդ, ասէ, Թեսաղոնիկեցւոց յԱստուած Հայր մեր, զի մերձեցոյց զհեռաւորութիւն հեթանոսաց յորդեգրութիւն. և 'ի տէր մեր Յի-

սուս Քրիստոս, զի արար զմեզ իւր ժառանգակիցս ։ Շնորհք ընդ ձեզ և խաղաղութի՟. այս ինքն շնորհքն որ ընդ ձեզ իցեն, օգնական եղիցին զօրացուցանել զձեզ 'ի ժամու հալածմանց ձերոց. և խաղաղութի՟ եղիցի 'ի միջի ձերում 'ի ժամանակի փոխելոյ ձերոյ ։ Գոհանամ զա՟յ յամենայն ժամ. ոչ վասն ումանց 'ի ձէնջ, այլ վասն ամենեցունց՝ յիշատակ մատուցանել յաղօթս մեր անպակաս վասն ձեր առաջի ա՟յ. այս ինքն զի զօրասջիք դուք ։ Ոչ եթէ դոյզն ինչ յիշատակեմք մեք զձեզ, այլ զգործն հաւատոց ձերոց որ վասն աւետեացն է, և զվաստակն սիրոյն ձերոյ զոր ունիք դուք առ եղբարս ձեր, և զհամբերութի՟ն նեղութե՟ն ձերոյ՝ որ է վ՟ս ճշմարիտ յուսոյն, այն որ 'ի տէր մեր Յիսուս Քրիստոս, առաջի ա՟յ Հօր պատմեմք մեք ։

Օ այս գիտէք, եղբարք սիրելիք, զի յա՟յ է ընտրութի՟ ձեր, այս ինքն կոչումն ձեր. զի աւետարանն մեր ոչ եղև առ ձեզ լոկ բանիւք, այլ և զօրութ՟բ Հոգւով սրբով և մտադիւրութ՟բ բազմաւ. այս ինքն զօրութ՟բ նշանացն, և նոր լեզուօք Հոգւոյն, և առատութ՟բն սիրոյն ։ Թէպէտ և այսուիկ եղեաք մեք 'ի միջի ձերում, սակայն ոչ բարձրացաք 'ի վերայ ուրուք 'ի ձէնջ. և դուք գիտէք որպէս եղեաք խոնարհութ՟բ 'ի միջի ձերում վասն ձեր ։ Եւ դուք նմանողք մեզ եղերուք և տեառն. այս ինքն մեզ նմանողք եղերուք հալածանօք ձերովք, և տեառն՝ չարչարանօք ձերովք. զի ընկալարուք դուք զբանն նեղութ՟բ բազմաւ և խնդութ՟բ Հոգւոյն սրբոյ ։ Այս ինքն թէպէտ և զբանն նեղութ՟բ որ ունէիք դուք՝ ընկալարուք զնա, սակայն ուրախութի՟ խառնեալ էր ընդ նմա վասն քաւութե՟ և զօրութե՟ց Հոգւոյն սրբոյ զոր առէք դուք 'ի պատճառս նորա վասն նորին ։ Զի եղերուք դուք օրինակ բարեաց հալածանօքն ձերովք ամենայն հաւատացելոց՝ որ են ոչ 'ի կողմանս մակեդոնացւոց և աքայացւոց միայն, այլ ընդ ամենայն տեղիս հաւատքն ձեր՝ որ առաքինացան հալածանօք ձերովք՝ սփռեցան ։ Զի այսպէս անուանեցայք դուք և գտայք, որպէս ոչ իցէք կարօտք ուսուցանելոյ զձեզ վասն իրիք ։ Զի նոքին իսկ գաւառքդ պատմեն վասն մեր, որպիսի մուտ ոտից սրբութ՟բ և խոնարհութ՟բ եղև մեր առ

ձեզ. և պատմեցին մեզ թէ որպէս 'ի ձեռն նշանաց և զօրութեանց զոր տեսէք 'ի մեզ, և 'ի ձեռն բանին կենդանութեան զոր լուարուք 'ի մէնջ, դարձարուք դուք առ Ած 'ի կռոց պաշտամանէ անտի. փոխանակ զի ծառայ էիք դուք մեռելոտի պատկերաց, ծառայեսջիք դուք Այ կենդանւոյ Ճշմարտի. և ակն ունէիք դուք՝ որպէս ուսուցաք ձեզ, Որդւոյ նորա յերկնից, զՅս զայն՝ որ և յարուն անդր ՆՐ հաւատացէք, այն որ փրկելոցն է զմեզ 'ի բարկութէ անտի՝ որ գալոցն է, այս ինքն հանդերձեալ վրիժուն՝ որ լինելոցն է։

## ԳԼՈՒԽ Բ

ԴՈՒՔ ինքնին գիտէք, եղբարք, զմուտն մեր որ առ ձեզն է, զի ոչ ընդունայնութբ ինչ եղև 'ի թըշնամանաց և 'ի նեղութենէ. զի յառաջ չարչարեցաք մեք և կրեցաք զանարգանս 'ի մէջ փիլիպեցւոցն, որպէս և դուք իսկ ինքնին գիտէք, և աչօք ձերովք տեսէք դուք զտանջանս չարչարանացն՝ որ մտին ընդ մեզ 'ի քաղաք այդր ձեր։ Եւ իբրև համարձակեցաք մեք յԱծ մեր՝ այս ինքն բան Այ մերոյ՝ խօսել և ընդ ձեզ մեծաւ պատերազմաւ, այս ինքն մեծամեծ հալածանօք, քարոզեցաք ձեզ զաւետարանն Այ։ Եւ այն մխիթարութի մեր զոր մխիթարեցաք զձեզ, զի եկեսջիք դուք յայս աւետարան, զի ոչ 'ի մոլորութէ է, և վկայեն զօրութիքն զոր առնեմք. և ոչ 'ի պղծութենէ, և պատասխանի առնէ[1] վասն մեր սրբութի մտաց մերոց. և ոչ նենգութբ, և վկայեն մեզ յստակութիւն և անմեղութի մեր. այլ որպէս ընտրեալք և փորձեալք յԱյ, զի մի յայտնանէ զոր համարեցայս չիք 'ի մեզ, հաւատարիմ լինել մեզ նման է այսմ աւետարանի։ Եւ այսպէս խօսիմք սրբութբ և ճշմարտութբ, ոչ իբրև ձեզ կամ իբր մարդկան այլոց հաճոյ լինել, այլ Այ որ փորձէ հանդերձ բանիւք և ըդ սիրտս խօսնոց։ Զայս գիտէք դուք, եղբարք, զի ոչ երբէք բանիւք ողոքանօք եղեաք մեք. քանզի ոչ 'ի

1 Յօրինակին առնէլ։

պատճառս ինչ ագահութեան մերձեցաք մեք առ մի ոք 'ի ձէնջ։ Եւ ոչ խնդրեցաք զփառս 'ի ժամ նշանաց մերոց, կամ 'ի ժամ նեղութեանց մերոց, ոչ 'ի ձէնջ, որպէս և դուք իսկ վկայէք, և ոչ յայլոց. և վասն այսր որ վասն այլոցս է զոր ոչ վկայէք դուք, սակայն ա̅ծ վկայ է։ Էր էր մարթ և պատշաճ մեզ զանձինս ծանր և 'ի շքի ունել իբրև մարդք՝ որ ընտրեցաք լինել առաքեալք Քրիստոսի. այլ եղեաք մեք հեզութ̃բ և քաղցրութ̃բ 'ի միջի ձերում իբրև մանկունք տղայք 'ի ժամ վարդապետութե̃ն, որպէս և դայեակ զի սնուցանիցէ զորդիս իւր։ Սոյնպէս զուարճացեալ գթացաք մեք 'ի ձեզ՝ տալ ձեզ ոչ միայն ըղկենարար աւետարանն, այլ և զանձինս մեր տուաք ձեզ 'ի նեղութիս քաղաքիդ ձերոյ։ Վասն կենաց փըրկութե̃ ձերոյ կրէաք մեք զչարչարանսն, և զամենայն որ ինչ յանձինս մեր՝ հանդերձ անձամբք մերովք տուաք ձեզ. զի իբրև սիրելի ի̃մն եղերուք դուք մեզ առաւել քան զսէր որդւոց առ դայեկի։

Յիշէք դուք, եղբարք, զի ձեռօք մերովք վաստակէաք զցայգ և զցերեկ. այս ինքն զի եթէ լինէր տեղի բանին մերոյ զցերեկ, վաստակէաք մեք զցայգ. և եթէ բանայր մեզ դուռն աւետարանի 'ի գիշերի, վաստակէաք զցերեկ։ Եւ զայս զի առնէաք, քանզի ընտրեցաք մեք մեզ՝ թէ մի՛ բեռն ինչ ումեք իւիք լիցուք բնաւ ամենեւին։ Եւ դուք ինքնին իսկ վկայէք վասն յայտնեաց մերոց, և ա̅ծ վասն գաղտնեաց մերոց, ո՛րպէս քարոզեցաք մեք զբանն ա̅յ 'ի միջի ձերում սրբութ̃բ և արդարութ̃բ. սրբութ̃բ՝ զի ոչ վասն երախտեաց ընչից ձերոց, և արդարութ̃բ՝ զի օտար իւիք աւետարանին զոր քարոզեցաք մեք՝ դուք ոչ կարացէք ստգտանել զմեզ։ Եւ իբրև այսու ամենայնիւ ամբիծք եղեաք 'ի միջի ձերում, դուք ինքնին իսկ գիտէք ո՛րպէս զմի մի 'ի ձէնջ իբրև հայր զորդի իւր ողոքէաք զձեզ 'ի ժամ աշակերտութե̃, և մխիթարէաք զձեզ 'ի ժամ նեղութե̃ ձերոյ, հաստատէաք մեք զվկայութի̃ն ձեզ՝ զի գնասջիք դուք արժանապէս ա̅յ 'ի ժամ ընտրութե̃. զի գեղեցիկ գնացիւք կարէք դուք արժանի լինել ընդունել զփառսն զոր կորուսէք դուք, և զդրախտն ուստի մերժեցարուք դուք։ Վասն այ-

սորին և մեք գոհանամք զԱ̄յ անպակաս․ զի թէպէտ և զբանն 'ի մէնջ լուարուք, սակայն ոչ իբրև 'ի մարդոյ, այլ ընդ մեծութիւն բանին հայեցարուք և ընկալայք զնա ոպ̄ ճշմարտիւ զբանն Ա̄յ, այն որ զօրացեալն է 'ի միջի ձերում հաւատացելոցդ․ այս ինքն զօրացուցանէ և աճեցուցանէ զմիտս հաւատացելոցն 'ի նա ։

Այլ մի՛ տրտմիք դուք՝ զի հալածեցայքն յեղբարց անտի ձերոց, քանզի գոն ձեր ընկերք յայտունիկ ։ Եւ մի՛ զչարիք․ և եթէ յափշտակեցան և տունք ձեր, ունիք դուք ձեզ հաղորդս և կցորդս և յայտնիկ եւս ։ Զի և դուք նմանողք եղերուք, եղբարք, եկեղեցեացըն՝ որ են 'ի հրէաստանի․ զի չարչարեցայք դուք յազգատոհմէ ձերմէ, որպէս և նոքա 'ի Հրէից անտի, այնոքիկ՝ որ ոչ եթէ միայն զՅիսուս Քրիստոս սպանին՝ թէ ասիցեն թէ նախանձու սպանաք զնա, այլ և զմարգարէսն կոտորեցին, զմեզ առաքեալս հալածեցին, և Ա̄յ գործովքն իւրեանց ոչ հաճոյ եղեն, այլ յաչաց ելին․ զի առ 'ի նոցանէն թշնամիք եղեն նոքա ամենայն մարդկան․ զի զօրացեալ փութային նոքա արգելուլ և կարճել զաւետարանն յամենայն հեթանոսաց․ որ խափան եւս առնէին մեզ նեղութեքն զոր յարուցանէին 'ի վերայ մեր յամենայն քաղաքի, զի ընդ հեթանոսս մի՛ խօսեսցուք զբանն Ա̄յ՝ թէ դարձուրեայք ապրեսցին․ զի յայսմիկ կատարեսցի չափն մեղաց նոցա յամենայնի, և հասեալ լիցի 'ի վերայ նոցա վախճան բարկութե̄ 'ի կատարածի․ այս ինքն հասցէ նոցա վրէժխնդրութի̄ արդարութե̄ 'ի վախճանի ։

Այլ մեք թէպէտ և որբ մնացաք առ ժամանակ մի 'ի ձէնջ, այս ինքն հեռացաք 'ի տեսլենէ ձերմէ, ոչ եթէ սրտիւք, այլ աչօք, և ոչ եթէ ընդ երկար ինչ, այլ առ ժամանակ մի, սոյն իսկ այս յամելս մեր 'ի ձէնջ և հեռանալ առաւել եւս կարօտել փափագեցոյց զմեզ տեսանել զերեսս ձեր մեծաւ ցանկութեամբ ։ Եւ կամեցաք մեք գալ առ ձեզ միանգամ և երկիցս, և խափան եղև մեզ 'ի սատանայէ, այն որ խափանեաց և արգել զիս և ոչ ետ ինձ մինչև ցայսօր սերմանել զբանն կենդանութե̄ 'ի մէջ աթենացւոց մեռելոց ։ Քանզի ո՞վ է մեր յոյս, կամ ուրախութի̄,

կամ խնդութ̃ի, կամ պսակ պարծանաց ՚ի ժամ յարութ̃ե. եթէ ոչ դուք։ Քանզի դուք իսկ էք փառք մեր առաւել քան զգործս գնացից մերոց։ Եւ դուք ինքնին էք խնդութ̃ին մեր և առաւել քան զվարս հատուցման մերոյ։

## ԳԼՈՒԽ Գ

Ոչ թէպէտ և զալ առ ձեզ ոչ կարացի, սակայն և դարձեալ ՚ի ձէնջ ոչ համբերի. բարւոք թուեցաւ ինձ մնալ ՚ի կողմանս աթենացւոց։ Այն զի բազում օգնականք պիտոյ էին ինձ աստ, զի առ ձեզ առաքեցի ես զՏիմոթէոս, զի նա ինքն է ինձ օգնական յաւետարանն ա̃յ, զի ինքն Տիմոթէոս եկեսցէ և հաստատեսցէ զձեզ. այս ինքն զօրացուսցէ զձեզ և մխիթարեսցէ զհաւատսն ձեր, զի մի ոք շարժեսցի ՚ի ձէնջ նեղութ̃ն՝ որ շուրջ պատեալ են զնովաւ. զի ՚ի սմին իսկ իբր հաստատեալ եմք մեք, այս ինքն չարչարեալ և համբերեալ։ Քանզի յառաջագոյն իսկ ասացաք ձեզ, և պատրաստեցաք զձեզ որպէս մարգարէութ̃բ՝ եթէ նեղութ̃իւնք հասանելոց են ՚ի վերայ մեր, որպէս եղև՝ տեսէք և գիտացէք։ Վասն այսորիկ և ես այսուհետև քանզի ոչ դադարեցի, առաքեցի առ ձեզ ուսանել՝ թէ գուցէ արդեւք փորձեաց եւս զձեզ փորձիչն, և դարձեալ իցէ ձեր ՚ի կռապաշտութ̃ի, և ընդունայն ինչ լիցի այն վաստակքն մեր՝ որ առ ձեզ է։ Բայց արդ իբրև եկն Տիմոթէոս ՚ի ձէնջ առ մեզ, և ետ մեզ զաւետիսն հաւատոց որ յա̃ծ, և սիրոյն ձերոյ որ առ մեզ է, և վասն բարեացն յիշատակաց մերոց զոր ունէիք առ մեզ, և զի յամենայն ժամ ունիք անձուկ տեսանել զմեզ՝ որպէս և մեք զձեզդ, մխիթարեցաք մեք ՚ի տրտմութեց մերոց և մինչ դեռ պատեալ են զմեւք, և հանգեաք մեք ՚ի նեղութ̃եցն մերոց մինչ դեռ պարշարեալ են զմեւք. և հանգեաք մեք ՚ի նեղութ̃եցն մերոց։ Եւ արդ կենդանի եմք առաջի ա̃յ. բայց թէ դուք միայն հաստատուն կայցէք ՚ի հաւատս անդր տեառն մերոյ։

Քանզի զի՞նչ այլ գոհութ̃իւնք կարեմք հատուցանել ա̃յ ՚ի վերայ ամենայն խնդութ̃ե, զի ուրախ առնէ

զմեզ լուրդ ձեր բարւոք : Այլ և խնդրուածս եւս առաւսցուք առաջի այ տեսանել զերեսս ձեր, և լցեալ կատարեսցուք 'ի ձեռն քաջալերիչ բանին մերոյ ըզպակասութին հաւատոցդ ձերոց : Այլ ինքն ած հորդեսցէ և ուղղեսցէ զճանապարհս մեր առ ձեզ 'ի միջոյ այնոցիկ՝ որ լցեալ են յապաշաւիչ բանին մերոյ. և առաւել բազմապատիկ արասցէ զսէրն ձեր զոր ունիք դուք առ միմեանս, և համեմատել կշռեսցէ այսմ սիրոյ մերոյ զոր մեք զձեզ սիրեցաք : Եւ նա հաստատեսցէ զսիրտս ձեր առանց արատոյ, զի կայցէք դուք մնայցէք 'ի սրբութին անդր զոր զգեցարուք 'ի մկրտութէ անտի. և նովաւ ելջիք ընդ առաջ տն մերոյ 'ի ժամանակի՝ զի գայցէ նա ընդ ամ սուրբս իւր :

## ԳԼՈՒԽ Դ

Արդ որպէս ընկալարուք դուք 'ի մէնջ, այս ինքն ըստ օրինակի զոր տեսէք դուք 'ի մեզ, սոյնպէս գնասջիք արժանապէս հաճոյ լինել այ. ոչ եթէ զի ոչ գնայք դուք՝ այսպէս ասեմ զայս, այլ զի եւս քան զեւս յաւելջիք : Յայն փութացուցանեմ զձեզ, զի այս ինքն են կամք այ, սրբութիդ ձեր յամենայն պըղծութէ կռոց, և 'ի բաց լինել ձեզ յամենայն պոռնըկութենէ, գիտել իւրաքանչիւր զմարմինս ձեր սըրբութբ և պատուով պարհել. այս ինքն զի պարհեսցէ զնա յամենայն մնասուց՝ արժանի սրբութե զոր ըզգեցաւ 'ի ջուրց անտի : Արդ մի այսուհետև պղծէք դուք զմարմինն որ քաւեցաւ՝ գիտութբք ցանկութն, որպէս և այլ հեթանոսքն՝ որ ոչ գիտեն ցարդ զած : Զի ոչ կոչեաց զձեզ ած 'ի պղծութի, այն՝ յորում հաստատեալ կայիք 'ի նմա. այլ 'ի պղծութէ անտի ած զձեզ յայդ սրբութի՝ յորում այսօրդ կայք : Այլ թէպէտ վասն եղբայրսիրութե ոչ ինչ պիտոյ է գրել առ ձեզ, քանզի դուք ինքնին իսկ առնէիք զայդ. այլ զի առաւել եւս յաւելջիք յառատանալ՝ ուսուցանեմք զձեզ : Եւ զի եղիջիք դուք գործել ձեռօք ձերովք՝ գրեմ ձեզ մինչ դեռ հեռիս եմք, որպէս պատուիրեցաք մեք ձեզ՝ մինչ դեռ մերձն էաք :

Եւ զի մի՛ ինչ իբրև տգէտք իցէք վասն հանգուցելոցն, զի մի՛ տրտմիջիք որպէս և այլ հեթանոսք. զի ոչ յարութի̃ գոյ նոցա, և ոչ յոյս խոստացեալ գոյ նոցա։ Զի եթէ հաւատամք մեք ՚ի յարութի̃ անդր Քրիստոսի, ապա հաւատասցուք թէ և ա̃ծ ընդ նմին ՚ի գալստեան անդ նորա զայնոսիկ՝ որ ննջեցին ՚ի ձեռն Յիսուսի, այս ինքն հաւատովքն Յիսուսի։ Այլ զայս ասեմ ձեզ, եղբարք, ոչ ՚ի մէնջ ինչ, այլ որպէս ՚ի բանէ տեառն մերոյ՝ որ է յաւետարանի անդ՝ եթէ մեք որ կենդանիքս եմք՝ որ մնացեալ լինիմք ՚ի գալուստն տեառն, ոչ ժամանեմք թռանելովն մերով ընդ բարձունս, ոչ ժամանեմք մեռելոցն հանգուցելոց։ Զի յիջանելն տեառն մերոյ յերկնից ՚ի ձայն փողոյն հրեշտակապետի, մինչ չև նորափետուր զարդարեալ իցէ արդարոցն կենդանեաց, լինի նախ յարութի̃ մեռելոցն ՚ի Քրիստոս։ Եւ ապա մեք որ կենդանիքս եմք՝ յափշտակիմք, ոչ եթէ յառաջ քան ըզնոսա, այլ ընդ նոսա. և ոչ առանց նոցա, այլ ՚ի միասին՝ ընդ ամպս ընդ առաջ լինել տեառն մերոյ ՚ի վերայ օդոց. և այսպէս յամենայն ժամ [1] ամենեքին մեք հաւասար արդարութ̃ ընդ տեառն լինիցիմք։ Այսուհետև մխիթարեցէք, այս ինքն շինեցէք զմիմեանս բանիւքս այսուիկ, զի լի են յուսով։

## ԳԼՈՒԽ Ե

ԻՍԿ վ̃ն ամաց և ժամանակաց, եղբարք, այս ինքն թէ երբ իցէ ժամանակ ա̃յ, կամ յոր ժամ լինիցի ժամանակք Նեռինն, ոչ ինչ պիտոյ է զայս գրել առ ձեզ։ Զի ինքնին իսկ գիտէք, որպէս ուսարուք իսկ ՚ի մէնջ զայս. զի և մեր յաւետարանէ անտի տեառն մերոյ ուսեալ է՝ եթէ օր տեառն իբրև գող ՚ի գիշերոյ՝ զի ոչ ոք զգայ ՚ի նմա, այսպէս հասանէ։ Զի յորժամ ասիցեն եթէ ահա աւասիկ խաղաղութի̃ և շինութի̃ է, և յայնմիկ որ կարծեն եթէ ժամանակ շինութե̃ է, յայնժամ յանկարծակի հասցէ ՚ի վե-

1 Յօրինակին պակասի ժամ։

րայ նոցա սատակումն որպէս երկն՝ զի հարկանի յղւոյ յանկարծակի, և ոչ կարէ ապրել ՚ի նմանէ։ Այս այն է զոր ասաց տէր մեր՝ բայ "Որպէս եղև յաւուրս Նոյի և Ղովտայ, զի ուտէին և ըմպէին, կանայս առնուին և արանց լինէին, մինչև եկն եհաս սատակեաց զնոսա միանգամայն ջրհեղեղն և հուրն"։ Այլ դուք, եղբարք, ոչ էք խաւարի, այս ինքն գործովք խաւարի, եթէ օրն այն ձեզ իբրև գող ՚ի վերայ հասանիցէ։ Որպէս որդիք լուսոյ գործովք լուսոյ պատրաստեալ էք, և նմին իսկ այնմ աւուր յայտնուէ ակն ունիք, մի՛ այսուհետև զքնով անկանիցիմք ՚ի գործոց գնացից որպէս և այլք, զի ոչ ակն ունին այնմ աւուր. այլ արթուն կացցուք գործովք մերովք, և առողջ եղիցուք հաւատովք մերովք։ Զի որ ննջենն և արբենան, ՚ի գիշերի ննջեն և արբենան. այս ինքն զի ամենայն գործք որ հակառակ են լուսոյ, ՚ի գիշերի նմանող նոցին գործեն։ Այլ մեք զի որդիք տուընջեան եմք, այս ինքն զի որդիք աւետարանին եմք, զուարթունք եղիցուք գործել զբարիս. և զգեցցուք մեք զկատարումն հաւատոյ, այս ինքն հաւատք կատարեալք և սէր կատարեալ. և դիցուք զսաղաւարտն յուսոյ փրկութեան կենաց։ Զի ոչ եթէ արար զմեզ ՚ի բարկութի, այս ինքն ՚ի կորուստ, այլ ՚ի փրկութիւն կենդանութե։ Կամ զի փրկեսցուք զանձինս մեր ՚ի թօթափանաց[1] ցանկութեց, և կեցցուք տերամբ մերով. կամ զի փրկիցիմք նովաւ կեալ ընդ նմա յարութի անդր։ Եւ եթէ արթունք իցեմք, և եթէ ննջիցեմք, նովաւ հանդերձ կեցցուք. այս ինքն եթէ կենդանիք իցեմք, և եթէ մեռեալք, նովաւ հանդերձ թռուցանէ զմեզ։ Արդ մխիթարեցէք զմիմեանս և շինեցէք այր զընկեր այսու բանիւք. զի մինչ չև գրեալ էր իմ առ ձեզ, զոյն իսկ զայս առնէիք դուք։

Ծաներուք զվաստակաւորսն ձեր գործովք իւրեանց, և զվերակացուս ձեր ՚ի տէր. այս ինքն որք աղաչեն զտէր վասն ձեր, և որք ուսուցանեն ձեզ ըզվարդապետութի կենաց։ Առաւել սիրով ընտանեցուցէք զնոսա ձեզ, և վասն գործոցն նոցա զխաղա-

1 Ի ճառընտիրն Գ. ՚ի թօթափմանց։

ղութիւն արարէք ընդ նոսա․ այս ինքն վասն բարւոք գնացից նոցա խառնեցարուք ընդ նոսա, զի օգտեսջիք 'ի նոցանէն ։ Խրատեցէք, ասէ, զստահակն զայնոսիկ՝ որ բանդագուշեալ շրջին և ինչ ոչ գործեն, բայց զմնոտիս․ մխիթարեցէք դուք զկարճոգիսն՝ որ սգացեալն էին վասն վախճանի սիրելեաց իւրեանց․ այցելու լերուք տկարաց հաւատովք, և ընդերկայնամիտ լերուք առ ամենեսեան՝ որ կարօտն իցէ օգնութեան 'ի ձէնջ ։ Եւ զգոյշ կացէք, գուցէ նեղչացն ձերոց չարի չար հատուցանիցէք․ այլ յամենայն ժամ ըզբարեաց զհետ երթայք, ոչ եթէ առ միմեանս միայն, այլ և առ ամենեսին ։ Եւ յամենայնի ուրախ լերուք 'ի տէր, այս ինքն 'ի նեղութիւս ձեր․ և յամենայնի գոհացարուք, այս ինքն 'ի վերայ նեղութեացն որ լինին ձեզ, և վասն հանգստեան որ պատահէ ձեզ․ վասն ամենայնի որ գայ 'ի վերայ ձեր, եղիջիք գոհանալ, քանզի 'ի կամաց անտի Աստուծոյ գան 'ի նոցանէն 'ի խրատ, և 'ի նոցանէն 'ի քննութիւն հանդիսի ։ Զհոգիս մի շիջուցանէք․ այս ինքն զայնոսիկ՝ որ խօսին 'ի լեզուս հոգւոյ, մի լռեցուցանիցէք ։ Եւ զմարգարէութիւն հին, կամ զայնոսիկ որ արժանի եղեն, և եղեն 'ի ձեզ մարգարէք՝ մի խոտէք ։ Զամենայն ինչ 'ի ձեռն նորոյն փորձեցէք․ և որ ինչ բարին է, այս ինքն որ ինչ հաւասար է աւետարանին, զայն ընկալարուք․ և յամենայն իրաց չարաց՝ որ օտար իցէ նորոյն, 'ի բաց կացէք ։ Եւ նա ինքն Աստուած խաղաղութեան սուրբս արասցէ զձեզ և կատարեալս․ այս ինքն մինչև 'ի վախճան կատարածի ։ Զամենայն զոգի և զշունչ և զմարմին ձեր պահեսցէ առանց արատոյ․ այս ինքն 'ի մկրտութենէ անտի մինչև 'ի գալուստն տեառն մերոյ ։ Հաւատարիմ է տէր մեր, զի նա արասցէ այսպէս․ և կայցէք և մնայցէք իբրև 'ի մկրտութենէ մինչև յայտնութիւն տեառն մերոյ ։ Աղաչեմ զձեզ, եղբարք, ընթեռնուլ տաջիք զթուղթս զայս առաջի ամենայն եղբարց, այս ինքն յորժամ ժողովեալ իցէ ամենայն եկեղեցին առ հասարակ․ զի տկարք զօրանան սովաւ և սգաւորք մխիթարին սովաւ, և ուղեղք աճեն սովաւ․ և որ բանդագուշեալ շրջին և զհետ ելեալ են մնոտեաց, թերևս յանդիմանեալ խրատին սովաւ ։

# ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ ԵՐԿՐՈՐԴ

ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՔ զկնի այսր իբրև ընկալան զԹուղթքն առաջին և ընթերցան 'ի մէջ ժողովրդեան, որպէս և Հռոմայեցւնց, դատարկապորտքն որ զհետ լինէին մոլորեաց՝ փոխանակ զի գործիցեն և կերիցեն որպէս և Հռոմայեցւոցն, յաւելլին 'ի խաբել և մոլորեցուցանել զընկերս իւրեանց. զի զայնոսիկ որք ապրեցանն յուրացութենէ անտի, պէսպէս հնարիւք հնարիցեն և ածցեն զնոսա 'ի մոլորութիւն խաբէութեն։ Ձի փորձեաց սատանայ զԹեսաղոնիկեցիսն հալածանօք, զի միանգամ և երկիցս ած 'ի վերայ նոցա. զի ոչ առնուլին յանձն յուրաստ լինել 'ի Քրիստոսէ, արար զնոսա զնոյն իսկ զդատարկսուն և զթանդագուշեալս քարոզս գալստեան տեառն մերոյ. զի գալստեամբն յառաջ ժամանակօքն զոր քարոզէրն, յողդողդեցուցէ և կասեցուցէ զսպասիչս գալստեան 'ի ճշմարիտ գալստենէ անտի՝ որում սպասէին։ Այլ սոքին իսկ այսք և ընկերք սոցուն՝ քանզի սատանայ զօրացեալ էր 'ի նոսա, և տեսիլք ևս սուտք երևէին նոցա, և պատիր բանիւք յորդորէին զնոսա, և Թուղթս գրէին յանուն Առաքելոյ, ընթեռնուլին առաջի նոցա, զի ամենայն հնարիւք լքեցուսցեն զնոսա գոնեայ 'ի գալստենէ անտի տեառն մերոյ, զայնոսիկ՝ որ 'ի տեառնէ անտի մերմէ լքեցուցանել զնոսա ոչ կարէին։ Քանզի տիրեաց իսկ յոմանց 'ի նոցանէ այս հիւանդութիւն 'ի սկզբանէ իսկ. և վասն այնորիկ 'ի Թղթի անդ իւրում յառաջնումն յիշեցոյց նոցա, յայնմիկ զի ասաց՝ վասն ամաց և ժամանակաց ոչ ինչ պիտոյ է գրել առ ձեզ։ Այլ իբրև ուսաւ և 'ի վերայ հաս Պաւղոս՝ թէ ոստացաւ խաբէութիւն 'ի ձեռն այնոցիկ՝ որ ամենայն պնդութբ քարոզէին զնա, առ գրել նմ յասել իւրում այսպէս։

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ և Սիւղիանոս և Տիմոթէոս եկեղեցեացդ Թեսաղոնիկեցւոց, յա̃ծ Հայր մեր, և 'ի տէր մեր Յիսուս Քրիստոս։ Որչափ ինչ դարմեալք ամօթալից են հեթանոսք խոտեալ. զի վասն մոլորութե̃ խաբէութե̃ իւրեանց 'ի սուր և 'ի սատակումն համարեալ էին, այսպէս սիրեաց զնոսա, զի 'ի դառնալ անդ՝ նոցա Հայր կոչեցաւ, այնոցիկ՝ որ յառաջագոյն Աստուած ոչ կամեցան՝ թէ կոչեսցի 'ի վերայ նոցա։ Շնորհք, ասէ, 'ի ձեռն աւետարանի շնորհացն որ են ընդ ձեզ, և խաղաղութի̃ յա̃յ Հօրէ մերմէ և 'ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ. և ոչ եթէ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Գոհանալ պարտիմք զա̃յ յամենայն ժամ վասն ձեր. զի լսեմք մեք՝ թէ ևս քան զևս առաւելուն և աճեն հաւատքն ձեր 'ի ձեռն համբերութե̃ ձերոյ, և որ ըստ օրէ յաճախէ սէրն ձեր իւրաքանչիւր առ միմեանս հոգալովն ձերով։ Սոյնպէս և մեք ձեւք պարծիմք առ ամենայն եկեղեցիս. զի ձեւք նախանձ արկցուք այլոց, զի եղիցին նոքա նմանողք ձեզ։

Պատմեմք մեք վասն հաւատոց ձերոց, այն զի ոչ իւիք յիմիք խռովին կամ շարժին. և վասն համբերութե̃ ձերոյ ոչ միով նեղութե̃, այլ յամենայն նեղութիս ձեր և 'ի հալածանս ձեր, որում դուք համբերէք յօրինակ արդար դատաստանացն ա̃յ. այս ինքն զի քարոզի 'ի ձեռն համբերութե̃ ձերոյ արդար դատաստանքն ա̃յ։ Զի ոչ եթէ զուր տարապարտուց համբերէք դուք այսմ, այլ զի 'ի ձեռն այսոցիկ կարասջիք արժանի լինել արքայութե̃ն ա̃յ, այն վասն որոյ և զճգնութի̃դ յանձն առնուք։ Պարտ և պատշաճ իցէ առաջի ա̃յ առնել փոփոխումն. այս ինքն հատուցանել 'ի վախճան կատարածի այնոցիկ՝ որ զձեզն նեղեն՝ փոխարէն նեղութի̃. և ձեզ որ յայսմ աշխարհի՝ որ ըստ մերում նեղութե̃դ նեղիք և համբերէք, եղիցի ձեզ հանգիստ ընդ մեզ յօրն յայտնութե̃ նորա, այն որ մեք և դուք վասն նորա հալածիմք.

այն որ գալոցն է յերկնից, ոչ խոնարհութ̃բ ըստ առաջին գալստեան իւրում, այլ գայ նա մեծութ̃բ իւրով հանդերձ զօրօք հրեշտակացն իւրոց. և ոչ գայ նա՝ թէ դատեսցի, այլ գայ նա 'ի բոց հրոյն հատուցանել 'ի դատաստանմն 'ի վրէժ այնոցիկ՝ որ ոչն ճանաչէին զա̃ծ. այս ինքն հեթանոսաց՝ որ ցարդ ևս ոչ կամեցան ճանաչել զա̃ծ, և հրէից՝ զի ոչ ունկնդիր եղեն աւետարանին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զի նոքա տացեն զդատաստանս, հատուցեն ըզվրէժս, ոչ պատիժս ժամանակեան՝ զի ոչ եթէ աչխարհ է ժամանակեան, այլ 'ի սատակումն յաւիտենից յերեսաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, այն որ անարգեցաւ և թշնամանեցաւն 'ի նոցանէ. և 'ի փառաց զօրութ̃ն նորա, այս ինքն 'ի փառաց անտի զոր զգեցեալ իցեն հրեշտակք և զօրութիւնք որ ընդ նմա են:

Այլ երբ լինիցի այս 'ի վերայ ամպարշտաց. 'ի ժամանակի՝ յորում գայցէ նա փառաւոր լինել 'ի մէջ սրբոց իւրոց, և սքանչելի լինել 'ի մէջ ամենայն հաւատացելոց իւրոց. այս ինքն յորժամ ծագեսցեն արդարքն իբրև զարեգակն յերկինս, և ընկալցին հաւատացեալք զսքանչելի հատուցումն իւրեանց, յայմիկ՝ զի եղեաք մեք ձեզ, յայն աւուր երևեալ լինիք դուք՝ եթէ հաւատարիմ եղև վկայութ̃ն մեր 'ի ձեզ ատեն: Վասն այսորիկ խնդրեմք մեք յաղօթս մեր վասն ձեր, զի զձեզ արժանի արասցէ ա̃ծ կոչմանն իւրոյ. զի աստ կոչեաց և հրաւիրեաց զձեզ մեւք, և կատարեսցէ 'ի վախճանի զամենայն հաճութ̃ի բարութ̃ց, և զամենայն գործ հաւատոց զօրութ̃բ ա̃յ. այս ինքն հատուսցէ ձեզ 'ի կատարածի, ոչ փոխանակ գործոյն հաւատոց ձերոց միայն, այլ և փոխանակ բարութ̃ն հաճութ̃ն ձերոյ. թէպէտ չեղերուք բաւական վասն տկարութ̃ն ձերոյ կատարել զնոսա արդեամբք: Որպէս զի փառաւոր լիցի անուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի ձեզ և անդ, որպէս և աստ. և մեք փառաւորք լիցուք ընթացիւք ձերովք ըստ շնորհաց ա̃յ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ կոչեցին զմեզ և զօրացուցին զմեզ քարոզել հեթանոսաց:

## ԳԼՈՒԽ Բ

ԱՅԼ վասն գալստեան տեառն մերոյ վասն որոյ դուք աշխատեալ էք, և վասն ժողովելոյ մերոյ հաւատացելոցս՝ թէ երբ ժողովիմք առ նա, մի վաղվաղակի ինչ խռովեսջիք դուք 'ի միտս ձեր 'ի սուտ պատմութեանց անտի զոր սփռեն 'ի լսելիս ականջաց ձերոց. և մի պղտորիջիք ինչ 'ի մի հոգի. այս ինքն մի 'ի սուտ տեսլեանց զոր ցուցանեն ձեզ, և ոչ յարմարեալ և իմաստնոյ բանի զոր ասեն ձեզ, և մի 'ի թղթոց որ սուտ իցեն՝ իբրու չէր գրեալ մեր՝ հաւատացուցանէին զձեզ, իբրու այն թէ 'ի մէնջ իցեն։ Արդ մի ոք զձեզ խաբիցէ միով իւիք յայսց նմանութեանց, և կարծիցէք թէ եկեալ հասեալ իցէ օր տեառն մերոյ. զի եթէ ոչ նախ եկեսցէ ոչ մի 'ի մարգարէից անտի նորա, կամ բազմութի առաքելոց նորա՝ այն որ գալոցն են առաջի նորին ապստամբողին, այլ մինչև եղիցի սպառումն մարգարէիցն և առաքելոց նորա՝ որ առաքինն առաջի նորա, և եկեսցէ զկնի նոցա ինքն գլխովին ապստամբն, և յայտնեսցի մարդն մեղաց՝ որդին կորստեան, և ապա լինի գալուստն։

Այլ ապստամբ՝ զի կարդաց զնա, զի ցուցցէ թէ ապստամբելով ապստամբեաց նա. և յորժամ կամեցաւ և վասն որոյ կամեցաւն՝ ապստամբեաց։ Եւ զի կոչեաց զնա մարդ մեղաց, զի ցուցցէ և յայտ արասցէ՝ եթէ մարդով գայ նա, և ոչ 'ի կերպարանս մարդոյ. քանզի գալստեան տեառն մերոյ նմանի նա. 'ի ձեռն մարդոյ գայ, ոչ 'ի հեթանոսաց, այլ 'ի ժողովրդենէ անտի և յազգէ Յուդայ. և ոչ անթլփատութբ, այլ թլփատութբ. զի 'ի պատճառս ազգին իւրոյ և թլփատութեն գերեսցէ նա զժողովուրդն, այն որ այսօրինակ իսկ գալ հայէին նմա։ Եւ զի կոչեաց զնա դարձեալ որդի կորստեան, զնոյն իսկ ըղմարդն կոչէ որդի կորստեան. փոխանակ զի զօրացաւ նա կոչել որդի գտիչ հեթանոսաց, և կոչեաց զնա որդի կորստեան. այս ինքն որդի սատանայի կորուսչի։ Այն որ հակառակորդ է. այս ինքն վերնոց և ներք-

նոց և տեառն ամենեցունց. այն, ասէ, որ հպարտացեալն է ոչ 'ի վերայ այ, այլ 'ի վերայ ամենայնի, որ անուանեալ լինի իբրև ած կամ պաշտօն ինչ: Պատուէ նա զած, զի յինքն ապաւինեսցէ զխաչահանուանն. և ստգտանէ և գարշի զամենայն որ միանգամ անուանեալ կոչի ած և պաշտօն ինչ, զի գողասցի նա զմիտս ճշմարտաց: Այսպէս գայ և մտանէ 'ի տաճար անդր այ նստել. այս ինքն 'ի ներքս յեկեղեցի այ. զի ոչ խոտորի նա 'ի մի տուն ուրուք յաղանդոցն հերձուածոց՝ թէ գուցէ յայտնեսցի նա. այլ զամենայն պաշտամունս խոտէ անարգէ, զի զեկեղեցի կարող եղիցի նա գերել. այս ինքն զի գայ մտանէ 'ի տաճար անդր այ՝ նստել և երևեցուցանել զանձն իւր իբրև զած: Որով երևեցուցանէ զանձն իւր թէ ած ճշմարիտ է: Առաւել քան երևեցուցանել փառօքն զոր զգեցեալն է, և շքովն զոր ունի, թշնամութեամբն զոր ունի նա ընդ աղանդս հերձուածոց: Եւ զի ոչ խոտորի նա 'ի մի ուրուք վրան հերձուածոցն, և սիրովն զոր ինչ ունի նա ընդ մանկունս եկեղեցւոյ՝ զի զնոսա կարծեցուցանէ թէ սիրէ իբրև ճշմարիտս, և 'ի տաճարն նոցա խոտորի նստել իբրև 'ի տաճար ճշմարտութեան երևեցուցանել զանձնն թէ ած է: Ստգտանէ նա զկեղծաւորութիւն յարուեստագիտութիւն, և զգենու զկերպարանս ճշմարտութեան նենգութբ. զի այսպէս խորամանկի նա և կեղծաւորի, զի զժողովուրդն մարմնաւոր իրօքն գերեսցէ, և զեկեղեցի կերպարանօք ճշմարտութեան վարեսցէ:

Ո՞չ յիշէք դուք, ասէ. մինչ դեռ առ ձեզն էի իսկ, ասէ, զայս բանս խօսէի ընդ ձեզ: Արդ հայեաց դու և տես, զի բազում ժամանակք էին թեսաղոնիկեցւոցն զի աշակերտեալ էին այսու բանիւք: Եւ արդ դուք, ասէ, ինքնին գիտէք որ առաջիդ կայ, զի յայտնելոց է նա յիւրում ժամանակի անդ. այս ինքն վի զօրացեալ կայր առաքելութիւն, և մտանելոց է զկնի նորա վարդապետութիւն մինչև յօրն՝ յորում յայտնելոց է Որդի 'ի ժամանակի իւրում: Զի խորհուրդն անօրէնութեան ահա աւադիկ կանխեաց վաղահաս եղև յառաջագոյն. և իբրև ցարդ ևս վարդապետութեան չէ մտեալ, և առաքելութեան ցարդ ևս

զժամանակ իւր չէ կատարեալ, արդէն համարձակեցուանա զօրանալ. բայց ցայն վայր՝ եթէ ոչ որ առաջիդ կայ՝ բարձցի 'ի միջոյ, անօրէնն ոչ յայտնի. որպէս փութայր գալ տէր մեր դատել զամենայն հեթանոսս. իբրու ցարդ հեթանոսաց ոչ է աւետարանեալ. նա և առաջին պաշտամանն զկատարած չև է առեալ, եթէ տաճարն եւս կանգուն է, և զոհք եւս մատչին, և թլփատութի̃ եւս խաղայ. և եկեղեցի ցարդ չև է շինեալ. քանզի և ինքնին իսկ առաքեալքն մըտանէին 'ի տաճարն յաղօթս կալ, թէպէտ և 'ի վերնատունն գային և կծանէին զհացն:

Արդ եթէ ինքն տաճարն պաշտամամբ իւրով զարդարեալ կայր, իբրև այն թէ ոչ է սկսեալ եկեղեցւոյ իբրև սկսեալ է. զի 'ի խափանել տանն այնորիկ և 'ի կատարել սպասու պաշտաման նորին՝ լինի սկիզբն քարոզութե̃ աւետարանի: Արդ եթէ աւետարանն որ ոչ է եկեալ, քանզի պաշտօնն հին ցարդ եւս ունի, զի՞արդ մինչ չև նորոյն քարոզեալ և հնոյն լռեալ և դադարեալ՝ յայտնի նա խնդրել զվրէժ յայնցանէ՝ որ ոչն հնազանդեցան, իբրու ցարդ եւս ոչ աւետարանեցան: Եւ ո՞ւր է այն զի ասացեալ է՝ եթէ ելէք ընդ ամենայն հեթանոսս և աշակերտեցէք. կամ այն՝ զի ասէ, նախ քարոզեսցի. այս ինքն յառաջ քան ըզյայտնել Նեռինն քարոզեսցի աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ: Արդ եթէ ոչ խափանի հին պաշտօնդ որ այժմդ իսկ ունի՝ 'ի ձեռն կործանման քաղաքին, որ պատրաստեալ իսկ է, և եթէ ոչ ամփոփի դարձեալ առաքելութի̃ որ այժմդ իսկ քարոզէ, և մտանէ զկնի նորա վարդապետութիդ, ոչ գայ օրն տեառն մերոյ, այն որ մոլար խաբեբեայքդ եկեալ են այսօր քարոզեն ձեզ զնա: Այլ որպէս յայտ էր ժամանակ հնոյն, և ոչ անց մարգարէութին և ոչ հուրն և ոչ զոհքն և ոչ եղջեւրն օծմանն մինչև եկն Քրիստոս, սոյնպէս ոչ յապաղի ժամանակն յումեքէ՝ որ տուեալ է քարոզութե̃ նորոյն, եթէ ոչ կատարի որպէս և կատարի ժամանակ առաջնոյն: Արդ յորժամ կատարեսցէ առաքելութի̃ զանհնազանդ իշխանութին զոր առ նա 'ի ձեռն բանին զոր ասէ՝ ելէք ընդ ամենայն հեթանոսս, և մնցէ վարդապետութին

և կատարեսցի և նորա եւս ժամանակք, և կատարեսցին մարդիկ քարոզութեան առաքելոց և վարդապետութեան քահանայից, և ապա լինի տուեալ տեղի ապստամբողին գալ 'ի քննութիւն հանդիսի մարդկան:

Այլ ոչ ընդերկարեն ինչ փորձանքն նորա. քանզի նոյնժամայն զկնի նորա յայտնի տէրն մեր, զի մի թափուր արասցէ զերկիր զօրութեամբք իւրովք և նշանօք իւրովք և մեքենայիւք արուեստագիտութեան իւրով և յընտրելոց և յարդարոց: Քանզի ինքն տէր մեր սատակէ զնա յայտնութեամբ գալստեան իւրոյ: Քանզի գալուստ նորա ամենայն զօրութեամբք և նշանօք և պէսպէս փորձանօք ստութեան: Այլ յորժամ ասէ Առաքեալ՝ ամենայն զօրութեամբք և նշանօք գայ, մի ոք կարծիցէ եթէ իցէ այն ինչ՝ զոր ոչ գործիցէ նա պէսպէս նշանօք[1] կեղծաւորութեան և ստութեան որպէս կախարդքն եգիպտացւոց. և աւելի քան զնոսա ցուցանէ: Եւ ամենայն խաբէութեամբ անօրէնութեան գայ՝ կորուսանել և սատակել ոչ զհաւատացեալս, զի ժամանէ նոցա գալուստն բարերարին, այլ զայնոսիկ՝ որ ոչն ընկալան զբանն ճշմարտութեան. այս ինքն զխաչահանուսն, զի ոչ հաճեցան նոքա ընդունել զաւետարանն գտիչ կորուսելոց: Վասն այսորիկ ասէ. «Առաքեսցէ 'ի վերայ նոցա Աստուած զմոլար զօրութիւն, զի հաւատասցեն նոքա 'ի ստութիւն անդր». այս ինքն թողլ տայցէ նմա Աստուած գալ այնմիկ՝ որում հայէինն իսկ: Եւ զի ոչ հաւատացին նոքա ճշմարտին՝ զի ապրեսցին, հաւատան նոքա ստոյն՝ զի կորիցեն: Ոչ եթէ 'ի գալուստ նորա կորնչին խաչահանուքն՝ թէ արգելցէ և մի եկեսցէ նա. զի յառաջ քան զգալուստն կորուսեալ էին նոքա: Քանզի յայն որ եկն 'ի փրկութիւն աշխարհի՝ հայհոյելով հայհոյէին նոքա, ստգտեալ դսրովեցին նոքա՝ թէ զորպիսի՞ 'ի խաչ հանին, կամ զո՞ր ընկալան: Առաքի նոցա անօրէնն, ոչ զի բռնադատեսցին և հաւատասցեն 'ի նա, այլ եթէ հաճեսցին և հաւատասցեն՝ կորիցեն: Արդ դսրովին նոքա՝ զի թողին զզօրութիւն ճշմարտութեան, և աշակերտեցան նշանացն ստութեան. թողին նոքա զայն՝ որում մարգարէքն ա-

1 Ցօրինակին նշանօք:

մեռնելքն վկայեցին վասն գալստեան նորա, և ընթացան ապաւինեցան նոքա յայն՝ զի ոչ Մովսէս երբեք յիշեաց զնա, և ոչ մի ոք 'ի մարգարէիցն գրեաց վասն նորա ։

Այլ մեք պարտիմք գոհանալ զԱյ յամենայն ժամ վասն ձեր, զի 'ի փրկութիւն կենաց ընտրեաց զձեզ. և վկայէ սրբութիւն Հոգւոյն՝ որ 'ի ջուրց անտի զգեցարուք դուք, և հաւատքն ճշմարտութեան զոր ունիք դուք ։ Յայսմիկ իսկ կոչեաց զձեզ աւետարանաւն մերով 'ի ժողով փառաց նորա. այս ինքն 'ի ժողովն յետին, ուր ժողովին արդարքն յամենայն կողմանց յաւուրն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Արդ հաստատուն կացէք, պինդ կալարուք զպատուիրանն ըզվարդապետութիւն զոր ուսարուք 'ի մէնջ եթէ բանիւք՝ յորժամ մերձ իցեմք, և եթէ թղթովք մերովք զոր գրեցաք՝ յորժամ հեռի իցեմք ։ Այլ ինքն Տէր մեր Յիսուս Քրիստոս, և Ած Հայր մեր՝ որ սիրեաց զմեզ և ետ մեզ մխիթարութիւն յաւիտենից, այս ինքն փոխանակ զոհիցն ժամանակեան՝ որ տուան առաջնոցն և անցին, իսկ մխիթարութիւն փոխանակ զոհիցն 'ի պաշտօն յաւիտենից տայ մեզ ։ Զի թէպէտ և գալուստն առաջին խափանեաց զպատարագսն առաջինս, այլ պատարագն մեր՝ որ նա ինքն է մխիթարութիւն մեր՝ և ոչ 'ի գալստեան անդր երկրորդում խափանի նա. զի ինքն իսկ գալուստն քան զայն ինչ որպէս իցեն, նա առաւել ևս առաւելու զնա ։ Եւ նա մեզ և յոյս բարեաց, զի նովաւ մխիթարեսցէ զսիրտս մեր 'ի տրտմութենէ անտի հալածչացն ։

## ԳԼՈՒԽ Գ

ՅԻՇԵՑԷՔ զմեզ յաղօթս ձեր, եղբարք. զի բանն Տն ընթանայցէ յընդունելիս իւր, և փառաւոր լինիցի գործովք աշակերտաց իւրոց յամենայն տեղիս, որպէս և առ ձեզ իսկ ։ Եւ զի ապրեսցուք մեք յանօրէն և յանպատապարան մարդկանէ, այս ինքն 'ի հալածչաց և 'ի կեղծաւորաց. զի ոչ եթէ ամենեցուն են հաւատք. Թէպէտ և մեք սիրով մերով ամենայն

ումեք քարոզել փութամք. և տէր ուղղեսցէ զսիրտս ձեր 'ի հոգւոցդ յայդցանէ և յամենայն ցանկութեանց սիրոյն այ ։ Պատուիրեմք ձեզ, եղբարք, որպէս և առաքեալք Քրիստոսի, խորշել ձեզ յամենայն յեղբօրէ՝ որ ստահակս գնայցեն. որպէս և պարտ է նմանել ձեզ մեզ, զի ոչ երբէք ստահակեցաք մեք առ ձեզ, և ոչ ձրի երբէք հաց կերաք մեք յումեքէ. իբրու զի թէ ոչ ունէաք իշխանութիւն ինչ այսպիսի՝ զի ջանայաքն և վաստակէաք, այլ զի զանձինս մեր օրինակ արասցուք ձեզ, զի և դուք մեզ նմանող եղիջիք ։ Արդ եթէ նմանութիւն իցէ՝ և եղաք, և եթէ բանիւք՝ և ասացաք, և եթէ Թղթովք իցէ՝ և առաքեցաք, եթէ որ ոչն կամիցի ոք գործել, և կերիցէ մի ։ Զի լուաք մեք այժմիկ՝ եթէ ոմանք ստահակութեամբ գնան 'ի միջի ձերում, և գործ ինչ ոչ գործեն. այլ զկնի են խորամանկութեան և դատարկութեան. այն զի ընկերաց իւրեանց վնաս են, և զանձինս իւրեանց անչափ կորուսանեն ։ Այնպիսեացն պատուէր մի տամք և աղաչեմք՝ զի հանդարտութեամբ գործեսցեն, և զիւրեանց հաց կերիցեն ։ Յայսմանէ զի ասաց՝ բայ հանդարտութեամբ գործիցեն, 'ի նմանէ կարծեցան թէ իցեն, զի նոքա քարոզէին վասն աւուրն տեառն մերոյ՝ թէ հասեալ է ։ Զի՞նչ, ասեն, գործեսցուք, զի եկեալ հասեալ է աւասիկ գալուստն տեառն. հանդերձ այնուիկ՝ զի ինքեանք ոչ գործէին, այլ և զայլս ևս 'ի գործոյ յապաղեցուցանէին ։

ԱՅԼ դուք, եղբարք, մի ձանձրասջիք զբարիս գործել առ որում արժանին իցէ ։ Ապա եթէ ոք յայսցանէ ոչ հնազանդեսցի բանիս մերում, նշանակեսջիք զնա, և մի խառնակ լինիջիք, զի նա յամօթ լիցի ։ Բայց մի իբրև զթշնամի համարեսջիք զնա, զի մի զրկեալ լինիցի նա յօգտութենէ՝ որ տայ նմա ստանալ մերձաւոր օգտակար. այլ խրատեսջիք դուք զնա որպէս եղբայր, իբրև զանդամ մի հատեալ ընկեցեալ 'ի կատարեալ մարմնոյ ։ Այլ ինքն տէր խաղաղութեան տացէ ձեզ խաղաղութիւն յամենայն ժամ յամենայնի. այս ինքն զոր միանգամ առէք դուք և առնէք սիրով, եղիցին երկոքին ։ Եւ քանզի գրեցին նոքա Թուղթս յանուն իմ, և ընթերցան ա-

ռաջի ձեր, զողջոյնս զայս ձեռին իմոյ Պաւղոսի գրեալ է. և ամենայն թղթոց իմոց զայս նշանակ գտնեմ ես։ Եւ արդ այսուհետև զամենայն թուղթս զոր բերեն առ ձեզ, և այս նշանակ չիցէ 'ի նոսա, աւելորդք և անպէտք համարեալ լիցին ձեզ։

# ԱՌ ՀԵԲՐԱՅԵՑԻՍ

Ի ՍԿԶԲԱՆ իսկ թղթոյս այսորիկ ծուփ և խռնդիր անկաւ մեզ՝ գիտել ճանաչել թէ վասն էր որպէս յամենայն 'ի թուղթս իւր՝ ոչ գրեաց զանուն իւր Պաւղոս 'ի թղթիս յայսմիկ ։ Այլ են ոմանք որ ասեն՝ թէ բնաւ ամենևին իսկ չէ գրեալ զթուղթս զայս Պաւղոսի . մի՝ վասն անուան իւրոյ՝ զի չէ գրեալ 'ի սմա, որպէս և յայլ ընկերս իւր . և երկու՝ զի և ոչ ինքն իսկ տիպք կերպարանաց սորին թղթոյ նման ինչ է ընկերաց իւրոց ։ Արդ վասն տպոց կերպարանաց՝ զի նման է Կղեմենտեայ, ասեն թէ Կղեմենտեայ է թուղթս այս, և չէ Պաւղոսի ։ Իսկ այլք ասեն Պաւղոսի իսկ գրեալ է . և վասն ատելութեան թշնամութե՟ Հրէիցն զոր ունէին առ նա, ծածկեաց և թագոյց զանուն իւր՝ թէ գուցէ անուն գրեալ 'ի սկիզբն թղթոյն արգելցէ զնոսա և յընթեռնլոյ, և զլացեալ զրկեսցին նոքա 'ի մեծ օգտութենէ անտի՝ որ ծածկեալ կայր հաւանութիւք լցեալ թուղթն ։ Ոմանք իսկ այսոքիկ ասեն՝ թէ հեբրայեցերէն գրեաց զնա և ոչ յունարէն . և վասն զի հան զնա Կղեմենտես 'ի հեբրայեցւոց անտի 'ի յոյն անդր, 'ի ձեռն տպոց կերպարանաց բանիցն կարգելոյ՝ Կղեմենտեայ կարծեցաւ թէ իցէ այս, իբր ոչ էր նորա ։

Եթէ վասն էր ոչ գրեաց զանուն իւր 'ի թղթի աստ՝ ընկերաց իւրեանց հաւասարեսցին, այն որ ասենն՝ թէ վասն թշնամութե՟ն հեբրայեցւոցն զոր ունէին առ նա՝ ոչ գրեաց նա, այլ ես ասեմ՝ թէ երկու բանիւք զոր գրեաց Պաւղոս 'ի կատարածի թղթիս այսորիկ, լուծեալ լինին երկոքին կարծիքն՝ որ եղեն 'ի վերայ սկզբան թղթոյս . յայնմիկ՝ զի գրեաց նա՝ թէ դուք ինքնին ճանաչէք զեղբայր ձեր զՏիմոթէոս,

զի առաքեցի ես զնա զի վաղվաղակի եկեսցէ առ ձեզ. և յայնմիկ՝ զի յաւել ես ասաց միանգամ և երկիցս՝ և եթէ կանխագոյն եկեսցէ, և ես նովաւ հանդերձ վաղվաղակի եկից: Յայտ է եթէ ծանօթից իւրոց ետ տանել զնա. և թէ ծանօթից իւրոց տարեալ է զսա, խնդրեսցուք 'ի վերայ հասցուք՝ թէ վասն որ թագոյց զանունն իւր 'ի նոցանէն, իբր ոչ 'ի թուղթսն զոր գրեաց առ գաղատացիսն և առ կորընթացիս և առ ընկերս իւրեանց զոր տեսեալ էր նորա՝ արար զայս, և ոչ 'ի թուղթսն զոր գրեաց առ հռոմայեցիս և առ այլսն զոր ոչ էր տեսեալ նորա զնոսա՝ գործեաց նա իբրև զայս: Այլ թէպէտ կարճ 'ի կարճոյ համառօտ ցուցաք մեք՝ եթէ ծանօթից իւրոց ետ տանել զնա, զի դարձեալ յաւելցուք ցուցանել: Լուարուք 'ի նմին իսկ յԱռաքելոյ 'ի տեառնէ իմմէ 'ի գրել իւրում առ հեբրայեցիսն այսպէս. "Յիշեցէք դուք, ասէ, զաւուրսըն զառաջինս՝ յորում և մկրտեցայք. յորում բազում չարչարանաց և ճգնութեան համբերեք, մերթ նախատանաց և նեղութեան". և դարձեալ ասէ. "Եւ զյափշտակութիւն ընչից ձերոց խնդութեամբ ընկալարուք. քանզի յուսացեալ գիտէիք դուք՝ եթէ յերկինս մեծամեծս ևս քան զայն պատրաստեալ է ձեզ, որ կան և մնան մինչև յաւիտեան":

Արդ եթէ հեբրայեցւոցն որ աշակերտեցանն՝ գըրեաց զնա, և ոչ այնոցիկ՝ որ միտսն դառնութեան խաչահանուացն հաստատեալ կային՝ դրոշմեաց նա զանունն իւր, 'ի սկզբան թղթոյն որպէս յամենայն հեթանոսս ընդէ՞ր ոչ գրեաց զնա: Գուցէ արդեւք առաքեալքն ցայն վայր անդ էին. և վասն զի նոցա առեալ էր պատուէր վասն առաքելութեան թլփատութեան, որպէս և ինքն առ հրաման վասն առաքելութեան հեթանոսաց, վասն այսորիկ ոչ կամեցաւ նա սփռել զանունն առաքելութեան իւրոյ առ այնոսիկ. քանզի չէր նա առաքեալ առ նոսա: Քանզի և նոքա իսկ 'ի ճգնութեան մեծի կային և 'ի տագնապ մեծ վասն աւետարանին, զի դժուար և խիստ էր նոցա այն տաճար՝ զի կայր, և պաշտօնն պատարագաց՝ զի յօրինեալ էր և կարգեալ. և 'ի նեղուէ անտի և յափըշտակութենէ ընչից իւրեանց զոր համբերէին, փոյթ

յանձին կալաւ Առաքեալ անդուստ ՚ի նմին յօրինաց խափանել զքահանայութիւն և զպատարագս նոցա և զսպաս պաշտաման նոցա, այն զի յայնժամ ըմբռնեալ ունէին, և զանմեղութիւն մարդկան տեսլեամբ իւրեանց խաբէին։ Եւ քանզի գիտէր նա, թէպէտ այլովք իբրև զընկերս իւր էր, այլ բանիւք քան զընկերս իւր առաւել էր, թողու զանուն իւր, յղէ ըզվարդապետութիւն իւր։ Եւ զի անուամբն զոր թողու, երևեսցի խոնարհութիւն նորա. և վարդապետութեամբն զոր յղէ, յայտնեսցի հոգաբարձութիւն նորա։ Դարձեալ քանզի առաջնորդքն հեբրայեցւոց կատարեալք էին, բայց հիւանդացան հանդերձ աշակերտօքն իւրեանց. զոր օրինակ և ինքն Պաւղոս իսկ յերթալն իւրում անդր գործեաց զայն. քանզի սրբեցաւ նա և մատոյց պատարագ վասն սրբութեան իւրոյ, որպէս և ՚ի Գործս երկոտասան առաքելոցն ցուցանէ։

Արդ քանզի ետես Պաւղոս եթէ բռնադատեցին զնոսա աշակերտքն զվարդապետսն իւրեանց հիւանդանալ ընդ նոսա, թողու նա զվարդապետսն կատարեալս, և տայ տանել թուղթ թերի աշակերտացն նոցա։ Զոր օրինակ կարօտացաւ երբեմն ինքն Պաւղոս՝ եթէ թուղթ առաքելոցն յԵրուսաղէմ ՚ի ձեռն Յուդայի և Շիղայի՝ հեթանոսացն որ ՚ի թլփատելոց անտի պղտորեալ էին՝ առաքեսցի, սոյնպէս և նա գրեաց վասն աշակերտութեան առաքելոցն զայն ինչ զոր ինքեանք առաքեալքն յայտնապէս քարոզել և ասել յայնմ աշխարհի երկնչէին. ոչ եթէ ՚ի խաչահանուաց անտի երկնչէին, այլ յաշակերտութենէ անտի իւրեանց խղճէին և խիթային թէ գուցէ ՚ի խափանել թլփատութեան՝ և ընկերաց իւրեանց զոր ուսուցանէին նոցա՝ ՚ի նորոյ աւետարանէ անտի օտարասցին նոքա, և լի կատարեալ անդրէն ՚ի նոյն օրէնս ամենայն իւիք դարձեալ գտցին։ Զի զոր օրինակ իբրև եկն Պետրոս յԱնտիոք, թող Պաւղոս զայնոսիկ որ ընդ նմա էին՝ որ ոչ ուղեղն գնային ՚ի ճշմարտութիւն աւետարանին, և դատել զՊետրոս՝ կատարել և ասել, զի Պետրոսիւ լուիցեն այնոքիկ՝ որ ընդ Պետրոսին շրջէին. արդ որպէս խափանեաց նա բանիւք զպահպանութիւնս օրինացն մինչ դեռ մտան

էր, կամեցաւ՝ զի և թղթովն իւրով հաճել և հաւա-
նեցուցանել զհեռաստանեայսն՝ որ բացագոյն էին 'ի
տեսլենէ անտի նորա ։ Զի թերևս յետ աշակերտե-
լոյն նոցա բանին նորա յԱնտիոք՝ մինչ մերձ էր, ա-
ռաքեաց հաճել զայնոսիկ՝ որ ցայնժամ վարդապե-
տացն իւրեանց չէին հնազանդեալ ։ Արդ թողու նա
զվարդապետսն և գրէ առ աշակերտսն, զի տալ պա-
տասխանի գոցի առաքելոցն՝ թէ ոչ առ մեզ գրեաց,
թէ զմտաւ ածել կարծիցէք թէ մեք գրեցաք նմա,
զի նա առ մեզ գրեսցէ ։ Եւ ծածկէ և թագուցանէ
զանուն իւր, մի՛ վասն խոնարհութեան իւրոյ, որպէս ա-
սացի ես. և երկու՝ զի մի՛ անուանեսցէ նա զանձն իւր
Առաքեալ 'ի վերայ հեբրայեցւոցն. զի ոչ նոքա նմա
աշակերտեալ էին, և ոչ նա առ նոսա առաքեալ էր ։
Արդ զի մի՛ այպն կատականաց արասցեն զնա, և խա-
չահանուքն ևս ասասցեն՝ թէ ահա և Շաւուղ ևս
յառաքեալս, թողու նա զանուն իւր, և գրէ յիտա-
ղայ այնոցիկ՝ զի և հրեշտակապետ զՈրդին զտէրն
հրեշտակաց համարէին նոքա. և ասէ 'ի սկիզբն թղ-
թոյ իւրոյ այսպէս ։

## ԳԼՈՒԽ Ա

Ի ԲԱԶՈՒՄ նշանս, ասէ, և 'ի բազում արուեստս
խօսեցաւ ա̄ծ նախ մարգարէիւք ընդ հարս մեր. այս
ինքն զի պէսպէս փոփոխելի օրինօք խօսեցաւ ընդ
Նոյի, ընդ Աբրահամու և ընդ Մովսէսի և ընդ ժո-
ղովրդեանն որ յանապատի. և 'ի նմանութիւս կերպս
կերպս ծերոյ և սկայի և այլոց ևս երևեցաւ նոցա ։
Եւ 'ի վախճան ժամանակացս այսոցիկ ոչ նմանութ̄բ
և ոչ 'ի ձեռն ծառայից, այլ 'ի ձեռն Որդւոյ իւրոյ
խօսեցաւ ընդ մեզ. զի զնա հաստատեաց ժառանգ
ամենայնի, այս ինքն վասն մարմնոյ. զի այն որ 'ի նը-
մանէ ամենայն և նովաւ ամենայն, ոչ եթէ հաստա-
տելով հաստատեալ լինէր նա ժառանգ ամենայնի ։
Եւ նովաւ, ասէ, արար զաշխարհս ամենայն. այս
ինքն զերկոսին աշխարհս ։ Եւ նա ինքն է ճաճանչ
լուսոյ փառաց իւրոց. այս զի գործովք Որդւոյ իբրև

լուսով երևեցան մեզ առաւելութիւնք փառացն Հօր ։ Եւ կերպարանք մեծութեանց նորա . այս ինքն համեմատ մեծութեանց նորա ։ Եւ կալեալ զամենայն զօրութ՟ բանիւ իւրով . այս զի զամենայն հեթանոսս հնազանդէ զօրութի՟ բանի նորա ։ Եւ 'ի ձեռն նորա արար սրբութի՟ քաւութե՟ մեղաց . 'ի ձեռն Ջուրցն մկրտութե՟ ։ Եւ նստաւ ընդ աջմէ փառացն մեծութեանցն . վասն մարմնոյ զոր զգեցաւն ։ Եւ եթէ այնչափ առաւել եղև նա քան զհրեշտակս այսու էին զորս համարեցայս ես , որչափ ևս լաւ ևս քան զնոսա անուն ժառանգեաց ։ Այն է զոր ասաց . "Ետ նմա անուն , որ լաւ է քան զամենայն անուն ,, ։

Յո՞ երբէք 'ի հրեշտակաց ասաց . Որդի իմ ես դու ։ Զի թէպէտ և մարդկան ասացաւ , քանզի վըկայ էր վասն նոցա բնութիւն իւրեանց եթէ ոչ էին նոքա որդիք բնութ՟ այլ շնորհաց, զի ոչ ումեք 'ի հրեշտակաց ասացաւ՝ թէ ես եղէց նմա Հայր , և նա եղիցի իմ Որդի՛ ։ Եւ ոչ ումեք 'ի մարդկանէ աւետարանեցաւ՝ թէ երկիր պագցեն նմա հրեշտակք ա՟յ . զի թէպէտ և մարդիկ զընկերս իւրեանց հնազանդեսցեն , սակայն հրեշտակք զմարդիկ ոչ երբէք հնազանդեսցեն ։ Ոչ եթէ զի հրեշտակք չեն արարեալք . "Արար , ասէ , զհրեշտակս իւր հոգիս և զպաշտօնեայս իւր 'ի հուր կիզելոյ ,, . այլ վասն Որդւոյ իւրոյ այպէս ասէ ա՟ծ , եթէ "Աթոռ քո յաւիտեան յաւիտենից ,, ։ Նայեաց դու՝ զի մինչ մարմինն էր , ոչ արար զնա աստ արարեալ . ոչ եթէ զի ոչ էր նա արարեալ , այլ թէ գուցէ արարչութիւն զոր առեալ լինի 'ի վերայ մարմնոյն՝ առնուցուն զայն արիանոսք 'ի վերայ բնութեան Որդւոյ ։ Գաւազան , ասէ , ուղղութ՟ Յուդայ , գաւազան արքայութե՟ քո . հանդերձ այլովք զոր ասաց Դաւիթ վասն մարմնոյն Քրիստոսի , երկրորդեաց Առաքեալ ։ Եւ դու , տէր , 'ի սկզբանէ զերկիր հաստատեցեր . երկինք , այս ինքն և հաստատութիւն՝ որ եղև յետ երկրի , ձեռագործք քո են ։ Այն զի ասէ . Նոքա անցանեն , այլովք հանդերձ , դարձեալ զնոյն զԴաւթայն ասացեալ երկրորդեաց Առաքեալ ։ Եթէ անցանելով անցանեն և գործք , ապա և դրախտն որ ոչ է անցանելոց՝ անցանէ ։ Այլ

'ի ձեռն դրախտին որ ոչն անցանէ, յայտ է՝ եթէ նորոգելով նորոգէին ընդ մեզ գործք, որպէս ոմանք ասեն. և ոչ եթէ անցանելով անցանեն, որպէս և այլքն ասեն։ Ցո՞, ասէ, 'ի հրեշտակաց ասաց՝ եթէ նիստ ընդ աջմէ իմմէ մինչև եդից զթշնամիս քո 'ի ներքոյ ոտից քոց։ Թէպէտ, ասէ, հոգիք են նոքա, սակայն հարկաւորք են, որ առաքին 'ի կատարածի 'ի սպաս պաշտաման վասն այնոցիկ՝ որ պատրաստեալն են ժառանգել զկեանս փրկութեան։

## ԳԼՈՒԽ Բ

ՎԱՍՆ այսորիկ պարտ է առաւել ևս ունկնդիր լինել մեզ բանիցն զոր լուաք յՈրդւոյ, զի մի նուազեսցուք և մեք ևս որպէս և առաջին ժողովուրդն։ Զի եթէ բանն որ խօսեցաւ 'ի Մովսէ՝ 'ի ձեռն հրեշտակին՝ ընկալան զպատիժս պատուհասից իւրեանց որ ոչն կամեցան ունկնդիր լինել, մեք ուստի՞ կարասցուք պարհել, եթէ հեղգացեալ գտցուք յայնպիսի 'ի կենաց անտի նորոց՝ որ ինքեանք իսկ սկիզբն արարին 'ի տեառնէ անտի հրեշտակաց խօսել ընդ մեզ, և հաստատեցին մեզ զայս՝ որք լուան 'ի նմանէ. այս ինքն են առաքեալքն։ Եւ վասն նոցին առաքելոց հաստատէ ինքն Որդի 'ի ձեռն զօրութեց և նշանաց՝ որ գործին 'ի ձեռս նոցա հանդերձ Հոգւոյն սրբով, որ բաշխեաց և ետ նոցա 'ի մասունս մասունս. այս ինքն 'ի ձեռն լեզուացն և թարգմանութե՛ լեզուացն և մարգարէութե՛, հանդերձ այլովքն պարգևովք՝ որ տուան նոցա 'ի ձեռն Հոգւոյն։ Զի ոչ եթէ հրեշտակաց երբէք հնազանդեցոյց զայն աշխարհ որ հանդերձեալն է՝ վասն որոյ և մեքս խօսիմք, այս ինքն քարոզեմք մեք. այլ Որդւոյ, որպէս և Դաւիթ վկայեաց վասն նորա և ասաց՝ եթէ "Զի՞նչ է մարդ՝ որ յայց ելեր նորա, և խոնարհ արարեր զնա փոքր մի քան զհրեշտակս„։ Արդ 'ի միտ առ դու՝ եթէ մարմնոյ հնազանդեցոյց զաշխարհն և ոչ թէ Որդւոյ, յայնմիկ ասէ զի զամենայն ինչ հնազանդ արար նմա, որպէս և ասաց Դաւիթ։ Արդ 'ի հնազանդեցու-

ցանել անդ զամենայն՝ ոչ ինչ թողաւ ՚ի մէջ եթէ ոչ հնազանդեցաւ նմա։ Բայց այժմիկ ոչ ևս տեսանեմք եթէ հնազանդեալ է նմա զամենայն. զայս վասն կռապաշտից և խաչահանուաց ասաց։

Նոյն փառօք և պատուով զոր ասաց Դաւիթ՝ եթէ պսակեաց, վասն զի ա̃ծ վասն ամենայն մարդկան ըզ-մահ ճաշակեաց. քանզի չէր ինչ հնար մեռանել անմահ բնութե̃ն, մարմնովն որով մեռաւ՝ իբրև այն թէ նա մեռաւ, իբր ոչ մեռաւ։ Արդ զի ոչ մեռաւ նա բնութ̃, զգեցաւ նա անուամբ զմահ վ̃ս սիրոյ մերոյ։ Զի վ̃ս բնութե̃ իւրոյ բարձրագոյն էր քան զմահ, մահ մեր-ձենալ ՚ի նա ոչ կարէր. զի վայել էր իսկ նմա որով ամենայն ինչ եղև, և ՚ի ձեռն նորա ամենայն ինչ հաստատեցաւ՝ զի նորա եղիցին յետ յարութե̃ն որդիք բազումք ՚ի փառս, այս ինքն յարքայութե̃ն. և նա եղիցի առաջնորդ կենաց նոցա յետ կենդանութե̃ն յարութե̃. և զի չարչարանօք իւրովք կատարեալս արասցէ զնոսա. զի ոչ յաւիտենից կան մնան նոքա ՚ի կալթն օրինաց։ Զի այն որ սրբէրն զնոսա և սրբէին ՚ի նմանէ, ՚ի միօջէ երկրաւոր բնութենէն։ Վասն այսորիկ ոչ ինչ ամօթ համարեցաւ եղբարս կոչել ըզ-նոսա. զի հարազատեցաւ նա նոցա ՚ի ձեռն մարմնոյն զոր առ ՚ի նոցանէ։ Բայց մի օտարասցի ձեզ այս, քանզի յառաջագոյն կանխեալ և ասացեալ մարգա-րէին վասն այսր ևս. "Պատմեցից, ասէ, զանուն քո եղբարց իմոց, և ՚ի մէջ եկեղեցւոյ օրհնեսցից զքեզ"։ Դարձեալ ասէ Եսայի. "Ահա աւասիկ ես և ման-կունք իմ զոր ետ ինձ ա̃ծ"։

Իսկ որովհետև մանկունք կոչեալք աւետօք հա-ւասարեցին մարմնոյն և արեան, այս ինքն ՚ի մեղս՝ որ առակեալ են ՚ի մարմին, ինքն իսկ մասն կալաւ ՚ի նմին չարչարանաց ըստ նմանութե̃ առ մարմին, և խառնեցաւ ընդ նոսա, զի եղիցի նա նոցա օրինակ բարեաց. և ապա ետ զանձն իւր ՚ի մահ, զի մահուն իւրով խափանեսցէ զայն՝ որ կրէր զիշխանութի̃ մա-հու յանձին իւրում. այս ինքն է սատանայ, այն որ ՚ի պատճառս կերակրոյն պտղոյ մոյծ մահ յարարածս։ Արդ մեռաւ նա, զի թափեսցէ մահուն իւրով զայ-նոսիկ՝ զի երկիւղն մահու որ ՚ի վերայ նոցա թագաւո-

րեալ էր, և յամենայն կեանս իւրեանց 'ի ծառայութիւն մահու յաւիտենից վտարանդի էին ։ Արդ ոչ եթէ 'ի հրեշտակաց առնուք դուք զայս դեղ կենաց՝ որ կեցուցանէ զձեզ, այլ 'ի զաւակէ անտի Աբրահամու, այն որ ասացաւն նմա. ասէ. "Ի զաւակէ քումմէ օրհնեսցին ամենայն հեթանոսք"։ Վասն այսորիկ պարտ իսկ էր նմա ամենայնիւ նմանել եղբարց իւրոց որդւոցն Աբրահամու. այս ինքն զի եղիցի նա ողորմած որպէս Մովսէսն, այն որ օրինակաւ նորին Որդւոյ մատնեաց զանձն իւր փոխանակ որդւոց ժողովրդեան իւրոյ. և զի եղիցի հաւատարիմ, և ապրեցուսցէ զամենայն հեթանոսս 'ի մահուանէ որպէս Ահարոն, զի արգել 'ի ձեռն խորհրդեանն նորա զմահ յորդւոց անտի ազգատոհմի իւրոյ բուրուառաւն զոր առ նա և կաց առաջի մահու ։ Քահանայապետ՝ զի կոչեաց զնա, ոչ վասն այնորիկ՝ որ 'ի ձեռն զոհիցն դառնան մեզ, որպէս և 'ի ձեռն Եղիազարու, այլ վասն այնորիկ՝ որ յայն հոգեպէս տուեալ լինելն մեզ. այս ինքն զի եղիցի նա քաւիչ 'ի ձեռն մկրտութեան, և ոչ 'ի ձեռն սրսկելոյն ։ Զի որով ինքն զի յանձն առ զչարչարանսն և զփորձանս, այս ինքն 'ի ձեռն բնակցին մերոյ՝ որ փորձեցաւն նովաւ, նովաւ օգնական լինի 'ի տկարութեան չարչարելոցն որ փորձինն. իբրու գիտէր նա 'ի տկարութենէ անտի մարմնոյ, իբրու այն թէ այժմ աւելի գիտաց նա՝ յորմէ հետէ առ նա զմարմինն ։

## ԳԼՈՒԽ Գ

ԱՅՍՈՒՀԵՏԵՒ, եղբարք սուրբք, սիրելիք, բաժանորդք կոչմանն, ոչ օրինացն որ տուան 'ի լեառն Սինէ, այլ կոչմանն երկնաւորի, այս ինքն աւետեացն որ յերկնից տուան Աբրահամու, հայեցարուք ընդ Առաքեալն, ընդ քահանայապետն խոստովանութեան մերոյ. այս ինքն 'ի ձեռն նորա մատչի խոստովանութիւն մեր, որպէս և 'ի ձեռն քահանայապետի ։ Եւ նա ինքն Յիսուս Քրիստոս, և հաւատարիմ եղև այնմիկ՝ որ արարն զնա քահանայապետ ոչ 'ի որդութիւն, այլ

'ի վերայ ամենայնի՝ որ իցէ յերկինս և յերկրի․ որպէս հաւատարիմ է Մովսէս յամենայն 'ի մտանելն 'ի ներս սրբոցն 'ի ներքինն ։ Այլ ոչ վասն զի ասացի՝ բամ որպէս Մովսէսն, կարծիցէք թէ իբր զՄովսէս է նա․ առաւել են փառքս այսր քահանայապետի քան ըզՄովսէսի, որչափ առաւել պատիւ ունիցի քան զտուն տանն առնելի ։ Սոյնպէս առաւել պատիւ է տեառնն և Որդւոյ քան Մովսէսի ծառայի․ զի ամենայն տուն որ լինի, 'ի մարդոյ լինի․ իսկ այն որ զՄովսէսն արար և զամենայն ինչ կատարեաց, Ած է ։ Այլ Մովսէս թէպէտ և հաւատարիմ եղև, իբրև պաշտօնեայ մի սպասաւոր հաւատարիմ եղև 'ի վերայ տանն ամենայնի․ զի եղիցի նա 'ի վկայութի բանիցս ասացելոցս յայսմ վայրի ։ Այլ Քս ոչ իբրև զՄովսէս ծառայ հաւատարիմ է․ այլ իբրև Որդի հաւատարիմ եղև, ոչ 'ի վերայ ներքին խորանին, այլ 'ի վերայ հոգւոց մարդկան․ զի մեք իսկ եմք տուն նորա ։ Բայց միայն թէ 'ի համարձակութի նորա հաստատուն կացցուք և ոչ ամաչեսցուք պարծանօքն յուսոյ նորա․ զի այն ինչ չարչարանքն նորա ։ Այլ մի՛ օտար թուեսցի ձեզ և այս, զի և վասն այսր ևս ասաց Հոգին․ “Այսօր թէ ձայնի նորա լուիցէք, մի՛ խստացուցանէք ըզսիրտս ձեր 'ի բարկացուցանել զնա․ որպէս փորձեցան հարքն ձեր յանապատի„, 'ի ժամանակի իբրև դարձան լրտեսքն 'ի դիտելոյ անտի զերկիրն․ և “Երդուայ՝ թէ մի՛ մտցեն 'ի հանգիստ իմ„ ։

Արդ տեսէք զգոյշ կացէք, գուցէ երբէք գտանիցի յումեք 'ի ձէնջ սիրտ չար իբրև 'ի նոսայն՝ որ ոչն մըտին․ և ապստամբ լինիջիք դուք թերահաւատութե ձերով յայ կենդանւոյ ։ Այլ մխիթարեցէք զսիրտս ձեր զամենայն աւուրս կենաց ձերոց, զի մի՛ խստանայցէք և անկանիցիք 'ի պատրանս խաբէութե մեղաց մարմնոյ ձերոյ ։ Զի բաժանակից եղեաք մեք Քսի 'ի սկզբանէ 'ի ձեռն կոչմանն․ բայց միայն կացցուք մնասցուք հաստատունք մինչ 'ի վախճան ժամանակի յուխտիս յայսմիկ ճշմարտի․ այն զի ամենայն ուխտք որ կացին և մնացին, զոյն իսկ զայս խորհրդովք և օրինակօք քարոզէին ։ “Մի՛, ասէ, խստացուցանէք զսիրտս ձեր„ ։ Եւ ո՞ իցեն նոքա․ այլ ոչ եթէ ամենե-

քին որ ելին յերկրէն եգիպտացւոց. զի մտին ոմանք 'ի նոցանէն, այս ինքն Յեսու և Քաղէբ ։ Եւ յո՞յր վերայ դարձեալ յաւել և բարկացաւ զքառասուն ամ. այլ 'ի վերայ այնոցիկ՝ որ ոչն հաւատացին Քաղէբայ և Յեսուսի, և ամպարշտեցան երկրպագութեամբ որթուն և այլովք բազմօք, և անկան ոսկերք նոցա յանապատի ։ Կամ ո՞ւմ երդուաւ՝ թէ մի մտցեն 'ի հանգիստ իւր. այնոցիկ՝ որք ոչն կամեցան անսալ Մովսէսի և Ահարոնի և Յեսուսի և Քաղէբայ, որ աղաչեցինն զնոսա ։ Եւ արդէն իսկ տեսանեմք մեք, զի ոչ կարացին մտանել յերկիրն զոր խոստացեալ էր նոցա. ոչ եթէ վ՟ն գործոց իւրեանց չարաց՝ իբրու չարք իսկ էին, այլ վ՟ն զի ոչ հաւատացին նոքա բանին ա՟յ ։

## ԳԼՈՒԽ Դ

Արդ և մեք երկիցուք, գուցէ գտանիցի ոք 'ի մեզ կարօտեալ. և յարհամարհել անդ մերում չմըտանիցեմք 'ի հանգիստն, ոչ յայն երկիրն պարգևաց, այլ 'ի ճշմարիտ հանգիստն ա՟յ. զի նա ինքն է արքայութի՟ն երկնից ։ Եւ մեք ընկալաք զաւետիսն մտանել 'ի ձեռն հաւատոցն և հոգեղէն գնացիւք յարքայութի՟ն. որպէս և նոքայն առին հրաման 'ի ձեռն օրինացն՝ թէ որով իւիք կարասցեն ժառանգել նոքա զայն երկիր պարգևաց ։ Այլ նոցա ոչ ինչ օգնեաց բանն օրինաց զոր լուան. քանզի չէր նա ամոքեալ 'ի հաւատսն լսողաց նոցա ։ Այլ մեք մտանեմք 'ի հանգիստ անդր հաւատացեալքս՝ որք հաւատացաք 'ի Ք՟ս և պարգևաց նորա ։ Այլ նոքա ոչ մտին 'ի հանգիստ անդր ըստ երդմանն որ եղև 'ի ձեռն Դաւթայ՝ եթէ “Երդուայ ես բարկութեամբ իմով թէ մի մտցեն 'ի հանգիստ իմ„ ։ Արդ եթէ շաբաթ հանգստեան է, այն որ աւետարանեցաւն յաւուրն եւթներորդի, և կատարեցան 'ի նմա գործք, ասաց՝ բայ “Հանգոյց ա՟ծ յաւուրն եւթներորդի զգործս ամենայն„ ։ Արդ եթէ ոչ հանգեան հեբրայեցիքն՝ որպէս և գործք՝ յաւուրն եւթներորդի, յայտ եղև թէ վասն նոցա ասաց՝ թէ “Մի մտցեն 'ի հանգիստ իմ„ ։ Այլ Ա-

ռաքեալ զշաբաթն հանգստեան օրինակ արար հանգըստեան ճշմարտի՝ որ յաւիտենից է ։ Վասն այսորիկ ասաց՝ բայ գոյ տեղի ոմանց մտանել անդր , ոչ յայն օրինակին՝ որ անցն , այլ յայս 'ի ճշմարիտս՝ որ աւետարանեցան հեբրայեցիք յօրինակ սորա և ոչ մտին , քանզի ոչ հաւատացին ։ Եթէ ոչ զի երկու շաբաթք էին , այս ինքն մի օրինակ , ճշմարիտ՝ որպէս և ասացի , դարձեալ և ընդէ՞ր այլ օր յայտ առնէ զայսօրն 'ի բերանն Դաւթի յետ այսչափ ժամանակաց տուեալ շաբաթուն առաջնոյ և ասէ . “Այսօր եթէ ձայնի նորա լուիցէք , մի՛ խստացուցանէք զսիրտս ձեր իբրև զայնոսիկ՝ որ յանապատին սատակեցան և ոչ մտին 'ի հանգիստն նորա „ ։ Զի եթէ զետեղեալ և հանգուցեալ էր զնոսա Յիշուայ որդւոյ Նաւեայ , որ ժառանգեցոյց նոցա զերկիրն , այլ ևս վասն այլոյ յաւուրն հանգստեան ինչ ոչ խօսէր ։ Եւ ահա հանգոյց զնոսա Յիսու , զի ժառանգեցոյց նոցա զերկիրն . այլ ոչ հանգեան 'ի նմա լի բովանդակ , որպէս ա՟ծն զի հանգեաւ 'ի գործոց անտի իւրոց լի կատարեալ . զի 'ի մէջ աշխատութեան մեծի և պատերազմաց անկեալ կային ։ Ապա եթէ այն հանգիստ չէր հանգիստ , զի պատերազմօքն և զիսու ևս զհանգստարարն նոցա աշխատ առնէր , ապա եթէ այդ այդպէս իցէ՝ կայ ևս պահի շաբաթն ա՟յ , այն որ հանգուցանէ զայնոսիկ՝ որ մտանեն 'ի նա , որպէս հանգեաւ ինքն ա՟ծ յիւրոց անտի՝ այս ինքն յա՟մ գործոց իւրոց զոր արար ։

Արդ մեք փութասցուք մտանել 'ի հանգիստ յայն , զի մի՛ 'ի նմին ոք օրինակի անհնազանդութե՟ և 'ի թերահաւատութե՟ գտցի , և ոչ մտանիցեմք ըստ նմանութե՟ դարուն՝ որ եղեալ էին յերկրէն եգիպտացւոց . զի հեստեցին յամառեցին և ոչ մտին 'ի շաբաթանդր օրինակաւ՝ որ կենդանի էր բանն ա՟յ , որ խօտացաւ զշաբաթն ճշմարիտ ։ Եւ այսպէս դարձեալ սուր և հատու է վրէժխնդրութե՟ն իւրով խնդրել պահանջել զամենայն որ միանգամ պաշտի 'ի միտս և 'ի խորհուրդս սրտի ։ Եւ չիք ինչ արարածք աներևոյթք՝ որ ծածկին 'ի նմանէ . զի մերկապարանոց կալոց են առաջի նորա 'ի ժամու անդ դատաստանին ամենայն ծածկեալք ։

Արդ ունիմք մեք քահանայապետ մի զՅիսուս Քրիստոս զՈրդի ա՟յ, որ չէ ինչ մարթ՝ թէ ոչ չարչարիցի նա վասն տկարութեա՟ մերոյ, յորժամ փորձիմք մեք այսուիկ. այս ինքն յորժամ պինդ ունիցիմք մեք զխոստովանութի՟ն նորա և ոչ շարժիցիմք. փորձեալ է նա ամենայն չարչարանօք մարմնոյն 'ի ձեռն մարմնոյ զոր առ: Արդ նմանեսցուք նմա, զի եղիցուք առանց մեղաց ըստ նմանութե՟ն նորա. որպէս զի մատիցուք մեք համարձակութ՟բ առաջի աթոռոյ շնորհաց նորա, այս ինքն 'ի ժամու անդ հատուցման: Առցուք 'ի նմանէն և զողորմութի՟ն, այս ինքն խնդրուածովք. զի եղիցին նոքա ընդ մեզ 'ի ժամ մարտի մերոյ ընդ սատանայի:

## ԳԼՈՒԽ Ե

Եւ յետ ասելոյ վասն շաբաթուն օրինակի, առնա դարձեալ ցուցանել՝ եթէ և քահանայք ժողովրդեանն 'ի ձեռն օրինակի Որդւոյ հաստատեալ կային: Զի ամենայն քահանայապետք, ասէ, որ 'ի մարդկանէ կացեալ լինին՝ այս ինքն ընտրեն և օծանեն զնա, վասն մարդկան գլուխ կան նոքա առ ա՟ծ. զի 'ի ձեռն նոցա եկեսցէ նոցա այն ինչ՝ որ յա՟յ տուեալ լինի նոցա. և զի մատուսցեն առաջի ա՟յ և զուխտս և զպատարագս՝ որ վասն մեղացն նոցա մատուցանէին: Եւ սակաւ ինչ ըստ իւրում տկարութե՟ ցաւէր նմա վասն մեղաց, քանզի և նոյն ինքն զմարմին մեղաց զգեցեալ էր: Եւ կարօտ էր նա, որպէս և ժողովուրդն, զի մատուսցէ նա պատարագ վասն անձին իւրոյ և մեղաց իւրոց: Այլ ոչ եթէ յափշտակութ՟բ ինչ առնա զքահանայապետութի՟ն. այլ որպէս Ահարոն 'ի ձեռն գաւազանին որ ծաղկեցաւ՝ ընտրեաց զնա ա՟ծ, նոյնպէս և Քրիստոս ոչ ընտրեաց զայս, այլ Դաւիթ կանխեաց յառաջագոյն և ասաց՝ եթէ «Որդի իմ ես դու, ես այսօր ծնայ զքեզ». և դարձեալ ասէ. «Դու ես քահանայ յաւիտեան ըստ նմանութե՟ Մելքիսեդեկի»: Եւ մինչ դեռ զմարմինն զգեցեալ էր՝ յաւուրս մարմնոյ իւրոյ, և հաս գիշերն յորում մատնեալ լինէր, աղօթս և պաղատանս արտասուօք և

ուժգին խնդրուածովք մատուցանէր[1] առ այն՝ որ կարօղն էր փրկել 'ի մահուանէ, և ընդունելի եղև նա աղօթիւք իւրովք, զիա՞րդ եղև ընդունելի՝ եթէ 'ի մահուանէ խնդրէր նա ապրել, զի ահա ոչ ապրեցաւ. կամք Հօրն իւրոյ զի կատարեսցին 'ի նմա՝ կամէր նա: Սովին իսկ այսուիկ յայտ եղև՝ թէ Որդի է նա Ա̃յ, զի զանձն իւր փոխանակ արարածոց վասն հանգստեան առաքչի իւրոյ տայր նա. և յայտնի եղև հնազանդութի̃ նորա 'ի ձեռաց այնոցիկ՝ ուստի չարչարեցաւն 'ի նոցանէ: Արդ եթէ խաչհանուքն նորա են վկայք ընդունելութե̃ նորա, եթէ այդ այդպէս է, մեռանել խնդրէր նա, և զի կամք Հօր իւրոյ եղիցին՝ աղաչէր նա:

Աղօթս դարձեալ ուժգին խնդրուածովք, զի մատոյց նա այնմիկ՝ որ կարող էրն փրկել զնա 'ի մահուանէ, ոչ եթէ զի ապրեսցի նա 'ի մահուանէ՝ խնդրէր նա յայն որ եկն 'ի մահ, և ոչ զի կենդանասցի նա յետ մահուան իւրոյ՝ աղաչէր նա, զի և այս յառաջագոյն իսկ խոստացեալ էր նմա. այլ վասն խաչհանուացն իւրոց, զի մի՛ մեռցին 'ի նա՝ աղաչէր նա: Եւ ընդունելի եղև նա աղօթիւք իւրովք. զի բացադուան, զի կեցցեն 'ի նա խաչահանուք նորա: Եւ այն որ զայս արար, այս ինքն այսպիսի խոնարհութի̃ և 'ի չարչարանս խոնարհեցաւ նա վասն սպանողաց իւրոց, Որդի է նա Ա̃յ. և յայտնի եղև ընդունելութի̃ նորա 'ի ձեռանէ այնոցիկ՝ ուստի չարչարեցաւն նա: Այս զի ոմանք 'ի սպանողաց անտի նորա դարձան, և ապաշխարութե̃ն իւրեանց եղեն աւետարանիչք յարութե̃ նորա: Զի թերևս և յանձն իւր իսկ հայէր Առաքեալ մինչ դեռ նա զայս 'ի վերայ ընկերաց իւրոց ասէր: Եւ այսպէս, ասէ, կատարեցաւ. այս ինքն այսու ամենայնիւ հնազանդութ̃ կատարեցաւ, և եղև նա մեզ կենսատու յաւիտենից փոխանակ Ադամայ՝ որ եղև մեզ անհնազանդութե̃ն իւրով մահատու: Այլ ոչ եթէ որպէս թագաւորեաց մահն Ադամայ 'ի վերայ այնոցիկ՝ որ ոչն յանցեան, այսպէս թագաւորեն կեանք բանի 'ի վերայ այնոցիկ՝ որ ոչն առ-

1 Ցօրինակին մատուցանել:

դարանեան. զի թէպէտ և տուիչ իցէ նա կենաց, այնոցիկ տայ՝ որ հնազանդինն, և ոչ եթէ այնոցիկ՝ որ ապստամբինն 'ի նմանէ ։ Այլ անուանեցաւ նա քահանայապետ, ոչ եթէ 'ի մարդկանէ, այլ յԱ̃յ. այլ ոչ եթէ ըստ նմանութե̃ Ահարոնի անուանեցաւ նա, այլ ըստ նմանութե̃ Մեղքիսեդեկի ։

Բազում բանք են մեզ վասն բանին Մեղքիսեդեկայ ցուցանել ձեզ. ոչ վասն դժուարապատմութե̃, և ոչ առ ոչ հասանելոյ, այլ վասն խօթամիտ լինելոյ լսելեաց ձերոց ։ Փոխանակ զի պարտ և պատշաճ էր թէ վարդապետք էիք վասն հնութե̃ ժամանակիս, և պիտոյ եղև ձեզ 'ի ժամանակ կատարման ձերոյ իբրև տղայոց 'ի վերստին ուսուցանել՝ թէ զինչ է սկիզբն բանին Ա̃յ. և եղերուք դուք տղայք, զի պիտոյ է ձեզ կաթն 'ի ժամանակի հաստատուն կերակրոյ ։ Զի ամենայն որում կաթն պիտոյ է 'ի կերակուր, այս ինքն որոյ յոյս ապաստանի իւրոյ յաւետիսն երկրաւորս օրինացն է, անփորձ է նա 'ի բանիցն արդարութե̃, այս ինքն խաչելութե̃ մարմնոյ մերոյ, որ նովաւ քաւոզի արդարութեան Ա̃յ ։ Այլ կատարելոցն է հաստատուն կերակուր. այս ինքն չարչարանքն՝ որ գրեալ են 'ի նոր աւետարան, այն որ վասն նոցա իսկ է ասացեալ՝ թէ „Պատրաստեցէք տեառն Ա̃յ ժողովուրդ կատարեալ„ ։ Որոց վասն չափոյն հաւատոյ ճաշակելիքն կերթ են. այս ինքն յանձանց իւրեանց, և ոչ յօրինաց անտի ընտրեն 'ի մէջ բարւոյն և չարի ։

ԳԼՈՒԽ Զ

ՔԱՆԶԻ թողէք դուք զբան առաջին Քրիստոսի, այն որ իբրև զկաթն ընկալարուք զնա ։ Քանզի ցարդ ևս ոչ եղև ձեզ հաճոյ կատարեալ լինել 'ի նմա, զի ոչ արդեւլայք դուք յօրինաւորաց անտի. քանզի և զվարդապետսն իսկ ձեր բռնադատեաց հիւանդութի̃ն տկարութե̃ ձերոյ հիւանդանալ նոցա ընդ ձեզ ։ Արդ եկայք և այժմիկ 'ի կատարեալ հաստատուն անդր հասցուք՝ որ քարոզի 'ի նորում անդ ։ Քանզի ոչ կարեմք մեք այլ հի̃մն արկանել ձեզ վերստին խորհրդոց՝

մի կատարեցան, և օրինակաց՝ որ սպառեցան. զի ոչ եթէ այլ խաչելութի կայցէ՝ որով քաւեսջիք նովաւ 'ի մեռելոտւոյ գործոյ անտի մեղաց, այն որ քաւեցայք մկրտուք ջուրքն: Ոչ այսուհետև դարձեալ պիտոյ է ձեզ քարոզել զհաւատսն զորս միանգամն քարոզեցաք ձեզ, և ոչ իջանել 'ի մկրտութիւն անդր զոր միանգամն առէք, և ոչ 'ի ձեռնադրութի քահանայից զոր ընկալայք, և ոչ զի քարոզեցից ձեզ յարութի կամ կեանք յաւիտենից՝ այն որ քարոզեցաւն իսկ ձեզ: Եթէ համարձակեսցէ, արասցուք զայս երկրորդումն. այլ ոչ համարձակէ հիւանդանալ, և կատարել այսոքիւմբք: Քանզի անհնարին է որ միանգամ մկրտեցան և ճաշակեցին 'ի պարգևաց անտի երկնաւորին դեղոյն կենաց զոր առին և ժառանգակիցք եղեն Հոգւոյն սրբոյ 'ի ձեռն պարգևաց Հոգւոյն զոր առին, և զգեղեցիկ բանին այ ճաշակս ճաշակեցան զաւետարանին նորոյ, և 'ի զօրութի հանդերձեալ ժամանակացն վառեցան, այս ինքն աւետիքն պատրաստեալք արդարոցն, և արդ կործանեսցին ևս միւսանգամ, վերստին նորոգեսցին 'ի ձեռն այլոյ մկրտութե յապաշխարութի. զի այնոքիկ՝ որ զերկուս մկրտութիւնս բերեն, զխաչելուն Որդւոյ այ և զխայտառականս նորա խնդրեն: Այլ խաչելութի եղև միանգամ, և այլ ոչ ևս լինի. և մկրտութն արդարացուցիչ տուաւ, և դարձեալ երկրորդումն մեղաւորի նա ոչ լինի տուեալ:

Ած նա առակ օրինակի բանին իւրում և ասէ, թէ զոր օրինակ անձրև՝ զի մի է առ երկիր գործուն և առ անգործ. զի որ գործեալն է, բերէ արդիւն շայեկան արդիւնարարաց, և ընդունի յետ արդեանն և օրհնութի. իսկ այն որ անգործն է, բերէ փուշ և տատասկ այնոցիկ՝ որ վասն նոցայն խոտի նա և անիծանի, և լինի վախճան կատարածի նորա այրումն: Այսպէս են և այնոքիկ՝ որ ընկալան զքաւութի մկրտութեն, և առին զմարմինն կենդանի. և եթէ կան և մնան յայն ինչ զոր առին՝ ընդունին զօրհնութի. այս ինքն զպարգևս աւետեացն: Իսկ այնոքիկ՝ որ յետ քաւութե իւրեանց և բաժանակից լինելոյ իւրեանց ընդ Հոգւոյն սրբոյ՝ թաւթաւին 'ի գործս չարութե,

այն որ առակեալն են 'ի փուշ և 'ի տատասկ, քանզի չիք այլ մկրտութի̄ երկրորդ՝ որ քաւէ զնոսա, լինի վախճան կատարածի նոցա այրումն։

Օկնի այսր զի ասաց Առաքեալ և երկեցոյց զնոսա՝ զի մի՛ մեղիցեն և կարօտասցին քաւութե̄ն, շրջեցաւ դարձեալ և քաջալերեաց զնոսա։ Զի եթէ այլ մկրտութի̄ քաւիչ չիք ձեր, գործքն ձեր և սէրն ձեր մկրտութի̄ մշտնջենաւոր են ձեզ։ Թէպէտ և այսպէս, ասէ, խօսիմք և փակեմք մեք զդուռն ողորմութե̄ ընդդէմ արդարոց՝ զի մի՛ մեղիցեն, սակայն ապաշխարողաց բաց կայ դուռն ողորմութե̄։ Զի ոչ եթէ անիրաւ ինչ է ա̄ծ մոռանալ զգործս ձեր. այս ինքն զտուրս ձեր և սէրն ձեր զոր ունիք դուք առ սուրբսն աղքատս՝ որ յԵրուսաղէմ։ Այլ այսպէս կամիմք մեք՝ թէ իւրաքանչիւր ցուցցէ 'ի ձէնջ զփոյթ յօժարութե̄ իւրոյ առաջի ընկերաց իւրոց. ոչ զի երեւեսցի նա ընկերաց, այլ զի քարոզեսցի քաջալերութի̄ն ձեր. զի վասն կատարեալ յուսոյն ակն ունիք դուք։ Եւ մինչ 'ի վախճան մի՛ հիւանդք երևեսջիք մտօք ձերովք 'ի մեղանչել վասն երկայն ժամանակի. այլ եղիջիք դուք նմանողք հարցն առաջնոց, այնոքիկ՝ որ հաւատովքն գործեցին, ոչ ունէին նոքա օրէնս քարոզիչս հանդերձելոցն առ յապա. և նոքա իսկ ընտրեցին զայն 'ի մտաց իւրեանց. և երկայնմտութե̄ք՝ որ մեծ էր քան զձերս, եղեն նոքա ժառանգաւորք այսր աւետեաց՝ որ ձեզս խոստացեալ է։ Երկայնմտութի̄ն ձեր եւթանասուն ամի է կամ ութսուն. իսկ նոցայն հարիւր և ութսուն ամի է։ Զի Աբրահամու յորժամ խոստացաւ ա̄ծ, քանզի այլ ոչ ինչ եւս գոյր մեծ երդնուլ նմա, երդուաւ յանձն իւր վասն պատարագին Աբրահամու և ասէ. "Յանձն իմ երդուայ, ասէ տէր, եթէ օրհնելով օրհնեցից զանզաւակութի̄դ քո, և բազմացուցանելով բազմացուցից զմիանձնութի̄դ քո"։ Եւ այսպէս երկայնամիտ եղև նա զհարիւր ամ, և հաս աւետեացն իւրոց։ Այլ որպէս մարդիկ որ ինչ 'ի վեր է քան զինքեանս՝ յայն երդնուն վասն ամենայն հակառակութե̄, խոնարհեցաւ և ա̄ծ, երդուաւ նոցա յանձն իւր։ Եւ վասն այսորիկ հաստատուն երդումն սովին իսկ այսու ճշմարիտ երդմամբս կամե-

ցաւ ա՟ծ ցուցանել ժառանգաւորաց աւետեաց՝ թէ աւետիքն նորա վասն երդման նորա ոչ փոխին ։ Եւ անսուտ երդումնն նորա եղեւ 'ի միջնորդութի՟ն , այս ինքն 'ի մէջ ա՟յ և հրեշտակին և Աբրահամու ։ Այլ երկու անշարժ իրօք անհնարին լիցի ստութի՟ն լինել յա՟յ . մի այս է զոր երդուաւն յանձն իւր , և երկու այն է զոր ասաց Դաւիթ՝ եթէ "Երդուաւ տէր և ոչ զեղջասցի՝ եթէ դու ես քահանայ յաւիտեան ըստ նմանութե՟ն Մելքիսեդեկի ,, ։ Եւ 'ի մեզ որ եղեաք ժառանգակիցք այսր աւետեաց , մխիթարութի՟ն հաստատութե՟ն եղիցի մեզ , որք ապաստանն եղեաք ամբառնալ ոչ յարդարութի՟ն ա՟յ , որպէս և ոչ առաջինքն , այլ ամրացեալ լիցուք մեք յողորմութի՟ն անդր նորա , և զգուշութե՟ հաստատեալ կացցուք 'ի նա . զի կորզեսցէ և հանցէ 'ի միջոյ չարեաց աշխարհիս այսորիկ , և հորդեսցէ մեզ ճանապարհ 'ի ներքին կողմն վարագուրին . ոչ 'ի սուրբս սրբոցն՝ ուր Մովսէսն մտանէր , այլ 'ի ներքին կողմն վարագուրին , յերկինս՝ ուր յառաջընթաց կայ կարապետն մեր՝ պնտեցաւ և մուտ Յիսուս Քրիստոս , և եղև քահանայ յաւիտենից . ոչ զի մատուցէ նա զոհս պատարագաց որպէս Ահարոնն , այլ զի մատուցէ զաղօթս ամենայն հեթանոսաց որպէս և Մելքիսեդեկն ։

## ԳԼՈՒԽ Է

ՔԱՆԶԻ է թարգմանութի՟ն անուան Մելքիսեդեկի՝ թագաւոր արդարութե՟ և թագաւոր խաղաղութե՟ ։ Ցուցանելով ցոյց Առաքեալ՝ զի և 'ի նոյն յանուն նորա խորհուրդ շնորհացն և արդարութե՟ն Որդւոյ՝ տեառն Մելքիսեդեկի՝ դրոշմեալ էին ։ Բայց այս Մելքիսեդեկս Շեմ որդի Նոյի էր , ասեն . և զի յաւուրս Աբրահամու և Սահակայ և Յակովբայ էր նա , ասեն , ահա գիրք ծննդոց ցուցանեն . և զի 'ի ժառանգութե՟ իւրում բնակեալ էր 'ի Շաղիմ , յայտ է 'ի բաժանից անտի տոհմիցն այնոցիկ՝ որ ժառանգեցին զերկիրն տանն Քամայ ։ Իսկ անհայր և անմայր և անազգ՝ ոչ եթէ ինքնին գլխովին Մելքի-

սեդեկ, այլ անուն Մելքիսեդեկի. զի ոչ անուն Մել-
քիսեդեկի և ոչ անունն Իսրայելի գրեցան յազգս.
Իսկ Ղեւեայ և Յակոբու գոյ հայր և մայր և սկիզբն
և կատարած, և գրեցան և յազգս. Իսկ անուն Մել-
քիսեդեկի և Իսրայելի մի յայսցանէ ոչ գոյր նոցա.
զի ա՟ծ փառաւորեաց զերկոսին զնոսա անուամբքն
երկոքումբքն՝ որ եդան 'ի նմանէ երկոցունց. Իսկ նը-
մանեալ է նա Որդւոյ ա՟յ քահանայութ՟ բն իւրով, զի
կացցէ մնասցէ յաւիտեան դարձեալ քահանայութ՟ն
Մելքիսեդեկի, ոչ եթէ 'ի Մելքիսեդեկ, այլ 'ի տէր
Մելքիսեդեկի.

Դարձեալ Առաքեալ մեծացուցանէ զքահանայ-
ութիւնն հեթանոսաց քան զժողովրդեանն յասելն
իւրում. տեսէք, ասէ, որչափ ոք էր սա՝ որում Աբ-
րահամ տասանորդս հանէր յամենայնէ՝ նահապետն
մեր. Այլ 'ի ձեռն Աբրահամու՝ որ տասանորդե-
ցաւն 'ի նմանէն, և տունն Ղեւեայ՝ որ ծնանելոցն էին
'ի նմանէ, տասանորդեցան նովաւ. Զի ղեւտացիքն
Թէպէտ և տասանորդեցին, ոչ եթէ զօտարս տասա-
նորդեցին. ինքեանք զինքեանս տասանորդեցին, զի
զեղբարս իւրեանց զորդիսն Աբրահամու տասանոր-
դէին. Իսկ այս որ ոչս է գրեալ յազգս ղեւտացւոց,
զի նմա տասանորդս ետ Աբրահամ, այն որ աւետիքն
քահանայութ՟ե, և զի 'ի նմա օրհնեսցին ամենայն
հեթանոսք՝ խոստացեալ էր նմա, զիա՞րդ լինէր նա
կարօտ օրհնութ՟ե առն անթլփատի. ո՞չ ահա սոյն իսկ
այս յայտ առնէ և ցուցանէ՝ եթէ ոչ զի խոնարհա-
գոյն էր Աբրահամ քան զՄելքիսեդեկ. օրհնեալ
'ի նմանէ նա ոչ ժտէր. Եւ աստ այժմիկ որդիք մահ-
կանացուք տասանորդս առնուն. սոյնպէս Մելքի-
սեդեկ մահկանացու էր, կենդանի էր յայնմ ժամա-
նակի վասն բանին վկայութ՟ե վասն Աբրահամու. այս-
ինքն վասն ճշմարիտ օրհնութ՟ե Մելքիսեդեկի՝ որ
կարգեցաւն 'ի զաւակն Աբրահամու. Արդ ասաց՝
բայ եթէ կատարումն քահանայութ՟ե 'ի տանէ ան-
տի ղեւտացւոց էր. զի ժողովուրդն յայն օրինադրե-
ցաւ, այս ինքն վասն նորա եդան օրէնք ժողովըր-
դեանն, զի՞նչ պիտոյ էր այլ քահանայ զոմն ուստեմն [1]

1 Յօրինակին տառք գրչաւ ուղղագրեալ առաջեկէն.

յարուցանել. ոչ ըստ նմանութեան Ահարոնին՝ որ էր նահապետն քահանայիցն նոցա, այլ ըստ նմանութեան Մելքիսեդեկի անթլփատի ։

Այլ իբրեւ եցոյց նա վասն փոփոխմանն որ լինելոց էր քահանայութեան, առ նա ցուցանել՝ եթէ ընդ նմին ընդ փոփոխումն քահանայութեան փոփոխեցան և օրէնքն ։ Այլ զոր օրինակ քահանայութիւն փոփոխեցաւ, հարկ է այսուհետեւ և օրինացն փոփոխումն լինել ։ Զի՞նչ պիտոյ են զոհաւոր օրէնքն, եթէ զոհքն և ինքն իսկ գլխովին քահանայութիւնն խափանեցան։ Զոր օրինակ Մելքիսեդեկ՝ յորոյ վերայ բանքս այս կան, թէպէտ և յազգէ անտի է, այլ նա յայլմէ ազգէ երեւեցաւ՝ յորմէ ոչ ոք երբէք այլ ոք մասն կալաւ 'ի սեղանոյ անտի պաշտել. և այն որ առ զքահանայութիւնն նորա՝ ոչ եթէ յղեւտացւոց անտի էր, զի մի՛ օտարացի նա 'ի Մելքիսեդեկէ՝ որ նմանեալ լինէր նմա ։ Քանզի յառաջագոյն յայտ իսկ էր՝ եթէ 'ի Յուդայ ծագելոց իսկ էր տէր մեր Յիսուս Քրիստոս, յորում ազգի երբէք վասն քահանայութեան Մովսէս ոչ ինչ ճառեաց ։ Զի վասն այսր իսկ առաւել բորբոքեցաւ Ոզիա արքայ. փոխանակ զի կամեցաւ անցուցանել նովաւ ըզքահանայութիւնն, և տանել 'ի տուն Յուդայ յառաջագոյն մինչ եկեսցէ առցէ զնա 'ի ժամու իւրում Յիսուս՝ որ 'ի Յուդայն էր ։ Առաւել ևս յայտ եղեւ՝ եթէ ըստ նմանութեան Մելքիսեդեկի կանգնելոց է քահանայ այլ՝ որ ոչ ըստ օրինաց մարմնաւոր պատուիրանին եղեւ. այս ինքն զի ոչ եթէ որպէս և կարգեալն լինէր 'ի մէջ ժողովրդեանն սրսկելովն և սըրբութեամբք և արեամբն և իւղովն քահանայութեամբ և զհանդերձիւքն նորին կարգեցաւ և առ տէր մեր, այլ ըստ զօրութեան կենացն՝ որ ոչ անցանեն 'ի մահուանէ անտի ։ Առ զնա երդմամբն, այն որ ասաց 'ի Դաւիթ՝ եթէ "Դու ես քահանայ յաւիտեան ըստ նըմանութեան Մելքիսեդեկի" ։

Իսկ խոստումն որ եղեւ առաջին պատուիրանին, որպէս և քահանայութեան առաջնում, վասն տկարութեան իւրոյ և անօգուտ հրամանին. զի երկրաւոր գրգանօքն և փափկութեամբն զոր տայր նոքա, հիւանդութեամբ զոր հիւանդացուցին զնոսա առաջի ցանկութեանցն, և

զոք 'ի նոցանէն 'ի կատարումն յայս՝ վասն որոյ մեքս թօթափիմք յամենայն ընչից մերոց՝ ոչ ածին : Իսկ մուտն որ եղև աւետարանի, վասն յուսոյն այնորիկ՝ որ առաւելն էր քան զառաջնոյն զոր քարոզէր մեզ՝ եղև մուտն նորա. զի սովլին իսկ այսուիկ թափուրս լինելով մերով մերձենամք մեք առ ած, այն որ 'ի ձեռն գրգանացն փափկութե օրինաց մերժեալ հեռանայաք մեք 'ի նմանէ : Իսկ տունն Ղևեայ քանզի առանց երդմնոյ կացեալ էին քահանայք, վասն այսորիկ ոչ կացին մնային. իսկ սա յաւիտեանս յաւիտենից կայ և մնայ. քանզի անհնարին է ստութիւն լինել երդմնոյն զոր ասաց՝ եթէ "Երդուաւ տէր և ոչ զղջացաւ՝ թէ դու ես երիցանց երէց յաւիտեան ըստ չափոցն Մեղքիսեդեկի,, : Արդ այնչափ ևս լաւագոյն էր Յիսուս Քրիստոս քան զքահանայսն առաջինսն, և եղև միջնորդ այնմ իմիք զոր մեզն խոստացաւ 'ի ձեռն նորոց կտակարանաց : Զոր օրինակ անդ հարկ էր լինել բազմաց, քանզի զառաջինսն մահ անջրպետէր, և ոչ մնացեալ լինէին նոքա յաւիտեան, սոյնպէս չիք այլ քահանայապետ ընդ տեառն մերոյ. քանզի միշտ կենդանի է նա և բարեխօս է ընդ մեր, ոչ զօհիւք պատարագաց, այլ աղօթիւք. և կարող է ապրեցուցանել զմեզ ցանգ, ոչ երկրաւոր փափկութեք՝ որ պաշտեն զմեզ սակաւ աւուրբք, այլ ապրեցուցանէ զմեզ յաւիտեան յաւիտենից, որք մերձենամքս նովաւ առ ած : Զի այսպիսի իսկ վայել էր քահանայապետ, սուրբ և անարատ, մեկնեալ 'ի մեղաւորաց. զի ոչ իցէ նա կարօտ որպէս և այլ քահանայքն՝ որ նախ վասն մեղաց իւրեանց մատուցանէին պատարագ, և ապա վասն մեղաց ժողովրդեան : Իսկ նա զայս միանգամայն կատարեաց. զանձն իւր մատոյց պատարագ, ոչ վասն իւր ինչ, այլ վասն մեղաց մարդկան : Քանզի օրէնքն՝ մարդիկ տկար տնգէին 'ի քահանայութի. այս ինքն զի կարօտ էին մատուցանել նոքա պատարագ վասն մեղաց իւրեանց. իսկ բան երդմնոյն որ պաշտեցաւ 'ի Դաւիթ յետ օրինացն, զՈրդի հաստատեաց՝ որ յաւիտենիցն յաւիտեան կատարեալ կայ :

## ԳԼՈՒԽ Ը

Արդ բանից գլուխ, այս ինքն Ճառքս քահանայութեան և օրինաց զոր խօսիմք մեք վասն նոցա, այսպէս է զոր ասացիս: Արդ ունիմք մեք երիցանց երէց. ոչ որ կայ առաջի տապանին կտակարանաց, այլ զայն՝ որ ելն և նստաւ ընդ աջմէ աթոռոյն մեծութեանցն յերկինս: Եւ այն որ այնչափին բարձրացաւ, պաշտօնեայ սրբոց եղև 'ի խորանի անդ ճշմարտութե՟. այս ինքն կամ յարքայութե՟ որպէս և խոստացաւ, կամ յաշխարհիս յայսմիկ՝ որպէս արար իսկ լուանալովն իւրով զոտս աշակերտաց: Զի ամենայն քահանայ վ՟ մատուցանել զուխտսն և զպատարագս հաստատի. վասն այնորիկ հարկ էր իւրացն լինելոյ, զի մի՛ օտարացի նա 'ի խորհրդոցն իւրոց. և վասն այսորիկ և նա մատոյց պատարագ ոչ յանասնոց, այլ զանձն իւր: Զի եթէ էր նա յերկրէ, թերևս և չէր իսկ քահանայ. քանզի գոյին քահանայք՝ որ մատուցանէին ըստ օրինաց պատարագս. այս ինքն ըստ պատուիրանացն օրինացն: Զի նոքա առակ օրինակաւ պաշտէին ըստ նմանութե՟ երկնաւորաց. այս զի ամենեքեան հնոյն՝ նմանութիւնք էին և առակք օրինակաց այսր պաշտաման եկեղեցւոյ՝ որ է յաչս այնր հոգևորին և երկնաւորի: Նա և հրամայեցաւ իսկ Մովսէսի՝ զի հանդերձեալ էր գործել զվրան ժամուն. "Տեսջիր, ասէ, արասցես անդ զամենայն ըստ օրինակին՝ որ ցուցաւ առ քեզ 'ի լերինն": Իսկ արդ առատագոյն ևս հաս պաշտամանն Յիսուս Քրիստոս քան զՄովսէսին. այս ինքն եւ մեզ Յիսուս, և եղև նա միջնորդ կտակարանացն, ոչ այնոց՝ որ գրեցան 'ի նա աւետիքն երկրաւորք, այլ այսոց՝ որ գրեցան 'ի սոսա պարգևքն երկնաւորք, որ քան զերկրաւորսս առաւել են: Զի եթէ առաջինն այն անարատ էր, և երկրորդին ինչ տեղի ոչ էր պիտոյ ծախել: Իսկ արատք նորա այս էին, զի խոտէր և անարգէր նա զյայտնի խեղութիս. և 'ի պատճառս խեղութե՟ն որ ոչ էր կամաց մերոց՝ լինէին, զարդարումն խեղու՝ որ գործովքն իւրեանց արդարք էին՝ խոտէր և անարգէր:

Իսկ այս ուխտս երկրորդ որ տուաւ, այն է զոր մարգարէացաւ վասն սորա Երեմիա և ասէ. «Ահա եկեսցեն աւուրք, ասէ տէր. և կատարեցից և կարգեցից ՚ի վ՛ր տանն Իսրայէլի ուխտ նոր, ոչ ըստ ուխտին զոր ետու ես հարցն նոցա յանապատի անդ, յորժամ առի ՚ի ձեռն հանել զնս յերկրէն եգիպտացւոց. և քանզի նոքա ոչ կացին յուխտի անդ իմում՝ կատարել զպատուիրանս նորա, և ես անփոյթ արարի զնոցանէ և ոչ կատարեցի ես նոցա զաւետիսն նորա։ Այլ զուխտըն զոր ասաց Երեմիա՝ թէ տաց նոցա, ոչ ՚ի ձեռն քարեղէն տախտակաց, որպէս զառաջինն. այլ գրեցից ես զօրէնս իմ, այս ինքն զաւետարանն նոր ՚ի սիրտս նոցա, և եղէց նոցա ա՛ծ, և անարգեսցեն նոքա զկուռս իւրեանց։ Եւ մի՛ այլ ևս ոք ՚ի քահանայից ուսուսցէ զքաղաքակիցս իւր՝ թէ եկ ծանիր զտէր. զի ամենեքին իսկ ծանիցեն զիս ՚ի փոքրկանց մինչև ՚ի մեծամեծս։ Եւ քաւեցից զնոսա ոչ յաղտեղութէ նոցա, այլ յանօրէնութէ նոցա. ոչ յաղտեղութէ երազոց գիշերի և ՚ի դաշտանից, այլ ՚ի մեղաց՝ որ գործեցան ՚ի նոսա ՚ի ձեռն զօրութե չարի։ Այլ յայնմիկ զոր ասաց Երեմիա՝ բայ նոր, զառաջինն հնացոյց։ Եւ որ հնանայն և ծերանայ, մերձ է նա յապականութի։

## ԳԼՈՒԽ Թ

Ո՚ի առաջինն ունել ունէր ինչ սպասու պաշտաման արդարութե, յայնմիկ՝ զի պահանջէր ՚ի ձեռն պատժոց պատուհասից սրոյն զմեղս։ Իսկ այս սրբութի, այս ինքն այս օրէնք՝ որ սրբեն զմեղ ՚ի ձեռն ջուրցն, ոչ անցանեն իբրև զայնս. քանզի յաւիտենից կան մնան զկնի այսր. զի մերժեաց նա և զօրէնսն ՚ի ձեռն ուխտի նորոյ՝ որ աւետարանեցաւ ՚ի ձեռն Երեմիայի։ Շրջեցաւ նա ասել վասն վրան ժամուն և վասն ամենայնի՝ որ էր ՚ի նմա. զի ցուցցէ և յայտ արասցէ՝ թէ և նոքա անցեալ են հանդերձ օրինօքն իւրեանց որ անցին։ Զի չէր ինչ մարթ նոցա կալ մնալ զկնի օրինացն անցելոց, զի առակք օրինակաց

էին և նոքա ևս այսր պաշտաման Ճշմարտի՝ որ կալոցս և մնալոցս է։ Արդ առ նա խափանել և զսպաս պաշտաման վրան ժամուն, որով ձեռն յանձին հարեալ պարծէին նովաւ յասել իւրում այսպէս։ Վրան ժամուն առաջինն, ասէ, հանդերձեցաւ այսպէս, զի 'ի նմա կայր աշտանակն և սեղանն, այլովքն հանդերձ։ Եւ խորանն ներքին՝ ուր անուանեալ կոչէր սուրբն սրբոց, որ 'ի ներքոյ վարագուրին նորա, եդեալ կայր բուրուառ մի ոսկի և արկղն դրուագեալ պատեալ ներքոյ և արտաքոյ ոսկւով, հանդերձ ընկերօք իւրեանց։ Եւ զի՞նչ ևս պիտոյ է յայսմ ժամու մի ըստ միոջէ ասել կարգաւ։ Զի թէպէտ և սոքա իւրաքանչիւր 'ի տեղւոջ իւրում'ի սպաս պաշտաման ուղղեալ էր, սակայն առակք օրինակաց էին այսր պաշտաման երկնաւորի. և քանզի եկն եհաս Ճշմարտութին, ոչ այսուհետև պիտոյ է մեզ վասն առակաց օրինակաց խօսել ինչ։

Այլ թէպէտ և յարտաքին խորան անդր յամենայն ժամ մտանէին քահանայքն 'ի պաշտօն իւրեանց կատարել, իսկ 'ի ներքին խորան անդր միանգամ 'ի տարւոջ միայն քահանայապետն մտանէր, և զայն սակայն ոչ առանց արեան, որ մատուցանէրն նա նախ վասն իւր, և ապա վասն ժողովրդեանն յանցանաց։ Ըստ այսմ նմանութե յայտնապէս ցուցանէր Հոգին սուրբ վասն Ճանապարհին սրբոց. այս ինքն ըստ այսմ նմանութե՝ որ պաշտեալս լինէր 'ի մտանել քահանային 'ի սուրբ սրբոց, յայտնեաց և եցոյց զաւետարանս՝ որ յայտնեալս հանդերձեալ էր։ Արդ խորանն արտաքին նմանութի եղև և առակք օրինակօք առ ժամանակ մի. զի 'ի նմա զոհք և պատարագք մատուցեալ լինէին, այն որ ոչ կարէին կատարել ոչ զժողովուրդն և ոչ զմիտս այնոցիկ՝ որ 'ի պաշտօնն մտանէին. այլ զանգեալ էին նոքա ուտելովն և ըմպելով, և պէսպէս մկրտութեքն և ձեռաց և ստամանաց և այլոց իրաց. զի էին նոցա պատուիրանք մարմնոյ, այս ինքն պատուէր քահանայութե և ոչ ածութե։

Այլ այս ամենայն, որպէս ասացի, այսպէս լինէին անկարգութե 'ի քահանայից անտի տկարաց մինչ 'ի ժամանակս յայս՝ յորում արար 'ի սմա ած ուղղութի.

յորմէ հետէ եկն Քրիստոս քահանայապետ լինելոց ոչ զոհիցն, այլ բարեաց. և մուտ նա 'ի խորան, ոչ փոքր 'ի ձեռագործս, այլ 'ի մեծն և 'ի կատարեալ. որ ոչ է ձեռագործ մարդկան՝ որ ոչ յայսպիսեաց յարարածոց է. այս զի յոչընչէ եղև նա. և ոչ եթէ իբրև խորանն այն՝ որ կազմեցաւ յաւարէ անտի եգիպտացւոցն: Եւ ոչ եկն նա մտանել որպէս և քահանայքն նոցա՝ արեամբ նոխազաց և զուարակաց. այլ եկն եմուտ նա արեամբ իւրով. Ոչ եթէ որպէս ամի ամի մտանէր քահանայապետն՝ և տէր մեր այսպէս. քանզի եկն եմուտ նա միանգամայն ոչ յայն սրբութ՟ին որ անց, որպէս և քահանայութ՟ի նոցա, այլ մուտ նա 'ի սուրբ սրբոցն յաւիտենից. և արար քաւութ՟ի արեամբն իւրով ամենայն հեթանոսաց: Զի եթէ արիւն ցլուց և նոխազաց և մոխիր երինջոցն ցանէր 'ի վերայ պղծելոյն 'ի բորոտութ՟է և յաղտեղութ՟է երազոց, և սրբէր զնոսա, ո՞րչափ ևս առաւել արիւն Քրիստոսի, այն որ ոչ եթէ իբրև սրսկումն նոցա տըկար՝ որ հանապազոր պիտոյ էր, այլ 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ, այս ինքն 'ի ձեռն հոգեղէն գնացից մատոյց զանձն իւր անարատ պատարագ ա՟յ. զի նա սըրբեսցէ զմիտս մեր 'ի ձեռն մկրտութ՟ե 'ի մեռելոտի գործոց անտի, զի պաշտեսջիք սրբութ՟բ զա՟ծ կենդանի: Զի վասն այսորիկ իսկ եղև նա միջնորդ նորոց կտակարանացն. փոխանակ զի մահուամբն նորա եղև փրկութ՟ի այնոցիկ՝ որ անցին զառաջինն կտակարանօքն. և յաւելցեն առնուլ 'ի ձեռն նորա զաւետիսն, որ հրաւիրեցան 'ի ժառանգութ՟ի անդր յաւիտենից: Այլ քանզի 'ի կտակն որ ետ մեզ արդարութ՟բ, ոչ հաստատի կտակն, եթէ ոչ մեռանի այն որ գրեացն զնա, արդ հարկ եղև նմա մեռանել, զի մի եղիցի և կտակ նորա իբրև զառաջինն՝ որ առանց արեան ոչ հաստատեցաւ. քանզի արիւն երինջոյն ցանեցաւ 'ի վերայ նորա, և ոչ եթէ արիւն կտակագրին: Եւ յայլոյ յարենէ առ նա և ցանեաց 'ի վերայ ժողովրդեան և վրանին և ա՟մ սպասու նր՟. քանզի արեամբն սրբէր ամենայն ըստ օրինաց, և առանց ցանելոյ արեան անամոց չլինէր աւանիկ թողութ՟ի մեղաց պղծելոյն:

Արդ եթէ սոքա որ օրինակ երկնաւորացն են, այս

ինքն նշմարանք են այսր պաշտաման՝ երկնաւոր ա-
րեամբ սրբին, ո՛րչափ ևս առաւել այն՝ որ երկնաւոր
բունն է՝ լաւ ևս պատարագաւ իւրով սրբել քան զայն։
Զի ոչ եթէ 'ի ձեռագործ սրբութիւս մարդկան՝ որ
օրինակ են այսմ ճշմարտի՝ եկն եմուտ Քրիստոս,
այլ բուն իսկ յերկինս եմուտ յանդիման լինել ոչ վասն
անձին իւրոյ, այլ զի յանդիման լիցի առաջի ա̃յ վասն
մեր։ Եւ ոչ զի գամու գամու մատուցանել զանձն
իւր պատրաստեաց պատարագ այլոյ արեամբ, յայտ է
եթէ վասն զի առաւել է պատարագն նր̃ քան զայնս.
ապա եթէ այնպէս էր, պարտ էր և նմա 'ի սկզբանէ
արարածոց՝ այս ինքն յետ անցելոց պատուիրանին ա-
ռաջնոյն՝ գամու գամու բազում անգամ մեռանել։
Բայց արդ միանգամայն իսկ եկն 'ի կատարածի ժա-
մանակաց, և չարչարեցաւ. զի իւրով պատարագաւ
սպանցէ նա զմեղսն, այն որ զժողովուրդն և զամենայն
հեթանոսս առ հասարակ սպանանէին։ Զի զոր օրի-
նակ միանգամ կայ և մնայ մարդկան մեռանել վասն
առաջին մեղաց իւրեանց, և յետ մահու նոցա դա-
տաստանք են, սոյնպէս և Քրիստոս միանգամ եկն
և յայտնեցաւ, և մատոյց զանձն իւր վասն մեղաց ա-
մենեցունց. իսկ յերկրորդ նուագի անդ յորժամ
յայտնի, ոչ մեռանել վասն մեղաց, այն որ միանգամ
մեռաւ վասն նոցա, այլ զի երևեսցի նա յաշխարհն
նոր, որ մեղք չիցեն անդ այնոցիկ՝ որ յուսացեալն են
և ակն ունին փրկութե̃ նորա։

## ԳԼՈՒԽ Ժ

ՔԱՆԶԻ գեղնման են օրէնքն. այս զի ամենայն
աւետիքն երկրաւորք գեղնման են հանդերձելոցն
բարեաց. և ոչ եթէ կերպարանք կատարեալք էին
նոքա, զի թերի էին։ Զի նստէին նոքա և ակն ու-
նէին այնմիկ՝ որ գային 'ի կատարել զնոսա։ Զի եթէ
կատարեալ էին, ոչ եթէ նովին պատարագօք ամի ամի
պաշտէին հանապազօրդ, որ երբէք ոչ կարէին զմա-
տուցեալսն կատարել։ Զի եթէ կատարէին զնոսա,
խափանեալ լինէր քահանայութի̃ նոցա, քանզի հանդ-

չէին նոքա 'ի պատարագաց անտի իւրեանց. և եթէ սուրբ էին միտք նց 'ի մեղաց, միանգամայն սրբեալ լինէին նոքա 'ի պղծութէ մարմնոյն. զի անդէն 'ի նմին իսկ յիշատակ մեղաց հանապազորդ լինէր 'ի վերայ նոցա. քանզի ոչ կարէր արիւն ցլուց և արիւն նոխազաց սրբել զմեղս: Քանզի տէր մեր որ եկն յաշխարհ, ասաց 'ի բերան Դաւթայ՝ եթէ "Ընդ զոհս և ընդ պատարագս ոչ հաճեցար. իսկ զմարմինն զոր զգեցուցեր ինձ", զի նորա պատարագաւն խափանեսցին զոհք պատարագաց: Եւ զկնի նորա ասէ. "Ահաւասիկ եկեալ հասեալ եմ ես՝ առնել զկամս քո, ած": Այլ յայսմիկ զի ասաց նա՝ բայ գամ ես առնել ըզկամս քո, մերժեաց զառաջինն, զի զերկրորդն հաստատեսցէ: Զի սովին իսկ այսու աւետարանաւ՝ որ խափանիչն եղև զոհից պատարագաց, կամեցաւ նա սրբել զմեզ 'ի ձեռն պատարագին մարմնոյն Յիսուսի Քրիստոսի, այն որ եղեն միանգամայն: Քանզի ամենայն քահանայ՝ որ կացեալ լինէր 'ի մէջ ժողովրդեան, զսոյն իսկ զպատարագսն բազում անգամ մատուցանէր, և որ երբէք զմեղս ոչ կարէին թողուլ և քաւել: Իսկ Որդի միանգամայն վասն մեղացն մերոց մատոյց զանձն իւր պատարագ, և նստաւ նա ընդ աջմէ հյ յաւիտենից. և այսմ ակն ունի մինչև դիցին թշնամիք նորա 'ի ներքոյ ոտից նորա: Զի միով պատարագաւն անձին իւրոյ կատարեաց զմեզ 'ի ձեռն մկրտութէ, և սրբեաց զմեզ մինչ 'ի վախճան կատարածի: Վկայէ վասն այսր սրբութէ մեղաց՝ որ ծածկեալ կայր 'ի նոր կտակարանսն՝ Երեմիա և ասէ. "Տաց զօրէնս իմ 'ի սիրտս նոցա, և 'ի խորհուրդս նոցա գրեցից զնոսա, և զմեղս նոցա և զանօրէնութիս նոցա այլ ոչ ևս յիշեցից": Արդ ուր այսպիսի թողութի խոստացաւ մեզ թողուլ զմեղս մեր, ոչ այսուհետև պիտոյ ինչ է մեզ պատարագք օրինաց մատչել վասն մեղաց մերոց:

Այսուհետև ունիմք, եղբարք, համարձակութի մտանել 'ի սուրբս. զի նա ինքն է հաւատք, այն որ արեամբն նորա նորոգեաց մեզ զայս ճանապարհ հաւատոց. զի ունէին զայս առաջինքն: Եւ զի հնացաւ սա 'ի միջի միջնոցն, նորոգեաց զսա մեզ յայսմ ժամանակի վարագուրաւն հանդերձ, այս ինքն մարմնո-

վըն իւրով։ Զի նա ինքն է և քահանայապետ ևս մեր։ Եւ որովհետև սա վասն մեղաց մերոց մեռաւ, վասն մեր է նա մեզ քահանայապետ, ոչ 'ի վրան ժամու անդ, այլ 'ի տուն ա̃յ։ Մատիցուք մեք առ նա ճշմարտութի̃ սրտիւ, զի կատարեալ իցեմք հաւատովք զոր ունկեաց 'ի մեզ. և եղիցին ցանել 'ի վերայ սրտից մերոց, այս ինքն եղիցին լուացեալ նովաւ սիրտք մեր, զի սրբեսցուք մեք 'ի խեղճմտաց չարի, զի նա ինքն են խորհուրդք չարի. և մկրտեսցուք զմարմինս մեր 'ի մկրտութիւն սրբութեան. և պինտ կալցուք նեղութ̃քն մերովք յոյսն՝ որ յայտնելոցն է 'ի ժամանակի իւրում. և համապազորդ խոստովանութ̃ք գընասցուք առանց շարժելոյ. և մի թիւրիցիմք մեք իբրև լքեալք վասն յամելոյն աւետեաց մերոց. հաւատարիմ է այն, որ խոստացաւն մեզ։ Այլ վասն նեղութե̃ արտաքնոցն, կամ վասն տրտմութե̃ ներքնոցն մի թողցուք զմիմեանս 'ի ձեռանէ, որպէս սովոր են ոմանք. այլ մխիթարեսցուք զմիմեանս, մանաւանդ յորժամ տեսանիցէք դուք եթէ մերձեալ է օրն տրտմութե̃ կամ հալածանաց։ Ապա եթէ խառորիցիք և կամակոր միտք յանցանիցէք յետ ընդունելութե̃ այսր գիտութե̃ ճշմարտութե̃՝ որ տուաւ մեզ 'ի ձեռն Քրիստոսի, ոչ այսուհետև ունիմք այլ պատարագ առաւել քան զՔրիստոսին, կամ թէ իբրև զնա իսկ մատչել վասն մեղաց մերոց։ Այլ ահեղ պատուհաս դատաստանայցն և հուրն նախանձոտ կերիցէ զթշնամիսն՝ որ եղեն հակառակ անձանց իւրեանց և ընկերաց։ Զի եթէ որ անցանէին զտկար օրինակաւն Մովսէսի՝ առանց ողորմութե̃ 'ի բերանոյ երկուց և երից վկայից սպանանէին, և տեղի ապաշխարութե̃ ոչ տային նմա, իսկ ո՞րչափ ևս համարիցիմք սաստիկ պատժին արժանի լինել՝ որ առ ոտն եհար ոչ զօրէնսն Մովսէսի, այլ զՈրդին ա̃յ, և զարիւն նորոց կտակարանացն ն̃ր խառնակ համարեցաւ. այս ինքն իբրև զարիւն երընջոյն՝ որ ցանեցաւ 'ի վերայ կըտակարանացն Մովսէսի։ Իսկ սա անչափ ևս մեծ է քան զայն, զի սովաւ 'ի մեղաց և յանօրէնութենէ 'ի ձեռն մկրտութե̃ սրբեցաք։ Եւ զՀոգին շնորհաց որ սփռեցաւ 'ի մեզ՝ թշնամանեաց. այնոքիկ են՝ որ զա-

ւետարանն իբրև զօրէնս Մովսէսի համարին։

Սակայն յետ այսորիկ իբրև երկեցոյց նա զնոսա և ած վկայութիւն 'ի մարգարէէ յասելն՝ դատէ տէր զժողովուրդ իւր, դարձաւ նա յիշեցուցանել նոցա զառաջինն. այս ինքն ցնծութիւն՝ որ եղև 'ի սկիզբն աշակերտութեան իւրեանց։ Յիշեցէք, ասէ, զաւուրսն առաջինս յորս և մկրտեցայքն, և նոքիմբք ջուրբքն բազում չարչարանաց և ճգնութեանց համբերէք. զի այն ինքն են մեղքն ձեր։ Մերթ նախատանաց և մերթ նեղութեան՝ զոր ասաց, այս զի օրէնք նեղէին զնոսա՝ թէ 'ի վերայ պատարագաց իւրեանց յայտնեսցեն զմեղս իւրեանց. իսկ նախատինքն 'ի մարդականէն պահանջէին զնոսա, զի մի յայտնեսցեն։ Այս, ասէ, նեղութիս զոր ունիք յայտնել, և նախատանքն որ արգելուին՝ զի մի յայտնեսջիք. զի սոյն իսկ այս ծուխ[1] մտաց զոր ունէիք դուք՝ իբրև ցաւք մեծամեծք և իբրև չարչարանք դառնութեան էին, բարձան 'ի ձէնջ պատկառանօք ցածութեամբ 'ի ձեռն մկրտութեան ջուրցն հանդերձ քաւութեամբն զոր առէք դուք։ Եւ տեսիլ ևս խայտառակութեան եղէք յաւուրս հալածանաց ձերոց. և կցորդ ևս եղերուք դուք այնպիսեաց վաստակաւորաց, զի և դուք վաստակեսջիք։ Եւ մինչև ցայսօր ժամանակի չարչարեալ էք դուք ընդկապեալս. և վասն յափշտակութեան ընչիցն ձերոց դուք ոչ տրտմեցայք, այլ ուրախ ևս եղէք. քանզի յուսացեալ գիտէիք դուք՝ եթէ ձեզ մեծամեծս ևս պատրաստեալ է յերկինս փոխանակ այսր փոքու և անցաւորի՝ որ բարձան 'ի ձէնջ։ Արդ զգոյշ կացէք և մի վայրապար թօթափէք 'ի ձէնջ զհամարձակութիւնդ զայդ զոր համարեցայ ես՝ առեալ է ձեր զդա. քանզի գիտէք դուք՝ եթէ մեծաց վարձուց հատուցումն կայ 'ի նմա։ Համբերութեան պիտոյ է ձեզ առնել զկամս այ, և առնուլ զայս պարգևս խոստացեալս։ Այլ մի վհատիք դուք, զի փոքր միւս ևս այնքան որչափ որ գալոցն իցէ՝ եկեսցէ յերկրորդ գալստեան, այն որ եկն յառաջին գալստեան։ Եւ արդ արդարն՝ յորժամ գտանին 'ի նմա հաւատք և համբերութիւն՝ կեայ.

1 Ի լուսանցս օրինակին ծուփ։

և եթէ յերկմտոս ոք իցէ և խղճիւ՝ զի ոչ յայտնեցաւ հատուցիչն, և յաւուրսն յայն ոչ հաճեսցի անձն իմ ընդ նա ։ Այլ մեք ոչ եթէ խղճիւ ինչ եմք՝ որ կորուսանէ զընթացս մեր, և տանի զմեզ 'ի կորուստ, այլ հաւատովք․ զի վարձեսցուք ստանալ նոքօք զանձինս մեր, այն որ քան զամենայն առաւել առնեն զմեզ ։

## ԳԼՈՒԽ ԺԱ

ՐՑԼ ինքեանք իսկ հաւատք մեր ոչ յուսահատութե կախեալ կան, զի ճշմարիտ յուսովն հաստատեալ կան ։ Եւ են իսկ վկայք՝ որ վկայեն վասն նոցա․ զի թէպէտ և ծածկեցան նոքա 'ի միջնոց անտի, սակայն յառաջինսն յայտնի էին․ զի գոյ յանդիմանութի՝ որ յայտնէ զայն ինչ որ ոչ երևի ։ Ո՞ր յանդիմանութի․ այլ այն՝ որ նոքօք եղև վկայութին վասն առաջնոցն․ այս ինքն զի վկայեցին գիրք վասն հաւատոյ, զի նոքօք առաքինացան հարքն առաջինքն ։ Արդ առ նա 'ի պատմել ոչ վասն հաւատոյ՝ որ կարգեալ գայր 'ի հարսն առաջինսն, և հնացան 'ի մէջ հեբրայեցւոցն, այլ և վասն այնոցիկ՝ որ 'ի սկզբանէ աշխարհի մինչև ցայսօր ժամանակի կարգին և գան 'ի նոսին իսկ առ հեբրայեցիսն ։ Ընդէ՞ր, ասէ, օտարանայք դուք 'ի հաւատոց անտի․ զի ահա առանց նոցա և ոչ եթէ եղև բնաւ աշխարհ՝ գիտէք դուք․ քանզի ոչ եթէ ձեր յանդիմանն եղև, այլ[1] հաւատովքն՝ որով հաւատայք դուք բանին Մովսէսի, կամ որչութ̃ն այնոցիկ՝ որ առաջինքն էին քան զՄովսէս՝ իմանայք դուք թէ արար ա̃ծ բանիւ իւրով զաշխարհ․ զի այս ամենայն որ երևիս՝ եղիցի յայնմանէ որ ոչն երևի․ այս ինքն կամ զի յոչընչէ եղև, կամ զի յաներևոյթ ա̃յ արարաւ այս ամենայն՝ որ տեսանելոյս է ։

Հաւատովք լաւ պատարագս մատուցանէր Հաբէլ քան զԿայէն՝ որ եբեր նա զարհամարհ ընտրուկս․ զի հաւատքն Հաբէլի և անհաւատութիւնն Կայէնի 'ի պատարագս իւրեանց դրոշմեալ էին ։ Զի եթէ ոչ

1 Յօրինակին պակաս այլ ։

էր հաւատացեալ Հաբէլ յաւետիս անդր, ոչ պատարագս լաւս ընտրէր և բերէր նա. այլ իբրև ետես նա զեղբայրն իւր եթէ ուստի և կորզեաց հասկս յոռիս արհամարհանօք և եբեր նա դնել 'ի վերայ սեղանոյ ։ Արդ վասն սորին իսկ այսր հաւատոց Հաբէլի եղև 'ի վերայ նորա վկայութի̃ թէ արդար է նա. այլ ոչ եթէ 'ի մարդոյ, այլ յա̃յ՝ որ վկայեաց 'ի վերայ պատարագին նորա. այն որ ցայսօր ժամանակի նովաւ պատմի, այս ինքն նովաւ առաքինանայ ։

Հաւատովք փոխեցաւ Ենովք և զմահ ոչ ճաշակեաց. զի եթէ ոչ էր նորա հաւատացեալ եթէ կարող է պահել պատուիրանին մուծանել զնա անդր՝ ուստի ելին տունն Ադամայ վասն անցանելոյ զպատուիրանաւն, ոչ ժրանայր նա հաճոյ լինել յառաջ քան զփոխելն նորա զերեքարիւր ամ ։ Զի առանց հաւատոց, այս ինքն եթէ ոչ հաւատայ մարդ՝ եթէ է ճշմարիտ ա̃ծ, և որ խնդրեն զնա՝ լինի պարգևատու վարձուցն հատուցման, և ոչ յօժարութե̃ յօժարէր նա հաճոյ լինել և խնդրել ։

Հաւատովք առնոյր[1] հրաման Նոյ վասն այնոցիկ՝ որ ինչ աներևոյթ էին. այս ինքն վասն որոյ յետ հարիւր և քսան ամին հրամայեցաւ՝ որ լինելոց էին ։ Եւ վասն երկիւղի իւրոյ 'ի հեռաւոր պատժոց անտի պատուհասիցն գործեաց իւր տապան մեծաւ աշխատութե̃ վասն փրկութե̃ տան իւրոյ ։ Նովին իսկ այսու հաւատովք դատեցաւ աշխարհ, այն որ ոչն հաւատաց. և Նոյն իսկ հաւատքն արարին զՆոյ ժառանգաւոր աւետեաց ։

Հաւատովք ունկնդիր եղև Աբրահամ. եթող նա զհայր և զազգատոհմն իւր երթալ ոչ 'ի ժառանգութի̃ անդր իւրոյ, այլ 'ի ժառանգութի̃ն՝ որ պատրաստեալ էր նմա ։ Հաւատովք համբեր և հաստատեցաւ և բնակեցաւ պանդխտութե̃ 'ի տեղին աւետեաց իբրև յօտարութե̃. այս ինքն իբրև 'ի ժառանգութե̃ այլոց ։ Տաղաւարօք բնակէր 'ի նմա Սահակաւ և Յակովբաւ հանդերձ ժառանգակցօքն՝ որ էին աւետեաց ։ Արդ ժառանգութե̃ն որ խոստացեալ է նոցա՝ և ոչ առին,

1 Յօրինակին առնոյր . . . 'ի հեռաւոր պատժոց ։

յայտ է եթէ քաղաքին այնմիկ՝ որ հիմամբք հաստատեալ էր, որոյ քաղաքի ձեռագէտ Ճարտարապետ ինքնին ա̃ծ է, ակն ունէին։

Հաւատովք և Սառա ինքնին զօրութ̃ի զաւակի ընդունէր, և 'ի տարաժամ չափովք զանցեալն ժամանակօք ծնանէր. այս զի զօրութ̃ի և տղայութ̃ի ընկալաւ նա՝ որ պիտոյ են յղութ̃ե և ծննդեան, այն զի ոչ կարէր համբերել ծերութ̃ի։ Այլ եղեն նմա այս ամենայն, քանզի 'ի մէջ քանանացւոցն հեթանոսաց համարեցաւ հաւատարիմ զայն՝ որ տալն խոստացաւ նմա զայս։

Հաւատովք մեռանն սոքա ամենեքին չև էր ընկալեալ զաւետիսն, այլ հեռի ժամանակօք տեսին. այս ինքն առաջուստ թէպէտ անդէն իսկ յերկրին էին, սակայն ոչ տիրեցին 'ի նմա յայտնապէս. քանզի ասաց Աբրահամ ցորդիսն Ամովրայ՝ եթէ նշդեհ և պանդուխտ եմ ես 'ի միջի ձերում։ Զի այնպիսիքն որ զայն ասացին 'ի մէջ ժառանգութեանն իւրեանց, յայտ արարին՝ եթէ այլ քաղաք խնդրէին. ոչ զհառան, կամ զիւր քաղդէացւոցն, ուստի ել նա անտի Աբրահամ։ Իսկ եթէ անդրէն 'ի նոյն գաւառն ուստի ելին՝ անձկային և զայն յիշէին, գոյր ժամանակ երկայն կենօքն իւրեանց դարձի անդրէն։ Այլ քանզի ոչ դարձան անդրէն իբրու կարէին՝ եթէ կամէին դառնալ, յայտ արարին՝ եթէ լաւին ևս քան զնա յառաջադէմ ցանկացեալ էին. այս ինքն է երկնաւորին։ Վասն այսորիկ ոչ համարեցաւ ամօթ ա̃ծ՝ կոչել 'ի վերայ նոցա ա̃ծ նոցա։ Այն է զոր ասաց նա Մովսէսի՝ եթէ "Ես եմ ա̃ծ Աբրահամու և Սահակայ և Յակովբու. այս է անուն իմ յաւիտեան, և յիշատակ իմ յազգէ մինչև յազգ"։

Հաւատովք փորձեցաւ Աբրահամ, և մատոյց զԻսահակ պատարագ, այն որ աւետեօքն ընկալաւ զնա. զի 'ի նմա կոչեսցի նմա զաւակ։ Այլ ոչ երկմտեցաւ Աբրահամ՝ զի և ոչ մինչ դեռ սպանանէր զնա՝ 'ի նմա կոչել նմա զաւակ. եդ 'ի մտի իւրում և քաջալերեցաւ՝ թէ և 'ի մեռելոց կարող է ա̃ծ յարուցանել։ Վասն այսորիկ և յառակս ընկալաւ զնա. այս ինքն զի նովաւ ուսցին զյարութ̃ի մեռելոց, և զի զխոստա-

ցէ նովաւ զորդիսն հօգւոյ՝ որ լինելոց էին նորա ։
Հաւատովք վասն հանդերձելոց ժամանակաց օրհ-
նեաց Սահակ զՅակովբ զորդի իւր, և ապա զԻսաւ.
այս զի յետ դարուց բազմաց կատարեցաւ օրհնութիւն
երկոցունց ։

Սոյնպէս և Յակովբ հաւատովք օրհնեաց զմի մի
յորդւոց անտի Յովսեփու. զի թէպէտ և յերկրի անդ
եգիպտացւոց օրհնեցան, և յետ բազում ամաց ա-
պա 'ի մէջ ժառանգութեան իւրեանց կատարեցաւ օրհ-
նութիւն նոցա. զի երկիր պագ նա 'ի ծայրս գաւազանի
իւրոյ. զի հաւատաց նա՝ թէ ճշմարտիւ թաղէ զնա
Յովսէփ որդի իւր 'ի գերեզմանս հարց իւրոց ։

Հաւատովք Յովսէփ 'ի մեռանելն իւրում, այս
ինքն 'ի մեռանել իւրում հաւատաց նա վասն ելից եղ-
բարց իւրոց յերկրէ անտի եգիպտացւոց. զի վասն ոսկե-
րաց իւրոց պատուիրեաց զնոսա զի ընդ ինքեանս տարցեն ։

Հաւատովք զՄովսէս իբրև ծնան՝ թաքուցին զնա
հարքն իւր զամիսս երիս, և ոչ ինչ երկեան նոքա յահէ
անտի սաստից թագաւորին յայն երիս ամիսս՝ որ թա-
քուցին զնա ։ Հաւատովք Մովսէս իբրև աճեաց՝ ոչ
առ յանձն կոչել որդի դստերն Փարաւոնի. զի եթէ
ոչ յաւետիսն Աբրահամու հաւատացեալ էր նա, ոչ
անարգէր նա թաթաւել ընդ մեղս, և ընտրել կցորդ
լինել չարչարանաց ժողովրդեանն Աստուծոյ ։ Կարևոր համա-
րեցաւ զնախանձն Քրիստոսի, այն զի և ինքն իսկ
գրեաց վասն նորա, քան զմեծութիւն եգիպտացւոց՝
որ էին եղև նմա ։ Արդ վասն զի սպասեալ ակն ունէր
նա վարձուցն հատուցման, թող նա զերկիրն եգիպ-
տացւոցն և ել, և ոչ երկեաւ նա յահէ անտի բարկութեան
թագաւորին՝ թէ գուցէ խնդրիցէ և գտանիցէ զնա.
զի Աստուածն այն՝ որ յայտնապէսն ոչ երևեցաւ նմա, իբրև
զտեսեալ համբերութեամբ հաստատեցաւ 'ի նա ։ Հաւա-
տովք արար զատիկն և զհեղումն արեանն. այս զի մինչ
չև զենեալ էր նորա զգառնն, հաւատաց եթէ ան-
դրանիկքն եգիպտացւոց կոտորին նովաւ, և հեբ-
րայեցիք փրկին նովաւ ։ Հաւատովք անցին նոքա
ընդ ծով կարմիր. այս զի ժողովուրդ հաւատացեալ
որ էջ անդր՝ իբրև ընդ ցամաք եկին անցին ընդ մէջ
նորա. և եգիպտացիքն առանց հաւատոց իջին անդր,

զհատուցումն յանցանաց իւրեանց ընկալան 'ի մէջ նր̃։

Հաւատովք Յիսուայ և ժողովրդեանն անկեալ կործանեցան պարիսպքն Երիքով քաղաքի. զի հաւատովք շրջեցան զնովաւ եւթն անգամ խաղաղութ̃բ առանց պատերազմի, և 'ի ձայն բարբառոյ հաւատոցն կործանեցան աշտարակքն և պարիսպքն նորա յաւուրն եւթներորդի։

Հաւատովք Ռախաբ պոռնիկ ոչ կորեաւ, զի 'ի համբաւէ անտի նշանացն՝ որ եղեն յերկրին եգիպտացւոց և յանապատի, հաւատաց եթէ ճշմարտիւ ժառանգեն նոքա զերկիրն քանանացւոց, որպէս և ասաց ա̃ծ Աբրահամու։ Իսկ Առաքեալ զլրտեսսն զոր ասաց՝ բայ մտին առ նա խաղաղութ̃բ, զի ցուցցէ եթէ սրբութ̃բ և պարկեշտութ̃բ եկին նոքա անտի. զի ոչ վասն պոռնկութ̃ե մտին նոքա անդր։

Այլ վասն զի մի՛ 'ի համարել իւրում զգործս հաւատոց զայլոց ևս բազմացուսցէ նա, թողու զնոսա. զի ոչ ասաց նա զճառս նոցա բազմադէմ. այլ ոչ թող զնոսա, զի բերէ զնոսա 'ի մէջ համառօտ բանիւք։ Եւ զի՞նչ ևս, ասէ, այլ ինչ ասեմ. զի ոչ ևս լինի ժամանակս 'ի պատմել վասն Գեդէոնի, այս ինքն վասն հաւատոցն Գեդէոնի. զի երեքարիւր արամբ կոտորեաց նա զբիւրս մադիանացւոց. և Բարակայ, զի հաւատովք իւրովք կոտորեաց նա զզօրսն Սիսարայ. և Սամսոնին, զի հաւատովք իւրովք կոտորեաց իշոյն ծնօտիւ հազար այր. և Յեփթայեայ, զի հաւատովք իւրովք կոտորեաց նա քսան և երկուս քաղաքս զորդւոցն ամոնացւոց. և Դաւթի, զի հաւատովք իւրովք հար սատակեաց նա զԳողիադ. և Շմուէլի, զի հաւատովք իւրովք առաքինեցաւ նա 'ի մէջ փղըշտացւոց։ Եւ վասն այլոց մարգարէից, զի հաւատովք պարտեցին զթագաւորութ̃իս՝ մարգարէութ̃բք և ոչ սրով. և գործեցին զարդարութ̃իս, այս ինքն պատժովքն պատուհասից զոր ածին 'ի վերայ ամպարշտից. և հասին աւետեաց, Եղիա որ յափշտակեցաւ. և խցին զբերանս առեւծուց, տունն դանիէլեան. և շիջուցին զզօրութ̃իս հրոյ, տունն անանիանց. և ապրեցան 'ի սրոյ սուսերաց, նոյնք իսկ՝ որ խնդրէին կորուսանել զնոսա քաղդէացիքն ընդ իմաստունս

թաբելլացւոյն, և Որիա և Եղիա և մարգարէքն. և զօրացան 'ի հիւանդութէ, Եզեկիա արքայ և Եղիշա. յաղթեցին պատերազմի, Աբրահամ, Ղովտ, Մովսէս, Յիսու. և առին զբանակս օտարաց, Սամսոն, Բարակ, Դաւիթ և ընկերք իւրեանց՝ որ 'ի վերագոյն ևս գրեալ են: Ընկալան կանայք յարութենէ զմեռեալս իւրեանց, Սիզոմացին և Ծարփաթացին յԵղիայէ և յաշակերտէ անտի նորա: Կէսք 'ի մահ մատնեցան և արհամարհեցին զկեանս իւրեանց, մակաբայեցիքն եւթն եղբարք մարբն հանդերձ. բայց սակայն թէպէտ և զինչ գործեցին ընկերք իւրեանց հաւատովքն իւրեանց, նոքա ոչ գործեցին, այլ սպասեալ ակն ունէին մեռանելոյ. զի հաւատացեալ էին եթէ լուսաւորագոյն յարութե արժանի լինիցին հասանել: Կէսք 'ի տանջանս և 'ի հարուածս մատնեցան, Եղիշա. 'ի բանդս և 'ի կապանս, և Երեմիա և Միքիա. և 'ի քարկոծանս, Մովսէս, Նաբովթ: Սղոցեցան, Զաքարիա և Եսայի. մտին 'ի փորձանս պէսպէս, Յովբ. յահէ սրոյ մահու մեռան, Միքա, Որիա, Յոհաննէս: Կէսք շրջեցան լեշկամաշկօք և մորթեովք այծենեօք, Եղիա և Եղիշա: Նեղեալք և տառապեալք և հալածեալք՝ զի ոչ արժէ ընաւ աշխարհ զնոսա, մարգարէքն զոր թագուցեալ էր Աբիեդիայ, և կերակրէր յանապատի: Մոլորեալք եղեն 'ի լերինս և յայրս և 'ի քարածերպս երկրի. այս զի յորժամ լուաւ Յեզաբէլ զհամբաւ թաքուցելոցն և 'ի խնդիր էր նոցա, փախոյց թաքոյց զնոսա Ոբեդիա յայլ տեղիս: Եւ վկայէ մեծ նեղութի նոցա 'ի վերայ ամենեցունց՝ եթէ հաւատովք կացին մնացին նոքա, և չև ևս ընկալեալ նոցա զաւետիսն իւրեանց: Իսկ մեք թէպէտ և վերջինքն իցեմք փորձանօք, այլ և վասն մեր յառաջագոյն իսկ խոստացաւ՝ զի մի առանց մեր կատարեսցին: Զի ոչ եթէ որպէս կանխագոյն են ընթացք ընկերին, նոյնպէս յառաջագոյն իցէ և հատուցումն. զի մի օր է օր հատուցման ամենայն նեղութեցն զոր համբերէին և համբերենն մարդիկ:

## ԳԼՈՒԽ ԺԲ

ՎԱՍՆ այսորիկ և մեք այսչափ ունիմք մեք շուրջ զմեւք մածեալ իբրև զամպ բազմութիւն վկայից ծանրութենս մերոյ, այս ինքն հանդերձեալ է մեզ ամպ տրտմագին նեղութեանց, այն որ 'ի պատիւ հաստուցանեն զբազումսն՝ որ խոստովանեին 'ի ձեռն Յիսուսի և մեռանեին վասն նորա, և վասն այսորիկ 'ի բաց ընկեսցուք մեք 'ի մէնջ զամենայն ինչ, զի մի յիմիք պատաղեսցուք մեք մարտնչել ընդ մեղս, այն որ հանապազօրն պատրաստեալ են յանցուցանել զմեզ. և համբերութեամբ ընթասցուք 'ի հանդերձեալ պատերազմն, ոչ 'ի հալածչաց միայն, այլ և 'ի նմին սատանայէ: Եւ հայեսցուք ոչ ընդ մարդիկ, զի է որ այսպէս պաշտեցաւ 'ի նմա, և միւս ոչ. այլ հայեսցուք 'ի զօրագլուխն հաւատոց 'ի Յիսուս Քրիստոս, այն որ նա եղև առաջնորդ և կատարիչ հաւատոց մերոց. այս ինքն զի սկսաւ նա Յորդանանէ 'ի պատերազմ թշնամոյն՝ որ եղև յանապատի և կատարեաց յԵրուսաղէմ 'ի ձեռն խաչին, որ տնկեցաւ 'ի հալածչաց անտի 'ի վերայ Գողգոթայ: Արդ նմանող եղիցուք նմա և համբերեսցուք վասն նորա հալածանաց, որպէս և նայն. վասն զի ուրախ եղև 'ի մեզ, և յանձն առ զհամբերութիւն խաչին 'ի խաչահանուաց անտի, և արհամարհեաց նա զամօթ, և յետ այսորիկ նստաւ նա ընդ աջմէ աթոռոյն այ̃: Արդ աղէ ածէք զմտաւ՝ որ զայսպիսի համբերութիւն կրեաց վասն սիրոյ մերոյ 'ի մեղաւորաց, ոչ յայնցանէ՝ որ նա եղև նոցա հակառակութիւն, այլ յայնցանէ՝ որ թերահաւատութեամբն իւրեանց եղեն հակառակ անձանց իւրեանց: Արդ մի ձանձրանայցէք դուք նեղութեամբքն ձերովք, և մի լքանիցիք դուք անձամբք ձերովք 'ի ժամ փորձանաց ձերոց. զի այժմիկ դեռ թէպէտ և հալածեցայք, այլ 'ի սպանումն ոչ էք հասեալ. և թէպէտ 'ի փոքր պատերազմի աստ կացեալ իցէք, այլ ցայժմ չև ևս էք արեամբ քրտամբ չափ ընդ մեղս մարտուցեալ:

Եւ զայս վասն զի աշխարհականք էին՝ ասաց. օ-

րինաւորք էին և Թլփատէին, և ցայն վայր 'ի պահպանութ̃իս օրինացն փակեալ կային ։ Ածէ նոցա առակ օրինակի 'ի Զգօնութ̃է Սողոմոնի և ասէ ․ "Որդեակ իմ, մի՛ հեղգար ինչ 'ի խրատ տեառն և մի՛ լքանիր ․ զի զոր սիրէ տէր, և խրատէ„ ։ Արդ յորժամ խրատիցիք դուք, համբերէք ․ զի իբրև զորդիս ընդունի զձեզ ա̃ծ յետ ապաշխարութեանն՝ որ լինի 'ի ձեզ 'ի խրատուէ անտի ։ Զի՞նչ է այն որդի զոր ոչ խրատէ հայր իւր ․ զի եթէ 'ի խրատուէ նորա 'ի բաց լինիք՝ որով ամենեքին բաժանորդ լինին և հաճոյ, և ապա լինիք դուք գործովքն ձերովք օտարք և ոչ որդիք ։ Բայց սակայն եթէ 'ի ձեռն խրատուն հարցն մերոց ակն ածէաք 'ի նոցանէն, և որչափ ևս առաւել 'ի հնազանդութ̃է կացցուք խրատուն մերով հարցն հոգւոց, զի կեցցուք ։ Զի հարքն մեր, ասէ, սակաւ մի ժամանակ ըստ կամս իւրեանց խրատէին զմեզ ․ զի վասն որոյ մեզ պիտան էր, զօրացուցանէին և զգուշացուցանէին զմեզ ։ Իսկ ա̃ծ վասն օգտի հանդերձեալ պատրաստելոյ ժամանակաց 'ի մեծութ̃ի անդր իւր հաղորդս և կցորդս առնել զմեզ աշխատի 'ի մեզ ։ Զի ամենայն խրատ առ ժամանակ ոչ ուրախութ̃ի է, այլ տրտմութ̃ի թուի ․ բայց յետոյ պտուղ բարեաց տայ այնոցիկ՝ որ խրատինն և օգտինն նովաւ ․ և հատուցումն այնպիսեացն արդարութ̃ի է ։ Եւ այս՝ վասն զի ցուցցէ, զի թէպէտ և 'ի ձեռն խրատուն նորա օգտին նոքա, սակայն յարդարութենէ հատուցմանն նոցա, և ոչ շնորհաց ։ Այլ զձեռս դողդոջուտս և ըզծունկս կթոտս հաստատեցէք ․ այս ինքն ընթացք ոտից ձերոց 'ի նեղութ̃իս հալածչաց ձերոց մի՛ սայթաքեսցեն ․ զի որ կաղն իցէ, այս ինքն որ գայթագղեացն ուրացութ̃ք, և մի՛ կործանեսցի և խնդացուսցէ զմեզս, այլ բժշկեսցի ․ զի առողջութ̃ք նորա մեղքն յախտ անկցին ։ Զի զխաղաղութ̃է զհետ երթիջիք դուք առ ամենեսին սրբութ̃ք անձանց ․ զի առանց այսորիկ ես ձեզ 'ի վ̃ր գրեցի՝ ոչ ոք կարէ զտ̃ր տեսանել ։

Խորհեցարուք, գուցէ ոք 'ի ձէնջ յետնեալ ոք իցէ 'ի շնորհացն ա̃յ՝ որ սփռեցանն 'ի վերայ մեր 'ի ձեռն աւետարանին տեառն մերոյ ․ և մի՛ ոք արմատ դառնութ̃է 'ի վեր երևեալ՝ այս ինքն աղանդ չար՝ և

նեղեացէ զձեզ. և վասն նորա բազումք կորիցեն ։ Մի ոք իցէ 'ի ձեզ պոռնիկ և պիղծ իբրև զԵսաւ՝ որ վասն միոյ կերակրոյ զանդրանկութիւնն իւր վաճառեաց. այլ ոչ եթէ որպէս փակեցաւ դուռն ընդդէմ նորա, նոյնպէս փակեցաւ և ընդդէմ մեր ։ Զայս գիտէք դուք, զի թէպէտ կամեցաւ նա ժառանգել զօրհնութիւն խոստման գտաւ, զի և ապաշխարութեան տեղի ոչ գտաւ ։ Այլ ապաշխարութիւն Եսաւայ և արտասուքն ոչ եթէ վասն արդարանալոյ աւելի քան զեղբօրն էին, այլ զի առցէ նա իշխանութիւն 'ի վերայ եղբօրն իւրոյ ։ Արդ թէպէտ և բազում արտասուօք խնդրեաց, և ոչ տուաւ նմա ։ Ոչ եթէ արդարութիւն խնդրէր նա՝ որպէս ասացի, այլ զանդրանկութիւնն. զի եթէ էր խնդրեալ նորա մեծ լինել քան զեղբայրն իւր յարքայութեան, ոչ լինէր արգելեալ նմա. այլ զի թող նա զայն ինչ՝ որ օգուտ էր հոգւոյ իւրոյ, և խնդրեաց երկիր պարարտ քան զեղբօրն իւրոյ ։ Զարդարութիւն քան զի ոչ խնդրեաց՝ ոչ եգիտ, ոչ զնա, և յայնցանէ զոր յառաջագոյն կանխեաց առ Յակոբ հաւատովք իւրովք՝ զրկեցաւ նա ։

Ոչ, ասէ, մատուցեալ էք դուք 'ի լեառն շօշափեալ՝ որ հրովք վառեալ էր, և ոչ ուր ծուխն և մէգըն և մառախուղն, հանդերձ այլովքն որ 'ի լեառնն Սինէ գործեցան ։ Այլ քանզի բաւական ոչ կարացին լինել ժողովուրդն, հրաժարեցին. զի մի կրկնեսցի այլ առ նոսա բանն ։ Եւ այնպէս ահագին էր տեսիլն, զի [1] և Մովսէս ինքնին որ մեծն կոչեցաւ նոցա, այսպէս ասաց. ասէ. “Զահի հարեալ եմ ես, և դողամ ես „ ։ Այլ դուք մատուցեալ էք յԵրուսաղէմ յերկինս, և 'ի բանակ բիւրաւոր հրեշտակաց, և յեկեղեցին որ յերկինս է՝ ուր գրեցարուք դուք. 'ի նմա անդրանիկքն, այս ինքն առաջինքն և գլխաւորք. և 'ի հոգիս արդարոց, այս ինքն հարցն ձերոց առաջնոց՝ որ կատարեցան. և 'ի կտակարանն՝ ոչ Մովսէսին, այլ յայսց 'ի նորոցս, որոյ միջնորդ նորա Յիսուս է՝ որ եղև 'ի մէջ մեր և ա̃յ. և 'ի հեղումն արեանն նորա՝ որ առաւել խօսեցի քան զՀաբէլ. քան

1 Յօրինակին պակասի վէ ն ։

զի ստացուածն Աբելի համբաւաւոր էր 'ի մէջ ժողովրդեանն նոցա, վասն այսորիկ քան զնորայն մեծացոյց զայն յաչս նոցա ։

Ո՜ գոյշ լերուք մի պատրիք դուք յաղանդս հերձուածոց, և հրաժարիցէք 'ի խօսելեաց աստի. զի եթէ այնք ոչ իշխեցին փախչել յերկրաւոր հրամանատուէ անտի, այլ հրաժարեցին նոքա՝ զի 'ի ձեռն Մովսէսի խօսեցի ընդ նոսա, որչափ ևս առաւել ընդունիցիմք մեք զդատաստանս՝ եթէ յերկնաւորէ անտի թիկունս դարձուցանիցեմք ։ Կամ այն է՝ որ 'ի վերայ Յորդանանու գետոյն եղև, ասէ "Սա է Որդի իմ սիրելի", կամ այն՝ որ խօսեցաւ ընդ նմա 'ի Ճանապարհի անդ Դամասկեայ ։ Որոյ, ասէ, ձայնն նորա և զերկիր շարժեաց յայնժամ զՍինէ լերինն, այժմիկ խոստացեալ է և ասէ. դարձեալ միւսանգամ շարժեցից ոչ զերկիր միայն, այլ և զերկինս ։ Զնոյն իսկ զայն որ ասացեալն էր տեառն մերոյ՝ երկրորդեաց նա, զի ասէ. "Զօրութիւք երկնից շարժեսցին" ։ Զայս զոր ասաց, ասէ, միւսանգամ ևս՝ յայտ առնէ եթէ որք շարժելոցն են՝ փոփոխին, քանզի անցանեն. իսկ փոփոխումն և անցանելն ոչ նոքա, այլ և ընթացք լուսաւորաց իւրեանց, այն որ 'ի խոնարհելն իւրեանց ծնանին զձմեռն, և 'ի վերանալն իւրեանց ծնանին զամառն ։ Զանշարժ, ասէ, զթագաւորութիւն ընդունիմք մեք ։ Արդ եթէ դրախտն որ ոչ անցանէ՝ խոստացեալ է արդարոց, ոչ այսուհետև անցանէ երկիր՝ թէ գուցէ յանցանել երկրին անցանիցէ դրախտն որ ոչ անցանէ ։ Եւ եթէ երկիր ոչ անցանէ իբրև ամենայն անցցէ՝ որ յանցանել պատուիրանին բուսոյց երկիր, եթէ այդ այդպէս իցէ՝ ապա և ոչ երկինք անցանեն, թէպէտ և գնացք տուընջեան և գիշերոյ և ժամանակք ամարանւոյ և ձմեռանւոյ ոչ մնան ։ Արդ պինդ կալցուք զշնորհսն որով պաշտեմք. այս ինքն պինդ կալցուք զաւետարանն շնորհացն, զի նովաւ պաշտեսցուք հաճոյ լինել այ. զի ած հուրբ վառեալ և հաստատնէ զօրութիւս հրոյ, այս ինքն զահագին սպառնութիս հալածչաց ձերոց ։

## ԳԼՈՒԽ ԺԳ

Պատուական են հարսանիք, և սուրբ են անկողինք : Տեսանե՞ս զի բարուք ասացաւ 'ի վերագոյն՝ եթէ աշխարհականք էին և օրհնաւորք. զի և զսուրբ ամուսնութի՛ն որ ըստ օրինաց Մովսէսի էր, պղծէին նոքա : Յիշեցէք, ասէ, զառաջնորդս ձեր. այս ինքն զառաքեալսն զընկերս նորա, որ սերմանեցին 'ի նոսա զբանն այ : Հայեցարուք դուք ընդ վարս նոցա և յելս գնացից նոցա, և նմանողք եղերուք հաւատոցն Յսի Քսի. եթէ երեկ և այսօր կայցէք մնայցէք 'ի նմա, և յաւիտեանս յաւիտենից կացջիք մնասջիք 'ի նմա : Յուսմունս պէսպէս և յօտարաձայն աղանդըս, այս ինքն յուսմունս քահանայիցն և 'ի տասանորդս նոցա դուք մի՛ մոլորիք. զի լաւ է շնորհօք հաստատել զսիրտս մեր, այս ինքն աւետարանաւն նորով հաստատեալ, և ոչ ընտրութեմբք կերակրոցն քահանայից : Զի ոչ ինչ օգտեցան նոքօք որ զայսպէս վարս վարէին. այս ինքն ոչ քաւեցան և կեցին նոքօք որք պահեցին զնոսա :

Ունիմք մեք սեղան որ առաւել է քան զնոցայն, ուստի ճաշակել ինչ ոչ ունին իշխանութիւն, ոչ դոյզն հրեայքն միայն, այլ և ոչ ղևտացիքն՝ որ պաշտեն զպաշտօն վրան ժամուն : Այլ զոր օրինակ ըզմարմինս անասնոցն զայնոսիկ զորոց տանէր քահանայապետն զարիւնն փոխանակ մեղաց 'ի ներքս 'ի սրբութին քաւել՝ արտաքոյ բանակին այրէին զնա, և Յիսուս Քրիստոս զի սրբեսցէ արեամբ իւրով զժողովուրդ իւր, արտաքոյ դրան քաղաքի առ յանձն զչարչարանսըն : Եղև մարմին անասնոց օրինակ տեառն մերոյ, և տէր մեր մեզ, զի և մեք ելցուք արտաքոյ բանակին. այս ինքն ելանել լինել աւետարանիչ քարոզաւն նորա, և համբերել նախատանաց նորա : Եւ զգործս բարութեն և զհաւասարութիդ մի մոռանայցէք. զի այսպիսի պատարագօք հաճի ած, և ոչ այսպիսեօքն որ 'ի ներքս 'ի տաճարի անդ մատչէին :

Ունկնդիր լերուք առաջնորդաց ձերոց և հնա-

զանդ կացէք. այս ինքն անարգեսջիք զայն զօրինացն, և կատարեսջիք դուք զայն զՔրիստոսին: Զի համար և պատասխանի տալոց են նոքա այ̃ եթէ մոլորեցուցանեն զձեզ: Արդ ունկնդիր լերուք դուք նոցա, զի տացեն նոքա պատասխանի խնդութեամբ, և մի գերեալ մտօք և յոգւոց հանելոյ: Մեք այսպէս յուսացեալ եմք՝ եթէ բարւոք խորհուրդս ունիք. այս ինքն խորհուրդս կատարեալս ունիք յամենայնի. զամենայն զոր խրատ տայցեն մեզ, բարւոք գնասցուք: Այլ առաւել ևս աղաչեմ զձեզ զի ծրասջիք զայս, զի զմեզ յորդորեսջիք դուք այսուիկ՝ զի վաղագոյն 'ի ձեզ հասանիցեմք: Այլ Ած̃ խաղաղութե̃ որ յարոյց զհովիւն զհօտից մեծն յարիւն կտակարանաց, ոչ յայն որ անցն, այլ յայս որ յաւիտեանս յաւիտենից կայ, զի նա ինքն է Յիսուս Քրիստոս տէր մեր, զի նա կատարեսցէ զձեզ 'ի կտակարանաց անտի օրինացն զոր ունիք դուք յամենայն գործս բարութե̃. զի արասջիք դուք յամենայնի զկամս նորա, և ոչ հիւանդոտ պահպանութեամբքն օրինացն: Աղաչեմ զձեզ, եղբարք, ունկնդիր լերուք բանից մխիթարութե̃. այս ինքն զի գրեցի և ցուցի ձեզ՝ եթէ ամենայն առաջինքն որով պարծիք դուք նոքօք՝ 'ի նշմարանք են այսր որ 'ի ձեռն Քրիստոսի քարոզեցաւ ձեզ: Սակաւ բանիւք գրեցի [1] ես առ ձեզ ըստ կարի ձերում. և եթէ բաւական էիք դուք, ևս քան զայս բազում գրէի ես առ ձեզ. այն զի եթէ կատարեալք էիք, ոչ միով իւիք յայսցանէ կարօտեալք էիք:

1 Յօրինակին բազում ուրեք հանգերձ «ի» գրեալ էր Կատարեալ ժամանակք բայից. Գրէոյի, տուէփարանէոյի էս, օխտէոյի էս. և այլն: Նոյնպէս և Հրամայականն և Ապառնին նորա. օրհնէոյէք, յիշէոյէք. հաւատաէոյէք. յարէոջիք, փառջիք, եղխոջիք, եղխոյուք, փառջիր. ունխոջիր: Իսկ Ապառնի Սահմանականին առանց «ի». կաղէոյէ, ծառյէ, ղգէյոյէ, տուղղէյէս, Գիտայէս; ծերյէյուք, անայէյուք, տրքէյուք, ընկէյուք. ևրկէյուք: Մեք յայսպիսիս ևեթ ամ̃ ուրեք սովորականաւն վարեցաք, չատ համարեալ ծանօթս տալ առաւելաւս նախնեաց այլ և այլ գրութե̃ 'ի քննութի̃ լեզուագէտ հանաքցն:

ԱՌ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԱՌԱՋԻՆ

ԱՌԱՔԵԱԼՆ յղեաց զՏիմոթէոս առ Եփեսացիսն վասն ամանց 'ի հեբրայեցւոց , այն որ խռովէինն զնոսա պահել զպահպանութիւս օրինաց , այն որ վասն նոցա գրեաց նա առ Եփեսացիսն և ասէ . "Մի՛ այսուհետև իցեմք իբրև տղայք խռովեալք և զանդաչեալք յամենայն հողմս և յուսմունս խաբէութեան մարդկան ,, : Այլ քանզի առաջնորդ 'ի վերայ եկեղեցւոյ արարեալ էր զնա , ոչ էր քաղաք որ հալածեցաւ , եթէ ոչ փութացաւ նա երթալ և զօրացուցանել զսիրտս և զմիտս հալածելոց : Արդ քանզի փոյթ և յօժար էր նա յանձնէ իւրմէ , և առաջնորդութիւն ևս եկեղեցեաց ըստ հրամանին Առաքելոյ և 'ի ձեռնադրութէ անտի երիցանց՝ զի նոքա իսկ են եպիսկոպոսք՝ տուեալ էր նմա , առ նա գրել նմա թէ որպիսի գործ օրէն է նմա յեկեղեցւոջ անդ գործել : Եւ քանզի աշակերտուի ցայն վայր աշխարհականաց էր , 'ի զոհելոյ արգելուլին զնոսա առաքեալքն , և 'ի պոռնկութէ և յարիւն ուտելոյ . զի ոչ կամեցան նաքա ծանրացուցանել 'ի վերայ նոցա , զի նախ յերկրպագութենէ անտի կռոց յածպաշտութի ածցեն զնոսա : Արդ իբրև առ վերակացու եկեղեցեաց բազմաց գրեաց նմա՝ թէ որպէս պարտ և պատշաճ է նմա շրջել 'ի տան այ , զի նա ինքն է եկեղեցի այ , յասել իւրում այսպէս :

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ Առաքեալ Յիսուսի Քրիստոսի ըստ հրամանին կենարարին մերոյ . այս ինքն կենդանարար

ծածուկ և յայտնի է խորհուրդ մեռելութեն մերոյ: Եւ յուսոյն մերոյ Յիսուսի Քրիստոսի. այս զի նովաւ եղև յոյս ամենայն հեթանոսաց, որ զրկեալ էին յուսոյ անտի: Առ Տիմոթէոս որդի իմ և սիրելի. ոչ 'ի բնութէ, այլ 'ի հաւատոց և 'ի մկրտութէ, զի նորա աշակերտեալ էր զնա: Շնորհք ընդ ձեզ և խաղաղութի 'ի ձեռն պարգևաց հոգւոյն՝ որ են ընդ ձեզ. յայ 'ի հօրէ մերմէ, զի արժանի արար կոչել զինքն Հայր մեր զհեթանոսս, զի անուամբ միայն գիտէին զնա: Եւ 'ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ. այս ինքն յայնմանէ՝ որ մարմնովն և ածութեբն իւրով տէր մեր է: Աղաչեցի ես զքեզ 'ի ժամանակի զի երթայի ես 'ի կողմանս մակեդոնացւոց՝ եթէ կայցես մնայցես յեփեսոս: Նայեաց դու և տես՝ զի և ոչ աշակերտաց իւրոց անգամ իշխանութբ իւրով հրամայէր Առաքեալ. զի և 'ի Տիմոթէէ յորդւոյ անտի իւրմէ աղօթիւք խնդրէր նա: Զի դու պատուէր տայցես, ասէ, այնոցիկ՝ որ օտարուսմունքն իցեն, զի մի հայեսցին նոքա յառասպելս և 'ի տոհմաթիւս յանչափս. այս ինքն յուտումն հրէութե և 'ի պահպանութիս օրինացն: Եւ մի հնազանդեսցեն պատմութեանցն պատուիրանաց քահանայիցն նոցա. այն զի տոհմաթիւ խօսից, զի անսպառ իցեն կարգք իւրեանց, նմանեալք են բազմութբ իւրեանց: Կամ զի մի պարծեսցին առ ձեզ աբրահամեան տոհմաւն և երկոտասան ազգաւն Յակովբու. այն զի վասն բազմութե իւրեանց անչափ են: Սոքին իսկ այս հակառակութի առնեն 'ի մէջ եկեղեցւոյ. և չիք 'ի նոսա հաւատք տնտեսութե այ. այս ինքն չիք 'ի նոսա հաւատք՝ որ սպասեալ ակն ունին խոստացեալ հատուցմանն. զի ամենայն աւետիք պարգևացն նոցա յերկրի են:

Օ 'ի գլուխ պատուիրանին սէր է. այս զի վասն նորին սիրոյ եդան ամենայն պատուիրանքն: Եւ ուր սէր է, օրէնք ինչ չեն պիտոյ: Այլ զսէրն զոր ասացի, ոչ այն որ շրթանցն է, այլ 'ի սուրբ սրտէ, յայնցանէ՝ որ 'ի կնձռան անդէն 'ի մտաց բարեաց որ իւիք չիցեն պղծեալ, և յանհակառակ հաւատոց՝ որ 'ի բանից մի ուսմանց և յամենայն ուսմանց ոչ խռովիցին: Զի 'ի սոցուն իսկ 'ի պատուիրանաց աստի

սիրոյ և հաւատոց վրիպեցան նոքա և խոտորեցան յունայնութ̃ի բանիցն հեբրայեցւոց։ Որ կամեցան զանձինս իւրեանց ունել օրինադիր վարդապետս. քանզի ոչ գիտէին նոքա զզօրութիս օրինաց, ոչ զայն ինչ զոր խօսէին՝ գիտեն, զի ընդդէմ անձանց իւրեանց խօսէին, և ոչ վասն որոյ պնդեալն էին և յամառեալն են թէ գիտեմք՝ ճշմարիտ ինչ գիտեն։ Զայս գիտեմք եթէ բարւոք են օրէնք, եթէ ոք զնոսա օրինօքն կրեացէ. այս ինքն եթէ ծանիցեն զժամանակն նոցա, և գիտասցեն զխորհուրդս ճշմարիտս՝ որ ակնարկեալ են 'ի նշմարանս նոցա։ Ապա եթէ այնոցիկ ոչ լինին հասու, և 'ի պատուիրանս նոցա անխտիր հաստատեալ կայցեն, զայս գիտասցեն՝ եթէ արդարոցն որ յառաջ քան զօրէնսն էին և որ զկնի օրինացն, օրէնք ինչ ոչ են եդեալ։ Զի յօրինաց անտի ուստի արդարացանն՝ որ յառաջ քան զօրէնս էին, անտի արդարացան որք յաւուրս օրինացն և որք զկնի օրինացն էին։ Պիտոյ եղեն դնել ոչ վասն արդարոց՝ զի չէին ինչ կարօտ նոքօք, այլ վասն անօրինացն և սպանողաց և արուագիտաց և այլոց որ նման իցեն նոցա. զի թերևս վասն մօտաւոր պատժոցն օրինացն երկիցեն, և արգելցին 'ի չարեաց անտի։

Այլ շնորհ ունիմ այնմիկ՝ որ զօրացոյցն զիս 'ի Քս̃ Յս̃ 'ի տէր մեր՝ կալ և ժուժկալ լինել ինձ առաջի նեղութե̃ց. և հաւատարիմ համարեցաւ զիս տալ ինձ զաւետարանն, և հաստատեաց զիս ոչ յայն պաշտօն 'ի զոհիցն, այլ յայս պաշտօն յերկնաւորս։ Զիս որ յառաջ հայհոյիչ և հալածիչ և թշնամանիչ, և ահա արժանի արար զիս այսօր՝ զի հալածեցայց վասն նորա, փոխանակ զի հալածեցի ես զեկեղեցի նորա. և թշնամանեցայց վասն նորա, զի թշնամանեցի ես զպաշտօնեայս նորա. և եղէց ես 'ի նմա խոստովանեալ, փոխանակ զի եղէ ես ըստ օրինաց նախանձուն հայհոյիչ։ Ողորմեցաւ ինձ և առ զիս անտի, քանզի զայս ամենայն 'ի տգիտութե̃ իմում գործեցի յեկեղեցւոջ նորա և յանհաւատութե̃։ Այլ առաւել եղեն շնորհքն տեառն մերոյ հաւատովք և սիրովն հանդերձ՝ որ 'ի Յիսուս Քրիստոս է. այս ինքն զի առաւել են յիս հաւատքն զոր հալածէի ես, և

յաճախեաց յիս սէրն Յիսուսի Քրիստոսի զոր երբեմն հայհոյէի։ Հաւատարիմ է բանս և ամենայն ընդունելութեան արժանի է, թէ Ճշմարիտ Յիսուս Քրիստոս ապրեցուցանել եկն զմեղաւորս, որպէս և ասաց իսկ. "Ոչ եկի ես կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն"։ Զի ինև կատարեցաւ գործ բանի նորա, այն զի գլուխ մեղաւորաց ես եմ։ Այլ վասն այսր իսկ գտի ողորմութիւն, զի յիմ գտանելն ցուցցէ Յիսուս Քրիստոս զամենայն զերկայնմտութիւն իւր։ Զի եթէ սպանեալ էր զիս արդարութիւն իւրով մինչ դեռ հայհոյէին ես, զիա՞րդ գտանէին զիս շնորհք նորա։ Արդ ահա կոչեաց և մեծացոյց զիս իւրև, զի զիս արասցէ օրինակ ամենայն մեղաւորաց՝ որ հաւատալոցն են 'ի նա, զի և նոքա իբրև զիս գտցեն զկեանսն յաւիտենից։ Այլ թագաւորին յաւիտենից՝ որ արար ինձ զայս, և կենդանւոյն՝ որ անեղծն և անարատն և աներևոյթն է՝ որ գործեաց 'ի ձեռն Որդւոյ իւրոյ, որ երևեցաւ նա ամենայն հեթանոսաց, նմա փառք և պատիւ յաւիտեան յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Այլ զայս պատուիրան զոր հանդերձեալ եմ ես գրել, յանձն առնեմ քեզ, որդեակ իմ Տիմոթէոս, ըստ կանխելոցն 'ի վերայ քո մարգարէութեանցն. զի դու վառեսցիս նոքօք զգեղեցիկ սպառազինութիւն՝ գործել զգործս բարիս։ Այլ մարգարէութիւն որ եղև 'ի վերայ նորա, կամ ոք 'ի մարգարէից անտի նորոյն խօսեցաւ 'ի վերայ նորա մարգարէութիւն՝ եթէ անօթ է նա ընտրեալ, կամ նմին իսկ գլխովին տուաւ մարգարէութիւն, և պատուիրեաց նմա եթէ հանդերձ մարգարէութիւն որ տուաւ քեզ՝ գործս ևս բարիս նըմանող նմին արժան է գործել նովաւ. այս ինքն ճըշմարիտ հաւատովք զոր ստացարդ, և սուրբ մտօվքդ զոր ունիս դու։ Զի են ոմանք որ մերժեցին զայս յանձանց իւրեանց. այս ինքն զգործսն բարութեան, և զմիտս սրբութեան որ առ ած է. և 'ի հաւատոց անտի զրկեցան. այս ինքն են մի 'ի նոցանէն Մենէոս, և միւս ևս Աղեքսանդրոս։ Յայնմանէ զի ասաց՝ բայ են ոմանք որ մերժեցին զայս յանձանց իւրեանց, և 'ի հաւատոց անտի զրկեցան, մի յերկուց կարծիք կան 'ի վերայ նոցա. կամ վասն զի մերժեցին յան-

ձանց իւրեանց զգործս բարութեան և զմիտս սրբութեան ունայնացան 'ի հաւատոց անտի և ոչ ընկալան զնոսա, կամ զի հաւատացեալք էին՝ և իբրև հեռացուցին յինքեանց զգործս բարութեան և զմիտս սրբութեան, և 'ի հաւատոց անտի ունայնացան. և ապա յետ այնորիկ անչափ հակառակութիւն կացին նոքա ընդդէմ հաւատոց: Իսկ զի ասաց՝ բայց զորս մատնեցի 'ի ձեռս սատանայի զի խրատեսցին, զի յայսմ հետէ մի լիցին հայհոյել: Զի որպէս սաստեաց նմա Բարշումայի կախարդի և սուտ մարգարէին՝ որ կամակորէր և թիւրէր զճանապարհն այ, և ասաց ցնա՝ եղիցիս դու կոյր և մի տեսցես զարև մինչ 'ի ժամանակ, նոյնպէս մատնեաց և զնոսա դիւաց, զի մտցեն 'ի նոսա. զի յորժամ խրատեսցին նոքա վասն առաջին գործոց զոր գործէին նոքա, արգելցին 'ի հայհոյութենէ անտի, որ զտէրն մեր և զմանկունս եկեղեցւոյ հայհոյեցին:

## ԳԼՈՒԽ Բ

ԱՂԱՉԵՄ զքեզ, ասէ, զի նախ քան զամենայն ինչ: Նայեաց դու և տես, զի և ըստ սովորութեան խոնարհութեան իւրոյ աղաչէր նա զնա, և ոչ եթէ ըստ դիպի ինչ պատճառանաց: Աղաչեմ, ասէ, զքեզ՝ զի նախ քան զամենայն ինչ առնիցես աղօթս և խնդրուածս առ ած վասն ամենայն մարդկան, և պաղատանս վասն թագաւորաց, և գոհութիւն վասն այնոցիկ 'որ առաւելն իցեն. զի խաղաղութիւն պատերազմաց և շինութիւն վարեսցեն զամենայն զկեանս իւրեանց. այս ինքն սրբութիւն և արդարութիւն: Թերևս այս քարոզութիւն աղօթից որ քարոզիս այսօր ընդ առաւօտս և ընդ երեկորի 'ի մէջ եկեղեցւոյ, աստի առ սկիզբն: Զայս թէ արասցես, բարւոք է, ասէ, և ընդունելի առաջի այ, որ զամենայն մարդ կամի թէ ապրեսցին 'ի մոլորութենէ և 'ի խաբէութենէ, և 'ի գիտութիւն ճշմարտութեան հասցեն, և զոր մեքս քարոզեմք. զի մի է ած և ոչ բազումք, որպէս և հեթանոսքն կարծեն. և մի է միջնորդ այ և մարդկան, զի վասն փրկութեան ամենայն մարդկան չարչարեցաւ

նա 'ի ժամանակի իւրում, այն որ յառաջագոյն նկարեալ և դրոշմեալ էր մահն նորա 'ի խորհուրդս ծնչի իւրոյ. և ակնարկեալ էր 'ի Մովսէս և յամենայն մարգարէս: Եւ եդայ ես՝ որ գլուխս մեղաւորաց եմ՝ քարոզիչ և Առաքեալ: Ճշմարիտ ասեմ և ոչ ստեմ, զի եղէ ես վարդապետ հեթանոսաց, ոչ զոհիւք պատարագացն, այլ հաւատովք ճշմարտութ̃ե:

Դարձեալ յետ այսոցիկ իբրև ուսոյց նա արանց կալ յաղօթս առանց բարկութ̃ե և առանց սրտմտութ̃ե, շրջեցաւ նա զգաստացուցանել և զկանայս, և խափանել զզարդն պաճուճանացն և զկտութ̃ե և զհերս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտովքն և զհանդերձն երևելի: Այլ որպէս վայելեսցէ կանանցըն՝ որոց զա̃ծպաշտութիւն յանձն առեալ իցէ 'ի գործս բարութ̃ե, և 'ի գործս արդարութ̃ե և հեզութ̃ե պաշտեսցեն նոքա զարդարութիւն սրբութ̃ե:

Դարձեալ սկսաւ պատուիրել. զի 'ի հնազանդութ̃ե կացցեն արանց իւրեանց և քահանայից իւրեանց. և ցածութ̃ե հանապազօր ուսցին, և երբէք զաշտիճան վարդապետաց նոքա մի առցեն, թէպէտ և իցեն նոքա խօսողք և իմաստունք: Եւ ուսուցանել, ասէ, կնոջ մարդոյ ոչ հրամայեմ, և ոչ ճոխաբան լինել քան զայր մարդ. այլ 'ի լռութ̃ե կալ և ուսանել հանապազօր: Զի Ադամ նախ ստեղծաւ, և ապա 'ի պատիւ նորա հաստեցաւ և Եւայ կին նորա. և Ադամ ոչ անկաւ 'ի պատրանս խաբէութ̃ե, զի կինն զառաջեաց և անց զպատուիրանաւն. բայց ապրեսցէ վասն ծննդոց իւրոց, այն որ տուաւն նմա երկամբք և ցաւովք, եթէ փութացուսցէ և յօժարեցուսցէ զնոսա կալ 'ի հաւատս և 'ի սէր և յարդարութ̃ի ճշմարտութեանն:

## ԳԼՈՒԽ Գ

ԵԹԷ լիցէ, ասէ, ոք որ երիցութ̃ե ցանկայ, այնպիսին 'ի գործս բարիս զոր առանց երիցութ̃են ոչ կարէ վճարել կամ 'ի կատարել երիցութ̃ե, պարտ է նմա անարատ լինել. այս ինքն պարգևօքն և դահամամբք ուխտիւք նա մի կապեսցի: Միոյ կնոջ այր. զի

'ի տեղ կնոջ իւրոյ զբաղմունք ինչ չարի չիցէ նորա ընդ այլում ։ Եւ որդիք նորա դարձեալ մի՛ հպարտասցին 'ի նմանութի̃ որդւոցն Հեղեայ . այլ 'ի հնազանդութե̃ կացցեն նոքա հարց իւրեանց և ամենայն ժողովրդեանն ամենայն սրբութ̃բ և պնտութ̃բ ։ Զի եթէ զորդիս իւր 'ի խրատու չկարէ կացուցանել , զիա̂րդ մարթ է եկեղեցւոյն այ̃ հրաման տալ ։ Մի՛ մատաղատունկն , զի մի՛ հպարտասցի և անկցի նա յամպարտաւանութի̃ , զի նա ինքն է որոգայթ մեծ սատանայի ։ Սոյնպէս և պաշտօնեայք սարկաւագունք սուրբ եղիցին անձամբք իւրեանց 'ի զօշաքաղութ̃է , և մարմնովք իւրեանց 'ի ցաւոց ցանկութ̃է . և հաստատեալ կացցեն նոքա 'ի հալածանս 'ի խորհուրդս հաւատոցն , և պատուեսցեն նոքա զխորհուրդն մարմնոյն Քրիստոսի 'ի սրբութ̃ի մտաց իւրեանց ։ Եւ նաքս նախ փորձեսցին իրօք իւիք որ 'ի խոնարհագոյն իցեն քան զկարգ սարկաւագութ̃ե ։ Սոյնպէս և կանայք նոցա մի՛ սատանայոտք , այլ հեզք , զի մի՛ 'ի ձեռն լկտութեան նոցա հայհոյեսցին արք իւրեանց . և մի՛ չարախօս լիցին նոքա զընկերաց իւրեանց առ արս իւրեանց , զի առաջնորդք նոցա են ։ Այլ հանապազօր եղիցին նոքա արթուն 'ի գործս բարիս , և յամենայնի հաւատացեալք լինիցին , զի մի՛ անկեալ գտցին նոքա 'ի դիւթեալ և 'ի հմայեալ .

Այլ զայս զոր գրեմ ես առ քեզ , ոչ եթէ իբր աք զի չունիցիմ ակն տեսանել զքեզ ։ Ապա եթէ յամեցից , գիտասցես թէ որպէս պարտ և պատշաճ իցէ շրջել քեզ 'ի տան այ̃ , զի նա ինքն է սիւն հաստատութե̃ և ճշմարտութե̃ 'ի մէջ աշխարհի . զի վասն նորին իսկ եկեղեցւոյ կայ աշխարհս ։ Եւ արդարեւ վկայեն՝ զի մեծ է խորհուրդ այսր արդարութե̃ զոր քարոզեմք մեք ։ Յայտնեցաւ մարմնով 'ի կուսէ . արդարացաւ Հոգւով , այս ինքն արդարութ̃բ Հոգւոյն սրբոյ . և երևեցաւ հրեշտակաց ծննդեամբն իւրով . և քարոզեցաւ 'ի հեթանոսս զօրութ̃բք և նշանօք . և հաւատարիմ եղև յաշխարհի 'ի ձեռն վարդապետուե̃ աշակերտացն իւրոյ . և վերացաւ փառօք հրրեշտակացն և աշակերտաց 'ի ժամանակի իբրև ընկալաւ զնա ամպն ։

## ԳԼՈՒԽ Դ

ՎԱՍՆ ԶԻ Հոգւոյն սուրբ յայտնապէս ասէ [1] 'ի ձեռն մարգարէիցն, որ էջն և հանգեաւ 'ի վերայ նոցա, եթէ 'ի ժամանակս յետինս՝ այս ինքն յաւուրս յետինս՝ քակեսցին ոմանք 'ի հաւատոց անտի իւրեանց, և հայեսցին նոքա յայսս մոլորութե և 'ի վարդապետութիւս սատանայութե : Նայեաց դու, զի նոքա 'ի ճշմարիտ հաւատոց անտի խոտորին. քանզի տան զանձինս իւրեանց 'ի տեսիլս այլոց մոլորութե, և լինին ինքնակամք ուսուցիչք վարդապետութե դիւաց՝ որ յայտնին նոցա : Որոց զիւրեանց խորհուրդսն ընկեցեալ և որոշեալ է. այս ինքն պղծեալ են խորհուրդք իւրեանց : Եւ արգելունն զհարսանիս, ոչ վասն առաւել աշտիճանին կուսութե, այլ վասն զի պիղծ թուի յաչս նոցա ամուսնութի : Այլ այս 'ի սոցանէ ասի 'ի վերայ մարկիոնացւոց, և 'ի սոցանէն 'ի վերայ մանիքեացւոց և 'ի վերայ ազգի ազգի աղանդոց : Զի կանխեաց յառաջագոյն և մարգարէացաւ 'ի վերայ նոցա Առաքեալ որ լինելոց էին զկնի նորա : Մարկիոնացիք պղծեն զամուսնութի, և մանիքեցիք ըզկերակուրս՝ զոր ած արար 'ի մխիթարութի գոհութե հաւատացելոցն. այս ինքն 'ի մխիթարութի այնոցիկ՝ որ ուտեն, և 'ի գոհութի այնոցիկ՝ որ ոչ ուտեն. զի ոչ եթէ վասն զի մի պղծիցին՝ արգելեալ են 'ի նոցանէն հաւատացեալք, այլ զի կեցցեն 'ի պատճառս նոցա. զի կարճեն նոքա զանձինս իւրեանց յուրախութենէ անտի նոցա : Զի ամենայն արարածք այ բարի են, որպէս և ասացեալ իսկ է. "Եւ ետես ած զամենայն զոր արար, և ահա բարի է յոյժ" : Եւ չիք ինչ խոտան 'ի նոսա. այս ինքն չիք ինչ պիղծ 'ի նոսա, զի ոչ եթէ հայհոյութբ ինչ պաշտին նոքօք՝ թէ պղծեսցին : Եւ այն որ 'ի վաճառի անդ՝ զոր հեթանոսքն զենուն, և ոչ այսպէս պղծեն զնոսա. քանզի սրբին նոքա բանիւ այ և աղօթիւք զոր յիշեն 'ի վերայ նոցա :

1 Յօրինակին պակասի ասէ :

Այլ 'ի բանից զազրութեանց հրէից և յօտար աղանդոց հրաժարեա 'ի նոցանէ. և կրթեա զանձն քո յաստուածպաշտութիւն, այս ինքն 'ի գործս արդարութեան։ Զի մարմնոյ կրթութիւն այնոցիկ՝ որ կրթեն զանձինս իւրեանց, սակաւ ինչ օգուտ է. որչափ և կենդանի է մարմինն նոցա՝ օգնէ նոցա. իսկ գործքն արդարութեան որովք ոգիքն կրթին՝ միշտ օգնական են, աստ բարւոք անուանքն զոր տան մեզ ստանալ, և յաշխարհին որ գալոցն է կենօքն՝ որ յաւիտենիցն տան մեզ շահել։ Այլ զի մի ոք զքո մանկութիւնդ արհամարհիցէ, օրինակ բարեաց լինիջիր դու հաւատացելոցն, ոչ բանիւք միայն, այլ և գնացիւք, սիրով և հաւատովք և սրբութեամբ, մինչև գամ ես։ Միտ դիր դու գրոց մխիթարութեան և վարդապետութեան. այս ինքն միտ դիր դու աղօթից և ընթերցուածոց գրոց։ Եւ մի, ասէ, հեղգար դու վասն շնորհացն՝ որ տուեալ է քեզ մարգարէութեամբ 'ի ձեռնադրութենէ երիցանց. այս ինքն եպիսկոպոսից։ Թէրևս ընդ նմին իսկ ընդ ձեռնադրութեան եպիսկոպոսութեան զոր առ, ընկալաւ նա և զմարգարէութիւն։ Ցայս, ասէ, լեր և 'ի սոյն կանխեա. այս ինքն յայս լեր և թևակոխել և 'ի սոյն կանխեա գործել. զի յայտնի լիցին 'ի ձեռն գործոցդ այդոցիկ եթէ յառաջ ևեթ գաս դու։ Զգոյշ լինիջիր անձին քում և վարդապետութեանդ, և 'ի սոյն կանխեսջիր անձամբ քով, զի մի իւիք դսրովեսցիս. և հաւատովք քովք, զի 'ի ժամ նեղութեան մի խոտորիցիս։ Եւ զայս յորժամ առնես դու, ոչ միայն զանձն քո ապրեցուսցես բարւոք տեսլեամբն քով, այլ և զայնոսիկ որ լսեն քեզ՝ շահեսցես դու։

## ԳԼՈՒԽ Ե

ԶԱՅՐԻՍ մեծարեսցես՝ որ ստոյգ այրիքն իցեն. այս ինքն կերակրեսցես։ Եթէ ոք այրի իցէ, և որդիք և թոռունք իցեն նորա, ուսցին նոքա 'ի քէն՝ զի նախ զտուրսն իւրեանց անդրէն 'ի տունս իւրեանց տացեն, և ապա այլոց։ Բայց սակայն այնոքիկ՝ որ զարդարութիւնս ոչ կատարեցին և փոխարէն զերախտիսն

զոր հօր և մօր պարտէին՝ ոչ հատուցին, ո՞ հաւատայ նոցա՝ եթէ արտաքինքն գոհ են զնոցանէ. զի ներքինքն անչափ տրտունջ են զնոցանէ: Այս գործ զոր ասացի, ընդունելի է առաջի ա͞յ: Ապա եթէ իցէ ոք որ անձին իւրոյ և մանաւանդ ընտանեաց խնամ ոչ տանի, ուրացեալ է նա 'ի հաւատոց. զի ոչ գործէ նա զգործ զոր հաւատքն քարոզեն, և է չար ևս քան զթերահաւատն. զի առնէ նա զայս զոր ոչն կամեցաւն առնել: Դարձեալ ընտրեսցես դու այրի 'ի սպասաւորութի̃ սարկաւագութե̃ որ ոչ պակաս իցէ 'ի վաթսունեմենից. զի իցէ միոյ առն կին լեալ: Զի եթէ առնն իւրում առաջնում հաստատուն եղև սէրն նորա, զի զկնի մահու նորա այլում ոչ եղև. նա այլ, 'ի սէրն ա͞յ որչափ ևս առաւել ժուժկալ լինի նա: Եթէ 'ի գործս բարիս վկայեալ իցէ վասն նորա, եթէ մնուցեալ իցէ նորա մանկունս իւր, և ոչ թարթափեցուցեալ իցէ զնոսա, եթէ զամենայն գործոց բարեաց զհետ երթեալ իցէ նորա, այնպիսին եղիցի: Իսկ որ աղճկամարդ այրիքդ են՝ 'ի նոցանէ 'ի բաց մերժեաց, զի չիք 'ի նոսա յոյս ապաստանի. պատուին նոքա 'ի պատճառս աշտիճանին, և հատանին 'ի խայտալ, և անկուշէ մարմինն. իսկ արանց կամին լինել, զդատաստանս յանձինս իւրեանց ընդունին. զի յառաջին հաւատոց անտի թեւրեցան, այս ինքն է յառաջին խոստմանէ անտի իւրեանց: Դարձեալ դատարկանձունք սովորեալ են շրջողք մուտ և ելք 'ի տանէ 'ի տուն. և զայս ինչ խօսին՝ որ զինչ ոչ է պիտոյ: Փարթար կամիմ՝ որ մանկամարդք իցեն թէ արանց լինիցին, կի մի ինչ պատճառս տայցեն սատանայի 'ի հայհոյութե̃ աղագս. զի և արդէն բազումք են՝ որ խոտորեցան և զկնի գնացին սատանայի, և եղեն մեզ իբրև պատնէշ և որոգայթ:

Երիցունքն որ բարւոք առաջնորդեալ գիտեն ժողովրդեանն, կրկին պատուոյ արժանի լինիցին նոքա քան զընկերս իւրեանց՝ որ խոնարհագոյն իցեն քան զնոսա գործովք իւրեանց. մանաւանդ որ ջանան և վաստակեն բանիւ և վարդապետութ͞բ: Զի վասն նոցա գրեալ է յօրէնս՝ թէ "Մի՛ կապեր զցռուկ եզին կալոտւոյ„. և վասն նոցուն ասացեալ է 'ի նորում

ասող՝ եթէ "Արժանի է մշակն վարձուն իւրոյ,,։ Ջերիցուէ առնէ վաղվաղակի զչարախօսութի՛ 'ի ծածուկ յանձն մի առնուր. բայց եթէ երկուք և երիւք վկայիւք։ Զամենայն զինչ առնիցես՝ մի իւիք աչառանօք առնիցես հնազանդել քեզ. մի 'ի խնդրուածոց երեսաց մարդոց պատուականաց պատկառիցես դու։ Ձեռն վաղվաղակի առանց փորձելոյ յուրուք վերայ մի դնիցես, և մի կցորդ լինիցիս դու մեղաց այնոցիկ զոր առնես դուն։ Են մարդք որոց մեղքն իւրեանց յայտնի են նոցուն, յառաջագոյն քան զնոսա հասեալ են յատեան դատաստանի. այս որ վաղվաղէն դնել ձեռն 'ի վերայ՝ ոչ եթէ միայն առաջի նոցա և ընդ նոսա երթան, այլ և զկնի նոցա երթան մեղքն և անօրէնութիւնք այնոցիկ՝ որ արարինն և թողին զկնի իւրեանց։ Այսուհետև մի ջուր ևեթ ըմպիցես, այլ ոչ գինի ասեմ՝ թէ ըմպիցես, այլ սակաւիկ մի ըմպիցես վասն ստամոքսի քո և ստէպ ստէպ տկարութե՛. զի ցաւագնոտեաց նա 'ի բազում պահոց անտի. և վս՛ բազում հիւանդութե՛ցն՝ որ համապազօր զարթնուն 'ի վերայ քո 'ի պատճառս ցաւոց ստամոքսի քո։

## ԳԼՈՒԽ Զ

Դու պատուիրեսցես դարձեալ որ ընդ լծով ծառայութե՛ իցեն՝ զի զտեարս իւրեանց ամենայն պատուոյ արժանի համարեսցին. մանաւանդ զայնոսիկ՝ որ լըծեալն իցեն ընդ նոսա ընդ լծովն Քրիստոսի։ Եթէ ոք այլ ազգ յօտար յօրէնս ոք ինչ ուսանիցէ 'ի մտաց իւրոց, և ոչ անսայցէ ողջամտութե՛ բանիցն տեառն մերոյ և որ աստուածպաշտութե՛ն վարդապետութե՛ն է, այս ինքն վարդապետութե՛ն որ հաստատեալ կայ գործովք արդարութե՛՝ ոչ անսայցէ, այնպիսին հպարտացեալ է 'ի գիտս անձին իւրոյ, և ոչ ինչ 'ի ճշմարտութե՛ նա ոչ գիտէ, այլ տապի նա 'ի բանիցխնդիր գրգռութիւն. և յայնմանէ իսկ ծնանին հեռ և նախանձ և հակառակութի՛ և այլ ևս որ ծնանին. և ապականեն զմիտս մարդկան ծնանելն նոցա զօտարոտիս, որ զըրկեալ են 'ի ճշմարտութե՛. և զարդարութե՛ն աստ՝ այս

ինքն զճշմարիտ քարոզութիւն այ՝ իբրև շահի վաճառարարին : Բայց դու մերժեսջիր յայնպիսեաց անտի, զի մի կռուիցի 'ի քեզ ագահութիւն նոցա : Զի շահն մեր ոչ եթէ անցաւոր իցէ անյագ. զի շահն մեր ճշմարտութիւն է. և այս շատ իցէ ծածուկ կենացս մերոց : Իսկ որ կամին մեծանալ, անկանին նոքա ոչ 'ի մի փորձանս, զի ագահութիւն նոցա որ է 'ի նոսա՝ 'ի փորձանս բազումս տանի զնոսա, և յորոգայթս պէսպէս ցանկութեանց ցանկութիւն մարմնոյ նոցա արկանէ զնոսա : Զի արմատք ամենայն չարեաց՝ որ 'ի նոցանէն ելանեն և որ ստանան, արծաթսիրութիւն է : Եւ են ոմանք, այս ինքն և դիպեցան մեզ ոմանք՝ որ այսմ իսկ ցանկացան և խոտորեցան 'ի հաւատոց անտի ճշմարտութեան. այս ինքն 'ի ճանապարհէ գործոց բարեաց հաւատոց թերեցան նոքա. կապեցին զանձինս իւրեանց 'ի զբաղումն չարեաց, և անկան 'ի ցաւս բազումս :

Այլ դու, ով մարդ այ, յայսպիսեաց աստի որ հեռի առնեն զքեզ յայ՝ փախիր, և երթ զկնի արդարութեան քարոզել, և զհետ ածպաշտութեան՝ աւետարանել, զհաւատոց՝ ուսուցանել, զսիրոյ՝ հասանել, և զհամբերութեան գտանել, և զհեզութեան ստանալ : Եւ մարտիր բարւոք զմարտ պատերազմի հաւատոյ՝ որ հայեցեալ ակն ունին հատուցմանն. և բուռն հար մի զկենացս ժամանակեանս, այլ զկենացն յաւիտենից յոր կոչեցարն դու 'ի ձեռն քարոզութեան իմոյ, և խոստովանեցար զբարւոք խոստովանութիւն առաջի բազում վկայից. այս ինքն զի առաջի բազում հալածչաց կացեր դու քաջալերեալ՝ և խոստովանեցար, և նեղեցին զքեզ՝ և դու ոչ ուրացար : Պատուիրեմ առաջի այ՝ որ կենդանի առնէ զամենայն 'ի կատարածի, և առաջի Յիսուսի Քրիստոսի՝ որ մեռաւ իսկ վասն այսորիկ, զի պահեսցես դու զբարւոք խոստովանութիւն և զհաւատսն ողջ, անեղծ և անարատ. այս ինքն խոստովանութիւն քո՝ որ է առաջի բազում դատաւորաց, և զհաւատսն զայն՝ որ ցայժմ պահեցեր զնոսա ողջ, անեղծ և անարատ մինչ 'ի գալուստ տեառն մերոյ, յիմիք սատանայի կամ մարդկան մի կապիր :

Մեծամեծացդ որ յայսմ աշխարհի իցեն՝ պատուէր տաջիր, զի մի հպարտացեալ իցեն. և փոխանակ ոյ մշտնջենաւորի գլոյս իւրեանց յանցաւոր մեծութի մի արասցեն: Եւ ուսուաջիր նոցա մեծանալ զմեծութի գործոց բարեաց. լինել նոցա առատ, սիրուն, ոչ միայն առ մերձաւորս, այլ և հաւասարորդս լինել տրովքն իւրեանց հեռաւոր սրբոցն, զոր տայցեն տանել: Զի այսուիկ որ ժամանակեանս է, կարասցեն հասու լինել կենացն այն որ սոոյգն են յաւիտենից: Արդ պահեա դու զաւանդս պատուիրանացս այսոցիկ վայելչութք. այս ինքն սրբութք և ճշմարտութք. և խոստորեսջիր դու 'ի պիղծ և նորաձայն բանից. զի հակառակութի աճեցուցանէ զնոսա, և մոլորանութն դիտուի յաճախէ զնոսա: Եւ են ոմանք՝ որ կարծեալք որ յանձն առին զայս, և զառաջին հաւատոյն իւրեանց զճշմարիտս թողինել ինչ ոչ կարացին:

ԱՌ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԵՐԿՐՈՐԴ

ՊԱՒՂՈՍ ծանեաւ Հոգւովն որ էր 'ի նմա՝ եթէ մերձեալ է ժամանակ վախճանի իւրոյ ելանել նմա յաշխարհէ աստի յայսմանէ։ Եւ գրեաց նա առ Տիմոթէոս, զի եկեսցէ վաղվաղակի առ նա. մի՝ զի յաւելցէ պատուիրել նմա՝ թէ որպէս պարտ և պատշաճ իցէ նմա շրջել յեկեղեցւոջ այ. և երկու՝ զի եղիցի նա նմա օրինակ և քաջալեր մահուամբն իւրով, որպէս և եղև նա նմա տանջանօքն և քարկոծանօքն և քարշելովն։ Իսկ զփիլոն և զգիրսն զոր հրամայեաց բերել, կամ զի վաճառեսցէ զնոսա և տացէ զվարձս տանն, կամ զի ժառանգեցուսցէ զնոսա ում և արժան իցէ։ Տիմոթէոս թէպէտ և սիրելի էր, սակայն մեծատանց որդի էր։ Այլ քանզի ցանկացեալ էր նա երթալ և աշակերտել 'ի Հռոմէ, մոլեցան 'ի վերայ նորա հեբրայեցիքն սպանանել զնա յԵրուսաղէմ. զբողոքն կալաւ նա առ կայսր, ոչ վասն զի երկնչէր նա 'ի մահուանէ, այլ զի գոնեայ 'ի պատճառս շղթայիցն կապանաց ելցէ նա քարոզել 'ի քաղաքին յայնմիկ՝ որ առանց այսր իւիք պատճառանաց չէր իւիք նմա անդր հնարել ելանել։ Արդ զերկուս ամս ներեցին նմա շնորհք, զի հալածեսցի նա և աշակերտեսցէ 'ի Հռոմ քաղաքէ, այն կարծէր թէ սակաւ աւուրբք հասանէ քարոզել և նեղել նմա։ Արդ սա որ զնախաբարսն և զընտանիս կեսարեայ աշակերտեաց, ոչ 'ի տան միոյ ուրուք 'ի նոցանէ բնակել կամեցաւ, և ոչ զվարձս տանն յուրում նստէր նա բազմօք հանդերձ՝ թոյլ ետ միում ումեք 'ի նոցանէ թէ տացէն։ Արդ վասն այսր և վասն այլոց գրէ նա 'ի Հռոմ քաղաքէ առ Տիմոթէոս՝ յասել իւրում այսպէս։

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ Առաքեալ Յիսուսի Քրիստոսի 'ի կամաց այ, զի կամեցաւ ընդ իս . և ըստ աւետեացն կենդանութեան որ 'ի Քրիստոս Յիսուս են, զի կամեցաւ նա քարոզել ինև : Առ Տիմոթէոս սիրելի որդի, 'ի հոգևոր ծննդենէ : Շնորհք և խաղաղութիւն յայ 'ի Հօրէ մերմէ եղիցին ընդ ձեզ յամենայն կողմանց վասն հալածչացն' որ ընդ ամենայն տեղիս ընդդէմ լինին մեզ . և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ . և ոչ եթէ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի : Գոհանամ զայ զոր պաշտեմն 'ի նախնեաց սրտէ . այս ինքն նախնեաց մտօք' որ յառաջ էին քան զօրէնսն . ոչ եթէ զոհիւք պատարագաց, այլ մտօք սրբութեամբ . իբրև զի անպակաս ունիմ զյիշատակ քո յաղօթս իմ որպէս և հայր ճշմարիտ . և անձկացեալ եմ տեսանել զքեզ իբրև զորդի սիրելի . և յիշեմ ես զարտասուսն քո վասն նեղութեացն իմոց . և որ յամենայն ժամ յաղօթս կաս դու, վասն զի լի եղիցիս հոգևոր ուրախութեամբ : Եւ զմտաւ ածեմ ես զանխեղճ զանարատ զառանց երկմտութեան հաւատս քո, այն որ ամենևին 'ի նեղութենէ ոչ շարժեցան : Վասն այսորիկ յիշեցուցանեմ քեզ աղօթիւք իմովք զուարթացուցանել արծարծանել նորոգել քեզ զշնորհսն այ զոր ընկալար 'ի ձեռնադրութենէ անտի իմմէ . այս ինքն զՀոգին սուրբ զոր ընկալար դու 'ի ձեռնդրութենէ անտի իմմէ . զի ոչ ետ քեզ ած 'ի ձեռն իմում ոգի վատութեան, այլ զօրութեան կալ առաջի հալածչաց սիրով և զգօնութեամբ, շինել և շահել նոքօք զհաւատացեալս :

Արդ իբրև քաջալերեալ և զօրացեալ 'ի Հոգւոյ անտի զոր ընկալար' մի՛ ինչ ամօթ համարեսջիր զխոստովանութիւն տեառն մերոյ առաջի ամենայն մարդկան, և մի՛ զիս զկապեալ նորա : Զի թէպէտ և այս խոստովանութիւն 'ի մէջ նեղութեան մեծի կացուցանէ զքեզ, այլ քեզ պարտ է պատշաճ է կցորդ լինել չարչարանացն աւետարանին հալածելոյ ըստ զօրութեան որ յայ է . այս ինքն ըստ օգնականութեան որ յայ է,

այն որ փրկեաց զմեզ 'ի նոր փրկութիւն. և կոչեաց զմեզ 'ի կոչումն իւր սուրբ՝ որ յերկնից է. և ոչ ըստ գործոց իմոց՝ զի հայհոյիչ էի, այլ ըստ կամաց իւրոց՝ որում ոչ սպասէի և ոչ ակն ունէի. ըստ շնորհացն որ տուան ինձ Յիսուսէ Քրիստոսէ յառաջ ժամանակացն յաւիտենից, որպէս և աշակերտացն ընկերացն իմոց: Այն իսկ է զոր ասէ. «Ընտրեցի ես զձեզ ինձ 'ի սկզբանէ արարածոց»: Բայց յայտնեցաւ այժմիկ 'ի գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ որ խափանեաց զմահ մահուն իւրով, և լուսաւոր արար զկեանս և զանապականութիւն. այս ինքն և քարոզեաց զկեանսն անմահութեան յարութեամբն իւրով: Այն որ առաքեցայ ես նովին աւետարանաւն քարոզիչ և Առաքեալ և վարդապետ հեթանոսաց: Վասն այսորիկ զայս չարչարանս ընդունիմ ես զոր տեսանես յիս, և լսես դու վասն իմ. և ոչ ինչ ամօթ համարեալ է ինձ, վասն որոյ տեսին աչք իմ և լուան ականջք իմ և համբեր մարմին իմ: Քանզի գիտեմ ես յայն որ կարօղն է նա ինձ պարհել զաւանդն իմ յօրն յայն, հաւատացի ես: Արդ լեր դու ոչ քարոզ բանից միայն, այլ եղիցիս դու օրինակ բարեաց գործովքն քովք բանիցն ճշմարտութեան զոր յինէն լուար 'ի հաւատս ճշմարիտս և 'ի սէր յստակ, այն որ Յիսուս Քրիստոս են: Զաւանդն բարւոք զոր աւանդեցի քեզ, պահեա ջիր հանդերձ Հոգւոյն սրբով որ բնակեցաւ և 'ի քեզ, որպէս և յիս:

Օ այս գիտասջիր՝ եթէ որ միանգամ 'ի կողմանս ասիացւոց ժողովեալ էին առ իս 'ի մխիթարութիւն ըղբօսանաց վասն բազում նեղութեանց և յերկար ճանապարհին, ապստամբ եղեն յինէն: Տացէ ողորմութիւն տէր Ոնեսիփորեայ տանն, զի բազում անգամ հանգոյց զոգի իմ տեսլեամբ իւրով և մխիթարութեամբ, և զկապանս իմ 'ի հալածչաց մարդկանէ անտի՝ որ պատեալ էին զինև՝ ամօթ ինչ ոչ համարեցաւ: Այլ իբրև եկն նա 'ի Հռոմ՝ աշխարհ երկրորդ, փոյթ եղև նմա խնդրել զիս պնտագոյնս, և մեծաւ աշխատութեամբ գտանել զիս: Տացէ նմա տէր գտանել ողորմութիւն յաւուրն յայնմիկ, ոչ միայն վասն այսր զոր արար նա ինձ 'ի Հռոմ քաղաքի, այլ և որչափ միանգամ փոյթ

եղև նմա սպաս ունել ինձ 'ի հալածանս՝ որ յարուցեալ էին 'ի վերայ իմ յԵփեսոս, այն զի և դու ինքնին իսկ քաջ գիտես՝ զի անդ դիպեցար ։

## ԳԼՈՒԽ Բ

ԱՅԼ դու զուարթասջիր զօրութ՟բ Հոգւոյն զոր ընկալար համադերձ հաւասարութ՟բ շնորհացն Յիսուսի Քրիստոսի. և ինչ զոր լուար դու յինէն բազում վկայիւք, այս ինքն զայն զոր վկայեցի ես յանդիման քո առաջի հալածչացն յամենայն տեղիս, զայս պատուիրեսջիր և դու հաւատարիմ մարդկան՝ զի սոյնպէս և նոքա կարգիցեն զաւետարանն ճշմարիտ 'ի ձեռն այլոցն՝ որ աշակերտեսցին նոցա ։ Ճգնեաց դու և համբեր չարչարանաց 'ի ձմերունս հալածանաց իբրև իսպառազէն քաջ Յիսուսի Քրիստոսի ։ Զի ոչ ոք իցէ որ զինուորի և աստէն պատաղի և 'ի կեանս աշխարհիս, այս ինքն եթէ փոյթ ինչ իցէ նմա տեսանել զինչս իւր և զստացուածս. այլ 'ի հպատակութե՟ կայ այնմիկ՝ որ ընտրեացն զնա, թէ որպէս հաճոյ մարթասցէ լինել նմա ։ Սոյնպէս և մարդ թօթափեսցէ զանձն իւր յամենայնէ, զի զիւիք ոչ իցէ պատաղեալ. բայց միայն քարոզել և հալածիլ, զի տեառն իւրում երկնաւորին ըստ հաճոյ լիցի ։ Եւ մարտիկ ոք որ 'ի խաղ մտանէ, ոչ մարթէ պսակ գտանել, եթէ ոչ ըստ օրինաց խաղուն մարտիցէ. բայց եթէ ըստ կերպարանաց խաղուն և որպէս ուսուցին զնա՝ մարտիցէ և յաղթեսցէ ։ Սոյնպէս և այնոքիկ որ աշակերտին, եթէ 'ի պատերազմ ծածուկ նեղութե՟ցն ոչ մտանիցեն և յաղթիցեն, և յայտնի հալածանօք՝ որ յառնէ 'ի վերայ նոցա՝ ոչ առաքինանան, զպսակ յաղթութե՟ առնուլ նոքա ոչ կարեն ։ Եւ հողագործին ըստ վաստակոցն պարտ է և 'ի պտղոյ անտի նախ վայելել նմա. սոյնպէս և մեք 'ի վաստակոց աստի զոր վաստակիմք մեք յայսմ աշխարհի՝ զկեանս անմահութե՟ 'ի միւս աշխարհս ընդունիմք մեք ։ Իմաց դու զինչ խօսիմս ընդ քեզ առակօք օրինակօք ։ Տացէ քեզ տէր իմաս-

տութ̃ն իմանալ քեզ զծածկեալսն զորս կարգեցի ես առաջի քո յայտնեօք ։

Յուշ լիցի քեզ Յիսուս Քրիստոս. այս ինքն քարոզեա զՅիսուս Քրիստոս զյարուցեալն 'ի մեռելոց, այն որ եղեն 'ի զաւակէ Դաւթի, որպէս յաւետարանին իմում գրեալ է ։ Կամ այն՝ որ ասացեալն է վասն Մարեմայ և զՅուսէփու՝ եթէ երկոքին 'ի տանէ Դաւթի էին, կամ այն՝ զի ասէ. "Տացէ նմա տէր ա̃ծ զաթոռն Դաւթի հօր իւրոյ"։ Որով համբերեմ ես նեղութ̃եց և չարչարանաց. այս ինքն աւետարանաւն, ոչ եթէ թշնամանաց միայն կամ նախատանաց համբերեմ ես, այլ իբրև չարագործ մի կապանօք 'ի քաղաքէ 'ի քաղաք տանէին զիս, և շղթայիւք յաշխարհէ յաշխարհ մատնէին զիս ։ Այլ թէպէտ և ձեռօք կապելովք տարան զիս 'ի Հռոմէ, զլեզու իմ կապել ոչ կարացին ։ Եւ որովհետև բանն ա̃յ ոչ է արգելեալ, ամենայնի համբերեմ, զի շղթայիւքն իմովք անգամ կեանս խոստացեալս որ 'ի Քրիստոս Յիսուս են ընտրեալքն՝ որ լսեն ինձ գտցեն իւրեանց զփառս, որ 'ի Քրիստոս են. այս ինքն յաւուր փառաց Քրիստոսի ։ Հաւատարիմ է բանս, այս ինքն արդար է բանս. զի եթէ մահուն նորա կցորդք եղեաք, և կենացն կցորդ լիցուք ընդ նմա ։ Եւ եթէ համբերեմք մեք առաջի հալածչաց, և ընդ նմա թագաւորեմք և 'ի կատարածի. և եթէ ուրանամք 'ի նեղութեան կամ առանց նեղութ̃ե, և նա յուրաստ լինի 'ի մէնջ, որպէս և ասաց նա. "Եթէ ոք յուրաստ լինի յինէն առաջի մարդկան. և ես յուրաստ եղէց զնմանէն և առաջի Հօր իմոյ յերկինս"։ Եւ եթէ թերահաւատեմք 'ի նմանէ, ոչ խափանեմք մեք զնա. հաւատարիմ իսկ է, այս ինքն է իսկ նա և ուրանալ զանձն իւր ոչ կարէ ։

Զայս յուշ արասջիր այնոցիկ՝ որ ուսանիցին 'ի քէն. և եղիցես հաստատել զնոսա ոչ առաջի մարդկան, այլ առաջի ա̃յ. զի մի հակառակիցեն նոքա 'ի բանս՝ որ ոչ իցեն պիտոյ, բայց կործանումն են լսելեաց իւրեանց ։ Արդ ջանասջիր զանձն քո օրինակ կացուցանել ընտիր՝ յուսացեալ առաջի տեառն մշակ առանց ամօթոյ. որպէս զի կարասցես զուարթ

երեսօք ուղղել զթիւրեալսն բանիւ ճշմարտութեան: Այլ 'ի պղծաբան և 'ի զազրաձայն խօսից ամենայն աղանդոց՝ որ օտար իցեն իմաստութենէ գրոց՝ 'ի բաց մերժեսջիր զքեզ. զի անօրէնութիւնք իւրեանց առաւել ևս բազմանան յաշխարհի. այս զի վասն անօրէնութեան իւրեանց մոլեգնին անօրէնք զկնի նոցա: Եւ բանք նոցա նմանեալ են կեղոյ, որ անուանեալ կոչի քաղցր կեղ. կամ զոր օրինակ չիք բժշկութիւն այսմ կեղոյ, սոյնպէս և ոչ նոքա ստանան զառողջութիւն 'ի հաւատոց անտի ճշմարտութենէ. կամ որպէս փորէ և ծակոտէ ախտս այս զմարմին, սոյնպէս ապականէ և եղծանէ աղանդս այս զմիտս: Արդէն իսկ աւասիկ յետս կացին 'ի ճշմարտութենէ անտի՝ որ յայտնին է. որոց սակի են Հեմենոս և Փիղիտոս. և հակառակ այնմիկ զոր ուսանն, և ուսուցանեն և պնդեալ են և ասեն՝ եթէ յարութիւն մեռելոց եղև և անց, ոչ եթէ մարմնոց, այլ հոգւոց. և 'ի ձեռն այսորիկ զհաւատս մարդոց մարդոց որ շարժեալ էին հիմունք նոցա՝ կործանեն: Այլ հաստատուն հիմն ա՟յ կայ. այս ինքն ճշմարիտ քարոզութիւն՝ որ քարոզեցաւ յա՟յ 'ի ձեռն մարգարէիցն և առաքելոց՝ հաստատուն կայ 'ի գիրս նոցա. և ունի զգատակնիքս զայս, այս ինքն յարութիւն՝ զի քարոզի 'ի նմա. զի այն որ զյարութիւն մարմնոյ ոչ քարոզէ, ոչ շինի նա 'ի վերայ հիմանն այնորիկ: Եւ ճանաչէ տէր զայնոսիկ՝ որ իւրն են, զի յամենայնի օգնեսցէ նոցա, և փրկեսցէ զնոսա և յանօրէնութենէ:

Ած նա օրինակ բանի իւրում և ասէ՝ եթէ եկեղեցի որ ընդ ամենայն տիեզերս է, մեծի տան նմանեալ է. ոչ է միայն անօթք ոսկեղէնքն և արծաթեղէնք՝ որ 'ի պատիւ փառաց պիտոյ են՝ գոն 'ի նմա, այլ և փայտեղէնք և խեցեղէնք 'ի պէտս անարգանաց: Այլ ոչ եթէ որպէս պիտոյ եղև սպաս պաշտաման անօթոցն անարգութեան 'ի տան մեծի, այսպէս պիտոյ իցէ մոլորութիւն նոցա յեկեղեցւոջ ա՟յ: Եթէ ոք կամեսցի և սրբեսցէ զանձն իւր յոտարոտի բանից անտի յայնպիսեաց զոր ուսուցանէ, լինի այնուհետև անօթ պատուական, սրբեալ, պիտանի տեառն իւրում, պատրաստեալ ոչ յապականել զմիտս հաւատացելոց, այլ պատրաստեալ յամենայն գործս բարիս:

Այլ յերիտասարդութեան ցանկութեանց փախիր՝ որ հետամուտ լիեալ են քո, և երթ զհետ արդարութեան. այս ինքն զհետ գործոց արդարութեան, և զհետ ճշմարիտ հաւատոյ՝ որ առ Աստուած են, և զհետ կատարեալ սիրոյ՝ որ առ մարդիկ է : Եւ խաղաղութեան եղիցի աստ և անդ այնոսիկ՝ որ կարդան զանուն տեառն սուրբ սրտիւ, զի ոչ իցէ խոտորեալ 'ի ճշմարիտ հաւատոց իւրոց : Այլ յիմարութեանց և յանխրատ հակառակութենէ՝ յորում ոգէտքդ յարակեալ են հրաժարեա . քանզի ոչ ունին նոքա առնել նշանս և դարձուածս բանից պատասխանի , ծնանին իւրեանց կռիւս : Եւ ծառայն տեառն որ հեզն է, կռուել ընդ այնպիսիս անխրատս ոչ է պարտ . այլ լինել նմա հեզ և խոնարհ, որպէս ուսոյց նմա տէր իւր , ոչ առ մի ոք , այլ առ ամենայն մարդ . և լինել նմա ուսուցիչ և համբերող առ աշակերտս իւր . և խրատել զհակառակողսն , ոչ թշնամանօք կամ հեստութեամբ , այլ հանդարտութեամբ : Զի արժան հեռացուցանել և մերժել զնոսա 'ի մէնջ, թերևս տայցէ նոցա ապաշխարութիւն երկայնմտութեամբ իւրով, զի յորժամ ծանիցեն զճշմարտութիւն , սթափեսցին և սգայցեն խելաց իւրեանց . և ապրեսցեն յորոգայթից անտի սատանայի , զի նա ինքն է վարդապետութիւն սատանայի , այն որ արգելեալն և փակեալ և ձերբակալեալ են . այս ինքն զի զգեցեալ են նովաւ ըստ կամացն սատանայի :

## ԳԼՈՒԽ Գ

ՊԱՐԶԵԱԼ ասաց նա 'ի ձեռն Հոգւոյն զոր ունէր՝ վասն հակառակորդաց , որ զարթնուն յաւուրս յետինս 'ի վերայ եկեղեցւոյ, գրէ այսպէս՝ թէ յաւուրս յետինս յարիցեն մարդիկ՝ զի ոչ եթէ միայն բանիւք իւրեանց լինին հակառակ ճշմարտութեան , այլ և գնացիւք իւրեանց . 'ի գործոց անտի նոցա պարտ է ճանաչել զբանսն ապականութեան զոր ուսուցանեն : Յարիցեն մարդիկ ոչ տալ զանձինս իւրեանց իբրև զիս 'ի մահ փոխանակ մարդկան , այլ անձնասէրք . ոչ սոսկք որպէս և ես՝ զի ոչ ցանկացայ ոսկւոյ և

արծաթոյ և հանդերձից, այլ արծաթասէրք. ոչ խոնարհք և գձուձք, այլ հպարտք և ամպարտաւանք. ոչ խոստովանեալք, այլ հայհոյիչք. զի ընտանեաց իւրեանց որ սաստեն նոցա՝ ոչ անսան. ոչ երախտաւորք բարեաց, կամ հատուցիչք բարւոք երախտաւորաց, և ոչ հեզք, այլ անշնորհք և ապարասանք. ոչ ողորմածք և քարոզիչք խաղաղութ՟ե, այլ անգութք և անհրաւէրք. ոչ հոգաբարձուք մարդկան, այլ չարախօսք ընկերաց իւրեանց. ոչ երկայնամիտք, այլ անհամբոյրք. ոչ քաղցունք, այլ խիստք. և ոչ չարատեացք, այլ անբարիք. ոչ որ ընդ յարկաւ առնեն և թագուցանեն զհալածեալսն, այլ մատնիչք հալածելոց. ոչ սիրունք ճանապարհի կենաց, այլ ցանկասէրք առաւել քան ա՟ծասէրք:

Հանդերձ այսու՝ որ ճշմարտութ՟են օտար են՝ որ գործելին 'ի նմա, որ ուրացեալսն են 'ի ճշմարտութ՟է անտի. որ ունին զկերպարանն ճշմարտութ՟ե գործովք իւրեանց չարեօք: Պաշտեն զկամս մարմնոց իւրեանց, և կերպարանօքն ճշմարտութ՟ե զոր զգեցեալ են՝ գերեն զմարդիկ 'ի մոլորութ՟ի խաբէութ՟ե: Եւ յայնպիսեաց անտի յորս զայս տեսանես՝ խորշեսջիր, զի ոչ ինչ օգտին նոքա 'ի քէն. զի զարդարեալ հայլին նոքա 'ի քեզն մերձենալով: Սպրդեն և մտանեն 'ի տանէ 'ի տուն, ոչ յանդիմանել և 'ի խրատել, այլ գերել յուսումն վարդապետութ՟ե իւրեանց զկանայս շեղջակուտեալս մեղօք. զի գնան նոքօք և վարին ոչ 'ի մի ցանկութ՟ի, այլ 'ի պէսպէս 'ի ցանկութ՟իս: Եւ յամենայն ժամ[1] ուսանին, այս ինքն հանապազօր ճաշակեն նոքա զճշմարտութ՟ին, և դարձուցանեն անդրէն, և երբէք յամենայն սրտէ իւրեանց ոչ դառնան ճանաչել զճշմարտութ՟ի: Այլ որպէս Յանէսն և Յամբրէս հակառակ եղեն Մովսէսի 'ի հնումն անդ, սոյնպէս և սոքա հակառակ են ճշմարտութեան նորոյն: Մարդք՝ ապականեալք միտք իւրեանց 'ի ճշմարտութենէ. և անպիտանք, այս ինքն անպիտանք 'ի հաւատս: Եւ քանզի մոլեգնեցան նոքա այսոքիմբք զորս համարեցայս, անարգել զնոսա և գալ յառաջ ոչ կա-

1 Յօրինակին պակասի ժամ:

րեն . զի յայտնի իսկ են գործք իւրեանց՝ եթէ ինչ ճշմարիտ նոքա ոչ գիտեն, որպէս և ինքեանք իսկ զինքեանս ծանեան :

Այլ դու զհետ եկիր ճշմարիտ վարդապետութեան իմոյ և զհետ օրինակի զոր ցուցի ես քեզ յանձն իմով. և զհետ հաւատոց իմոց, զի մեծաւ հանդիսիւ քարոզեցի զնոսա . և զհետ երկայնմտութեան իմոյ առ հաւատացեալս, և զհետ համբերութեան իմոյ առաջի նեղչաց, և զհետ հալածանաց իմոց ընդ ամենայն տեղիս, և զհետ հին ցաւոց իմոց որ 'ի հալածչացն՝ որ արգելլինէին ինձ : Զի դու ինքնին իսկ գիտես որպիսի իրք անցին ընդ իս 'ի կողմանս Անտիոքացւոց և Յիկոնիացւոց և 'ի Լիւստրացւոց : Եւ Անտիոք՝ ոչ այս Ասորւոցս, այլ յայն 'ի Փիսիդացւոցն՝ գրգռեցին յարուցին Հրեայքն զքաղաքապետս և զկանայս մեծատունս, և արարին նեղութիւն մեծ 'ի վերայ նոցա, և հանին զնոսա արտաքս քան զսահմանն իւրեանց . և յԻկոնիայ յետ նեղութեանն առաջնոյ արարին հալածանս Հրեայք և հեթանոսք, և քարկոծ արարին զնա և զԲառնաբա, և հանին զնոսա 'ի քաղաքէ անտի : Եւ 'ի Լստրոս դարձեալ չարախօսութեամբ Հրէիցն՝ որ եկեալ էին անդր 'ի կողմանց Անտիոքացւոց և յԻկոնիացւոց՝ քարակոծ արարին զՊաւղոս, և հանին քան զքաղաքն արտաքս քարշելով, և ակն ունէին թէ մեռաւ նա : Եւ զի այս այսպէս եղև, ահա 'ի Գործս երկոտասան առաքելոց գրեալ է :

Յամենայնէ փրկեաց զիս տէր . ոչ զի մի չարչարեսցեն զիս, այլ զի մի սպանցեն զիս : Եւ ամենեքին որ կամիցին կեալ 'ի վախճանի յարդարութեան, մատնեսցեն զանձինս իւրեանց հալածանաց . Իսկ այնոքիկ՝ որ 'ի կերպարանս ճշմարտութեան ծածկեն զսուտն իւրեանց, յառաջ գան նոքա 'ի չար իւրեանց . այս ինքն վասն չարեաց նոցա աճէ և զարգանայ խաբէութիւն անձանց իւրեանց, և այնոցիկ՝ որ խաբին զկնի նոցա : Այլ դու հաստատուն կաց յայդմ զոր ուսարդ յինէն, և յայնմիկ՝ որ ինչ հաւատարիմ եղեր դու յոյ 'ի ձեռն հոգևոր մարդոյ . գիտես դու յորպիսի մարդոց ուսար : Եւ 'ի մանկութենէ քումմէ գրովք մարգարէից սնար, որք կարողք են խորհրդովք իւրեանց ի-

մատուցանել զքեզ 'ի կեանս, ոչ զկեանսն հնոյն, այլ զկեանս նորոյն՝ որ 'ի հաւատոց անտի Յիսուսի Քրիստոսի է հանդերձ ամենայն գործովք : Դարձեալ որ ա̃ծաշունչն են . այս ինքն հանդերձ գրովք մարդկան՝ որ ընկալան զհոգի, ոչ 'ի մարգարէանալ, այլ յանդիմանել խրատել և ուսուցանել՝ թէ որպիսի վարք արժանի են ճանապարհին կենաց . զի 'ի ձեռն նոցա կատարեալ լիցի մարդն ա̃յ նորն յամենայն գործս բարութեան հաստատեալ :

## ԳԼՈՒԽ Դ

ՎԱՍՆ վկայեմ ես առաջի ա̃յ և առաջի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի անդադար քարոզեսջիր դու զբանն . և եղիցես 'ի մտի ունել զայն վկայութիւն զոր վկայեցի քեզ լուելեան . այս ինքն 'ի ներքըս յանձին քում հանապազ : Այլ ոչ ասեմ քեզ թէ ուր արժան իցէ և ուր չիցէ արժան . այլ ուր տեղի գտանես դու քեզ, յանդիմանեա և խրատեա աներկիւղ, և շինեա և ուսո ամենայն երկայնմտութ. : Զի եկեսցեն ժամանակք՝ յորում[1] ողջամտութեամբ վարդապետութեան բանից ոչ ունկնդիր լինիցին բազումք յիմաստնոց . այլ ըստ իւրաքանչիւր ցանկութեց յանձանց իւրեանց և ոչ ըստ պատճառանաց գրոց յաճախեն վարդապետս ճոխութեան անձանց իւրեանց ըստ մարմաջել լսելեաց իւրեանց 'ի լսել, յասել, կործանին նոքա յառաջելս խաբէութեան . Թեւրեն զլսելիս իւրեանց 'ի ճշմարտութենէ անտի վասն յըստակութեան և իմաստութեան նորա : Այլ դու զուարթկաց յամենայնի ուսուցանել, և համբեր չարչարանաց 'ի հալածչաց . և գործք քո եղիցին ոչ ըստ քահանայից հնոյն, այլ ըստ աւետարանչի նորոյս : Եւ եղիցես դու քաջալերեալ 'ի պաշտաման քում . այս ինքն յաւետարանութեան քում : Զի ես արդ այսուհետև նուիրեալ եմ ոչ դոյզն մահ մեռանել, այլ պատարագել . և ժամանակ իմոյ դարձին հասեալ կայ 'ի վե-

1 Յօրինակին ուրում :

րայ իմ։ Զի պատարագելոյն խորով հանգեաւ նա 'ի հալածանաց զոր համբերէր նա զամս բազումս։ Զպատերազմ մեծ զհալածանաց և զամենայն նեղութեանց պատերազմեցայ, և զընթացս իմ կատարեցի 'ի ձեռն մարհու՝ որ սահմանն է ընթացից, և զհաւատս իմ պահեցի 'ի մէջ բեւր չարչարանաց՝ որ յարեան 'ի վերայ իմ։ Եւ այսուհետև պահեալ մնայ ինձ պսակն, ոչ շնորհացն, այլ զոր հատուցէ ինձ տէրն յաւուրն յայնմիկ. ոչ եթէ ինձ միայն տայ արդարութ̄ք, այլ ամենայն որ և սիրեցին զօրն երևելոյ գալստեանն նորա։ Զի թէպէտ որ աստս լինի տուեալ մեզ՝ շնորհաց են, սակայն այն որ պատրաստեալն պարհի՝ արդարութ̄ե են։

Փութասջիր դու գալ առ իս վաղվաղակի, զի 'ի պատճառս պատճառս մնացայ ես յառաջին ուղեկցաց անտի. զի Դեմաս թող զիս և սիրեաց զաշխարհ. այս ինքն փախեաւ 'ի նեղութենէ, ուստի պարգևքն աւետեաց պարհեալ էին նմա. և մերձեցաւ նա առ հանգիստ երկրաւոր, ուստի շահ ինչ չիք նմա։ Եւ Կրիսկոս գնաց երթալ շինել 'ի կողմանս գաղատացւոց. և Տիտոս աւետարանել 'ի կողմն դաղմատացւոց։ Եւ Ղուկաս աւետարանիչ միայն է ընդ իս։ Զմարկոս ընդ քեզ առջիր եկեսջիր, զի է նա ինձ պիտոյ, ոչ 'ի պաշտօն անձին իմոյ, այլ 'ի պաշտօն Հոգւոյ։ ԶՏիքիկոս որ պաշտէր ընդ իս, առաքեցի ես շրջել տեսանել զեփեսացիսն։ Զփիլոնն և զմատեանսն մագաղաթեայս, քանզի յայտնութիւն որ եղև ինձ 'ի Տրովադայ՝ զի երթայց շինեցից զկողմանս մակեդոնացւոց՝ թողի զնոսա անդ, յորժամ գայցես՝ բերջիր ընդ քեզ։ Աղեքսանդրոս դարբինն բազում ինչ չարիս հատոյց ինձ. տացէ նմա տ̄ծ ըստ գործս նորա զոր գործեաց նա ընդ մեզ։ Ընկեր էր նա Սիմոնի, որպէս կիսարացի Քրոնգրոփիւ անդ ցուցանէ։ Ցորմէ, ասէ, և դու անձնպահ լինիջիր, զի խորամանգութ̄բ և նախանձու սատանայի որ մտեալ էր և զօրացուցանէր զնա՝ շատ հակառակ եկաց նա բանիցն մերոց։ Եւ յառաջնում յատենին իմում զոր կացի ես առաջի կայսեր, ոչ ոք յեղբարցն մնաց առ իս. այլ ամենեքին թողին զիս առ երկիւղի և փախեան. մի՛ մեղք համարեսցին նոցա

այս ։ Զի թէպէտ և փութացաւ և փախոյց զնոսա շարժումն, ժողովեաց ած զնոսա առ մեզ սէրն ։ Այլ ինձ տէր օգնական էր, և զօրացոյց 'զիս քաջալերութբ համբերել ինձ չարչարանաց և նեղութեց՝ որ պատեցան զինև. զի ինև քարոզչութի քաջալերեսցի, այս ինքն ամենայն քարոզիչքն նորոյն քաջալերեսցին ինև. և լուիցեն ամենայն հեթանոսք որ աշակերտեցանն, զի ապրեցայ ես 'ի բերանոյ առեւծու. այս ինքն 'ի ձեռաց կայսեր ։ Զի սպանանել կամէր զիս առաջին ատեանն նորա. և տալ պատասխանի նորա թէ վասն որոյ պատճառանաց մատնեցաւ նա 'ի Հրէից անտի 'ի ձեռս դատաւորին, և վասն որոյ իրիք կալաւ նա զբողոք 'ի կայսր ։ Եւ ապրեցուսցէ զիս տէր յամենայն գործոց չարութենէ, որպէս և փրկեալ եմ ես յամենայնէ՝ որ միանգամ գրեցաւ վասն իմ կայսեր՝ 'ի չարախօսութէ անտի Հրէիցն. և հասուսցէ զիս յարքայութի անդր իւր՝ որ յերկինսն է, զի կացի ես և քարոզեցի զնա առաջի երկրաւոր թագաւորաց ։

ԹՈՒՂԹ

# ԱՌ ՏԻՏՈՍ

ՊԱՒՂՈՍ եթող զՏիտոս 'ի Կրիտէ իբրև զվերակացու և իբրև զեպիսկոպոս, զի շրջեսցի նա և կացուսցէ երիցունս 'ի քաղաքս քաղաքս, և այլ ինչ որ պակաս իցեն 'ի տեղիս տեղիս՝ ուղղեսցէ։ Այլ իբրև լուաւ Պաւղոս եթէ ոմանք 'ի թլփատութենէ անտի խռովեն զմիտս հեթանոսաց՝ պահել զզպահպանութի՟ս օրինաց, փութացաւ նա գրել վասն որոյ իրի զնայն 'ի Կրիտէ թողեալ էր, 'ի պատուիրել իւրում և վասն որոյ 'ի թլփատութենէ անտի էին. զի պարտ է մեզ ընդբերանել զնոսա։ Զի նոքա վասն ագահութե՟ իւրեանց զամենայն տունս կործանեն, և ուսուցանեն զոր ինչ ոչ է արժան՝ վասն զօշաքաղութե՟ իւրեանց։ Քանզի ասացին ոմանք՝ և վասն Տիտոսի 'ի խռովչաց անտի՝ եթէ չէ նա 'ի Պաւղոսէ առաքեալ, գրէ նմա Պաւղոս և ցուցանէ 'ի ձեռն թղթոյն զիշխանութի՟ զոր ունէր Տիտոս և առանց թղթոյ։ Եւ պատուիրէ նմա 'ի թղթի անդ երիցունս կացուցանել, և սարկաւագունս առնել, և ընդբերանել զայնոսիկ՝ որ 'ի թլփատութենէ անտի են. և զի զամենայն ինչ 'ի կարգի իւրում ուղղեսցէ։ Եւ մինչ առաքեսցէ զկնի նորա գալ նմա 'ի Նիկոպոլիս, անդ կացցէ։ Արդ վասն այսորիկ և որ ինչ նման էր սոցին՝ առ նա գրել առ Տիտոս, յասել իւրում այսպէս։

## ԳԼՈՒԽ Ա

ՊԱՒՂՈՍ ծառայ ա՟յ և Առաքեալ Յիսուսի Քրիստոսի ըստ հաւատոց ընտրելոցն ա՟յ, այս ինքն ըստ հաւատոցն որ ընտրեալ էին առաքեալքն. և ըստ գի-

տութե՟ ոչ մեղաց և ստուե՟, այլ ըստ գիտութե՟ ար-
դարութե՟ և ճշմարտութե՟ և յուսոյ կենաց, ոչ եթէ
անցաւորք, այլ կեանք յաւիտենականս յաւիտենից զոր
խոստացաւ արդարն ա՟ծ յառաջ քան զժամանակս
յաւիտենից, այս ինքն յաւուրց անտի Աբրահամու
սիրելոյ իւրոյ. և յայտնեաց մեզ զբանն քարոզութե՟
իւրովք ժամանակովք ըստ աւետեացն կարգելոյ՝ որ
կարգէր յամենայն դարս 'ի ծածուկ և ոչ ումեք երե-
ւէր, մեզ առաքելոց յայտնեցաւ 'ի գալստեան իւ-
րում՝ լինել մեզ քարոզք նորա: Եւ ամէն իսկ այսմ
աւետարանի եղէ ես հաւատարիմ, ոչ 'ի մարդկանէ,
այլ ըստ հրամանի ա՟յ փրկչի աշխարհի: Առ Տիտոս
սիրելի որդի, ոչ 'ի մարմնաւոր ծննդենէ՝ զի նա հե-
թանոս և ես հեբրայեցի, այլ ըստ հաւասարութե՟
հաւատոցն ա՟յ. զի նաքօք 'ի մոլորութե՟ 'ի գիտութե՟
ճշմարտութե՟ ծնայ զքեզ: Շնորհք ընդ ձեզ և խա-
ղաղութի՟ յա՟յ 'ի Հօրէ մերմէ ընդ ամենայնի զոր գոր-
ծես դու. և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, և ոչ
եթէ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:
Վասն այսորիկ թողի ես զքեզ 'ի Կրետէ, զի զոր ինչ
մնացեալ պակաս իցէ յամենայն եկեղեցիս, ուղղես-
ցես և կացուսցես երիցունս երիցունս, ոչ 'ի միում
քաղաքի, այլ 'ի քաղաքս քաղաքս, որպէս և ես քեզ
հրամայեցի: Զայն ինչ զոր բանիւքն ասացի քեզ մինչ
դեռ մերձն էի, ահա աւասիկ գրեցի ես քեզ թղ-
թովք 'ի հեռաստանէ, եթէ իցէ ոք անարատ ըստ
մարդկանէ՝ միոյ կնոջ այր, և որդեակս ունիցի հա-
ւատարիմս. զի մի՛ եղիցի հայհոյել և այսպն կատա-
կանաց առնել զխորհուրդն որ դնի 'ի տան նորա: Եւ
մի՛ գնասցէ նա 'ի միտս անձին իւրոյ, այլ ըստ խրատու
որ ընդ նմայն[ա] իցեն: Եւ եղիցի նա սիրել ոչ 'ի բա-
րեաց անտի, այլ զամենայն բարիս. և պարհեսցէ ըղ-
սրբութի՟ն՝ որ ստացաւ 'ի մկրտութե՟ անտի: Եղիցի
նա դարձեալ վերակացու լինել հաւատարիմ՝ բանին
վարդապետութե՟, զի կարող իցէ մխիթարել, այս ինքն
'ի մխիթարելն իւրում զուսանելիսն՝ ուսուցանել նո-

ա Օրինակին ընդ նմին:

ցա զուսումն ճշմարտութե. և կշտամբել զայնոսիկ՝ որ ընդդէմ կան այսր ճշմարտութե։

Վասնզի բազումք են որ ոչն հնազանդին գնալ հագեպես, այլ օրինապես. զրախօսք են, զի ոչ ճշմարտութի գոյ 'ի նոսա. և ոչ զօրութիւս և նշանս գործեն՝ որք զայնպիսիմն խօսին։ Թէպէտ և այսպես մերկացեալք են, սակայն և խաբեն զմիտս մարդկան, մանաւանդ որ 'ի թլփատութե անտի են։ Զի զայնպիսիմն անդրէն ընբերանել պարտիմք ոչ միայն գործովք մերովք՝ որ նոցայոցն ոչ նման են, այլ և ուժգին բանիւք մաքառելոյ և նշանօք և սքանչելեօք, և մանաւանդ 'ի ձեռն նոցուն իսկ գնացիցն, զի ամօթոյ են. զի զամենայն տունս կործանել գիտեն, ոչ ուսուցանել զճշմարտութի, այլ ինչ որ ոչ է արժան. ոչ վասն կենաց խոստացելոց ուսուցանեն, այլ վասն իւրեանց զօշաքաղութե. զի պիղծ են ամենայն շահք նոցա, զի մարդկան մահուամբ գտանեն նոքա զօգտութիւն իւրեանց։ Այլ ասաց ոմն ոք ուրեք 'ի նոցուն իսկ մարգարե. կրետացիք համապազասուտք, չարաճճիք, դատարկապորտք. և ստոյգ է այս վկայութիւն 'ի վերայ նոցա։ Այլ մարգարե 'ի նոցունց՝ կամ վասն միոյ պիտոյից նոցա ասաց, զի գտան կատարեալ 'ի վերայ նոցա բանք նորա իբրև մարգարեութե՝ իբրև ոչ թէ յառաջ քան զլինել նոցա ասաց զայս, զի զայն ինչ զոր ետես 'ի նոսա՝ գրեաց և յամօթ արար զնոսա և ոչ ինչ երկեաւ 'ի նոցանէն. կամ մի ոք 'ի մարգարէից անտի նորոյն ասաց և կշտամբեաց զնոսա. և գրեաց նոցա Առաքեալ իբրև 'ի նախատինս։ Վասն այսորիկ և դու ըստ նմանութե այնորիկ՝ որ մարգարեացաւ 'ի վերայ նոցա, կշտամբեա խստագոյնս, զի առողջասցին 'ի հաւատս իւրեանց յորում կամին։ Մի հայեսցին նոքա յառասպելս հրէից և 'ի պատուէրս մարդկան, այս ինքն քահանայից նոցա. և դարձուցանիցեն նոքա զմիտս իւրեանց 'ի ձեռն նշմարանացն որ անցին՝ 'ի ճշմարտութենէ անտի որ քարոզի մեւք։

Ամենայն ինչ սուրբ է, այս ինքն ամենայն կերակուրք սուրբ են սրբոց. իսկ հրէիցն որ պղծեալ են խորհուրդք իւրեանց, և ոչ հաւատան նոքա բանին

տեառն մերոյ զոր ասաց՝ եթէ «Չիք ինչ որ մտանէ ՚ի մարդ անդր և պղծէ զնա», իսկ նոցա սուրբ ինչ բայց յայնմանէ որ գրեալն է յօրէնսն իւրեանց՝ չիք նոցա. այլ պղծեալ են ՚ի միտս և ՚ի խորհուրդս իւրեանց, այս ինքն խորհրդովք իւրեանց առ անուսանութիւն, և մտօք իւրեանց առ կերակուրս: Եւ վրկայել գիտեն զԱծ, և գործովք իւրեանց ուրացեալ են ՚ի նմանէ. և այնպիսիքն նզովեալ են, վասն զի ոչ հաւատան աւետարանին նորոյ, և խոտեալ են նոքին թերահաւատութբ յամենայն գործոց բարեաց:

## ԳԼՈՒԽ Բ

ՍԱՅՆ դու խօսեաց որ զինչ վայել է, ոչ վարդապետութեան օրինացն՝ որ պաշտեացն և անց ժամանակ իւր, այլ որ զինչ վայել է ողջամտութե վարդապետութե. այս ինքն երէցն որ լինի, ողջամիտ լինել նմա ՚ի հաւատս իւր առ հալածիչսն, և ՚ի սէր և ՚ի համբերութե իւրում առ այնոսիկ՝ որ ուսանին ՚ի նմանէ: Սոյնպէս և կանայք որ ունին իշխանութի սպասու սարկաւագութեան, համապազօր զբարիս նեթուսցին և բարեխրատք լիցին, որպէս զի տեսլեամբքն իւրեանց մարթասցեն ուսուցանել և խրատել զաղջկամարդսն: Զանձն քո օրինակ արասջիր ոչ միոյ բարւոյ միայն, այլ ամենայն գործոց բարեաց, և վարդապետութբ բարի քո վանականութբ, այս ինքն զի ոչ երբէք ցանկացայ ես իմիք: Եւ պարկեշտութբ դարձեալ և ողջամիտ բանիւ այոյնիւն[1] և ոչն: Եւ աւանց տրտմանելոյ եղիջիր դու առ այնոսիկ զոր ուսուցանիցեան. զի օտարն որ[2] հակառակորդն իցէ մեր, և կամ ՚ի դնել ՚ի վերայ մեր բանս աղտեղութե յամօթ լիցի առաջի լսողաց իւրոց յորժամ ոչ կարասցէ նա ճշմարիտ և խօսել զմէնջ բանս աղտեղութե: Ծառայք տերանց հնազանդ լիցին յամենայնի. և մի հատուք լինիցին, զի մի տացեն նոքա զդատաստանս գողոց. այլ ցուցցեն նոքա զճշմարտութիւն իւ-

1 Յօրինակին այոյոյնիւն :

2 Յօրինակին ու:

րեանց, զի և սովին ճշմարտութ՟բ իւրեանց զարդարեա-
ցեն զտուրս վարդապետութ՟ին զոր ուսան։

Զի երևեցան շնորհքն փրկութեան այ՟ ամենայն
մարդկան. այս ինքն քարոզեցաւ ճշմարտութ՟ի ժո-
ղովրդեանն և հեթանոսաց, տերանց և ծառայից։
Եւ խրատէ զմեզ հաւատարութ՟բ, զի ուրասցուք մեք
յամպարշտութենէ անտի զոր գործէաք և 'ի ցան-
կութենէ աշխարհի, զի նոքօք գնայաք. և կեցցուք
յաշխարհի յայսմիկ, ոչ որպէս կէաքն երբեմն, այլ
զգաստութ՟բ, զի ոք ընդ կին ընկերի իւրոյ չարութ՟բ
մի հայեսցի. և արդարութ՟բ, զի մի ոք ագահեսցէ
վասն ստացուածոց մերձաւորի իւրոյ. և սրբութ՟բ,
զայն զոր ստացաք մեք 'ի մկրտութենէ անտի. և ար-
դարութ՟բ, այս ինքն և տրովք զոր տայցեմք մեք կա-
րօտելոցն, ոչ իբրու հայիցիմք ընդունել զհատուցումն
նոցա աստէն, այլ իբրև սպասեալ ակն ունիմք մեք
ընդունել զերանութ՟իս յուսոյն և զերևել փառացն
մեծի այ՟։ Այս ինքն կամ այն է զոր ասացն Մովսէս
«Այ՟ մեծ և ահաւոր», կամ յայտնութ՟ին մեծի փա-
ռացն այ՟, զի ոչ եթէ Հայր յայտնելոց է յայնմ ա-
ւուր, այլ Որդի։ Եւ եթէ գալուստն Որդւոյ է և ոչ
Հօր, թէ այդ այդպէս իցէ, զյայտնութ՟ին կոչեաց
մեծ, և ոչ զա՟ծ. և առ 'ի գրչաց ապականեցաւ այս,
զի առին եդին 'ի վերայ այ՟ զայն ինչ զոր Առաքեալ
յամենայն վայրի վասն աւուրն դնէր զնա յայտնու-
թ՟ենն։ Ասէ. մեծի փառացն այ՟ և փրկչին մերոյ Յի-
սուսի Քրիստոսի։ Զի նա ետ զանձն իւր 'ի վերայ
մեր, զի փրկեսցէ զմեզ 'ի ձեռն մկրտութ՟է յանօրէ-
նութենէ անտի զոր գործէաք։ Եւ սրբեսցէ անձին
իւրում, այս ինքն և ընտրեսցէ անձին իւրում ժողո-
վուրդ սեփհական նախանձաւոր գործոց բարութ՟ե.
որպէս և ասաց Յովհաննէս 'ի ձեռն Հոգւոյն։ Զայս
խօսեաց և մխիթարեա զնոսա, և ընդ մխիթարութ՟ի
քո խառնեալ իցէ ընդ նա և սաստ ևս. զի գուցէ վասն
բազում քաղցրութ՟են քո արհամարհեսցէ ոք զքեզ,
և 'ի բարւոք գնացից իւրեանց յետնեալ գտանիցին։

## ԳԼՈՒԽ Գ

Աւ յուշ արասջիր նոցա, այն զի գրեալ իսկ է իմ՝ եթէ ամենայն անձն որ ընդ իշխանութեամբք իցեն, 'ի հնազանդութեան կայցեն. և եղիցին նոքա պատրաստ լինել ամենայն գործոց բարեաց: Եւ ոչ զոք զոր յափըշտակէ կամ չարաչար գնայ, մի հայհոյեսցէ զնա և մի մարտնչեսցին բնաւ ընդ այնպիսին, այլ եղիցին ցուցանել զամենայն ցածութիւն առ ամենայն մարդիկ. և ցուցցեն զխոնարհութիւն հեզութեան բարեաց ոչ առ ընտանիսն հաւատոց միայն, այլ և առ ամենայն մարդիկ: Զի և մեք երբեմն իբրև զնոսա էաք. և այսուքիմբք որով շրջին այսօր նոքա, շրջէաք և մեք. և զայս զի ոչ համբերեմք մեք տեսանել՝ որ գործին, գործէաք և մեք: Անմիտք էաք որպէս և նոքայն, և հեռք էաք ըստ նոցա նմանութեան. այլ մոլորեալ էաք իբրև զնոսայն, և ծառայ էաք պէսպէս ցանկութեան ըստ նոցա օրինակին. և նախանձու և չարութեան՝ որպէս շրջին նոքա, շրջէաք և մեք. և ատեցեալք էաք յԱյ, և զմիմեանս ատէաք որպէս և նոքայն:

Այլ յորժամ երևեցաւ ոչ արդարութիւն մեր, այլ քաղցրութիւն մարդասիրութեան նորա 'ի վերայ ամենայն մարդկան, ոչ 'ի գործոց յարդարութեան զոր առնէաք, զի զայն գործս անօրէնութեան զոր համարեցայն 'ի վերադոյն՝ գործէաք մեք, այլ ողորմութեամբ իւրով կենդանացոյց զծածուկ մեռելութիւն մեր. և 'ի ձեռն աւազանին ջուրց ծնաւ զմեզ միւսանգամ ծննդեամբ 'ի նորոգել Հոգւոյն սրբոյ, որ սփռեացն 'ի մեզ առատապէս. այս ինքն զի փչեաց զնա յառաքեալսն, և բաշխեաց զնա 'ի ձեռն հրեղէն լեզուացն: Եւ ոմանք մարգարէանային նովաւ, և այլք թարգմանէին նովաւ, և կէսք յամենայն լեզուս խօսէին նովաւ, այլք զօրութիւս պէսպէս առնէին նովաւ: Բայց յայնմանէ՝ որ միանգամ եկեալն 'ի մկրտութիւն և գան քաւիլ նովաւ. զի արդարասցուք մեք 'ի շնորհս նորա, ոչ 'ի գործոց, այլ 'ի մկրտութենէ անտի. և լիցուք յետ քաւութեան մերոյ ժառանգակիցք, ոչ յերկրին որ բղխէ կաթն

և մեղը, այլ յուսով կենացն յաւիտեանս յաւիտենից: Հաւատարիմ է բանս զոր ասացի, և այսու կամիմ եթէ հաստատեսցես դու զնոսա յամենայն ժամ. որպէս զի այսու վերակացու լինելով փոյթ արասցեն նոքա գործոց բարեաց. այս ինքն մարդիկ որ հաւատացեալ իցեն՝ եթէ է իսկ ա̄ծ. Զի այս ինքն է բարի և օգտակար մարդկան, որ գալոց են յաշակերտուի̄ :

ԱՅԼ զյիմարութե̄ զհակառակութիւս և զտոհմաթիւս, այս ինքն 'ի բազում և 'ի ջախջախ խօսից անտի երբայեցւոց, և զհեռ և զնախանձ և զհակառակութիւս դպրաց հեթանոսաց 'ի քէն 'ի բաց մերժեսջիր. զի այն անօգուտ իսկ են երկոցունց կողմանց, և զրաբանք էին, նանրացեալ են 'ի ճշմարտութենէ: Յառնէ՝ որոյ միտք իւր բաժանեալ են յօտար ուսումն, 'ի միանգամ և յերկիցս խրատելոյ՝ հրաժարեսջիր 'ի նմանէ. այս ինքն յետ խրատելոյն որ խրատեցաւ և եկն միանգամ և դարձաւ անդրէն յուսումն իւր, հրաժարեսջիր զքեզ 'ի նմանէ: Եւ այնպիսին որ ոչ ճշմարտութի̄ ստոյգ է նմա և ոչ ստութի̄, թեւրեալ է նա մտովք իւրովք. և մեղանչէ, զի ճաշակեաց նա զճշմարտութի̄ և դարձոյց. և նովին երթալով գալով իւրով անձամբ զանձն դատապարտէ, այս ինքն մատնէ և պարտաւորէ զանձն իւր 'ի դատապարտութիւն:

